# Գրիգոր Արծրունի




ՀԱՏՈՐ [redacted]

I

ԹԻՖԼԻՍ

ԼԷՕ



# ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ




*Հրատարակութիւն*

ԳԱՍՊԱՐ ՏԷՐ-ՄԱՐԳԱՐԵԱՆՑԻ



ԹԻՖԼԻՍ
*Արագատիպ Մն. Մարտիրոսեանցի*
*Մլքայէլեան փողոց*, № 81
1902



ԱՆԴՐԷԱՍ ԵՒ ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ

*(1869, Հէյդըլբէրգ)*

*Ձրազատիպ տպ. Մ'Ա. Մարտիրոսեանցի։*



## ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆՈՒ

# ԱՆՄԱՀ ՅԻՇԱՏԱԿԻՆ

---

*Անմոռանալի ուսուցիչ.*

*Այն րոպէից, երբ իմ մէջ միտք ծագեց գրել քո կենսագրութիւնը, քո գրական գործունէութեան ամբողջ պատմութիւնը, ինձ վրա ծանրացած է այն գիտակցութիւնը թէ որքան դժուար, պատասխանատու գործի եմ ձեռնամուխ լինում։ Քո գործունէութիւնը... բայց դա մեր կեանքի պատմութիւնն է 25 տարիների ընթացքում։ Եղել է դէպք, երեւոյթ, որի մէջ կամ որի առիթով լսված չը լինի քո հզօր ձայնը։ Եւ արդեօք կարող կը լինեմ ես արձանագրել այդ բոլորը այնպէս, որ գործս արժանի լինի քո միշտ գեղեցիկ, միշտ սիրելի անուանս։*

*Զգում եմ իմ պակասութիւնները։ Ես մէկն եմ քո երախտապարտ աշակերտներից, մէկը այն մարդկանցից, որոնք քո ուժեղ ձեռքով դուրս բերվեցին գրական հրապարակը։ Լինել քո վերաբերմամբ կողմնակի, սառնասիրտ դիտող ես չեմ կարող, քանի որ քո վարած հսկայական, անընդհատ կռիւը քո աշակերտների համար մի սքանչելի հերոսութիւն է, որի առջեւ կարելի է միայն խոնարհվել, ծունր դնել։ Եւ երբ այսպէս է, կարող եմ ես լինել քո կեանքի*

պատմաքանը։ Արդեօք միակողմանի չեմ լինի ես, արդեօք մարդիկ, կարդալով աշխատութիւնս, չեն ասի թէ դա պատմութիւն չէ, դա ներբող է հիացած աշակերտի կողմից՝ իր մեծ ուսուցչին նուիրված։

Բայց ես չեմ վախում այսպիսի դատաստանից։

Դու, սիրելի ուսուցիչ, աւանդեցիր մեզ գործ, դրօշակ, դրա հետ եւ այդ աւանդին ծառայելու պարտաւորութիւններ. ազնւութիւն, շիտակութիւն, անկեղծութիւն։ Ահա ինչն է ինձ թեւ տալիս, վստահութիւն տալիս իմ այս ծանր գործի մէջ։ Կրքերը, աղմուկը, չարախօսութիւնը կորչում են. փաստերն են միայն մնում։ Իմ սրբազան պարտքը կը լինի միայն փաստերով ղեկավարվել։ Ես կը լսեմ ոչ միայն քեզ, այլ եւ քո անթիւ թշնամիներին։ Պատկերացնելով քո մղած պատերազմը, ես նկատի կունենամ պատերազմի ամբողջ դաշտը, կուողների բռնած դիրքերը, կուողների զէնքերը։

Գրողի հայեացքները, համոզմունքները անձեռնմխելի են, անքննաքարելի են։ Մնում է խօսքը, կարծիքը ամրապնդել փաստերով, մնում է անդադադար իրողութիւնները լուսաբանել եւ ոչ լոկ բառերով օրհնել կամ անիծել...

Ահա ինձ ղեկավարող սկզբունքը։ Վստահ լինելով նրա վրա, ես սկսում եմ գործս եւ նրան իմ սրտի խորին հիացմունքի հետ նուիրում եմ քո, սիրելի ուսուցիչ, անմահ յիշատակին այսօր, երբ բոլորվում է քո ողբալի մահվան առաջին տասնամեակը։

Լ. Ե. Օ.

Դեկտեմբեր 19,
1902 Թ.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## *ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ*

## *ԱՐԾՐՈՒՆԻՆԵՐԻ ՏՈՀՄԸ*

---

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՈՒՍԱՆՈՂՈՒԹԵԱՆ ՏԱՐԻՆԵՐ

**(1864—1871)**

I



II

V



---

# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ԱՐԾՐՈՒՆԻՆԵՐԻ ՏՈՀՄԸ

### I

*Գէորգ-աղա Արծրունի:—Թիֆլիս գաղթելու պատճառները:—Վանի իրականութիւնից:—Տոհմագրութիւն:—Գէորգ-աղա եւ Ներսէս Աշտարակեցի:—Ճանապարհորդութիւն Եւրոպայում:—Ամստերդամի ապարանը:—Յակոբ Ջահան-Չրպետ:—Ներսէսի ախորը, Արծրունու գործունէութիւնը:—Շինութիւններ Թիֆլիսում: — Գէորգ-աղայի բնաւորութիւնը:—Գրասիրութիւն:—Մահ:*



1813 *թուականին Վան քաղաքից Թիֆլիս եկաւ մի հարուստ հայ վաճառական։ Նա աշխարհ տեսած, շատ ճանապարհորդած մի մարդ էր, առեւտրական գործերով եղել էր Թիւրքիայի զանազան կողմերում, Պարսկաստանում, Կ. Պոլսից անցել էր հարաւային Եւրոպա։ Բոլոր այդ տեղերում նա առեւտրական էր, որ կարգադրում է իր գործերը ու յետոյ հեռանում։ Իսկ Թիֆլիս եկել էր մի այլ դիտաւորութեամբ։ Սովորական երթե-*

եկողներից մէկը չէր նա, այլ մի նշանաւոր անձնաւորութիւն. Ներկայացաւ Վրաստանի կառավարչապետ գեներալ Ռտիշչեվին և յայտնեց որ կամենում է ընտանիքով բնակութիւն հաստատել Թիֆլիսում, ընդունել ռուսաց հպատակութիւն։ Կառավարչապետ Ռտիշչեվը, տեղեկանալով հանգամանքներին, խոստացաւ իր հովանաւորութիւնն ու աջակցութիւնը և նոյն տարվանից Թիֆլիսի բնակիչ դարձաւ այդ՝ ծագումով և հարստութեամբ նշանաւոր օտարականը։

Դա Գէորգ-աղա Երան-Արծրունին էր։

Երան-Արծրունիների տոհմը շատ հին էր Վանում և իրան համարում էր Վասպուրականի հին տէրերի, Արծրունի իշխանների, շառաւիղ։ Մահմեդական իշխանութեան տակ հայերը կորցրին ազնուականութեան իրաւունքները։ Որքան յայտնի է, Արծրունիները վերջին ժամանակներում վաճառականներ էին։ Այդպէս էր և Գէորգի հայր Երեմիան։ Ինքը Գէորգը ծնվել էր Վանում 1771 թուականին։ Ամուսնացած էր Եղիսաբէթ անունով աղջկայ հետ, որ, ինչպէս երևում է, նոյն Արծրունիների տոհմից էր, բայց այլ ճիւղից։ Այդ ճիւղը կոչվում էր Պաչավեան-Արծրունի*).

*) Այս անունը մենք հանում ենք գեներալ Արծրու-

և նոյնպէս նշանաւոր էր իր հարստութիւններով։ Գէորգը ունեցաւ միայն երկու որդի. Մարիամ, ծնված 1793 թւին *) ՝և Երեմիա— 1804 թւին։

Նոր գաղթականը Վրաստանի մայրաքաղաքում հռչակվեց իբրև մի մարդ, որ անհուն հարստութիւն էր բերել իր հետ։ Դա մասամբ ճշմարիտ էր։ Միայն վաճառականութիւնը չէր, որ հարստացրել էր Գէորգ Արծրունուն։ Նրա տոհմը Վանում ունէր կալուածներ և վայելում էր «հիսար-եօլդաշի» արտօնութիւնը։ «Հիսար-եօլդաշի» նշանակում է բերդի եկամուտների ընկեր. Երան-Արծրունիները որդուց որդի ստանում էին Վանի բերդի եկամուտների մի մասը։ Գալով անշարժ կալուածներին, Երան-Արծրունիների հողային սեփականութիւնների վրա աւելացան Պաչավեան-Արծրունիների սեփականութիւնները, երբ Գէորգը ամուսնացաւ Եղիսաբէթի հետ։ Վերջինիս հայրն էր Մահտեսի-Յակոբ Ամիրան, որ ունէր մի եղբայր՝ Մահտեսի-Աւետ Ամիրա անունով։

---

նու ձեռքով գրված մի ռուսերէն թղթից։ Տարաբախտաբար, մեզ չաջողվեց իմանալ ճիշտ հայերէնը։

*) Մարիամը ամուսնացաւ երևանցի Սարգիս Սանասարեանցի հետ. Նրա որդին էր Սանասարեան դպրոցի հիմնադիր Մկրտիչ Սանասարեանցը։

*Այդ երկու տոհմերի կալուածները, որոնք Գէորգ Արծրունու և նրա ժառանգների սեփականութիւնն էին կազմում, հետևեալներն էին. 1) հողային մեծ տարածութիւններ Մոկս և Շատախ գաւառների լեռներում, ուր կային հարուստ հանքեր, որոնց մէջ յայտնի էր մանաւանդ «զառնեխը» *). 2) Վանի լճի վրա, Մարմետ գիւղի ձկնորսարանը. ինչպէս յայտնի է, Վանի հռչակաւոր տառեխը մեծ մասամբ այդ գիւղի մօտ է որսվում. 3) Վանի Արարք թաղը, ուր Պաչավեանները ունէին տուն և այգիներ. 4) Տներ և խանութներ Վան քաղաքում։*

*Ի՞նչը հարկադրեց Գէորգ աղային թողնել*

---

*) Գեներալ Երեմիա Արծրունին Կ. Պօլսի ռուսաց դեսպանութեան միջոցով դատ սկսեց պօլսեցի սեղանաւոր Ալլահվերդի-Օղլուի դէմ, պահանջելով նրանից մօտ $2^{1}/_{2}$ միլիօն րուբլի։ Ալլահվերդի-Օղլուն Պաչավեան-Արծրունիների գործակատարն էր և վաճառել էր Մոկսի և Շատախի հանքերից նրան ուղարկված զառնեխը։ Նա խոստովանեց այդ հանգամանքը Թիւրքաց կառավարութեան և ռուսաց դեսպանի առաջ, յանձն առաւ վերջացնել հաշիւը Երեմիա Արծրունու հետ, պայման դնելով որ վերջինս գնայ Կ. Պօլիս և անձամբ վերահասու լինի իր պահանջին։ Արծրունին գնաց Կ. Պօլիս 1844-ին, բայց երկար չը կարողացաւ մնալ այնտեղ, այնուհետև նա պահանջում էր որ Ալլահվերդի-Օղլուն հաւատարմատար ուղարկէ Թիֆլիս, բայց այդ պահանջը չը կատարվեց։

իր հայրենիքը, այդքան հարստութիւնները և տեղափոխուել Ռուսաստան։

Բուն պատճառը մեզ յայտնի չէ։ Բայց կարող ենք առանց տատանուելու ասել որ Թիւրքիայից հեռացող բոլոր մարդկանց համար դարերից ի վեր մի ընդհանուր պատճառ է գոյութիւն ունեցել և դա—թիւրքական իրականութիւնն է։ Այդ իրականութիւնն այնպէս էր, որ նոյն իսկ յայտնի, նշանաւոր մարդիկ էլ ոչ մի կերպով պաշտպանուած չէին հարստահարութիւններից, բռնութիւններից։ Արծրունիների տոհմային թղթերի մէջ*) մենք հանդիպեցինք մի համառօտ տեղեկութեան, որ հաստատում է մեր ասածը։ Բանից դուրս է գալիս որ Պաչավեան չորս եղբայրները սպանուել էին և նրանց կալուածները, Գէորգ Արծրունու Ռուսաստան տեղափոխուելուց յետոյ, յարքունիս գրաւուեցան։ Այս դէպքը մասամբ պարզում է թէ ինչը հարկադրեց Գէորգին մի նոր հայրենիք որոնել։

Ասում ենք մասամբ է պարզում, որովհետև ինքը Գէորգը, «Դաքաստան Խրատուց»

---

*) Այդ թղթերի մի շատ աննշան մասն է մնացել. Գէորգ-աղայի թղթերը այրուել են 1855-ին նրա կարաւանսարայի հրդեհի ժամանակ։

*անունով իր գրքի մէջ, որ տպվեց Թիֆլիսում 1830 թվականին, ասում է թէ դեռ քան երկու տարեկան հասակից էր հասկացել որ այլազգիների մէջ ապրելու ճար չը կայ և բնակութեան տեղ էր որոնում։ Այդ փոքրիկ ոտանաւոր յիշատակարանի մէջ Գէորգ աղան միայն համառօտ ակնարկութիւններ է անում։ Հայրենիքում շատ փորձանքներ, նեղութիւններ է տեսել, այնտեղ անցքեր են անցել նրա գլխով։*

*Ինչպէս տեսնում էք, նոր հայրենիքը նա որոնեց ամբողջ քսան տարի, մինչև որ գտաւ Թիֆլիսը։ Ի հարկէ, չէ կարելի ասել թէ նա իր ճանապարհորդութիւնների միակ նպատակը տեղ որոնելն էր դարձրել։ Դեռ երիտասարդութեան օրերից զգալով թիւրքական տիրապետութեան ամբողջ ծանրութիւնը, նա մէկն էր բիւրաւոր դժգոհներից։ Ասիատական ճանապարհորդութիւնները միայն սաստկացնում էին նրա դժգոհութիւնը, մանաւանդ երբ Պարսկաստանից ու Թիւրքիայից յետոյ նա տեսնում էր եւրոպական աշխարհը, տեսնում էր թէ ինչ է խաղաղ զարգացումը, լուսաւորութիւնը։ Զքնաղ, բայց խաւար ու դժբախտ Վասպուրականից միանգամից հեռանալը հեշտ չէր նրա համար. հայրենիքի հետ կապում էին նրան ոչ միայն*

նախնիքների գերեզմանները, այլ և խոշոր տնտեսական շահեր։ Եւ դժգոհութիւնը քսան տարիների ընթացքում այնքան կուտվեց նրա մէջ, որ նա վերջ ի վերջոյ հեռացաւ Վանից։

Ոչ ոքի համար չէ կարող անխորհուրդ համարվել այն հանգամանքը, որ Գրիգոր Արծրունին, «Մշակ»-ի խմբագիրը, Վանում ծնված մի հայի որդին էր։ Գրիգոր Արծրունու ամենախոշոր ծառայութիւններից մէկն էլ այն էր, որ նա մօտեցրեց ռուսահայերին և Թիւրքահայերին և իր հզօր գրչով երկար ժամանակ արծարծում էր Թիւրքահայերի դատը։ Այստեղ նա երևան է գալիս իբրև վանեցու նոր սերունդ, իբրև այն ժողովրդի զաւակ, որ դարերով կրել է իր ուսերի վրա Թիւրքական ռէժիմը։ Նրա մէջ խօսում էին նրա պապերն ու նախահայրերը։ Եւ այդ պատճառով կարևոր է այստեղ գոնէ Թռուցիկ կերպով ներկայացնել Վանի իրականութիւնը այն ժամանակ, երբ նրա պապը, մի չափահաս դժգոհ, և հայրը, ինն տարեկան երեխայ, հեռանում էին այնտեղից մի լաւագոյն հայրենիքի յոյսով։ Պէտք է իմանալ թէ ինչ ժառանգութիւն կարող էր աւանդել Վանի հին սերունդը նոր սերնդին։

Վան քաղաքը և նրա շրջակայ գաւառները պատկանում էին քրդերին. Վանում նրա-

տում էր քուրդ փաշա, իսկ շրջակայքում իշխում էին քուրդ բէյեր, որոնք հպատակվում էին այդ փաշային *)։ Վասպուրականն էլ ուրեմն մի կտոր էր քրդական այն ընդարձակ թագաւորութիւնից, որ շատ տեղերի հետ տարածվում էր և Բաղէշի ու Մուշի վրա և որ շարունակ քարուքանդ էր անում այդ երկիրները։ Քրդական թագաւորութիւն—դա պաշտօնական անուն չէր այն ժամանակներում. պաշտօնական անուններն էին Վանի փաշայութիւն, Բաղէշի խանութիւն, որոնք Օսմանեան պետութեան մի մասն էին կազմում։ Բայց դա թագաւորութիւն էր, այն էլ քրդական, իբրև իրականութիւն։ Իսկ թէ ինչպէս էին թագաւորում քրդերը, կարելի է իմանալ հէնց նրանից, որ Բաղէշի 25000 տուն ժողովրդից մի կարճ միջոցում մնացին 5000 տներ։ Եւ այստեղ շատ էլ զարմանալու բան չը կայ. այդ դժբախտ երկրում ապրած Յովհաննէս Կոլոտ պատրիարքը գրում է թէ քրդերը «ծծում էին մեր արիւնը, գիշատում էին մեզ, փախցնում էին ծըմակները ու ժայռերի ծերպերը և այդտեղ մաշում էին մեր կեանքը» **)։

*) Ինճիճեան—«Աշխարհագրութիւն», հատոր Ա., Վենետիկ, 1806, եր. 136։

**) Տ. իմ «Հայկական Տպագրութիւն», հատոր II, 144.

Վանի մէջ ապրում էին 15 հազար տուն մարդիկ. դրանցից միայն 2000 տունն էր հայ։ Թիւրք ժողովուրդը համարեա ամբողջովին զինուորական դասակարգ էր կազմում և կոչվում էր ղուլ։ Այդ ղուլերի ապրուստի համար սահմանված էր առանձին հարկ, որ տալիս էին բացառապէս թէ Վանի և թէ շրջականների հայերը, այսինքն ազգաբնակութեան այն մասը, որ զէնքի հետ գործ չունէր և դրա փոխարէն վարող ու հերկող էր, արհեստաւոր էր։ Այդ փոքրիկ, իրաւազուրկ մասը այդպիսով հարկատու էր մեծ մասին։ Մի երկրում, ուր օրէնքի, կարգի, իշխանութեան ներկայացուցիչները վայրենի քըրդերն էին, յայտնի է թէ ինչ կը լինէին տիրող զինուորականների յարաբերութիւնները դէպի իրանց հարկատուները։

Բայց Վանի իրականութիւնը այդ չէր միայն. բացի այլ և այլ հարկերից, փաշան առնում էր իր համար առանձին տեսակի հարկեր, որոնք կոչվում էին ի մ դ ա դ ի է և ա յ լ ը գ։ Ահա դրանց տակ էր ծռվում ժողովրդի վիզը։ Փաշան առնում էր երբ և ինչպէս կամենում էր. ստանում էր ամբողջ տարվանը մի անգամից, մի երկու ամսից յետոյ յետագայ տարվանը, դարձեալ մի քանի ամսից յետոյ միւս տարվանը, և այսպէս շա-

բռնակ։ Հարկահանությունների ժամանակ գործադրվող բռնությունները նկարագրելու կարիք չը կայ. ժողովուրդը և գլխաւորապէս, ի հարկէ, քրիստոնեայ ժողովուրդը անխնայ կեղեքվում էր. սահմանված կարգը, նոյն իսկ Թիւրքիայի պէս մի երկրում սահմանված կարգը, ոտնակոխ էր անվում, մեծամեծ տառապանքներ պատճառելով ժողովրդին։

Կային դրանից դուրս և այլ տանջանքներ։ Թիւրք ազգաբնակութիւնը, այսինքն զինուորները, ղուլերը, Վանում և Վանից դուրս տիրող քուրդ իշխանաւորները մշտական կռիւների, արիւնահեղ ընդհարումների դիւրավառ նիւթեր էին ներկայացնում և այդ տեղերում տիրում էր մշտական պատերազմական դրութիւն։ Ուժեղը յաղթահարում էր թոյլին, քրիստոնեայ ժողովուրդը չը գիտէր թէ իշխանութեան, տիրապետութեան համար կռւողներից որին պէտք է հնազանդվել։ Այդ դրութիւնը բաւական պարզ պատկերացնում է այն համառօտ տարեգրութիւնը, որ տպված է Սրուանձտեանի «Մանանայ» գրքի մէջ *)։ Դա Վան քաղաքի մարտիրոսագրութիւնն է, որի հասարակ, անարուեստ ոճը իրականութեան հարազատ

*) Եր. 340—398։

***պատկերացման ամենալաւ նշանը պէտք է համարել։ Պատմութիւնը մանրամասնաբար արձանագրում է մի ամբողջ դարի անցքերը, XVII դարի վերջից մինչև VXIII-ի վերջը։ Նրա մէջ բազմաթիւ էջեր նկարագրում են հարստահարութիւններ, կեղեքումներ, աւերանք և կոտորած, կանանց և աղջիկների առևանգում։ Դրանք գաւառական պատմութեան արիւնոտ էջեր են և սովորաբար չեն մտնում ընդհանուր պատմութեան մէջ, որովհետև շատ են մասնաւոր, շատ են առօրեայ, սովորական։ Բաց անենք այդ էջերից մէկը պատահաբար։ Ահա Վանի նշանաւոր կառավարիչներից մէկը, Թամուր փաշան։***

Ի ՌՃՁԲ (1733) *գնաց ի վերայ Սալմաստու Մայիս ամսոյն, եւ կողոպտեաց զնա,—ասում է տարեգրութիւնը.—էառ զԱխբակ,* 3—400 *մարդ սուր քաշեց եւ դարձեալ եկն ի Վան. ի մ դ ա դ ի ս ա ֆ ա ր ի ա (իրան յատկացրած հարկ) ժողովեաց քան զԿ.* (60) *քիսայ աւելի, ի Մայիսի Ի. ել եւ գնաց ի վերայ Թաւրիզոյ եւ էառ։*

Ի *սոյն թիւ եկն ազգ մի Թաթար, որ մարդակեր էին, գնացին ի Թավրիզ առ Թամուր փաշայն եւ փաշայն ի զնջիլ եղած դուղսաղներաց (քանտարկեալներ) օր* 15 *մարդ Թային տար նոցա, որք մորթէին եւ ուտէին։* Ի *սոյն ամի դարձաւ Թամուր փաշայն ի Թավրիզոյ եւ եկն ի Սալմաստ. իսկ Վանայ ղուլն... եւ այլ մեծամեծ աղայք խորհուրդ*

արարին Թէ փաշայն ոչ Թողումք որ ի քաղաքս մըտանէ. եւ Վանայ Մուսայիմ-Ալի աղայն իմացաւ, մարդ յղեաց առ փաշայն ի Սալմաստ. եւ նա մէկ օր Սալմաստու եկն ի Խօշաբ իսկ Վանայ Հայք եւ Տաճիկք ի յամէն դողային. եւ դիմեալ ի քաղաքն՝ նորա շինած դարաղաջներ ու չանգալներ ջարդեցին. փաշան երեք օր նստաւ ի Խօշաբ Թէ գան ի դէմն, սակայն ոչ գնացին, այլ դարգահններ գործեցին եւ Թուանքչիք ի բաղան լցին. փաշայն իմացաւ որ կռուել կամին, ի Խօշբայ եկն ի Ղուրաշ գիւղն, եւ դուրս եղած ամէն քրիստոնեայ ռայէն գնացին ի մօտն. երկնչէին Թէ Թալանէ ղինքեանս. եւ նա յուսադրեաց զնոսա ասելով Թէ՝ Մի երկնչիք, երԹայք, նստարուք միամիտ ի ձեր տեղին։

*Փաշան առանց պատերազմի մտնում է բերդը, կախել է տալիս ենիչարների գլխաւորին, բայց ինքն էլ կանչվում է Կարս, ուր Անատոլուս փաշան կտրել է տալիս նրա գըլուխը։*

Թիւ ՌՄԳ (1754). Ղարսցի կոյր Ուսուֆ փաշէն հետ ղուլին կռուան, մտուցին սարայն, էլան Մաչիթ, բռնեցին Թուանքի յառաջ. յղեաց Խօշաբայ մարդ բեր, էլան դէմ չԹողին, գիշերով գաղտ դըռնէն ելեալ փախաւ։

Թիւ ՌՄԴ (1755) Մարտի Ա. եկն... Նըրբավանց գիւղ նստաւ, քաղաք գալ չԹողին. Իսա աղէն ասքար էառ գնաց դէմ, շատ մարդիկ մեռան, գիւղացիք ամեն փախեան, ցանքեր կերցուցին, յետոյ Եէնգիչար աղասին եէնգիչարեօք, Ղազեօք ա-

ոին Իսա աղէն տարին մօտ փաշային. Մարմետ գիւղ ետ աղային, ինքն մանգուլ եղեւ, գնաց։

Թիւ ՌՄԺԸ (1769) Դեկտեմ. ամսոյն, յետ մեռանելոյ Խալիլ աղային՝ Թամուր աղայն կամէր լինել սօլ աղասի (դուլերի գլխաւոր), ոչ ետուն. վասըն որոյ մեծ խռովութիւն եղեւ ի մէջ նոցա... Ցաւուր միոջ վատահացեալ հարին փչտօյով զկոր (կոյր) մուֆթին, որ Գասըմ աֆանդի ասէին, եւ սպանին. մեծ ոմն էր. ապա սկսան կռուել ռամազանն (ամիս) մինչ ի գլուխ. շուկայք դատարկեցին եւ բոլոր փակեցին ի յահէ Թալանելոյ. եւ մարդ ոչ կարէր ելանել ի տանէ յահէ զուլուլայիցն (գընդակ), որ այնչափ հարկանէին միմեանց, եւս առաւել գիշերն. յետ Մազըրբին, քանիցս անգամ երիշ արարին (յարձակվեցան) ի վերայ միմեանց, եւ ողջ ռամազանին մինչ ի բայրամն կռիւ արարին, մինչեւ խաբար առին Թէ Գամաթ Հուսէն փաշան գալոց է տեղս։

*Այդ փաշան գալիս է, կռւով ու Թնդանօթներով վերջ է տալիս Վանի խռովութիւններին։*

ՌՄԻԸ (1779) Դեկտեմբեր. Այս Թամուր փաշայս՝ Մխիթարենց Բաքանիկն Աքով, որ գիշեր կոր Գազկէ աղջկայ տուն բռնեցին եօԹն անուանի կնիկ ետ դնել ի նաւ քշել, որ են այսորիկ. կոր Գազկէ աղջիկ, քուլիանչու Եղիսէն, ԽանԹուման, Քաչալ աղջիկ, Օտաբաշու կնիկ, Ղազանչու կնիկ, Նորշինցու կնիկ, պղծեալք։

*Ահա այսպիսի աշխարհի ծնունդ էր Գէ-*

որդ Արծրունին, այսպիսի իրականութիւնն էր, որ հարկադրեց նրան հեռանալ Վանից։

Հարուստ, ազնուական վաճառականի համար ամենից շատ գրաւիչ պիտի լինէր Թիֆլիսը մի քանի պատճառներով։ Նախ Ռուսաստանի համբաւը, հայերի այն ընդհանուր յոյսը թէ Անդրկովկաս մտնելուց յետոյ ռուսները պիտի ազատեն Հայաստանը մահմեդական լուծից։ Գէորգ Արծրունին այնպիսի հայ չէր, որի համար նշանակութիւն չունենար ազգութիւնը. ինչպէս կը տեսնենք, դա դէպի իր ազգը բարի ցանկութիւններով լցված մի մարդ էր։ Այդպիսի մարդու համար գրաւիչ պիտի լինէր հայ ժողովրդի մէջ ապրելը։ Թիֆլիսը հայութեան կենտրոնն էր, որ վայելում էր ռուս կառավարութեան բարի ուշադրութիւնը։ Գէորգ Արծրունին, իբրև վաճառական, չէր կարող չը նկատել, որ Թիֆլիսում հայերը շատ. ազդեցիկ դիրք ունեն և ամբողջ առևտուրը նրանց ձեռքին է։ Ռուսաց կառավարութիւնն էլ ընդունում էր որ այդպէս է և աշխատում էր ամեն կերպ խրախուսել այդ վաճառականներին։ Ահա ինչ էր գրում Ալէքսանդր I կայսրը իշխան Ցիցիանովին.

«Հայերը, իբրև մի արդիւնագործ ժողովուրդ, որ իր ձեռքերում ունի Ասիայի այս

մասի ամբողջ առևտուրը, արժանի են ձեր առանձին ուշադրութեան և պաշտպանութեան, որովհետև, նկատի առնելով որ նրանց նեղում են Պարսկաստանում, կասկած չէ



Գէորգ-աղա Արծրունի

կարող լինել որ այդ ժողովրդի բազմութիւնը կը հաստատվի Վրաստանում, հէնց որ նրանք իրանց ապահովված կը համարեն կա-

ռավարութեան բաւականաչափ բարեկարգութեամբ» *)։

Այս հանգամանքին մեծ կարեւորութիւն էին տալիս ռուսները Անդրկովկասում նոր հաստատվելու ժամանակը։ Երկիրը չէնացնելու համար հարկաւոր էին արդիւնագործութեան, առեւտրի մարդիկ։ Եւ այդ պատճառով ռուսները ոչ միայն հովանաւորում էին տեղացի հայերին, այլ և աշխատում էին դրսից էլ, Պարսկաստանից ու Թիւրքիայից, գրաւել հարուստ, վաճառական հայերին։ Այդ է պատճառը որ կառավարչապետ Րտիշչեվ այնքան լաւ ընդունելութիւն ցոյց տուեց Գէորգ Արծրունուն։ Այդպիսի մի հարուստ հայը մի կատարեալ գիւտ էր Թիֆլիսի համար, որ անկերպարան դրութեան մէջ էր, չունէր լաւ շինութիւններ, աչքի ընկնող առեւտուր։

Թիֆլիսում հաստատվելուց յետոյ Գէորգ-աղայի առաջին գործը եղաւ իր ազնուական ծագումը վաւերացնել տալը։ 1814 թուականին նա ներկայացրեց իր ձեռքով կազմած տոհմագրութիւնը գեներալ Րտիշչեվին։ Այդտեղ դրված էր Երան-Արծրունիների ճիւղագրութիւնը, որ սկսվում է 1530 թւից։ Երան-Արծունիները, նայած այդ թղթին, ծա-

*) Акты Кав. Археогр. Ком., т. II.

դում են Արծրունի Թագաւորների տոհմից։ Տոհմագրութիւնը, սակայն, չէր վաւերացրած հին դօկումենտներով. Նրա ճշտութեան միակ վկաները Վանի պատուաւոր հայերն էին, նոյնպէս և Էջմիածնի Եփրեմ կաթողիկոսը և մի քանի եպիսկոպոսները։ Հասկանալի է որ այդ վկաները կարող էին կրկնել միայն այն, ինչ տեղական աւանդութիւններն էին ասում, իսկ աւանդութիւնները դեռ բաւական չէին մի այդպիսի նշանաւոր ծագումը անկասկածելի դարձնելու համար։

Այդպէս էլ նայեց գործին ռուսաց կառավարութիւնը։ Նա չը տուեց Գէորգ Արծրունուն իշխանական տիտղոս, հիմնվելով այն հանգամանքի վրա, որ իշխանական ծագումը կարելի է ապացուցանել միայն թագակիր անձերի տուած վկայականներով։ Էջմիածնի վկայութիւններն էլ մի առանձին նշանակութիւն չունեցան և չէին կարող ունենալ, քանի որ կառավարութիւնը նկատել էր որ այդ տեսակ վկայութիւններ տրվում են ամեն մէկին, որ ուզում էր իր ազնուական ծագումը ապացուցանել, այնպէս որ վերջ ի վերջոյ հրամանագրվեց չընդունել հայոց հոգևոր կառավարութեան վկայականները այդպիսի գործերում, իսկ Թիֆլիսի առաջնորդ Ներսէս եպիսկոպոս Աշտարակեցին մի խիստ նա-

մակ գրեց Էջմիածին, պահանջելով դադարեցնել այդ տեսակ անհիմն վկայականներ տալը։

Չը նայած իր խնդրագրի մերժման, Գէորգ Արծրունին չարունակում էր իրան իշխան անուանել. 1818 թուականին գրված մի կալուածագրի մէջ նա անուանված է «Վանից գաղթած հայոց իշխան»։ Երբ գեներալ Րտիշչևի տեղ Վրաստանի կառավարչապետ նշանակվեց յայտնի գեներալ Երմոլովը, Արծրունին նորից սկսեց խնդրել որ ճանաչվի իր ազնուականութիւնը։ Թիֆլիսի բարեկարգութեան համար այնքան ջանքեր արած Երմոլովը անտես չարաւ հարուստ հայի խնդիրքը. գնահատելով Արծրունու գործունէութիւնը, նա փորձեց դրական լուծում տալ այն հարցին, որ մի անգամ արդէն մերժվել էր նրա նախորդի օրով։ Ալէքսանդր կայսերին ուղարկած իր զեկուցման մէջ Երմոլովը նոր պատճառաբանութիւններ էր բերում ապացուցանելու համար որ Արծրունուն կարելի է ընդունել ազնուականների շարքում։ Նա ասում էր թէ Արծրունիների իշխանական ծագումը ապացուցանող դոկումենտներ չէին էլ կարող մնալ, քանի որ, ինչպէս յայտնի է, Հայաստանը ենթարկվել է բազմաթիւ յեղափոխութիւնների և աւերանքների։

«Օսմանեան պետութեան մէջ—գրում էր Երմոլօվը—ամենեւին չը կայ սովորութիւն շնորհել ում և իցէ ազնուականութեան դըրուագներ և հրովարտակներ։ Սակայն կասկած չը կայ թէ Հայաստանում, որ այժմ թիւրքաց տիրապետութեան տակ է գտնվում, կարող են լինել տիրող և ուրիշ՝ հնումը երևելի եղած ցեղերի պայազատներ, որոնց հաշւում հաւանական է կարծել և Արծրունուն։ Սա աւելի ևս հաստատվում է Նրանով, որ Նա թողել է հայրենիքում իր սեփական գիւղերը և եկամուտները, Վանի բերդի մի մասով հանդերձ, որ շնորհել է օսմանեան կառավարութիւնը Նրա ցեղին ժառանգաբար, երևի, որպէս հաւանական է ենթադրել, այն պատճառով, որ Նրա Նախնիքներն են եղել բերդի շինողներն ու տէրերը»։

Գէորգ Արծրունին Երմոլօվին տուած իր խնդրագրի մէջ ասել էր թէ «զոհելով հայրենի աշխարհը և իր բոլոր անշարժ կալուածները և յուսալով խաղաղ կեանք վայելել Նորին կայսերական մեծութեան արդարադատ օրէնքների տակ, Նա մնում է այժմ անարգված, որովհետև հաւասարեցրված է ստորին դասի մարդկանց հետ»։ Համաձայն լինելով որ այս այսպէս է, Երմոլօվը խնդրում էր նըկատի առնել Գէորգ Արծրունու արած ծա-

ռայութիւնները Թիֆլիսի բարեզարդութեան համար և չնորհել նրա տոհմին ազնուականութիւն։ Երմօլօվը չէշտում էր մանաւանդ այն, որ Գէորգ Արծրունուն պատուելն ու խրախուսելը կը դառնայ Թիւրքիայում և այլ տեղերում ապրող նրա հարուստ հայրենակիցներին դէպի Կովկաս գրաւելու մի լաւ միջոց։ Եւ նա բերում էր այսպիսի մի դէպք. «1818 թուականին, երբ ես բացակայ էի Վըրաստանից, եկան այստեղ Կ. Պօլսից երկու անձինք, որպէս երեսփոխաններ այնտեղի մի քանի ամենահարուստ հայ ընտանիքների, որպէսզի տեղեկանան թէ կարելի՞ է արդեօք գաղթել Վրաստան և ինչ օգուտ կարող են ունենալ գաղթելով այստեղ։ Սակայն տեսնելով իրանց հայրենակցի, նոյն այս Արծրունու, օրինակը և յայտնի չը լինելը թէ ինչ արտօնութիւններ կարող են ունենալ նրանք այստեղ, փոխեցին իրանց մտադրութիւնը և յետ գնացին, ոչինչ առաջարկութիւն անգամ չանելով մեր կառավարութեան» *)։

Այս թուղթը Երմօլօվը գրեց 1820 թուա-

*) Ա. Երիցեան—«Գրիգոր Արծրունու և նրա 25 տարվայ գրական գործունէութեան առիթով», Թիֆլիս, 1890, եր. 16—18։ Այս գրքոյկից մենք շատ քաղուածքներ ենք անում այստեղ։

կանին: Պատճառաբանությունները հիմնավոր էին և Ալեքսանդրը նույն տարվայ սեպտեմբերի 8-ին Վարշավայից հրամանագրեց Կառավարիչ Սենատին ընդունել Գէորգ Արծրունուն ժառանգական ազնվականության մէջ և տալ այս մասին հրովարտակ։

Անկարող լինելով ստուգել և ասել թէ որքան ճիշտ էր որ Երան-Արծրունիները հին հայոց իշխանական տոհմից էին սերված, մենք միայն այն պիտի ասենք, որ Գէորգ Արծրունին Թիֆլիս մտնելու օրից ապրում էր իբրև արևելեան մի բէկ կամ աղա։ Փողոցում նրա ետևից միշտ գնում էին երկու վանեցի ծառաներ, իսկ երբ ձի հեծած էր փողոց դուրս գալիս, այդ ծառաներից մէկը ձիու աջ կողմից էր գնում, միւսը ձախ կողմից. մի երրորդ ծառայ էլ առջևից էր գնում՝ բռնած ձիու գլուխը, որ զարդարված էր թանգագին պաճուճանքներով։ Փողոցով անցնելիս՝ ամենքը ոտքի էին կանգնում և ձեռքները գլխին դրբած գլուխ էին տալիս. իսկ Գէորգ աղան պատասխանում էր ձեռքը ճակատին դնելով և թիւրքական կերպով «սալամ» տալով։ Միևնոյն ժամանակ դա մի սակաւախօս, բայց խոր մտածող, հասկացող մարդ էր։ Կախարդող ազդեցութիւն էր անում Թիֆլիսեցիների վրա մանաւանդ նրա հարստութեան համ-

բաւը։ Համոզմունք էր կազմվել որ Գէորգ աղան անհուն քանակութեամբ ոսկիներ է բերել Թիւրքիայից։ Իսկ թէ որքան մեծ նշանակութիւն ունէր այդպիսի հարստութիւնը մանաւանդ այն ժամանակվայ Թիֆլիսում, երևում է այն ընդունելութիւնից, որ գտաւ Արծրունին Ռտիշչևվի և Երմօլօվի մօտ։ Ռուսաց կառավարութեան այդ երկու բարձր ներկայացուցիչները Անդրկովկասում՝ հաւատացած էին որ Գէորգ աղայի հարստութիւնը մեծ օգուտներ պիտի տայ Թիֆլիսին և այդ պատճառով էլ յայտնում էին բարձրագոյն կառավարութեան թէ նա ծառայութիւններ է մատուցել և պիտի մատուցանէ, ուստի արժանի է խրախոյսների։

Եւ իրաւ, Գէորգ Արծրունին մատուցել էր իր ազգին և Նոր հայրենիքին աչքի ընկնող ծառայութիւններ։

Հետևելով ժամանակագրական կարգին, մենք ամենից առաջ պիտի յիշատակենք նրա ճանապարհորդութիւնը Եւրօպայում 1817 թուականին։ Տեղափոխվելով Թիֆլիս, Արծրունին մտերմացաւ հայոց առաջնորդ Ներսէս Աշտարակեցու հետ։ Յայտնի է թէ այդ ժամանակ ինչ մեծ մտքերի վրա էր հայրենասէր Ներսէսը։ Նրա տենչանքներից ամենագլխաւորն էր բաց անել Թիֆլիսում մի

մեծ բարեկարգ դպրոց հայ երեխաների համար։ Այդ դպրոցի հետ Նա կապում էր լայն ու գեղեցիկ ծրագիրներ. ուզում էր իր դըպրոցի շուրջը կենտրօնացնել գրական գործունէութիւն, ուզում էր ազգը լուսաւորել գըրքեր հրատարակելով։ Սակայն Նրա վառ ոգևորութիւնը, անսպառ եռանդը զարնվում էին հայ ազգի վրա ընկած և Նրան անողորմ կերպով ճնշող բարձր ու հին ժայռերին—տգիտութեան, անհասկացողութեան, Նախապաշարմունքներին։ Ներսէսը կարօտ էր Նիւթական միջոցների, իսկ Թիֆլիսի հայերը սկըզբում մի սառն անտարբերութեամբ, Նոյն իսկ թշնամութեամբ էին վերաբերվում Նրան։

Այդպէս չէր Արծրունին։ Ներսէսի մէջ Նա գտաւ իր սրտին ու հոգուն շատ մօտիկ յատկութիւններ։ Նա ինքն էլ մի շատ գրասէր մարդ էր. երիտասարդ հասակում, դեռ չամուսնացած, Նա երազում էր Վանի ծովակի Աղթամար կղզին դարձնել ս. Ղազարի կղզու Նման մի բան, այսինքն բաց անել այնտեղ տպարան, հիմնել մի ուսումնական միաբանութիւն։ Հօր առևտրական գործերը թոյլ չը տուին իրագործել այդ միտքը։ Այժմ, տեսնելով Ներսէսին Նուիրված այդ տեսակ կրթական և գրական գաղափարների, Նա անկեղծ սիրով և համակրութեամբ կապվեց

նրա հետ և մինչև իր կեանքի վերջը Ներսէսի կողմնակից և աջակից մնաց։

Քաղաքակրթված երկրներում կատարած ճանապարհորդութիւնը մի անգամ էլ ցոյց տուեց Գէորգ Արծրունուն լուսաւորութեան և ազատութեան մէջ եղած ահագին տարբերութիւնը։ Նորից նա զգաց, ինչպէս ինքն է ասում, «մեր ազգի աղէտը, թէ որքան աղքատ ենք ուսման մէջ, միմեանց ատում ենք չար նախանձով, ուրիշներին հարազատ ենք, մերը ատող»։ Պարիզում Գէորգը ծանօթացաւ եղեռացի Յակոբ Շահան-Ջրպետի հետ, որ այդ ժամանակ բաւական յայտնի անուն ունէր իր հայագիտական աշխատութիւններով և իբրև հայերէնի ուսուցիչ Պարիզի արևելեան կենդանի լեզուների դպրոցի մէջ։ Շահան-Ջրպետը մի առանձին գիտնական հմտութիւն չունէր, բայց գոնէ այն արդիւնքը ցոյց տուեց, որ հայերէն լեզուի դասատուութիւնը մտցրեց Ֆրանսիայի մայրաքաղաքում և ունեցաւ մի քանի հատ աշակերտներ, որոնցից մէկը նշանաւոր հանդիսացաւ իբրև հայագէտ։ Այդ գիտնական հայի հետ Գէորգ Արծրունին բարեկամացաւ և վերջը պատճառ դարձաւ որ Ներսէսը բերել տայ նրան Թիֆլիս՝ Ներսիսեան դպրոցի համար։

Շահան-Ջրպետից նա իմացաւ որ Ամբր-

տերդամ քաղաքում գոյութիւն ունի մի հին հայերէն տպարան, որ փակված է։ Նա յիշեց իր երիտասարդական տարիների մտադրութիւնը, յիշեց որ իր բարեկամ Ներսէսը շատ է ուզում տպարան բաց անել Թիֆլիսում և վճռեց գնել Ամստերդամի տպարանը, նուիրել Ներսէսի դպրոցին։

Դա մի նշանաւոր նուէր էր, եթէ ի նկատի ունենանք այն ժամանակվայ հանգամանքները։ Տպարան ձեռք բերելը այժմ է հեշտացել, իսկ մի 80—100 տարի առաջ դա մի կատարեալ մեծագործութիւն էր։ Հայերէն տպագրութեան պատմութիւնը ցոյց է տալիս թէ ինչ մեծամեծ տանջանքներ են կրել այն հայերը, որոնք Եւրոպայի զանազան կողմերում մամուլ էին կանգնեցնում՝ հայերէն գրքեր տպագրելու համար։ Ամենամեծ դժուարութիւնը, որ շատ անգամ վհատեցնում էր հայկական տպագրութեան հերոսներին, այն էր, որ օտար աշխարհներում հեշտ չէր կարելի գտնել այնպիսի վարպետներ, որոնք կարողանային հայերէն ճաշակաւոր տառեր փորագրել։ Եւ կանոնաւոր ու գեղեցիկ տառեր ձեռք բերելը մի կատարեալ գիւտ էր այն ժամանակներում։ Այդպիսի մի գիւտ էր և այն հայերէն տպարանը, որ

գտնվում էր Ամստերդամում և որը գնել էր ուզում Գէորգ Արծրունին։

Ամստերդամը, Վենետիկից յետոյ, հայկական տպագրութեան առաջին ամենահարուստ հայրենիքն էր։ Այստեղ էր որ հռչակաւոր Ոսկան վարդապետ Երևանցին բաց արաւ տպարան. այստեղ էր որ Թովմա եպիսկոպոս Վանանդեցին հիմնեց իր ոչ-պակաս հռչակաւոր տպարանը։ Սովորութիւն է դարձել կրկնել թէ Գէորգ Արծրունու գնածը հէնց այդ Ոսկանի և Վանանդեցու տպարանն էր*)։ Բայց դա կատարելապէս սխալ է։ Ոսկանի տպարանը վաղուց էր տարվել Լիվօրնօ, Մարսէյլ, Կ. Պօլիս, և Ամստերդամում նրանից ոչինչ չէր մնացել. իսկ Վանանդեցու տպարանը գնել էր Մխիթար Աբբան և փոխադրել էր Ս. Ղազարի կղզին։ Գէորգ Արծրունու գնած տպարանը ունէր իր առանձին պատմութիւնը։

1755 թւի դեկտեմբերի 16-ին Առաքել Պօղոսեան անունով մի հայ Ամստերդամում պայման կապեց Միքայէլ Ֆլէյշման անունով յայտնի փորագրիչի հետ այն մասին, որ վերջինս յանձն է առնում պատրաստել հայե-

*) Երիցեան՝ Ներսիսեան դպրոցի պատմութեան և «Գրիգոր Արծրունի» բրօշիւրի մէջ։

րէն տառերի 500 հայրեր և մայրեր, իւրաքանչիւրը երեք ֆլօրինով։ Ֆլէյշման աշխատում էր ինչեղէ նշանաւոր ձուլարանական և տպարանական ֆիրմայի արհեստանոցում*)։ Նա 1756—1757 թուականների ընթացքում պատրաստեց չորս տեսակ հայերէն տառեր և յանձնեց Առաքելին։ Տառերը չատ գեղեցիկ էին այն ժամանակվայ համար։ Ոսկանի և Վանանդեցու տառերը միևնոյն տեսակի էին, իսկ Ֆլէյշմանի պատրաստածները արդէն նոր ձև էին ներկայացնում։

Առաքել Պօղոսեանը, որքան յայտնի է, գրքեր չը տպագրեց, նրա պատրաստել տուած տառերը մնացին առանց գործադրութեան։ Երբ Սիմէօն կաթողիկոսը վճռեց տպարան հաստատել Էջմիածնում, նա գրեց Ամստերդամի հայոց եկեղեցու տեսուչ Յովհաննէս վարդապետին որ Առաքելի տառերը ուղարկվեն Էջմիածին։ Բայց Առաքելը չը տուեց տա-

*) Մեր ձեռքում գտնվում են Ենչեդէի ձուլարանի նմուշները, որոնք տպագրված են 1768 թուականին։ Այդտեղ կան Առաքելի հայերէն տառերի նմուշներն էլ (Ց. «Պատմութիւն Հայկական Տպագրութեան», Վենետիկ, 1895, եր. 179) և մենք տեսնում ենք որ դրանք հէնց այն տառերն են, որ գնել է Արծրունին։ Մինչև օրս էլ Արծրունիների տնային կալքի մէջ գտնվում է Ֆլէյշմանի ձեռքով փորագրած հայրերի մի մասը։

ռերը և Սիմէօն կաթողիկոսը ստիպված եղաւ ուրիշ կերպով տառեր ձեռք բերել իր տպարանի համար։ Թէ ինչ եղաւ այնուհետև Առաքելը, չը գիտենք։ Գիտենք միայն որ նրա տառերից կազմվեց Խալդարեանի տպարանը Պետերբուրգում, որ յետոյ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի ձեռքով փոխադրվեց Նոր-Նախիջևան և Աստրախան։

Ահա այդ Առաքելի տպարանն էր, որ գըտնվում էր Ամստերդամում և կնքված էր Նապոլէօն Բօնապարտի հրամանով, ինչպէս վկայում է Ներսիսեան դպրոցի տպարանում տպված Զամչեանի «Քերականութեան» յիշատակարանը։ Գէորգ Արծրունին գնեց այդ տպարանը թէ պատրաստի տառերով, թէ մայրերով և ձուլարանական պարագաներով և ուղարկեց Թիֆլիս, ուր տպարանը կազմ ու պատրաստ էր 1819 թւականին։ Դա մի մեծ նորութիւն էր Թիֆլիսի համար, ուր չը կար փոքր ի շատէ հարուստ տպարան։ Կովկասեան մայրաքաղաքում գործում էր միայն զինուորական շտաբի փոքրիկ մամուլը, այն էլ միայն պաշտօնական թղթեր տպելու համար։ Գէորգ Արծրունու բերած այդ նորութիւնը այնքան աչքի ընկնող էր, այնքան նկատելի, որ Երմօլօվը Ալէքսանդր I-ին գրած իր այն թղթի մէջ, որով խնդրում էր

ազնուականութիւն տալ Արծրունուն, յիշատակում էր, իբրև նրա մատուցած առանձին ծառայութիւն, «Հօլլանդիայում նշանաւոր գումարով առած ամենապատուական հայերէն տպարանը, որ այժմ ընծայեց այստեղ կառուցվող հայոց ուսումնարանին»։

Տպարանի գլխաւոր հարստութիւնը տառերն էին։ Ներսէսը գնեց մեծ մասամբ, աւելացրեց ռուսերէն և ֆրանսերէն տառերի մայրեր, բայց տպարանը միշտ մնաց Գէորգ Արծրունու անունով։ Մինչև 1860-ական թւականները Ներսիսեան դպրոցի տպարանը շատ նշանաւոր դեր կատարեց Թիֆլիսում. դա միակ հարուստ հայերէն տպարանն էր, ուր տպվում էին համարեա բացառապէս բոլոր հայերէն գրքերն ու պարբերական հրատարակութիւնները։ Բոլոր տպագրութիւններին վրա նշանակվում էր. «Ի Տպարանի Ուսումնարանի Հայոց ընծայեցելոյ յԱզնուական Գէորգայ Երեմեան Արծրունւոյ»։ Ներսէսը իր դպրոցի չափ սիրում և խնամում էր այս հիմնարկութիւնն էլ։ Հեռատես առաջնորդը սխալված չէր, նրա ակնկալութիւնները սկսեցին իրագործվել, տպարանը բացվելուց յետոյ Թիֆլիսն էլ իր անունը մտցրեց մեր գրականութեան պատմութեան մէջ, կարծես Ներսէսը զգում էր որ Կովկասի մայրաքաղա-

քը պիտի դառնայ ռուսահայերի գրական գործունէութեան ամենագլխաւոր կենտրոնը։

1824 թուականին բացվեց Ներսիսեան դպրոցը։ Հիմնադիրը երկար աշխատել էր անդադար, շինութիւններ էր կառուցել իր այդ կրթական հաստատութիւնը նիւթապէս ապահովելու համար։ Բայց դրանով ամեն ինչ չէր վերջացել. նոր բացված դպրոցը պահանջում էր մեծամեծ ջանքեր՝ մի կանոնաւոր, բարեկարգ, իր կոչման բարձրութեան վրա կանգնած հիմնարկութիւն դառնալու համար։ Ներսէսը կրկնապատկում է իր եռանդը. ուսուցիչներ է հրաւիրում, դասագրքերի, ներքին կարգ ու կանոնի մասին է հոգ տանում։ Նրա օգնականները, նրա բազուկները գըլխաւորապէս երկուսն են—դպրոցի տեսուչ Յարութիւն քահանայ Ալամդարեանը և Գէորգ աղա Արծրունին։

Արծրունու խորհրդով էր, որ ինչպէս ասացինք, Ներսէսը Պարիզից հրաւիրեց Շահան-Ջրպետին Թիֆլիս։ Պարիզից վերադառնալուց յետոյ Գէորգ աղան մեծ գովասանքներով էր խօսում այդ մարդու մասին, նկարագրելով նրան որպէս մի յայտնի գիտնականի։ Ներսէսը հաւատաց. նամակագրութիւն սկսվեց նրա և Ջրպետի մէջ։ Ներսիսեան դպրոցի բացվելուց յետոյ, երբ պատրաստված, գի-

տուն ուսուցիչների այնքան մեծ պակասութիւն էր զգացվում, Զրպետի Թիֆլիս գալը և դպրոցի դասատու դառնալը ինքն ըստ ինքեան մի վճռված հարց պիտի լինէր։ Ո՞վ պիտի աւելի յարմար ղեկավար դառնար դըպրոցում քան այդ մարդը, որ գիտնականի համբաւ էր վայելում Պարիզի պէս մի քաղաքում։ Նա մի կատարեալ գիւտ պիտի լինէր դպրոցի համար։ Ներսէսը ծախսեր չէ խնայում, հրաւիրում է Զրպետին. միայն ճանապարհածախս, Պարիզից Թիֆլիս գալու համար, Ներսէսը վճարեց 10,400 ֆրանկ։ Զըրպետը, մի 60 ամեայ ծերունի, Թիֆլիսում գեղեցիկ ընդունելութիւն գտաւ։ Բայց շուտով յայտնի դարձաւ որ զանգակի ձայնը հեռուից է լաւ գալիս և այդ գիտնականը այն չէր, ինչ կարծում էին։

Ներսէսը չը կարողացաւ Թիֆլիսում ականատես լինել իր հրաւիրած գիտնականի գործերին։ 1827 թւականին, երբ Զրպետը դեռ հիւանդ պառկած էր, սկսվեց ռուս-պարսկական պատերազմը։ Ցայտնի է թէ Ներսէսը ինչ մեծ դեր է կատարել նախընթաց պատերազմներում, ռուս զէնքի գործը հեշտացնելու համար։ Այս անգամ պատերազմական թեմը Արարատեան երկիրն էր, ուր ամենայն հայոց Մայր Աթոռը դեռ հեծում էր պարս-

կական իշխանութեան տակ։ Ներսէսը, հայ կամաւորների գունդ կազմելով, ճանապարհվեց պատերազմի դաշտը, դպրոցի կառավարութիւնը յանձնելով իր մտերիմներին—Ալամդարեանին, Արծրունուն և Յարութիւն Շերմազանեանին։ Սրանք ամենայն եռանդով շարունակեցին հոգատարութիւնը, այնպէս որ դպրոցը համարեա վնաս չէր կրում իր հիմնադրի բացակայութիւնից։ Կարգադրողը, ցուցմունքներ տուողը, ի հարկէ, էլի Ներսէսն էր. պատերազմի դաշտումն էլ նա բաւական ժամանակ էր գտնում իր դպրոցին նուիրվելու համար։ Ալամդարեանը և Արծրունին շարունակ նամակներ էին գրում նրան, տեղեկութիւններ էին տալիս և հրահանգներ խընդրում։ Արծրունու հոգածութեան գլխաւոր առարկան հիւանդ Ջրպեան էր։ Նա էր տալիս նրա ծախսերը, ամսական ռոճիկը։ Ներսէսը դեռ որոշ ռոճիկ չէր նշանակել, բայց ստանալով Արծրունու հաշիւներն ու տեղեկութիւնները, յանձնարարում էր նրան ծախսը խնայել հիւանդ ծերունուն խնամելու համար։ Սակայն Արծրունին շուտ համոզվեց որ այդքան խնամքի և ուշադրութեան արժանացած մարդը միայն ստանալ գիտէ, արդիւնք չէ ցոյց տալիս և շիտակ մարդ էլ չէ։

Պարսկական պատերազմը շուտ վերջա-

ցաւ. մի քանի ամսվայ ընթացքում ոչ միայն ամբողջ Արարատեան երկիրը անցաւ ռուսների ձեռքը, այլ և Թաւրիզը վերցրվեց։ Բայց Ներսէսը այդ պատերազմում ցոյց տուած իր մեծ ծառայութիւնների փոխարէն հալածանքի ենթարկվեց Պասկեվիչի կողմից։

Պատերազմի սկզբում գեներալ Պասկեվիչը Կովկաս էր ուղարկված՝ Երմոլովի հետ միասին գործելու։ Բայց փառասէր, նախանձոտ Պասկեվիչը տեղ հասնելուն պէս սկսեց ինտրիգներ լարել Երմոլովի դէմ և կարողացաւ տապալել նրան։ Այնուհետև պատերազմական յաղթութիւնները հերոսացրին նրան, փառքի հասցրին, բայց նա չը մոռացաւ իր քինախնդրութիւնը, և հալածանքները ուղղեց Երմոլովի բարեկամների դէմ, որոնց մի մի հեռացրեց Կովկասից։ Դրանց թւումն էր և Ներսէսը։ Պատերազմը վերջացաւ, Ներսէսը այլևս հարկաւոր չէր Պասկեվիչին և սա յայտնեց Պետերբուրգի կառավարութեան թէ Ներսէսը վստահելի անձնաւորութիւն չէ, թէ նրան Կովկասում պահելը աւելորդ է, վտանգաւոր։

Հերոսի այս ցանկութիւնն էլ անտես չարվեց Պետերբուրգում։ Երմոլովի պէս մի մարդուն Պասկեվիչի քմահաճութեանը զոհ բերելուց յետոյ առանձին մի դժուարութիւն չէր Ներսէսին զոհելը, թէև դա հայ հոգևո-

բականութեան ամենանշանաւոր, ազդեցիկ ներկայացուցիչն էր։ Եւ ահա Ներսէսը հրաման ստացաւ անմիջապէս գնալ Քիշինեվ և ստանձնել Բեսարաբիայի առաջնորդի պաշտօնը։ Դա մի պատուաւոր աքսոր էր։ Ներսէսի դէմ դժգոհութիւն ունեցողները—իսկ դրանց թիւը փոքր չէր—գլուխ բարձրացրին. տօնում էին իրանց յաղթանակը։

1828 թուականի ամառը Ներսէսը Թիֆլիսումն էր. այդտեղ միայն երկու ամիս կարողացաւ մնալ։ Նա դեռ չը գիտէր թէ պէտք է պաշտօնով մնայ Քիշինեվում, կարծում էր թէ շուտով գարձեալ պիտի վերադառնայ Թիֆլիս. ուստի բերանացի կարգադրութիւններ արաւ թեմական գործերի և իր դպրոցի մասին։ Վերջինիս տնտեսական կառավարութիւնը նա յանձնեց էլի Գէորգ Արծրունուն և Շերմազանեանին. իսկ Զրպետին նշանակեց տեսուչ և որովհետև սա չարունակ գանգատվում էր թէ Արծրունին չէ տալիս իր ամսական ռոճիկը, Ներսէսը խնդրեց Արծրունուն այնպէս վարվել Զրպետի հետ, որ սա գանգատներ չանէ։ Ուսումնարանի հոգսը ամենագլխաւորն էր. պէտք էր նրան պահպանել Ներսէսի բացակայութեան ժամանակ։ Իսկ թէ որքան եռանդով էր Արծրունին կըպած այդ գործին, ցոյց է տալիս նրա հե-

տեսալ գրութիւնը, որ ուղղված էր Ներսէսին.

Որովհետեւ Սրբազնութիւն Ձեր յետ միջոց ժամանակի հեռանալոց էք քաղաքէս, դիտումն ծառայիդ յայտնեմ վասն վարժարանի եւ տպարանին։ Սրբազնութիւն Ձեր թող որպէս եւ կամի օրինադրել, կանոնաւորէ զգործս եւ զկացութիւնս վարժապետաց եւ որոշէ զամենայն իրս կարեւորս, զի որպէս կախեալ կայ ի կամաց սրբոյ Տէրութեանդ։ Յետ ամենայնի՝ արժան. համարիմ բացայայտել եթէ կարելի եւ օգտակար համարես, ընտրեա՛ զերկուս կամ զերիս անձինս հայրենասէրս՝ որք լինիցին վէքիլ, այսինքն վերատեսուչ ամենայն գործոց վարժարանի եւ տպարանի՝ թէ եկամտից եւ թէ ծախսից եւ յայլ ամենայն իրս, զորս լինի օգտակար եւ պայծառացուցիչ վարժարանի եւ ազգի։

Ներսէսը, սակայն, բաւականացաւ իր բերանացի կարգադրութիւններով և չտապեց ճանապարհ ընկնել դէպի Ռուսաստան։ Բաւական էր Նրա հեռանալը, և Թիֆլիսում սկսեցին զանազան տեսակ լուրեր պտտել։ Ներսէսը աքսորված է, շուտով կաքսորվեն և Նրա բարեկամներն ու կողմնակիցները, որոնց անունները գաղտնի արձանագրված են ոստիկանութեան մէջ։ Ահա ինչ էին խօսում Թիֆլիսում. և սարսափը գնալով սաստկանում էր։ Դպրոցի ուսուցիչները երկիւղից հրաժարվեցին իրանց պաշտօններից. Արծ-

րունին և Շերմազանեանը ստիպված էին մի առ ժամանակ հեռանալ դպրոցից, որովհետև լուրեր էին տարածվել թէ Նրանց էլ շուտով պիտի սև կառքի մէջ Նստեցնեն և աքսորեն։ Դպրոցը փակվեց, 400-ի չափ աշակերտները արձակվեցան և ցրվեցին։

Քայքայվում էր Ներսէսի ձեռակերտը։ Բարեբախտաբար, շուտով յայտնի դարձաւ որ սարսափահար լուրերը սուտ են։ Ներսէսի սակաւաթիւ բարեկամները Նորից չունչ են քաշում և Նրանց առաջին գործն է լինում վերակենդանացնել սուտ լուրերի պատճառով փակված հիմնարկութիւնները—դպրոցը և տպարանը։ Նրանք դիմում են Գէորգ Արծրունուն և վերջինս մի ժողով է կազմում Ջրպետի մօտ։ Այդտեղ Արծրունին յանձն է առնում գործերի ղեկավարը դառնալ և առաջարկում է միաբան գործունէութեամբ խնամել երեսի վրա ընկած գործերը։ Երեք հանգամանք կային, որոնք, ինչպէս գրում էր Արծրունին Ներսէսին, հարկադրեցին Նրան առաջ անցնել և աշխատանք չը խնայել. առաջինը Ներսէսի պայծառ անունն էր, երկրորդը՝ աշակերտների ցրվելն էր և դպրոցի ու տպարանի փակվելը. իսկ երրորդն այն էր, որ Նա ինքն էլ երախտիք ունէր դպրոցի վրա։ «Այս պատճառով, ասում է Նա, ես չարժ-

վեցայ բարի նախանձից և դէպի իմ հայրենիքն ունեցած ջերմեռանդութիւնից, որ չէ թոյլ տալիս ինձ բարի, ազգօգուտ գործերի վերաբերմամբ անհոգացող լինել, որքան կենդանի եմ»։

Եւ իրաւ, Գէորգ Արծրունու եռանդուն գործունէութեան շնորհիւ Ներսիսեան դպրոցը նորից կենդանանում է։ Արծրունին իր վրա է վերցնում դպրոցի և տպարանի տընտեսական կառավարութիւնը և համաձայնվում է ամեն օր մի ժամ գնալ դպրոցը և վերահասու լինել գործերին։ Ալամդարեանը նորից ստանձնում է ուսումնական մասի կառավարութիւնը։ Եւ այսպիսով դպրոցը, մօտ 20 օր փակ մնալուց յետոյ, վերաբացվում է օգոստոսի 27-ին։ Արծրունու գործունէութեան մասին Ալամդարեանը այսպիսի վկայութիւն էր տալիս Ներսէսին գրած իր նամակում. «Աղա Գէորգ Արծրունին, այդ ազնուական մարդը, մի չը տեսնված ջերմեռանդութեամբ աշխատում է բարեկարգել ուսումնարանի ներքին և արտաքին կառավարութիւնը»։

Գոհ և բաւական էին ուսումնարանին և տպարանին նուիրված այդ մի բուռն մարդիկ։ Բայց խաղաղ ու համերաշխ գործունէութիւնը երկար չը տևեց. Ներսէսի թշնամիները քնած չէին։ Չը բաւականանալով որ

այդ անձնուէր գործիչը հեռացրված է Թիֆլիսից և Կովկասից, թշնամիները, որոնք բաղկացած էին, ի հարկէ, թէ աշխարհական և հոգևորական հայերից, ոչինչ ջանք չէին խընայում որ վնասեն Ներսէսի բարեկամներին և դրանով ոչնչացնեն Ներսէսի անուան այնքան պատիւ բերող հիմնարկութիւնները։

Սև նախանձը, չարակամութիւնը, հայի դժբախտութեան այս չար հրեշտակները, դըրդեցին այդ թշնամիներին չահագործել Գասկեվիչի ունեցած ատելութիւնը Ներսէսի դէմ։ Նրանք չարունակ գրգռում էին գոռոզ և ամբարիշտ Գասկեվիչին այն երեք-չորս անձինքների դէմ, որոնք Ներսէսի գործերի և գաղափարների արթուն պահապաններն էին։ Եւ այդ բանը աջողվեց նրանց։ Ալամդարեանի, Գէորգ Արծրունու և սրանց երկու ընկերակիցների դէմ խիստ հալածանքներ սկսվեցան։ Ալամդարեանն ու Արծրունին ոստիկանական հսկողութեան ենթարկվեցին։ Շուտով Ներսէսի թշնամիները մի նոր դաշնակից էլ գտան։ Եւ դա ուրիշ ոչ ոք չէր, եթէ ոչ Յակոբ Շահան-Ջրպետը, այն մարդը, որ այնքան բարերարութիւններ էր տեսել Ներսէսից...

Ներսիսեան դպրոցին Ջրպետը կպել էր պարազիտի պէս։ Ստանալով, չը նայած դըպրոցի դրամական նեղ դրութեան, բաւական

մեծ ռոճիկ, վայելելով Թիֆլիսում մեծամեծ պատիւներ, այդ «գիտնականը» համարեա ոչինչ արդիւնք չէր ցոյց տալիս. Նրա գործըն էր շարունակ գանգատվել թէ քիչ է ըստանում կամ ժամանակին չէ ստանում ռոճիկը։ Գէորգ Արծրունին, Ներսէսի աքսորից յետոյ դառնալով դպրոցի գլխաւոր ղեկավար, շատ դէպքերում էր զգալ տալիս Ջըրպետին որ նա իր ստացածի և համբաւի չափ արդիւնք չէ ցոյց տալիս։ Այդ արդէն բաւական էր որ եղեսացի հայը դլորվէր Ներսէսի թշնամիների գիրկը։ Եւ նա, շարունակելով ապրել դպրոցի շինութեան մէջ, ստանալ ռոճիկ, դառնում է Պասկեվիչի և նրա հովանու տակ աշխատող թշնամիների գործիք։ Սակայն Արծրունին այնքան թոյլ ու խեղճ մարդ չէր, որ անտարբեր ու լուռ մնար այդպիսի ստոր արարքի դիմաց. Նա խոշոր ընդհարում ունեցաւ Ջրպետի հետ, որին շուտով արձակեցին դպրոցի տեսչութիւնից։

Կռիւը սաստկացաւ. Ջրպետը ցոյց տուեց իր հոգու ամբողջ տգեղութիւնը. Նա շարունակում էր ապրել դպրոցի շինութեան մէջ, ռոճիկ ստանալ։ Եւ այդպէս, Ներսէսի մտերիմները, ազդեցիկ և հարուստ Գէորգ-աղայի ղեկավարութեամբ, ստիպված էին մի կողմից պաշտպանվել հակառակորդների զզուե-

լի մատնությունների, միւս կողմից պատժել Ջրպետի նման մարդկանց։ Բայց երկու մրցակից կողմերի ույժերը խիստ անհաւասար էին։ Պասկեւիչի մարդիկ իրանց կողմն ունէին իշխանութիւնը, մինչդեռ Ներսէսի մարդիկ ոչ մի պաշտպան չունէին և պաշարված էին սաստիկ երկիւղից։

«Գիշերները—կարդում ենք Ներսիսեան դպրոցի պատմութեան մէջ—Վանքի պարըսպի չուրջը ծպտեալ ստիկաններ էին պտըտում և դիտում թէ ով է գալիս գնում Առաջնորդարան, ուր բնակվում էին Սիմէօն արքեպիսկոպոսը և Ալամդարեանը։ Սոցա գրած կամ յանուն սոցա եղած նամակները փոստայում բռնվում էին»*)։ Գէորգ Արծրունին և Շերմազանեանը վախում էին տանից դուրս գալ, բայց շարունակում էին գործել յօգուտ դպրոցի։ Արծրունին նամակներ էր գրում Ներսէսին, տեղեկութիւններ էր հաղորդում նրան։

Օգտվելով այդ սարսափահար դրութիւնից, Ջրպետը կամեցաւ մի անգամ էլ հարըստահարել այն դպրոցը, որ դժբախտութիւն էր ունեցել նրան Պարիզից հրաւիրելու այն յուսով, թէ օգուտ պիտի տեսնէ նրանից։

*) Երիցեան—«Պատմ. Ներսիսեան դպրոցի», եր.175.

**Դպրոցը տուել էր նրա ճանապարհածախսը Պարիզից Թիֆլիս, այժմ Ջրպետը կարծում էր որ դարձեալ դպրոցը պիտի տայ ճանապարհի ծախսը՝ Թիֆլիսից Պարիզ գնալու համար։ Պասկեվիչի միջոցով նա այդպիսի պահանջ արեց դպրոցից։ Ահա ինչ էր գրում Գէորգ Արծրունին Ներսէսին.**

«Յայտնեմ վերջին յուսահատութեամբ, զի պատուելի Ջրպետն, ըստ յորդորից Բաստամովին եւ այլ քանի մի իւր նման բարի անձանց, Աւագ երեքշաբթի, այսինքն Զարչարանաց շաբաթի, համեմատեալ իւր նախորդին *), խնդիր է մատուցեալ գրաֆին Երեւանայ **) զանգատանս ի վերայ սրբազնութեանդ, Սիմէօն արքեպիսկոպոսին, եւս առաւել ի վերայ Յարութիւն վարդապետին ***) եւ ծառայիդ։ Բացի ամենայն զանգատից, նա պահանջէ զիւր ռոճիկ ըստ կամաց իւրոց... եւ ի Գաղղիոյ բերեալ գրեանք եւ այլ ինչ վասն վարժարանին—գինն նոցա, պահանջէ նաեւ գալստեան եւ գնալոյ ճանապարհի ծախսն եւ ասէ թէ «Ես երեք տարի ժամանակաւ եկեալ եմ եւ պարտիմ գնալ ժամանակին իմոյ ծառայութեանս ի փարիժ եւ թէ հաշիւ տեսանելոց եմք»։

**Իզուր դպրոցի վարչութիւնը ապացու-**

---

*) Ակնարկում է Ցուղային։

**) Պասկեվիչ։

***) Ներսէսը Ալամդարեանին վարդապետական կոչում էր տուել։

ցանում էր որ Ջրպետը ստանալիք չունի, որ նա նոյն իսկ աւելի է ստացել քան հարկաւոր էր։ Թիֆլիսի նահանգապետը հարկադրեց տալ ճանապարհածախս, և դպրոցը 1250 ր. տուեց, բայց դրա փոխարէն գոնէ այն օգուտը ունեցաւ, որ պահանջեց Ջրպետից հեռանալ իր շինութիւնից։ Այդպէս էլ եղաւ. Ջրպետը մոռացաւ Պարիզ գնալը, մնաց Թիֆլիսում և երկար ժամանակ կատարում էր իր դերը Պասկեվիչի մօտ։ Թիֆլիսում էլ մեռաւ նա։

Ահա այս տեսակ ծանր հանգամանքների մէջ էին Ներսէսի չորս մտերիմները պահպանում Ներսիսեան դպրոցի գոյութիւնը։ Հալածանքները, մատնութիւնները չէին վախեցնում դրանց։ 1829 թւականի յուլիսին Գէորգ Արծրունին յայտնում էր Ներսէսին որ դպրոցի համար նոր կալուած են առել։ Իր հրճուանքը այդ առիթով նա յայտնում էր այսպիսի խօսքերով. «Սրբազան Տէր, այնքան ուրախ եմ, համարիմ իբրև սեպհական կալուած իմ»։ Գործողների այսպիսի անկեղծ ոգևորութիւնն էր պատճառը, որ Ներսէսի ուսումնարանը, նոյն իսկ այդ տեսակ հանգամանքների մէջ, բարեկարգվեց, սկսեց կանոնաւոր կեանք վարել։ Եւ այսպէս շարունակվեց մինչև 1830-ի ամառը, երբ խօ-

լերան վերջ դրեց Արծրունու կեանքին, իսկ Ալամդարեանին Գասկեվիչը հեռացնել տուեց Թիֆլիսից։ Դպրոցը առ ժամանակ փակվեց։

Պէտք է ասել որ վերջերում Արծրունու և Ալամդարեանի մէջ էլ գժտութիւններ ծագեցին։ Եթէ Արծրունին յամառ, իր ասածի մարդ էր, Ալամդարեանն էլ պակաս չէր նրանից իր բնաւորութեան պակասաւոր կողմերով։ Բայց կայ այն հանգամանքը, որ այդ գժտութիւններից չը վհատվեց դպրոցը, ընդհակառակն, Արծրունին, ինչպէս երևում է մահից երեք-չորս ամիս առաջ Եփրեմ կաթողիկոսին գրած իր մի նամակից, խոստովանում էր Ալամդարեանի արժանաւորութիւնները, խնդրում էր վարձատրել նրան և թոյլ չը տալ որ նա հեռանայ գործերից, որովհետև, ասում էր նա, չը կայ այնպիսի անձն, «որ կառավարէ զամենայն, և ուրեմն մնայ մեզ հայրենասիրացս ապարդիւն այսքան վաստակաբեկութիւն՝ մանաւանդ յայս ոսկեդար ժամանակիս... և մեք լինիմք անպիտան և ծաղր ի մէջ ամենայն ազգաց»։

Մեր պատմածներից արդէն շատ պարզ երևաց թէ որքան վառ էր հայրենասիրութիւնը Գէորգ Արծրունու մէջ և որքան շատ էր նա լցված բարի ցանկութիւններով դէպի իր ազգը։ Աւելացնենք մի երկու փաստ էլ։

1824 թուականին Թիֆլիսում էր գտնվում վանեցի վաճառական Մահտեսի Գասպար Զարուխչեանցը. Նա ամուսնացած չէր և լաւ կարողութիւն ունէր։ Արծրունին, տեսնելով որ իր հայրենակիցը յափշտակված է Ներսէսի գործերով, համոզում է նրան բարեգործական կտակ կազմել։ Զարուխչեանցը համաձայնվում է և իր կտակի մէջ, ի միջի այլոց, 4600 րուբլի է յատկացնում Ներսիսեան դպրոցին, որպէսզի այդ գումարով գրքեր տպագրվեն նրա տպարանում։ Կտակակատարներ նշանակվեցան Ներսէսը, Արծրունին, Տերմազանեանը։ 1826 թուին կտակակատարները տպագրեցին այդ փողով Զամչեանի մեծ քերականութիւնը։ Վերջապէս յիշենք և այն, որ Արծրունին, Ներսէսի միւս բարեկամների հետ, 10,000 րուբլի հաւաքեց և ուղարկեց Էջմիածին՝ վանքի պարտքերը տալու համար։

Եւ այսպէս, Վանի դժբախտ իրականութիւնից դուրս եկած այդ վաճառական մարդը, որ մի առանձին գիտութիւն չէր ստացել և իր մասին ասում էր թէ չունի «գրական գիտութիւն», բնատուր խելքով այնքան լաւ ըմբռնում է ժամանակի պահանջները, ժողովրդի կարիքները, որ քաջութեամբ կանգնում է իր ժամանակի փոք-

ւաթիւ առաջաւոր մարդկանց շարքում և մի զարմանալի սիրով կապվելով Ներսէսի նման փայլուն գործիչի հետ, նրա դրօշակի տակ կռիւ էր մղում խաւար ոյժերի դէմ յանուն իր ազգի առաջադիմութեան։

Այժմ տեսնենք թէ ուրիշ ինչ բաներով անուն հանեց Արծրունին և որոնք են նրա մատուցած ծառայութիւնները, որոնց մասին ակնարկում էր Երմօլօվը իր թղթերի մէջ։

Թիֆլիս գալուց յետոյ Գէորգ աղան սկսում է կալուածներ առնել։ Ամենից առաջ, այն է՝ 1818-ին նա գնում է իշխան Օրբէլեանօվների այգու մի մասը 1700 րուբլով։ Դա այն կալուածն է, ուր ապագայում շինվեց Արծրունու յայտնի գալլէրէան։ Գէորգը այդ տեղի վրա մեծ ուշադրութիւն չը դարձրեց։ Նրա միտքն էր կառուցանել մի մեծ առևտրական կարաւանատրայ։ Թիֆլիսի առևտուրը այն ժամանակներում կենտրօնացած էր Սիօնի եկեղեցու մօտերքում։ Այդտեղ, Կուրի ափին, ռուսաց եկեղեցական վարչութիւնը ունէր մի հին, աւերակ կարաւանատրայ. Վրաստանի էկզարխը ձեռնտու համարեց ծախել այդ կալուածը. աճուրդ նըշանակվեց 1821 թւականին և ամենաբարձր գինը—20,000 րուբլի, առաջարկեց Գէորգ

Արծրունին։ Անմիջապէս նա սկսեց կառուցանել այդ ընդարձակ հողի վրա մի մեծ, հոյակապ կարաւանսարայ, որ հռչակեց նրա անունը և դարձաւ Թիֆլիսի ամենանշանաւոր զարդերից մէկը։ Գեներալ Երմոլօվը առանձին հոգս էր տանում աւերակ և աղքատ Թիֆլիսը շէնացնելու, զարդարելու մասին. Արծրունու պէս կարող, ունեւոր մարդուն նա ամեն կերպ խրախուսեց այդ ձեռնարկութիւնը առաջ տանելու համար և, ինչպէս տեսանք, հէնց այդ նպատակով էլ նա միջնորդեց որ Արծրունուն ազնուական կոչում տրվի, ի նկատի առնելով այն, որ նա քաղաքին օգուտներ է տալիս։

Կարաւանսարայի շինութիւնը ցոյց է տալիս թէ ինչպէս կազմվեց Գէորգ-աղայի ժողովրդական հռչակը Թիֆլիսում, միևնոյն ժամանակ դուրս է բերում նրա բնաւորութեան մի քանի տիպիկական գծերը։ Ուստի աւելորդ չը պիտի լինի մի քանի մանրամասնութիւններ առաջ բերելը։

Անհապին շինութիւնը Արծրունին սկսեց առանց ճարտարապետի, իր ծրագրած մակարդակով։ Պատմում են որ Կուրը երկու անգամ տարել է ջրի կողմից բարձրացրած պատը. բայց Արծրունին, իբ գործը լաւ հասկացող մարդու հաստատակամութեամբ, չը

թողեց իր ծրագիրը և երրորդ անգամ սկսեց գետից բուրգեր բարձրացնել։ Այդ աշխատութիւններին Թիֆլիսը նայում էր զարմանքով. մի կողմից նա համոզվում էր որ Գէորգ-աղան իր ասածի մարդ է, արգելքների առաջ կանգ չէ առնում. միւս կողմից առասպելներ էր յօրինում նրա հարստութեան մասին։ «Գէւուրը աղի օսկիքը գիժ Քուրն էլ խելոքացրին», ասում էր ժողովուրդը։ Լուր տարածվեց, որ եթէ գետը այլևս չէ կարողանում քանդել պատերը, դրա պատճառն այն է, որ բուրգերի մէջ ոսկով լի պարկեր է դարսել Գէորգ-աղան։ Գտնվեցան նոյն իսկ այդ ոսկու պարկերին տիրանալ ցանկացողներ. գետի միւս ափից նաւակներով մօտեցան նոր շինութեան պատերին, սկսեցին ծակծակել պատերը, բայց շուտ թողեցին, համոզվելով որ ոսկու պարկերը պահող պատերը շատ են ամուր։

Պատմում են և հետևեալ բնորոշ դէպքը։ Արծրունին շատ հաւանում էր որմնադիր Կիկօլին, որ շատ լաւ հասկանում էր շինութեան գործը և հէնց այս պատճառով էլ նոր շինվող կարաւանսարայի վրա հսկում էր իբրև Արծրունու օգնական։ Մի օր, ասում են, հըմուտ վարպետը և կալուածատէրը իրար հետ վէճի բռնվեցին, կռուեցին. Կիկօլին գտնում էր

որ Գէորգ-աղան սխալ է հասկանում և շինութիւնը պէտք է շարունակել այնպէս, ինչպէս ինքն է ասում։ «Բանի որ ասածս չես հաւանում, արա քո իմացածը, տեսնենք ինչ դուրս կը գայ», ասաց Արծրունին, խռովեց, տուն գնաց և բարկութիւնից հիւանդացաւ։ Կիկօլին շարունակեց ինչպէս ինքը գիտէր։ Անցաւ երկու ամիս. Արծրունին չէր գնում տեսնելու շինութիւնը, բայց տալիս էր բոլոր ծախսերը։ Վերջապէս, երբ Կիկօլին արել պրծել էր իր իմացածը, Գէորգ-աղան գնաց տեսաւ նրա գործը, շատ հաւանեց, համբուրեց հմուտ արհեստաւորին, մինչև իսկ ընծայ տուեց նրան։ Բայց միւս օրը հրամայեց քանդել Կիկօլիի շինածը և սկսել այնպէս, ինչպէս ինքն էր ասում։ «Ես տեսայ քո շինածը և հաւանեցի, հիմա կուզեմ որ դու տեսնես իմ շինածը», ասաց նա վարպետին։ Ուժեղ կամքի տէր Արծրունին, որ հաւատում էր իրան, զգում էր որ ինքն էլ լաւ գիտէ, հասկանում է, ոչինչ համարեց մեծ ծախսերը, որպէսզի ցոյց տայ որմնադիր Կիկօլիին թէ ինքը ի զուր չէ իր ասածի մարդ։

Այս յատկութիւնը, ինչպէս կը տեսնենք մեր այս գործի ընթացքում, ժառանգական էր Արծրունիների տոհմի մէջ։ Գէորգ-աղան

այնպիսի մարդկանցից չէր, որոնք մի բան դնում են մտքում և չեն կատարում. դա մի տոկուն մարդ էր, որ հետևում էր իր հաստատ կամքին և անպատճառ հասնում էր իր նպատակին։ Շիտակ բնաւորութիւն ունէր, ատում էր սուտը, չէր սիրում ընկերութիւնների և խնճոյքների մէջ ժամանակ անցկացնել, պարապ մարդկանց հետ զուարճախօսութիւն անելու սովորութիւնը չունէր։ Ներսէսի գործերում նրա կատարած դերը արդէն մի շատ լաւ ապացոյց է թէ որքան նա հաստատ, անդրդուելի էր իր համոզմունքների մէջ։ Ում մի անգամից չէր սիրում, նրան երբէք իր մօտ չէր թողնում և երբէք չէր ներում նրա արած սխալը։ Առատաձեռն մարդ էր, սիրում էր օգնել կարօտներին, բայց գիտէր հաշիւ պահանջել իր տուած օգնութեան մասին և սաստիկ բարկանում էր, երբ իրան խաբված էր տեսնում։ Սաստիկ ինքնահաւանութիւնը խիզախութիւն էր տալիս նրան. Նա չէր սիրում հակաճառութիւն, կամենում էր որ իր ասածը կատարվի։

Վանեցի վաճառականի այս ինքնուրոյն, ամբողջացրած բնաւորութիւնը հանեց նրան սովորական, առօրեայ մարդկանց շրջանից և կատարել տուեց նրան բաւական նշանաւոր հասարակական դեր, որքան այդ հնարաւոր

էր այն ժամանակներում մի վաճառականի համար։ Մնում է ավելացնել այդ նշանավոր մարդու յատկութիւնների վրա և նրա սաստիկ գրասիրութիւնը։

Տեսանք որ դեռ Վանում, երիտասարդութեան օրերում, նա կամենում էր նուիրվել գրականութեան։ Տեսանք նոյնպէս որ այդ գրասիրութեան արդիւնքն էր Ներսիսեան դպրոցի համար Ամստերդամի տպարանի գընելը։ Բայց Գէորգ Արծրունին միայն ուրիշներին չէր խրախուսում գրականութեամբ պարապելու. նա ինքն էլ ունէր գրելու, հեղինակելու շնորհք։ Մահվան տարին, 1830-ին, Ներսիսեան դպրոցի տպարանից լոյս տեսաւ նրա մի աշխատութիւնը հետեւեալ վերնագրով. «Դարաստան Խրատուց, քաղեալ ի գրոց իմաստասիրաց ջանիւք Ազնուական Գէորգայ Արծրունւոյ ի վայելս Մանկանց Հայաստանի»։

Առաջաբանի մէջ Գէորգ-աղան խոստովանում է որ չունի այնքան գրական գիտութիւն որ կարողանայ իրանից մի գիրք հեղինակել, ուստի հաւաքեց հին փիլիսոփաների գրուածքներից զանազան օգտակար խրատներ և ահա նուիրում է դրանց ժողովրդի ընթերցողներին։ Հետաքրքրական է որ Արծրունին իր այդ աշխատութիւնը հրատա-

բակել է ոչ թէ, իհարկէ, գիտնականների համար, այլ «Նորուսումն մանուկների և ուրիշ շատ թերավարժ հայրենակիցների համար»: Արդէն այդ ժողովածուն ցոյց է տալիս թէ Գէորգ-աղան որքան շատ կարդացած մարդ էր և ինչպէս կարողանում էր լաւ ընտրութիւն անել իր կարդացածներից: «Դարաստան Խրատուց»-ը խօսում է մարդկային պարտաւորութիւնների մասին, բերում է օրինակներ հին մեծ մարդկանց կեանքից: Արծրունին այդ կտորները մեծ մասամբ արտագրել է զանազան գրքերից (օրինակ, Թեսաւրոսի «Իմաստասիրութիւնից»), այնպէս որ մեզ չը պիտի զարմացնէ նրա ժողովածուի աղօրկ, վարժ գրաբարը, մինչդեռ Արծրունին, ինչպէս երևում է նրա նամակներից, քաջ հայկաբան լինելուց շատ հեռու էր:

Վերջաբանութեան մէջ Գէորգ-աղան ասում է որ իրան պէտք է անուանել ոչ թէ գրագէտ, այլ գրասէր: Եթէ, ասում է նա, մի բոլորովին անուս մարդ, որ բացի դրանից տարիքով էլ է, յանձն է առնում հրատարակել մի այդպիսի իմաստասիրական գիրք, դրա պատճառն այն է, որ նա կամենում է բարի նախանձ գրգռել, օրինակ հանդիսանալ աւելի կարող մարդկանց համար:

1824 թուականին Թիֆլիսում էր գտնվում վանեցի վաճառական Մահտեսի Գասպար Զարուխչեանցը. Նա ամուսնացած չէր և լաւ կարողութիւն ունէր։ Արծրունին, տեսնելով որ իր հայրենակիցը յափշտակված է Ներսէսի գործերով, համոզում է նրան բարեգործական կտակ կազմել։ Զարուխչեանցը համաձայնվում է և իր կտակի մէջ, ի միջի այլոց, 4600 րուբլի է յատկացնում Ներսիսեան դպրոցին, որպէսզի այդ գումարով գրքեր տպագրվեն նրա տպարանում։ Կտակակատարներ նշանակվեցան Ներսէսը, Արծրունին, Տէրմաղանեանը։ 1826 թուին կտակակատարները տպագրեցին այդ փողով Զամչեանի մեծ քերականութիւնը։ Վերջապէս յիշենք և այն, որ Արծրունին, Ներսէսի միւս բարեկամների հետ, 10,000 րուբլի հաւաքեց և ուղարկեց Էջմիածին՝ վանքի պարտքերը տալու համար։

Եւ այսպէս, Վանի գժբախտ իրականութիւնից դուրս եկած այդ վաճառական մարդը, որ մի առանձին գիտութիւն չէր ստացել և իր մասին ասում էր թէ չունի «գրականական գիտութիւն», բնատուր խելքով այնքան լաւ ըմբռնում է ժամանակի պահանջները, ժողովրդի կարիքները, որ քաջութեամբ կանգնում է իր ժամանակի փոք-

բաթիւ առաջաւոր մարդկանց շարքում և մի զարմանալի սիրով կապվելով Ներսէսի նման փայլուն գործիչի հետ, Նրա դրօշակի տակ կռիւ էր մղում խաւար ույժերի դէմ յանուն իր ազգի առաջադիմութեան։

Այժմ տեսնենք թէ ուրիշ ինչ բաներով անուն հանեց Արծրունին և որոնք են Նրա մատուցած ծառայութիւնները, որոնց մասին ակնարկում էր Երմօլօվը իր թղթերի մէջ։

Թիֆլիս գալուց յետոյ Գէորգ աղան ըսկսում է կալուածներ առնել։ Ամենից առաջ, այն է՝ 1818-ին Նա գնում է իշխան Օրբէլեանօվների այգու մի մասը 1700 ռուբլով։ Դա այն կալուածն է, ուր ապագայում շինվեց Արծրունու յայտնի գալլէրէան։ Գէորգը այգետեղի վրա մեծ ուշադրութիւն չը դարձրեց։ Նրա միտքն էր կառուցանել մի մեծ առևտրական կարաւանսարայ։ Թիֆլիսի առևտուրը այն ժամանակներում կենտրօնացած էր Սիօնի եկեղեցու մօտերքում։ Այդտեղ, Կուրի ափին, ռուսաց եկեղեցական վարչութիւնը ունէր մի հին, աւերակ կարաւանսարայ. Վրաստանի էկզարխը ձեռնտու համարեց ծախել այդ կալուածը. աճուրդ նըշանակվեց 1821 թւականին և ամենաբարձր գինը—20,000 ռուբլի, առաջարկեց Գէորգ

Արծրունին։ Անմիջապէս նա սկսեց կառուցանել այդ ընդարձակ հողի վրա մի մեծ, հոյակապ կարաւանսարայ, որ հռչակեց նրա անունը և դարձաւ Թիֆլիսի ամենանշանաւոր զարդերից մէկը։ Գեներալ Երմոլօվը առանձին հոգս էր տանում աւերակ և աղքատ Թիֆլիսը շէնացնելու, զարդարելու մասին․ Արծրունու պէս կարող, ունևոր մարդուն նա ամեն կերպ խրախուսեց այդ ձեռնարկութիւնը առաջ տանելու համար և, ինչպէս տեսանք, հէնց այդ նպատակով էլ նա միջնորդեց որ Արծրունուն ազնուական կոչում տրվի, ի նկատի առնելով այն, որ նա քաղաքին օգուտներ է տալիս։

Կարաւանսարայի շինութիւնը ցոյց է տալիս թէ ինչպէս կազմվեց Գէորգ-աղայի ժողովրդական հռչակը Թիֆլիսում, միևնոյն ժամանակ դուրս է բերում նրա բնաւորութեան մի քանի տիպիական գծերը։ Ուստի աւելորդ չը պիտի լինի մի քանի մանրամասնութիւններ առաջ բերելը։

Ահագին շինութիւնը Արծրունին սկսեց առանց ճարտարապետի, իր ծրագրած մակարդակով։ Պատմում են որ Կուրը երկու անգամ տարել է ջրի կողմից բարձրացրած պատը․ բայց Արծրունին, իր գործը լաւ հասկացող մարդու համառութեամբ, չը

թողեց իր ծրագիրը և երրորդ անգամ սկսեց գետից բուրգեր բարձրացնել։ Այդ աշխատութիւններին Թիֆլիսը նայում էր զարմանքով. մի կողմից նա համոզվում էր որ Գէորգ-աղան իր ասածի մարդ է, արգելքների առաջ կանգ չէ առնում. միւս կողմից առասպելներ էր յօրինում նրա հարստութեան մասին։ «Գէւուրք աղի ոսկիքը գիժ Քուրն էլ խելօքացրին», ասում էր ժողովուրդը։ Լուր տարածվեց, որ եթէ գետը այլևս չէ կարողանում քանդել պատերը, դրա պատճառն այն է, որ բուրգերի մէջ ոսկով լի պարկեր է դարսել Գէորգ-աղան։ Գտնվեցան նոյն իսկ այդ ոսկու պարկերին տիրանալ ցանկացողներ. գետի միւս ափից նաւակներով մօտեցան նոր շինութեան պատերին, սկսեցին ծակծակել պատերը, բայց շուտ թողեցին, համոզվելով որ ոսկու պարկերը պահող պատերը շատ են ամուր։

Պատմում են և հետևեալ բնորոշ դէպքը։ Արծրունին շատ հաւանում էր որմնադիր Կիկօլին, որ շատ լաւ հասկանում էր շինութեան գործը և հէնց այս պատճառով էլ նոր շինվող կարաւանսարայի վրա հսկում էր իբրև Արծրունու օգնական։ Մի օր, ասում են, հըմուտ վարպետը և կալուածատէրը իրար հետ վէճի բռնվեցին, կռուեցին. Կիկօլին գտնում էր

որ Գէորգ-աղան սխալ է հասկանում և չի-նութիւնը պէտք է շարունակել այնպէս, ինչպէս ինքն է ասում։ «Քանի որ ասածս չես հաւանում, արա քո իմացածը, տեսնենք ինչ դուրս կը գայ», ասաց Արծրունին, խռովեց, տուն գնաց և բարկութիւնից հիւանդացաւ։ Կիկօլին շարունակեց ինչպէս ինքը գիտէր։ Անցաւ երկու ամիս. Արծրունին չէր գնում տեսնելու շինութիւնը, բայց տալիս էր բոլոր ծախսերը։ Վերջապէս, երբ Կիկօլին արել պրծել էր իր իմացածը, Գէորգ-աղան գնաց տեսաւ նրա գործը, շատ հաւանեց, համբուրեց հմուտ արհեստաւորին, մինչև իսկ ընծայ տուեց նրան։ Բայց միւս օրը հրամայեց քանդել Կիկօլիի շինածը և սկսել այնպէս, ինչպէս ինքն էր ասում։ «Ես տեսայ քո շինածը և հաւանեցի, հիմա կուզեմ որ դու տեսնես իմ շինածը», ասաց նա վարպետին։ Ուժեղ կամքի տէր Արծրունին, որ հաւատում էր իրան, զգում էր որ ինքն էլ լաւ գիտէ, հասկանում է, ոչինչ համարեց մեծ ծախսերը, որպէսզի ցոյց տայ որմնադիր Կիկօլիին թէ ինքը ի զուր չէ իր ասածի մարդ։

Այս յատկութիւնը, ինչպէս կը տեսնենք մեր այս գործի ընթացքում, ժառանգական էր Արծրունիների տոհմի մէջ։ Գէորգ-աղան

այնպիսի մարդկանցից չէր, որոնք մի բան դնում են մտքում և չեն կատարում. դա մի տոկուն մարդ էր, որ հետևում էր իր հաստատ կամքին և անպատճառ հասնում էր իր նպատակին։ Շիտակ բնաւորութիւն ունէր, ատում էր սուտը, չէր սիրում ընկերութիւնների և խնջոյքների մէջ ժամանակ անցկացնել, պարապ մարդկանց հետ զուարճախօսութիւն անելու սովորութիւնը չունէր։ Ներսէսի գործերում նրա կատարած դերը արդէն մի շատ լաւ ապացոյց է թէ որքան նա հաստատ, անդրդուելի էր իր համոզմունքների մէջ։ Ում մի անգամից չէր սիրում, նրան երբէք իր մօտ չէր թողնում և երբէք չէր ներում նրա արած սխալը։ Առատաձեռն մարդ էր, սիրում էր օգնել կարօտներին, բայց գիտէր հաշիւ պահանջել իր տուած օգնութեան մասին և սաստիկ բարկանում էր, երբ իրան խաբված էր տեսնում։ Սաստիկ ինքնահաւանութիւնը խիզախութիւն էր տալիս նրան. նա չէր սիրում հակաճառութիւն, կամենում էր որ իր ասածը կատարվի։

Վանեցի վաճառականի այս ինքնուրոյն, ամբողջացրած բնաւորութիւնը հանեց նրան սովորական, առօրեայ մարդկանց շրջանից և կատարել տուեց նրան բաւական նշանաւոր հասարակական դեր, որքան այդ հնարաւոր

էր այն ժամանակներում մի վաճառականի համար։ Մնում է աւելացնել այդ նշանաւոր մարդու յատկութիւնների վրա և նրա սաստիկ գրասիրութիւնը։

Տեսանք որ դեռ Վանում, երիտասարդութեան օրերում, նա կամենում էր նուիրվել գրականութեան։ Տեսանք նոյնպէս որ այդ գրասիրութեան արդիւնքն էր Ներսիսեան դպրոցի համար Ամստերդամի տպարանի գնելը։ Բայց Գէորգ Արծրունին միայն ուրիշներին չէր խրախուսում գրականութեամբ պարապելու. նա ինքն էլ ունէր գրելու, հեղինակելու շնորհք։ Մահվան տարին, 1830-ին, Ներսիսեան դպրոցի տպարանից լոյս տեսաւ նրա մի աշխատութիւնը հետևեալ վերնագրով. «Դարաստան Խրատուց, քաղեալ ի գրոց իմաստասիրաց ջանիւք Ազնուական Գէորգայ Արծրունւոյ ի վայելս Մանկանց Հայաստանի»։

Առաջաբանի մէջ Գէորգ-աղան խոստովանում է որ չունի այնքան գրական գիտութիւն որ կարողանայ իրանից մի գիրք հեղինակել, ուստի հաւաքեց հին փիլիսոփաների գրուածքներից զանազան օգտակար խրատներ և ահա նուիրում է դրանց ժողովրդի ընթերցողներին։ Հետաքրքրական է որ Արծրունին իր այդ աշխատութիւնը հրատա-

րակել է ոչ թէ, իհարկէ, գիտնականների համար, այլ «նորուսումն մանուկների և ուրիշ շատ թերավարժ հայրենակիցների համար»։ Արդէն այդ ժողովածուն ցոյց է տալիս թէ Գէորգ-աղան որքան շատ կարդացած մարդ էր և ինչպէս կարողանում էր լաւ ընտրութիւն անել իր կարդացածներից։ «Դարաստան Խրատուց»-ը խօսում է մարդկային պարտաւորութիւնների մասին, բերում է օրինակներ հին մեծ մարդկանց կեանքից։ Արծրունին այդ կտորները մեծ մասամբ արտագրել է զանազան գրքերից (օրինակ, Թեսաւրոսի «Իմաստասիրութիւնից»), այնպէս որ մեզ չը պիտի զարմացնէ նրա ժողովածուի ոճը, վարժ գրաբարը, մինչդեռ Արծրունին, ինչպէս երևում է նրա նամակներից, քաջ հայկաբան լինելուց շատ հեռու էր։

Վերջաբանութեան մէջ Գէորգ-աղան ասում է որ իրան պէտք է անուանել ոչ թէ գրագէտ, այլ գրասէր։ Եթէ, ասում է նա, մի բոլորովին անուս մարդ, որ բացի դրանից տարիքով էլ է, յանձն է առնում հրատարակել մի այդպիսի իմաստասիրական գիրք, դրա պատճառն այն է, որ նա կամենում է բարի նախանձ դրդել, օրինակ հանդիսանալ ուսեալ կարող մարդկանց համար։

Գանգատվում է որ հայերի մէջ արհամարհ-ված է ուսումը և «մեր ազգի մէջ ուսանող-ների թիւը շատ նօսր է»: Ծնողները, կուր-օրէն խաբվելով մասնաւոր շահերից, որ ձեռք են բերում նրանց որդիները անարգ աշխա-տանքով, զրկում են նրանց ուսման բարիքից:

«Դարաստան Խրատուց»-ը այն միակ գիր-քը չէր, որ պատրաստել էր Գէորգ Արծրու-նին: Նա ունէր և երեք հատորից բաղկացած մի պատմութիւն, որի մէջ կար Հայաստանի և Վասպուրականի, ինչպէս նաև Ատրպատա-նի անծանօթ գաւառների-քարտէզը. բացի դրանից, այդ հեղինակութեան մէջ մտնում էին և Արծրունու ճանապարհորդութիւնները և նա խոստանում էր այդտեղ տալ իր տե-սած տեղերի և բնակիչների նկարագրութիւ-նը: Այս հեղինակութիւնը, որ անշուշտ հե-տաքրքրական պիտի լինէր, Արծրունին չը կարողացաւ տպագրել տալ. պատճառը Ալամ-դարեանի հետ ունեցած գժտութիւններն էին: Ինքը Ալամդարեանը, Ներսէսին տուած իր մի զեկուցագրի մէջ ասում է, որ Արծրու-նին կամենում էր «Դարաստանից» յետոյ տպագրել իր կեանքի պատմութիւնը և իր ճանապարհորդութիւնը, բայց այդ բանը չը թոյլատրվեց նրան: Երևի հէնց այդ արգելքն էր այնքան բարկացրել Արծրունուն, որ նա

յետ վերցրեց իր տպարանի մայրերի մի փոքրիկ մասը, որ և մնաց նրա տանը։

1830 թուականի ամառը Թիֆլիսում տարածվեց խօլերա հիւանդութիւնը, որ մեծ կոտորածներ արաւ։ Քաղաքը դատարկվեց, բնակիչները փախան շրջակայ լեռնային գիւղերը։ Ալամդարեանը փակեց Ներսիսեան դպրոցը և Հաղբատի վրայով ճանապարհվեց Էջմիածին։ Գէորգ Արծրունին չուզեց հեռանալ Թիֆլիսից. ապահովութեան համար նա բնակվեց իր կարաւանսարայի ներքին յարկի մի սենեակում, որի պատուհանները բացվում էին Կուր գետի վրա։ Բայց այստեղ էլ վրա հասաւ խօլերան։ Օգոստոսի 6-ին Արծրունին հիւանդացաւ և մի քանի ժամից յետոյ մեռաւ խօլերայից։ Թիֆլիսում այդ ժամանակ միայն նրա կինն էր գտնվում։ Նրա միակ որդի Երեմիան, որ զինուորական ծառայութեան մէջ էր, այդ միջոցում ռուսաց դեսպան իշխան Դոլգորուկովի հետ գնացել էր Թէհրան, որտեղից նա վերադարձաւ նոյն տարվայ վերջերում միայն։

Գէորգ Արծրունու մահը զգալի կորուստ էր հայերի համար։ Ներսէսը իր թղթերի մէջ անուանում էր նրան «հարազատն հայրենի ազգի և մեր», «հայրենասէր» և այլն։ Երևանի նահանգապետ իշխան Վասիլ Բեհբութ-

եանը, որ Ներսէսի, հետեւաբար և Արծրունու հակառակորդն էր, 1830 թուականի հոկտեմբերին Պասկեվիչին գրած էր մի թղթի մէջ, յիշատակելով այն խնդրագիրը, որ ուղարկել էին Թիֆլիսի հայերը Եփրեմ կաթողիկոսին՝ Ալամդարեանին եպիսկոպոս ձեռնադրելու մասին, ասում է հեգնական ձեւով. «Այդ գրութեան մէջ վճռաբար յայտնում են, որ Թիֆլիսում հայոց ազգի զարդը միայն երկու մարդ են եղել—Գէորգ Արծրունին և Ալամդարեան վարդապետը։ Առաջինի (Արծրունու) մահովը քանդվեցին Թիֆլիսի հայոց ապագայ բարօրութեան յոյսերը և նրանք տրտմութեան մէջ ընկղմվեցան»։

Որքան էլ թշնամական հեգնութիւնը խըտացրած լինի այս թղթի մէջ Արծրունուն յատկացրած նշանակութիւնը, անհերքելի պիտի մնայ, որ Թիֆլիսի հայ հասարակութիւնը, իրաւ, անկեղծ ցաւ զգաց, զրկվելով Գէորգ Արծրունու պէս մի սրտացաւ, բարեացակամ և գործունեայ անդամից։

---

# II

**Երեմիա Արծրունին։—Հայրական կեանք, մայրական ժառանգութիւն։—Ցուցակ ծառայութեան։—Մոսկվայում բնակութիւն հաստատելը։—Ընտանիք։—Գրիգորի ծնունդը։—Պաշտօնական գործեր. կարաւանսարայի հրդեհը։ Վերադարձ Թիֆլիս։—Շինարարական մեծ ձեռնարկութիւններ. գալլերեա։—Դատաստանական գործեր։—Հասարակական գործունէութիւն. Ներսիսեան դպրոց, Թիֆլիսի քաղաքագլուխ։—Երկաթուղի մինչեւ Հնդկաստան։ Երեմիայի բնաւորութիւնը։—Ընտանեկան կեանք։—Երեխաների կրթութիւնը։—Գրիգոր եւ Անդրէաս Արծրունիներ։—Նրանց ուսումը Թիֆլիսում։**



*Երեմիա Արծրունին, ինչպէս տեսանք, ինն տարեկան էր, երբ հօր հետ տեղափոխվեց Թիֆլիս։ Գէորգ աղան, ինարկէ, հոգ տարաւ իր միակ արու զաւակի և ժառանգի կրթութեան մասին։ Երեմիան լաւ գիտէր հայերէնը. հայրը տուեց նրան Թիֆլիսի ազնուականների դպրոցը, ապա ուղարկեց Պետերբուրգ, ուր նա, ինչպէս վայել էր հարուստ և ազնուական մի երիտասարդի, մը-*

տաւ զինուորական դպրոց։ Այստեղից նա անցաւ Գվարդիայի հեծելազօրքը և 1826-ին ստացաւ օֆիցերական առաջին աստիճանը, որից յետոյ տեղափոխուեց Կովկաս։

Ռուս-պարսկական պատերազմի ժամանակ կօրնէտ Արծրունին մասնակցութիւն ունեցաւ Սարդարաբադի, Աբասաբադի և Երևանի կռիւների մէջ։ 1828 թւին նա կռւում էր ռուս զօրքերի շարքում իր նախկին հայրենիքի, Օսմանեան պետութեան դէմ, բայց այս անգամ ոչ թէ Կովկասում, այլ Դունայի բանակում։ 1829-ին իշխան Դոլգորուկով Պարսկաստան դեսպան ուղարկուեց խաղաղութեան դաշնագիր կնքելու համար. նրա սվիտայի մէջ էր Երեմիա Արծրունին, որ ներկայ էր Թիւրքմէնչայի դաշնադրութեան, ապա ներկայացաւ պարսից Շահին Համադանում։ Երբ նա վերադարձաւ Պարսկաստանից, Գէորգ-աղան, ինչպէս գիտենք, արդէն վախճանուած էր։

Դառնալով հարուստ կալուածատէր, Երեմիա Արծրունին չը թողեց զինուորական ծառայութիւնը, որ չէր արգելում նրան անձնատուր լինել տնային գործերին։ Իր հօր պէս նա էլ ունէր շինարարական տաղանդ, բայց գերազանցեց նրան խոշոր ու բարդ ծրագիրներ կազմելու և նրանցով երկար

զբաղվելու տարօրինակ հակումներով, որոնք ապագայում այնքան քայքայեցին նրա գործերը։

Գէորգ Արծրունին թողել էր կտակ, որի մէջ իր հեռատեսութիւնն ու գործնական խելքն էր ցոյց տուել։ Նա ունէր երկու կալուած, որոնցից մէկը քաղաքի հին մասում, միւսը նոր մասում։ Դրանք հաւասար արժողութիւն չունէին և կարող էին ժառանգների համար անհամաձայնութիւնների պատճառ դառնալ։ Ուստի Գէորգը կտակում էր իր ժառանգներին երբէք չը ծախել այդ կալուածները, չը բաժանել։ Կարաւանսարան և փոխարքայի տան մօտ գտնուող տունը միշտ պիտի անուանվէին Գէորգ Արծրունու կալուածներ, իսկ նրանցից ստացվող եկամուտները միայն կարելի էր բաժանել ժառանգների մէջ։ Առանձնապէս Գէորգ Արծրունին պարտաւորեցնում էր իր ժառանգներին մընալ հայ-լուսաւորչական *)։

Հայրական կալուածների վրա աւելացաւ և մայրական ժառանգութիւնը, թէև այս վերջինից Արծրունիները երբէք օգուտ չը ստացան։ 1833-ին Երեմիան պաշտօնապէս վա-

*) Այս տեղեկութիւնները մենք հանում ենք Երեմիա Արծրունու կտակից, որ գրված է 1868 թւին։



*Գեներալ Երեմիա Արծրունի*

ւերացրած թղթով. ստացաւ իր մօրից նրա բոլոր իրաւունքները Վասպուրականում մընացած Գաշավեան-Արծրունիների կալուածների վրա։ Դրանց մասին մենք տեղեկութիւններ տուինք վերևում։ Եւ եթէ յիշատակում ենք այստեղ նորից, պատճառն այն է, որ Երեմիան այդ հեռաւոր մեծ կալուածների համար էլ սկսեց դատ, մէկը այն երկարատև, մեծ և ապարդիւն դատերից, որոնք նրա ամբողջ ուշադրութիւնն էին գրաւում և միայն մեծամեծ ծախսեր էին պատճառում։

Համարձակ, ձեռնարկող ոգու տէր էր Երեմիան։ Հօր ժառանգութիւնը ստանալուց յետոյ նա իր մտածմունքների առարկայ է դարձնում այդ կալուածները մեծացնելը։ 1832 թւին նա կարաւանսարայի վրա չորրորդ յարկը աւելացրեց և մի քանի այլ շինութիւններ։ Եւ միևնոյն ժամանակ նա մասնակցում էր լեռնաբնակների դէմ սկսված մի պատերազմական արշաւանքին։ Առանձին սէր ունենալով դէպի ֆինանսական և առևտրական հարցերը, Երեմիան, շարունակելով մնալ զինուորական ծառայութեան մէջ, 1836-ին փոխ-գնդապետի աստիճանով փոխվեց ֆինանսների մինիստրութիւնը։ Պարսկաստանում եղած ժամանակ նա լաւ ուսումնասիրել էր այդ երկրի դիրքը և տնտե-

տական հանգամանքները, ուստի ստացաւ ֆինանսների մինիստրից յանձնարարութիւն հետազօտել Կովկասի առևտուրը Պարսկաստանի հետ։ Մի առ ժամանակ նրան յանձնըվեց Անդրկովկասի բոլոր մաքսատների գըլխաւոր կառավարութիւնը։

Պետական ծառայութիւնը չէր խանգարում նրան կազմել մեծամեծ ծրագիրներ։ Այսպէս, 1838-ին նա մի քանի Թիֆլիսեցի վաճառականների հետ կազմում է մի մեծ առևտրական ընկերութիւն, որի նպատակն էր տարածել ռուսաց ապրանքները Պարսկաստանի հիւսիսային կողմերում և փոխարէնը դուրս բերել այդ տեղերից հում մըթերքներ և մշակել նրանց ընկերութեան սեփական գործարաններում, որոնք պիտի շինվէին Կասպից ծովի ափերին։ Այս պատճառով ընկերութիւնը խնդրում էր ռուսաց կառավարութիւնից տալ իրան կասպիական ափերում հազար դեսեատին հող։ Ընկերութեան դրամագլուխը պիտի լինէր երկու միլիօն րուբլի թղթադրամ։ Բացի պարսկական առևտրից, ընկերութիւնը նպատակ ունէր չահագործելու Բագուի և Շիրվանի նաւթահանքերն ու աղի լճերը, ուստի և խնդրում էր որ կառավարութիւնը կապալով իրան տայ այդ բնական հարստութիւնները։ Ընկե-

*թեան ծրագրած գործունէութիւնը շատ կարևոր և ցանկալի երևաց կառավարութեան. կանոնադրութիւնը հաստատվեց Նիկօլայ կայսրի կողմից, եղան սկզբնական ծախսեր, բայց ընկերութիւնը վերջ ի վերջոյ չը կայացաւ։*

*Հէնց այդ ժամանակներում էլ, երեսնական թւականների վերջին, Երեմիա Արծրունին ստացաւ գնդապետի աստիճան և նշանակվեց Կովկասեան բանակի գլխաւոր ինտենդանտ։ Այդ կարևոր պաշտօնի մէջ Արծրունին ցոյց տուեց մի հազուագիւտ ազնւութիւն և անշահասիրութիւն։ Պետական ահագին գումարներ ծախսող այս հիմնարկութեան մէջ նա խիստ կարգ ու կանոն մըտցրեց, զարկեց ծառայողներին, հանդիսանալով գանձարանի շահերի անկաշառ պահապան. և այդպէս նա կառավարեց մի քանի տարի, մինչև պաշտօնից հեռանալը։*

*Երևի նոյն երեսնական թւականներին էր, որ Երեմիա Արծրունին ամուսնացաւ իշխան Դաւիթ Նազարեանի աղջկայ հետ, որի անունն էր Ագրիպպինա։ Նազարեան իշխանական տոհմի մասին հաստատ տեղեկութիւններ չը կան. ենթադրվում է որ նա Անդրկովկասից Ռուսաստան գաղթած հայ ընտանիքներից մէկն էր։ Կարևոր է նկատի*

ունենալ, որ թէև Դաւիթ Նազարեանը Ռուսաստանից Թիֆլիս եկաւ և այդտեղ բնակութիւն հաստատեց, բայց նրա տոհմը արդէն համարեա բոլորովին օտարացել էր։ Նրա երկու որդիները Մոսկվայում ամուսնացել էին ռուս աղջիկների հետ և բոլորովին ռուսացան, ստանալով իշխան Նազարով ազգանունը։ Այդ ամուսնութիւնից Երեմիան ունեցաւ, որքան յայտնի է, չորս տղայ և չորս աղջիկ։ Տղաներից անդրանիկն էր Գէորգը, որ մտաւ զինուորական ծառայութեան մէջ և մեռաւ երիտասարդ հասակում։

Քառասնական թւականների առաջին կէսում գնդապետ Արծրունին հրաժարվեց ծառայութիւնից և հեռանալով Թիֆլիսից, բնակութիւն հաստատեց Մոսկվայում, երևի կնոջ պատճառով, որի եղբայրներն ու ուրիշ ազգականները այնտեղ էին ապրում։ Այդտեղ Արծրունու ընտանիքը մնաց երկար, մինչև յիսնական թւականների համարեա վերջը։ Հաստատվելով Ռուսաստանի մայրաքաղաքում, Արծրունին ստանում էր Թիֆլիսի իր կալուածների արդիւնքները և նրա ընտանիքը վարում էր արիստոկրատ դասակարգին յատուկ ճոխ կեանք, թէև ինքը, Արծրունին, սիրում էր առանձնակեցութիւնը և ապրում էր, ինչպէս գրում էր իր նամակ-

նրից մէկում, ճգնաւորի պէս։ Անշուշտ, Արծրունու տան արիստօկրատիական շուք տուողը տիկին Ագրիպպինան էր, ծնեալ իշխանուհի Նազարեան։



Ագրիպպինա Արծրունի

Ահա այդտեղ, Մոսկվայում, այդ արիստօկրատ ընտանիքի մէջ, 1845 թուի փետրվարի 27-ին ծնվում է Գրիգորը, իսկ 1847-ին

*նրա եղբայր Անդրէասը։ Գրիգորը Երեմիա Արծրունու երրորդ արու զաւակն էր. նրանից առաջ ծնվել էին վերոյիշեալ Գէորգը, ապա Սարգիսը, որ նոյնպէս վախճանվեց պատանի հասակում։*

*Ցայտնի է թէ ինչպէս պիտի լինէր երեխաների դաստիարակութիւնը մի այդպիսի ընտանիքում։ Ծնված օտար երկնքի տակ, մի այնպիսի շրջանում, որ համարեա ոչինչ կապ չունէր հայութեան հետ, երեխաները մեծանում են օտար դաստիարակչուհիների ձեռքին, շրջապատված օտարազգի տնային ուսուցիչներով։ Բուն Հայաստանից դուրս եկած, հայերէնը, մանաւանդ գրաբարը, շատ լաւ իմացող Երեմիայի առաջին սերունդը արդէն միանգամայն օտարացած է։ Ընտանիքի լեզուն ֆրանսերէնն է. Գրիգոր Արծրունու առաջին նամակները* (11—12 *տարեկան հասակում*) *ֆրանսերէն են գրված։ Ինքը, Երեմիան, իր որդի Գէորգի հետ նամակագրութիւն ունէր ռուսերէն լեզուով և այդ նամակների մէջ մենք մի հատ հայերէն բառի չենք հանդիպում։ Ո՞վ կարող էր կարծել թէ հէնց այդպիսի մի ընտանիքից պիտի դուրս գար այն մարդը, որ* 27 *տարի շարունակ պաշտպանեց արհամարհված մայրենի լեզուի դատը…*

Երեխաների դաստիարակութեան պատկերը աւելի պարզելու համար ասենք և այն, որ Երեմիա Արծրունին վաղ զրկվեց իր ամուսնուց. Գրիգորը ութ-ինն տարեկան երեխայ էր, երբ վախճանվեց նրա մայր Ագրիպպինան։ Երեմիան նորից չամուսնացաւ. Նա աշխատում էր փոխարինել երեխաների մօրը և այդ պատճառով միանգամայն նուիրվեց իր ընտանիքին։ 1854 թւին, երբ սկսվեց Ղրիմի պատերազմը, Արծրունին Մօսկվայում ստացաւ զինուորական մինիստրից հեռագիր թէ նա, Նիկօլայ կայսրի հաճութեամբ, նշանակվում է Ղրիմում գործող բանակի ընդհանուր ինտենդանտ։ Որքան էլ պատուաբեր լինէր այդ բարձր ուշադրութիւնը, Երեմիան չը կարողացաւ ընդունել այդ կարեւոր պաշտօնը։ Նա շտապեց Պետերբուրգ և անձամբ աղաչեց զինուորական մինիստրին ազատել իրան այդ պաշտօնից։ Գլխաւոր պատճառը, որ բերում էր նա, այն էր, որ նա ութ երեխայ ունի, որոնց չէ կարող թողնել առանց խնամատարի։ Նրա խնդիրքը յարգվեց և նա նորից վերադարձաւ իր ընտանիքի ծոցը։

Բայց Գէորգ Արծրունու որդուն չէին տուած մի գթառատ, քնքշասիրտ մօր յատկութիւնները։ Իբրև հայր էլ՝ նա աւելի նըման էր իր պարտաւորութիւնները վերին

աստիճանի բարեխղճութեամբ կատարող մի զինուորի։ Նա պատրաստ էր իր ընտանիքի համար ամեն տեսակ զոհողութիւններ անել. Նա անապատականի կեանք էր վարում, չէր լինում հասարակութեան մէջ, նրա աշխարհը միայն իր տունն էր, ուր նա կարգադրում էր, ղեկավարում էր, հսկում էր։ Բայց դա մի սպարտացի հայր էր, իր երեխաների համար աւելի մի բարեկամ, քան հայր։ Բընորոշ են մի քանի տողերը, որ նա գրում էր իր որդի Գէորգին, երբ սա գտնվում էր Լեհաստանում գործող զօրքերի հետ։ Հարուստ ընտանիքի զաւակ, համալսարանական կրթութիւն ստացած Գէորգը, բնականաբար, մի քիչ էլ խտացրած գոյներով էր նկարագրում այն զրկանքները, որոնք անպակաս են զինուորականի կեանքում, մանաւանդ արշաւանքների ժամանակ։ Նրա ընկերները, որոնք նոյնպիսի նամակներ էին ստանում նրանից, ափսոսանք էին յայտնում այդ զըրկանքների, չարչարանքների պատճառով։ Բայց ահա ինչ էր գրում նրան հայրը. «Տղամարդը պիտի ամրապնդվի աշխատանքների, զրկանքների և հոգսերի մէջ։ Քնքշացած տղամարդը իմ աչքում կնոջից էլ վատ է»։

Եւ ինքը, հայրը, համարեա ոչ մի առիթ չէր տալիս որդուն կարծելու թէ հայրական

սիրտը կարող է երբ և իցէ մոռացնել տալ այդպիսի համոզմունք ունեցող մի դաստիարակի պարտաւորութիւնները։ Մեր ձեռքում գտնվում են նրա բազմաթիւ նամակները, բոլորն էլ ուղղած Գէորգին։ Այդ կոյտի մէջ չէ կարելի գտնել մի տող անգամ, որի մէջ ծնողական սիրտը խօսէր ջերմ զգացմունքի, ջերմ սիրոյ լեզուով։ Դրանք կիսապաշտօնական գրութիւնների ձև ունեն։ Կարճ ու կտրուկ են, խօսում են միայն գործի մասին. ոչ մի զեղմունք, ոչ մի քնքշութիւն։ Հայրը ցոյց է տալիս որդուն թէ ինչպէս պէտք է ծառայել, ինչպէս պէտք է վերաբերվել գըլխաւորներին, փող է ուղարկում նրան, թիւրքական ծխախոտ, վերմակներ, թաշկինակներ է ուղարկում, հօմէապատիական դեղատոմսեր է գրում փորացաւի դէմ, յատկապէս որդու համար Պետերբուրգ է գնում, որ նրա մասին գնդի վարչութիւնից գրված թղթերին ընթացք տալու մասին միջնորդէ։ Բայց մենք նրա նամակների մէջ չենք տեսնում նոյն իսկ այնքան սովորական «սիրելի» բառն անգամ։ Նամակները անփոփոխ սկսվում են «Իմ բարեկամ Գէորգ» և վերջանում են «Ե. Արծրունի» խօսքերով։

Այսպիսի հայր էր Երեմիա Արծրունին և այսպէս էր նա վերաբերվում իր որդիներին։

*Հօր և որդիների մէջ չը կար սերտ մտերմու-թիւն, սրտաբացութիւն։ Գէորգի ռուս ծա-նօթներից մէկը իր Նամակում պատմում էր*



Գրիգոր ու Անդրէաս Արծրունիներ

*Նրան մի այսպիսի բան։ Երբ այդ ծանօթը յայտնում է Երեմիային թէ Գէորգից ստա-*

ցել է երկու թերթի վրա գրած մանրամասն նամակ, Երեմիան չէ թագցնում որ նախանձում է այդ ծանօթին, որ երկար նամակ է ստացել Գէորգից։ Բայց արդեօք մեղաւորը Գէօրգն էր, որ պատասխանում էր հօր կրսապաշտօնական գրութիւններին նոյնպիսի նամակներով։

1855 թուի ամառը Գէորգ-աղայի կարաւանսարան սարսափելի հրդեհի ճարակ դարձաւ։ Կրակը սկսվեց գործեցի վաճառական Տէր-Ստեփանեանի փակ խանութից և արագ տարածվեց, ոչնչացնելով ամեն ինչ։ Անկարելի եղաւ մի բան ազատել այն բազմաթիւ խանութներից, որոնք տեղաւորված էին այդ հսկայ շինութեան մէջ։ Վաճառականների վնասը հասնում էր 5 միլիօնի, ինչպէս գրում է Երեմիան։ Ստանալով աղէտի լուրը, Արծրունին Մօսկվայից թռչում է Պետերբուրգ, որպէսզի խնդրէ բարձր կառավարութիւնից որ ամենախիստ քննութիւն նշանակվի՝ հրդեհի պատճառները պարզելու համար։ Կասկածներ կային որ չարամտութեան գործ է. այդպէս էին վկայում Արծրունու ստացած նամակները, որոնք ասում էին թէ հրդեհը, երևի, հարկաւոր է եղել մէկին՝ իրան սընանկ յայտարարելու համար։ Այդ մէկն էլ մասամբ յայտնի էր Արծրունուն. դա նոյն

Տէր-Ստեփանեանն էր, որի խանութից սկըսվել էր կրակը։ Դեռ Պետերբուրգում Արծրունին գրում էր թէ նա «մաքուր մարդ չէ»։

Պետերբուրգից Երեմիա Արծրունին գալիս է Թիֆլիս, մնում է այստեղ մի քանի ամիս։ Վնասները մեծ էին, բայց ոչ անդարմանելի։ «Գէորգ-աղայի հեռատեսութեան շընորհիւ,—գրում էր նա—կարաւանսարան քաջաբար դիմագրել է կրակին, որի մէջ հալվել էին նոյն իսկ պղինձն ու արծաթը»։ Ամենայն եռանդով Երեմիան ձեռք զարկաւ կարաւանսարայի վերաշինութեան գործին և կարողացաւ 4—5 ամսվայ մէջ հասցնել նրան նախկին դրութեան։ Բայց ծախսերը այնքան շատ էին, որ Երեմիան սկսեց պարտք անել։ Այդ ժամանակից են սկսվում նրա խոշոր պարտքերը։ Միևնոյն ժամանակ նա քրէական գործ սկսեց Տէր-Ստեփանեանի դէմ, որին մեղադրում էր կարաւանսարան դիտամամբ հրդեհելու յանցանքի մէջ։ Նա յոյս ունէր որ Տէր-Ստեփանեանից կը ստանայ իր վնասները և կը վճարէ պարտքերը. իսկ վընաս նա պահանջում էր մօտ 400 հազար րուբլի։ Սակայն այս դատը տասնեակ տարիներ ձգձգվեց, երկու կողմերին էլ ահագին ծախսեր պատճառելով. վերջը մեղադրվողը արդար ճանաչվեց։

Բայց մինակ կարաւանսարան չէր Երեմիայի հոգածութեան առարկան։ Դեռ 1854-ին, գործերի պատճառով Թիֆլիսում եղած ժամանակ, նա տեսաւ որ բազմաթիւ մեծամեծ շինութիւններ են կառուցվում։ Իշխան Վորոնցովի ժամանակներն էին։ Այդ անխոնջ և հեռատես փոխարքան ամեն կերպ խրախուսում էր քաղաքացիներին որ գեղեցիկ ու մեծ շինութիւններով զարդարեն քաղաքը։ Երեմիան տեսաւ այդ շինարարական տենդը և ինքն էլ վարակվեց։ Նա սկսեց խանութներ շինել տալ փոխարքայի պալատի մօտ գտնվող կալուածի վրա։ Կարաւանսարայի հրդեհից յետոյ նրա համար պարզվեց որ կարելի է կալուածը շատ արդիւնաւոր դարձնել, եթէ այնտեղ մեծ շինութիւններ կառուցվեն։ Եւ նա վճռում է շինել մի առևտրական գալէրէա կամ ինչպէս ինքն էր թարգմանում «գալլէրէա» բառը,—վաճառաճեմելիք։ Դա մի մեծ ծրագիր էր, որ կարող էր գլուխ գալ երկար ժամանակի ընթացքում և պահանջում էր Արծրունու ներկայութիւնը Թիֆլիսում։ Եւ Արծրունին վճռում է տեղափոխվել Թիֆլիս։

Բայց նախ քան տեղափոխվելը, 1857 թւականին, Արծրունին տանում է իր աղջըկան Պարիզ՝ բժշկելու համար, իսկ մնացած

երեխաներին Գէորգի հետ ուղարկում է Գեր-
մանիայի Կրէյցնախ քաղաքը, որի հանքային
ջրերը շատ օգտակար էին գեղձախտով հի-
ւանդ երեխաներին *)։ Ինքը, Երեմիան, բա-
տիպված եղաւ շուտով վերադառնալ արտա-
սահմանից, բայց նրա ընտանիքը Կրէյցնա-
խում մնաց մօտ մի տարի և այդտեղ Գրի-
գորը սկսեց լատիներէնի և գերմաներէնի
դասեր առնել։ Առհասարակ իր որդիների
կրթութեան համար Երեմիան ոչինչ չէր խը-
նայում։ Եւ երբ 1858 թւականին երեխանե-
րը եկան Թիֆլիս, նա ուսուցիչներ վարձեց՝
որ Գրիգորին և Անդրէասին պատրաստեն
գիմնազիա մտնելու։ Այդ ժամանակ չը մո-
ռացվեց և հայերէնը։ Երկու եղբայրները հայ-
երէնի դասեր էին առնում նախ Գրիգոր
քահանայ Տէր-Բարսեղեանից, ապա և «Մե-
ղու Հայաստանի» լրագրի խմբագիր Պետրոս
Սիմէօնեանից։

Ինքը, Երեմիան, օր ու գիշեր զբաղված
էր իր «վաճառաճեմնելիքի» շինութեամբ։ Դէ-

---

*) Խրիմեա Արծրունու նամակներից երևում է որ երեխաները անգլիական հիւանդութիւն ունէին։ Ինչպէս վկայում է բժշկապետ Յ. Գասպարեանցը («Մշակ», 1892, № 147), «դեռ երեխայ ժամանակ անգլիական ոսկրացուից Գրիգորի կմախքը ենթարկվել էր սաստիկ կերպարանափոխութեան»։

պի խոշոր ձեռնարկութիւններն ունեցած տէրը նրան այստեղ այնքան յափշտակեց, որ նա մոռացաւ ամեն զգուշութիւն և մի շատ մեծ գործ սկսեց։ Գէորգ-աղայի պէս նա էլ ճարտարապետներին չը դիմեց, այլ ինքը ծրագրեց շինութիւնը, ինքը ղեկավարում էր վարպետներին։ Գէորգ-աղայի գնած հողը բաւականութիւն չէր տալիս· Երեմիան երկու անգամ դիմում է փոխարքային, գնում է նրա այգուց մօտ 400 սաժէն տարածութիւն 12 հազար րուբլով· գնում է հող նաև իր միւս հարևանից, զինուորական Շտաբից և այսպիսով ընդարձակելով կալուածը, կարողանում է ազատութիւն տալ իր դիտաւորութիւններին և նախագծերին։ Մեծ գործի համար մեծ միջոցներ են հարկաւոր։ Այստեղ էլ կանգ չէ առնում Երեմիան· գրաւ դնելով կարաւանսարան և գալէրէան Անդրկովկասեան Պրիկազում, 200 հազար րուբլուց աւել պարտք է վերցնում և տարիների ընթացքում գլուխ է բերում շինութիւնը այնպէս, ինչպէս ինքն էր ցանկանում։

Շինութիւնը, իսկ որ, փառաւոր էր։ Մի ահագին վաճառանոց էր դա, քաղաքի առաջնակարգ փողոցի վրա, բաղկացած էր բազմաթիւ խանութներից և սենեակներից։ Նա այսօր էլ կայ և զարմացնում է տեսնողին։

«Հայկական Աշխարհը» 1867 թուին գրում էր. «Ժեներալ Արծրունու նոր քարվանսարան հիանալի եւրոպական շինութիւն, քաղաքիս զարդ է դառնում. Պետերբուրգի պատաժը գուցէ սորա անհաւասար հակառակորդ լինի»: Ահա ինչ էր անում այդ զինուորականի կամքը, յամառ բնաւորութիւնը:

Սակայն շինարարական տաղանդի հետ Երեմիա Արծրունին ցոյց տուեց և այն, որ վատ կալուածատէր է: Գեղեցիկ շինութիւնը պատրաստ կանգնած էր, բայց խանութները երկար ժամանակ դատարկ էին, որովհետև տէրը պահանջում էր այնպիսի վարձ, առաջարկում էր այնպիսի պայմաններ, որ վաճառականները չէին կարողանում վարձել: Կալուածը այդպիսով քիչ արդիւնք էր բերում, իսկ ահագին պարտքի տոկոսները կուտվում էին իրար վրա: Եւ այդ հանգամանքը ոչինչ էր Երեմիայի համար. Նա յամառ, իր ասածի մարդ էր աւելի մեծ չափերով, քան իր հայր Գէորգը: Զիջել չը գիտէր նա:

Գալէրէայի շինութեան ժամանակ, 1860-ին, Երեմիան նորից մտաւ զինուորական ծառայութիւն, բայց առանձին պաշտօն չը ստացաւ: 1861-ին նա ստացաւ գեներալ-մայորի աստիճան:

Բացի շինութիւններից, Արծրունուն ա-

*հազիւ ծախսեր էին պատճառում այն բազմաթիւ, մանր ու խոշոր դատաստանական գործերը, որոնք այնքան մեծ տեղ են բռնում նրա կեանքի մէջ և որոնցով նա զբաղվում էր իրան յատուկ յամառութեամբ։ Մենք արդէն տեսանք, որ նա Կ. Պօլսում Ալլահվերդի-օղլուց պահանջում էր $2^1/_2$ միլիօնի մի գումար, ինչպէս նաև այն, որ Թիւրքաց կառավարութիւնից պահանջում էր որ իր հայրական և մայրական կալուածները Վասպուրականում իրան վերադարձնվեն։ Թիֆլիսում, ինչպէս ասացինք, նա տասնեակ տարիներով գործ էր վարում Տէր-Ստեփաննեանի դէմ։ Բացի այդ ամենից նա պահանջում էր ռուսաց զինուորական մինիստրութիւնից 160 հազար րուբլի իր մի կալուածի համար։ Դատարանում կար և մի գործ, որով Արծրունին պահանջում էր մի քանի ռուս վաճառականներից 15 հազար րուբլի։ Աննշան պահանջները, որոնք մեծ թիւ են կազմում, զանց ենք առնում։ Պահանջները մեծ մասամբ անվիճելի փաստերի վրա չէին հիմնված և որքան էլ Երեմիան համոզված էր թէ իրաւունքը իր կողմն է, որքան էլ աշխատում էր եռանդով, բայց համարեա ոչ մի աչքի ընկնող գործ չը տարաւ, այդ մեծ գումարներից ոչ մէկն էլ չը ստացաւ։ 60-ական*

թուականներին նա ստիպված եղաւ դարձեալ խոշոր պարտքեր վերցնել Գրիկաղից, չարունակելով միևնոյն ժամանակ իր խիստ պայմաններով հեռու փախցնել խանութները վարձել կամեցողներին...

Բայց այդքան մասնաւոր զբաղմունքները միանգամայն չը հեռացրին Երեմիային հասարակութիւնից եւ նրա գործերից։ Նա ունի մի քանի գործեր, որոնք ցոյց են տալիս որ նա կարող էր հասարակական ասպարէզում օգտակար ոյժ դառնալ, եթէ այդ տեսակ գործունէութեան էլ այնպէս վերաբերվէր, ինչպէս վերաբերվում էր իր մասնաւոր ընտանեկան գործերին։

1860 թուականին Թիֆլիս եկաւ Վարագի վանքի վանահայր Խրիմեան վարդապետը (այժմ ամենայն հայոց կաթողիկոս), որպէսզի ռուսահայերից նուէրներ հաւաքէ իր բացած ուսումնարանի և տպարանի համար։ Երեմիան այդ գործի գլուխ անցաւ, ինքը ստորագրեց մի խոշոր գումար և աջակցեց նուիրատուութեան։ Զանազան արգելքներ առաջ եկան այդ ժողովարարութեան դէմ, Խրիմեանը ստիպված եղաւ չուտով հեռանալ Ռուսաստանից, բայց և այդպէս, Արծրունու ջանքերով կարելի եղաւ մի գումար ուղարկել Վասպուրականի կրթական պէտքերի համար։

Նշանաւոր է, որ դա առաջին հաւաքական օժանդակութիւնն էր, որ ռուսահայերը տալիս էին իրանց Թիւրքահպատակ եղբայրակիցներին. Նոյն այդ գործում առաջին անգամ ամենամեծ նուիրատուութիւն հաւաքողը Երեմիայի որդի Գրիգոր Արծրունին էր։

Նոյն 1860 Թւին Թիֆլիսում միտք ծագեց հիմնել հայերէն գրքերի մի հասարակական գրադարան։ Այդ գործին առաջին համակրողը Արծրունին էր, որ ամենից առաջ էլ հիմնադիր անդամ գրվեց։ Գրադարանը, սակայն, չը բացվեց։ Բայց աւելի նշանաւոր է այն դերը, որ Երեմիա Արծրունին կատարեց Ներսիսեան դպրոցի պատմութեան մէջ։

Ներսէս կաթողիկոսը իր դպրոցի կառավարութիւնը յանձնել էր երեք հոգաբարձուների, որոնց ինքն էր նշանակել իբրև իր փոխանորդ և ներկայացուցիչ։ Այդ հոգաբարձութիւնը անփոփոխ կառավարեց դպրոցը տասը տարի (1851—1861), բարեկարգեց նրան, նիւթապէս հարստացրեց։ Ներսէսի մահից յետոյ դպրոցում տեղի ունեցան անկարգութիւններ. աշակերտների և հասարակութեան առանձին համակրանքը վայելող տեսուչ Շանշեանը արձակվեց պաշտօնից. Թէ առաջնորդը և Թէ հոգաբարձութիւնը ոչինչ ուշադրութիւն չը դարձրին ժողովրդի պա-

հանձների վրա։ Հոգաբարձութիւնը մերժեց
հասարակութեան հաշիւ տալ, ասելով թէ
ճանաչում է միայն ամենայն հայոց կաթողի-
կոսին և հաշիւ կը տայ միայն նրան։

Հոգաբարձութեան մէջ ամենաազդեցիկ
մարդը աստիճանաւոր Ալէքսանդր Թայիր-
եանցն էր։ Ցայտնի է Թիֆլիսեցիներին որ
այս մարդը չէր բաւականանում հոգաբար-
ձուի պաշտօնով, այլ աշխատում էր վճռող
դեր կատարել մեր եկեղեցական գործերի մէջ։
Կաթողիկոսական ընտրութիւնների ժամա-
նակ նա, միացած Թիֆլիսի առաջնորդ Սար-
գիս եպիսկոպոս Ջալալեանցի հետ, այնպիսի
դեր կատարեց, որ Թիֆլիսի հասարակու-
թեան առաջաւոր մասի զայրոյթը գրգռեց։
Թայիրեանցն էլ ունէր իր կուսակցութիւնը։
Կաթողիկոսական ընտրութիւնից յետոյ այդ
կուսակցութեան դէմ մաքառումը շարունակ-
վեց և կենտրոնացած էր գլխաւորապէս Ներ-
սիսեան դպրոցի շուրջը։ Թէ ինչ հայեացք-
ների տէր էր Թայիրեանցը, երևում է նրա-
նից, որ Աբովեանցին, Նազարեանցին, Շան-
շեանին և առհասարակ բոլոր համալսարա-
նական երիտասարդներին, մանաւանդ դոր-
պատցիներին, նա համարում էր հերետիկոս,
բողոքական, ազգի տունը քանդող և այլն։

Ահա այդ խաւարապաշտ ոյժի դէմ մաքա-

տում էր նոր երիտասարդութիւնը, աշխատելով ոչ միայն հեռացնել Թայիրեանցին դպրոցից, այլ և առհասարակ մշակել մի այնպիսի դպրոցական սահմանադրութիւն, որի մէջ լաւ պաշտպանված լինէին ժողովրդի իրաւունքները։ Այս հակաթայիրեան կուսակցութեան պարագլուխը հանդիսացաւ գեներալ Արծրունին։ Սա իրան յատուկ եռանդով առաջ էր տանում պայքարը և ժողովների մէջ իր խելօք ճառերով պարզում էր թէ ինչ կազմակերպութիւն պիտի ստանայ դպրոցի կառավարութիւնը։ Թայիրեանը ի հարկէ քնած չէր. Նրա կուսակցութիւնն էլ իր ծրագիրն ունէր։ Հակառակ կուսակցութիւնը աւելի կտրուկ միջոցների դիմեց։ Նա հրաւիրեց ժողովրդի ներկայացուցիչներին և մշակելով դպրոցական կառավարութեան գլխաւոր հիմքերը, վճռեց ներկայացնել այդ հիմքերը Մատթէոս կաթողիկոսին մի յատուկ պատգամաւորութեան ձեռքով։ Այդ պատգամաւորներից մէկը, յայտնի գործիչ Միքայէլ Միանսարեանցը գրում էր «Հիւսիսափայլի» մէջ *). «Հիմքերը կամ թէ խնդիրքը որ առաջադրուած են ծայրագոյն Պատրիարքին և Կաթողիկոսին, հաստատե-

*) 1861, № 9.

լու նրանց, և բոլոր խնդրագիրը գրած ու առաջադրուած են Երեմիա Գէորգեան Արծրունու ձեռքով և առանց ընդդիմախօսութեան ընդունված են բոլոր ազգային երեսփոխաններից, բացի երկուքից, որ արել էին ընդդիմախօսութիւնք»։

Ահա Երեմիա Արծրունու խմբագրած հինդ գլխաւոր հիմունքները.

1. Ներսիսեան դպրոցի այն արդիւնքները, որոնք ստացվում են դրամագլուխներից, ընծայաբերութիւններից, կտակներից և այլ աղբիւրներից, պիտի մշտապէս մնան անձեռնմխելի և գործադրվեն հայ երեխաների կրթութեան համար։

2. Դպրոցում սովորող աշակերտների և աւանդվող առարկաների շրջանը պէտք է ընդարձակվի համաձայն եկամուտների չափի ընդարձակման։

3. Բոլոր հայ երեխաները, որոնք մտնում են Ներսիսեան դպրոցը, ուսում պիտի ստանան ձրիաբար, իսկ անտէրունջ որբերը, առաւելապէս եկեղեցականներից, պէտք է դրա հետ սնունդ էլ ստանան դպրոցում. այդ որբերից նրանք, որոնք աւարտում են ուսումը լաւ վարքով և գերազանց ընդունակութիւններով և կամենում են շարունակել ուսումը բարձրագոյն դպրոցներում, ստանում են

դպրոցի դասատուներից օժանդակութիւն որ-
քան կարելի է։

4. Դպրոցի աշակերտներից միայն նրանք են հոգևոր կոչման մէջ մտնում, որոնք իրանց բնաւորութեամբ և ներքին կոչումով կարող են արժանաւոր սպասաւոր լինել եկեղեցու մէջ և որոնք յօժար կամքով ցանկութիւն կը յայտնեն, առանց որ և է ստիպման։

5. Դպրոցը լիակատար կախում ունի ամենայն հայոց կաթողիկոսից։ Թիֆլիսի առաջնորդը դպրոցի կառավարութեան խորհրդարանի առաջին հոգաբարձն ու նախագահն է, իսկ այդ խորհրդարանի միւս անդամները պէտք է ընտրվեն քաղաքի հասարակութիւնից, առանց զանազանելու հոգեւորականներին և աշխարհականներին։

Մատթէոս կաթողիկոսը ընդունեց այդ հիմնական սկզբունքները և 1861 թւականի յունիսի 9-ի իր կոնդակով առաջարկեց Թիֆլիսի հասարակութեան կազմել դրանց համեմատ ընդարձակ կանոնադրութիւն և ներկայացնել իրան։ Միքայէլ Միանսարեանցը «Հիւսիսափայլ»-ի վերոյիշեալ համարում տըպագրած իր գեղեցիկ յօդուածի մէջ *) ասում է.

---

*) Գրում է «Ազգային կրթութիւն և դպրոց» վեր-

Այժմ, երբոր այս սահմանադրութիւնը գրեթէ պատրաստ է արդէն, մեք սուրբ պարտականութիւն ենք համարում հայ մարդու համար, հրատարակել, թէ գեներալ մայիօր Երեմիա Գէորգեան Արծրունու իմացականութեանը, շատ սրտցաւական գործակցութեանը, փորձառութեանը եւ քանագիտութեանը շընորհապարտ ենք այն մասին, որ այս գործը ստացել է այդպիսի քարեյաջող եւ քաղդաւոր ուղղութիւն։

Ցայտնի ու ծածուկ թշնամիք շատ կային, որ անփոյթ չեղան գործ դնել ամենայն տեմակ շատ ու շատ նախատելի հնարներ խափանելու այս գործը եւ վնասելու այն մարդերին, որոնց մի հատիկ մեղքը այն էր, որ ցանկացող էին իւրեանց հայրենակիցների օգտին եւ քարութեանը. բայց Աստուած անտես չարեց մեզ։

Այս մաքառումը յանուն հայրենակիցների օգտի և բարօրութեան, այս տոկուն գործունէութիւնը պարզում է Արծրունիների տոհմին յատուկ մի նշանաւոր հանգամանք, որը չը պէտք է մոռանալ։ Երեմիա Արծրունին, ուրեմն, բոլորովին նման էր իր հօրը։ Ոչ մեծ հարստութիւնը, ոչ ազնուական-արիստոկրատիական հակումները, ոչ ինքնահաւանութիւնն ու յամառութիւնը չարգելեցին նրան հետևել ժամանակի լուսամիտ առաջաւոր հոսանքներին, գործել ժողովրդի ա-

---

նագիրը և նուիրված է «Գեներալ-մայիօր Երեմիա Գէորգեան Արծրունուն»։

նունով և ժողովրդի համար։ Ներսիսեան դպրոցը ստանում էր լայն նպատակի ծառայող կրթական հաստատութեան կերպարանք՝ սահմանադրական կառավարութեամբ։ Դա մեր դպրոցական ինքնավարութեան սկիզբն էր. միանման կառավարչական ձև ստացան և մեր միւս դպրոցները։ Յայտնի է որ Ներսիսեան դպրոցի այդ կանոնադրութիւնը գոյութիւն է պահպանում մինչև մեր օրերը. բայց ահա շատ տարիներ են, ինչ նա անխնայ ծուատվում է խաւարասէր տարրերի ձեռքով իբրև չափազանց ազատամիտ, չափազանց ժողովրդական մի օրէնք։ Եւ ներկայի այս հանգամանքը մեծ պատիւ է բերում Երեմիա Արծրունու և նրա հետ գործող կուսակցութեան հասկացողութիւններին ու ձգտումներին։ Մենք տեսանք որ նոյն պատուաբեր կերպարանքն ունէր և Գէորգաղայի հասարակական գործունէութիւնը։ Հայր ու որդի իրաւունք են տալիս մեզ ասելու որ Արծրունիների տոհմը հայ մեծատունների մէջ մի զարմանալի բացառութիւն էր կազմում. Նրա արեան մէջ—եթէ կարելի է այսպէս ասել—կար ժողովրդասիրութիւնը, կար ժամանակի ոգու առաջաւոր ըմբռնումը։ Եկաւ ժամանակը, և այդ տոհմը առաջ բերեց իր այդ յատկութիւնների ամե-

նանչանաւոր մի ներկայացուցիչ։ Երեմիայի որդի Գրիգորը տոհմային հարստութիւնների միջից դուրս եկաւ տոգորված ռամկական գաղափարներով, թշնամի դասակարգային խըտրութիւններին։ Շատ հազուադիւտ են այսպիսի զարմանալի տոհմերը...

Ներսիսեան դպրոցի նոր կանոնադրութիւնը գործադրութեան մէջ մտաւ, նշանակվեցին հոգաբարձական ընտրութիւններ, բայց Երեմիա Արծրունին չը կամեցաւ շարունակել իր գործունէութիւնը և հրաժարվեց հոգաբարձու ընտրվելուց։ Տունը, կալուածները ամբողջապէս կլանում էին նրա ուշադրութիւնը և 1864 թւին նա վերջնականապէս հրաժարվեց զինուորական ծառայութիւնից։

Նոյնպէս կարճատև էր Երեմիայի գործունէութիւնը և քաղաքային ինքնավարութեան մէջ։ 1866 թւին Թիֆլիսում մտցրվեց քաղաքային կառավարութեան նոր կանոնադրութիւնը. առաջին քաղաքագլուխ ընտրվեց Արծրունին և այդ ընտրութիւնը գոհութիւն պատճառեց քաղաքացիներին, որոնք նախընթաց տարիներից արդէն լաւ ճանաչել էին նրան իբրև շիտակ, կամքի տէր մարդու։ «Թիֆլիսի ժողովուրդը—գրում էր «Հայկական Աշխարհը»—գիտէ որ պ. Արծրունին է մի գործունեայ և ազնիւ մարդ, և այս արդէն

բաւական է. պ. Արծրունու ընտրութեան օրից ազնիւ ծանօթները միմեանց պատահելով շնորհաւորում էին, որ պ. Արծրունին ընտրվել է քաղաքագլուխ»*)։ Սակայն այսպիսի համակրանքի արժանացած քաղաքագլուխը մի կարճ միջոցից յետոյ, 1868-ին, հեռացաւ պաշտօնից. և ապագայում երկար ժամանակ բաւականանում էր ձայնաւորի պաշտօնով։

Երեմիա Արծրունին էլ ունի մի գրաւոր վաստակ։ 1872 թուականի ապրիլին նա Տեխնիկական Ընկերութեան մի նիստում կարդաց մի զեկուցում, որի մէջ յայտնում էր թէ անհրաժեշտ է Անդրկովկասից երկաթուղի տանել մինչև Հնդկաստան։ Այդ զեկուցման հայերէն թարգմանութիւնը նա հրատարակեց նոյն 1872-ին մի առանձին բրօշիւրով, որի վերնագիրն էր «Խնդիր երկաթէ ճանապարհի վերայ դէպի Հնդկաստան»։ Գրքոյկի մէջ երեւում է Երեմիայի գործնական խելքը, նրա մօտիկ ծանօթութիւնը Թիւրքիայի և Պարսկաստանի դրութեան հետ։ Արծրունին հետամուտ էր եղել և Հնդկաստանի դրութեան և կարծում էր որ անգլիացիների ձեռքից հնդկական առևտրի մեծ մասը

*) 1866, № 8—9։

խլել կարելի է, անցկացնելով երկաթուղի Պարսկաստանի վրայով դէպի Հնդկաստան։ Նրա ծրագրով երկաթուղին պիտի սկսվէր Բագուից, անցնէր հիւսիսային Պարսկաստանով դէպի Մէշէդ, Հէրաթ և Քաբուլ։ Այդ ուղղութիւնը ցոյց էր տուած հայերէն քարտէզի վրա, որ կցած էր բրօշիւրին։

Յայտնի է թէ մանաւանդ մեր ժամանակներում որքան ահագին քաղաքական և տնտեսական նշանակութիւն ունեն երկաթուղային այդպիսի ձեռնարկութիւնները։ Հնդկաստանին մօտենալու միտքը շատ վաղուց գոյութիւն ունէր Ռուսաստանում և գեներալ Արծրունին մի նոր բան չէր ասում։ Հետաքրքրական է նիւթի մշակութիւնը և այդտեղ Արծրունու գրուածքը ունէր որոշ չափով ինքնուրոյնութիւն, քանի որ նա անձամբ ճանաչում էր Պարսկաստանը և առանձնապէս ուսումնասիրել էր նրա տնտեսական և առևտրական հանգամանքները։ Իր հօր պէս Երեմիան գրաբար էր գրում, բայց այս բրօշիւրի մէջ ստիպված է եղել դիմել աշխարհաբարին։ Դա մի շատ խամ լեզու է, խառն գրաբարի հետ, հետաքրքրական իր առանձին, ինքնուրոյն դարձուածքներով ու ձևերով։

Մինչև այստեղ մենք բերինք շատ փաստեր, որոնց մէջ երևան է գալիս գեներալ

*Արծրունու բնաւորութիւնը։ Մենք տեսանք թէ ինչպիսի հայր էր նա, ինչ կանոններով էր ղեկավարվում իր յարաբերութիւնների մէջ։ Աւելացնենք այստեղ և մի քանի ուրիշ գծեր։*

*Գիտենք արդէն որ Երեմիա Արծրունին սիրում էր առանձնութիւն և դեռ Մոսկվայում անուանում էր իրան ճգնաւոր, անապատական։ Թիֆլիսում էլ նա մեծ մասամբ նոյնպիսի կեանք էր վարում, հասարակութիւնից հեռու, մենաւոր, իր սակաւաթիւ մօտիկ բարեկամների հետ միայն տեսնվելով։ Ընտանիքից դուրս նա հրապոյր, զուարճութիւն չէր գտնում։ Եւ պէտք է ասել որ նրա տան նման մի գեղեցիկ անկիւն հազիւ թէ շատ լինէր Թիֆլիսում։ Երեմիան ապրում էր գալէրէայի ետևում գտնվող այգու մէջ շինված տանը։ Այդ այգին իր հարուստ բուսականութեամբ մի կատարեալ դրախտ էր ներկայացնում։ Նրա մէջ շինված էր հովանոց, որ ծածկված էր դալար բոյսերով։ Ահա այդտեղ էր օրեր անցկացնում Երեմիան։ Հովանոցի աջ կողմում երևում էին երկու գերեզման. մէկի մէջ թաղված էր Գէորգ-աղան, իսկ միւսի մէջ Երեմիայի մի աղջիկը, որ մեռել էր ծաղիկ հասակում։*

*Պարզ էր Արծրունու կեանքը։ Վեր էր կե-*

նում վաղ առաւօտեան, զբաղվում էր ծաղիկներով ու բոյսերով, ապա նստում էր հովանոցում. այդտեղ էր նա պարապում իր գործերով, ընդունում էր մարդկանց, ճաշում էր։ Իբրև վանեցի, նա չէր մոռանում մածունը և նրանից շինած բրդուշը նրա ամենօրեայ կերակուրն էր։ Երևելեան շուքով ապրող այդ մեծատունը և բարձրաստիճան զինուորականը յայտնի էր ամենքին իր խիստ ու խրոխտ բնաւորութեամբ. նա պահանջող էր, քինախնդիր, բարկացկոտ. սիրում էր որ ամեն բանի մէջ իր կամքը կատարվի, յամառ էր ու կռւող։ Բայց միևնոյն ժամանակ դա մի շիտակ ու ազնիւ մարդ էր, մեծահոգի, բարի ձգտումներ ունէր և ճշմարտասէր էր։ Ահա մի դէպք, որ բնորոշում է թէ ինչ հակացողութիւններ ունէր Արծրունին։ Նրա որդի Գէորգի ընկերները ասել էին, որ եթէ Երեմիան դիմէ այս-ինչ հրամանատար գեներալին, վերջինս կը հրամանագրէ այն գնդի հրամանատարին, ուր ծառայում էր Գէորգը, առաջարկելով նրան որ ներկայացնէ Գէորգին՝ օֆիցերական աստիճան ստանալու։ Գէորգը այս մասին գրում է հօրը։ Մի ուրիշ հայր կը գնար, կը խնդրէր։ Բայց Երեմիան այդպիսի հայր չէր։ Նա չուզեց որ իր որդին աստիճան ստանայ բարձրից եկած հը-

բաժանով, խաթրի համար. և պատասխանեց Գէորգին թէ չի անի այդ քայլը, որովհետև ունի իր հասկացողութիւնները պատուի մասին և խորհուրդ է տալիս այնպէս ծառայել, որ գնդի հրամանատարը ինքնաբերաբար գրէ նրա մասին բարձր իշխանութեան թէ արժանի է աստիճանի:

Ահա մի այսպիսի խիստ, մինչեւ տանը նըստած հօր աչքերի առաջ էին մեծանում և դաստիարակվում Գրիգորն ու Անդրէասը: Ինչ խօսք որ հայրը սիրում էր իր որդիներին. բայց մենք տեսանք թէ ինչպէս էր նա այդ սիրոյ արտայայտութեան մէջ: Երեխաները փակված կեանք էին վարում. միայն յայտնի ժամերին նրանց թոյլատրվում էր զբօսնել այգու մէջ. մնացած ժամանակը նըրանք ծանրաբեռնված էին իրանց դասերով, որոնք աւանդվում էին հէնց այդտեղ, տանը: Գրիգորի և Անդրէասի ընկերներն էլ շատ չէին. մի քանի հատ հասակակիցներ ունէին, որոնք մի-մի հիւր էին գալիս և որոնց հետ նրանք զբօսնում էին իրանց այգում: Թէև հայրն ու որդիները փակված էին միևնոյն անձուկ աշխարհում, բայց այդ կեցութիւնը միևնոյն յարկի տակ չը մօտեցրեց նրանց: Ընդհակառակն, հօր և որդիների մէջ հաստատվեց մի տեսակ պաշտօնական յարաբերու-

թիւն. որոշակի նշանակված էին և այն ժամերը, երբ երկու եղբայրները կարող էին լինել իրանց հօր մօտ։ Եւ այսպէս, Գրիգորի և Անդրէասի որբութիւնը բաւական անմխիթար էր։ Չը կար, ի հարկէ, որ և է պակասութիւն խնամքի, հոգատարութեան կողմից, բայց պակասում էր ծնողական կրակոտ սէրը. չը կար մայր, իսկ հայրը չէր սիրում քնքշութիւններ և նրա ընդունած դաստիարակչական սիստեմը միայն սառնութիւն և պաշտօնական ձևականութիւն էր հաստատում որդիների և հօր մէջ։

Սակայն եղբայրների համար խորթ, անհասկանալի չը մնաց հարազատների սէրը։ Նրանք իրար հետ կապվեցին եղբայրական քնքուշ զգացմունքներով։ Մենք շատ քիչ տեղեկութիւններ ունենք Գրիգորի և Անդրէասի պատանեկական կեանքից։ Միակ մարդը, որ թողել է իր յիշողութիւնները նրանց մասին, հանգուցեալ հնագէտ Ալէքսանդր Երիցեանն է և մենք այդ միակ վկային էլ կը դիմենք։

Ընտանեկան կեանքն էլ իր վերջն ունեցաւ։ Երկու եղբայրները պատրաստվել էին գիմնազիա մտնելու. նրանք աջող քննութիւն տուին, ընդունվեցին և այդպիսով լոյս աշխարհ դուրս եկան։ Վանդակից ազատված

Թռչունների պէս էին նրանք. հայրական աշխարհի անձուկ հօրիզօնը չքացել էր, տեղի տուել աւելի լայն աշխարհայեցողութեան։



Գրիգոր Արծրունի (գիմնազիստ)

Բայց ինչ էին նրանք այդ դպրոցական հասակում։

1863 Թուի յունվարից—պատմում է Երիցեանը—Արծրունու «Գալէրէայի» վերին յարկում պ. Ի. Տէր-Միքէլեանի եւ իմ ընկերութեամբ բացուեց մի գրավաճառանոց ամեն ազգի գրքերի։ Հայերէն քա-

ժինն էլ հարուստ էր եւ շատ նորութիւններ էր բովանդակում իր մէջ։ Արծրունի եղբայրները, որոնք արդէն գիմնազիա էին յաճախում, իրանց ազատ ժամանակն անց էին կացնում մեր գրավաճառանոցում եւ այդպիսով ես միջոց ունեցայ ի մօտոյ ծանօթանալ նրանց հետ։ Գրիգորը մօտ 18 տարեկան էր, նիհար, բարկացոտ եւ շատ ջղային. Անդրէասը մօտ 16 տարեկա՛ն էր՝ խարտեաշ գանգուր մազերով, երեխայական համակրելի անմեղ պատկերով եւ հանդարտ բնաւորութեամբ։ Կրտսեր եղբայրը միանգամայն մեծի ազդեցութեան տակ էր գտնվում։ Բայց չնայելով որ գրեթէ օրօրոցից սկսած սրանք միատեղ եւ միատեսակ էին սնուել եւ զարգացել, երկուսի բնաւորութիւնները բոլորովին տարբեր էին։ Գրիգորը սիրում էր սրախօսութիւններ անել, ծիծաղել եւ մինչեւ անգամ ծաղրել, Անդրէասը լռութիւնով լսում էր, ժպտում եւ մինչեւ ականջները կարմրում։ Նրա՛նք ռուսերէն էին խօսում միմեանց հետ, հօր հետ եւ մեզ հետ։ Երբ հայերէնի վրայ խօսք էր լինում, նրանք հեգնական ժպիտով պատասխանում էին, որ թէեւ չեն խօսում, բայց փոքըր ինչ հասկանում են եւ այնքան, որքան գիմնազիայի համար պէտք է,—գիտեն։ Գրիգորը սիրում էր ծաղրել Պօլսից մեր բերած այնտեղի հայոց դերասանական խմբի պատկերները՝ «Հայք—Թատրօ՛ն, Հայք—Թատրօ՛ն» բացականչելով եւ ծիծաղելով։ Ծիծաղում էր երբ տեսնում էր մեր ձեռքին որեւէ լրագիր՝ «Մեղուն» կամ «Մասիսը». շտապ կանչում էր նա Անդրէասին, հեգնական ժպիտով տալիս էր թերթը նրա ձեռքն ու ապա բարձրաձայն ծիծաղում. «Տե՛ս, հայք լրագիր էլ են ունեցել, երեւակայում եմ թէ ինչե՛ր են տպում...»։

***Գրիգորը և Անդրէասը հէնց այդ 1863 թուականին էլ վերջացրին ուսումը Թիֆլիսի գիմնազիայում։ Բայց այստեղ առաջ եկաւ մի արգելք, որ շատ վշտացրեց եղբայրներին. Անդրէասը կարող էր հասունութեան վկայական ստանալ միայն տարի ու կէսից յետոյ, երբ 18 տարեկան կը դառնար։***

Գրիգորը—շարունակում է Երիցեանը—պատրաստվում էր գնալու բարձրագոյն ուսումն ստանալու համար, եւ եղբայրները առաջին անգամն էր որ պիտի բաժանուէին։ Գրիգորը ծաղրում էր Անդրէասի «անչափահասութիւնը», Անդրէասի խոշոր աչքերը լքցվում էին արտասուքով։ Գեներալ Երեմիան նախ կամենում էր ուղարկել Գրիգորին Ֆրանսիա, ապա փոխեց միտքը եւ 1863 թուի ամառը ճանապարհեց նրան Մոսկուա։

Անդրէասը մնաց մենակ, եղբօր բացակայութիւնը նրա համար շատ զգալի էր։ Գրիգորը նոյն 1863 թուի սեպտեմբերին մտաւ Մոսկուայի համալսարանի բնագիտական ֆակուլտէտը։ Այստեղ, ինչպէս երեւում էր, նա էլ քաշում էր Անդրէասի կարօտը եւ շուտ-շուտ նամակներ էր գրում վերջինիս։ Բարի Անդրէասը, ստանալով եղբօր գրութիւնները, ուրախ-ուրախ ներս էր վազում մեր զրավաճառանոցը եւ կարդում մեզ։ Գրիգորը հպարտութեամբ նկարագրում էր համալսարանական կեանքը եւ իր պարապմունքները։ Մի անգամ եւս, լաւ յիշում եմ, շատ հեգնօրէն գրել էր Մոսկուայի հայ ուսանողների «ժողովի» մասին։ Մի ինչ-որ ժողով ունին, մօտաւորապէս գրել էր նա, ուր կարդում, վիճում եւ խօ-

սում են միմիայն հայերէն, կ'ասեն էլ ուրիշ լեզու չկայ աշխարհի վրայ. ինձ եւս հրաւիրեցին գնալ եւ մասնակցել, բայց ես հրաժարուեցի...»։

Հետեւեալ 1864 թւին Գրիգորը Մոսկվայից տեղափոխվեց Պետերբուրգ, ուր մտաւ համալսարանի նոյն բնագիտական ֆակուլտէտի երկրորդ կուրսը։ Այդ տարին Անդրէասն էլ գնաց Պետերբուրգ։

1864 թուի ամառը—գրում է Երիցեանը—ես գնում էի Պետերբուրգ։ Գեներալ Արծրունին առաջարկեց ինձ տանել հետս Անդրէասին։ Օգոստոս ամիսն էր, երբ մենք հասանք Ռուսաստանի մայրաքաղաքը։ Գրիգորը մի քանի օր առաջ տեղափոխուել էր Մոսկուայից... Բայց Անդրէասին չաջողուեց իսկոյն մտնել համալսարան. նրան առաջարկեցին սպասել դարձեալ վեց ամիս, մինչեւ որ կը լրանայ իր 18 տարեկան հասակը։ Եղբայրները բնակուեցին միասին եւ բաւականաչափ փող էին ստանում հօրից՝ չափաւոր, բայց առանց պակասութեան, կեանք վարելու։ Նրանց առաջին սիրած զուարճութիւնը եղաւ մայրաքաղաքի իտալացոց օպերան, ուր եւ յաճախում էին ստէպ-ստէպ։

Հայրական երկաթէ խնամակալութիւնից ազատվելը երեք պատճառ ունէր. առաջինը տանից գիմնազիա մտնելն էր, երկրորդը՝ Թիֆլիսից Մոսկվա տեղափոխվելն էր. բայց Մոսկվայում էլ ազատութիւնը կատարեալ

չէր. այդտեղ ապրում էին Երեմիայի աներորդիները, որոնց հսկողութեան էր նա յանձնել Գրիգորին։ Երրորդ ատրճանը Պետերբուրգն էր, բայց այդտեղ էլ Երեմիան իր ծանօթների միջոցով կարող էր հսկել իր որդիների վրա։ Ինչպէս կը տեսնենք, հարկաւոր էր չորրորդ ատրճան էլ՝ կատարեալ ազատութեան հասնելու համար։ Կատարեալ ազատութիւնը ահագին նշանակութիւն ունէր երիտասարդի համար։ Ինքը Գրիգորը, սեփական փորձից խրատված, իր առաջին իսկ յօդուածներում զինվեց ընտանեկան խընամակալութեան դէմ և պահանջում էր որ հայ երիտասարդները բարձրագոյն կրթութիւն ստանան իրանց ընտանիքներից շատ հեռու տեղերում, ուր նրանք կարող են միանգամայն ազատ լինել իրանց ծնողների կաշկանդող խնամակալութիւնից...

---

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՈՒՍԱՆՈՂՈՒԹԵԱՆ ՏԱՐԻՆԵՐ

## (1864—1871)

## I

*Ժամանակը։—Հայ ուսանողութիւնը Մոսկվայում եւ Պետերբուրգում։—Գրիգոր Արծրունու առաջին յօդուածները։—Տեսակցութիւն Միքայէլ Նալբանդեանցի հետ։—Հիւանդութիւն եւ ուղեւորութիւն արտասահման։—Նիցցա, շվէյցարական համալսարաններ։—Ինքնաճանաչութիւն։—«Իմ խոստովանութիւնը»։—Մի ուրիշ խոստովանութիւն. կորած սէր, «Էվէլինա»։—Ինչպէս էր Գրիգորը հասկանում հայ ուսանողի պարտաւորութիւնները։*



Գեներալ Երեմիա Արծրունին մնաց Թիֆլիսի՝ իր փառահեղ առանձնութեան մէջ։ Եւ որդիները գնացին գիտութեան տաճարներում կազմակերպվելու իբրև մարդ։ Նրանց առաջին դաստիարակը ժամանակն էր, որ բոլորովին այն ուղղութիւնը չը տուեց մեծատան զաւակ երկու եղբայրներին, ինչ կը

կամենար նրանց գեներալ, բարձր շրջաններում ապրած հայրը։

Այդ ժամանակը մենք արդէն ճանաչում ենք—վաթսունական թւականները, մտքի ազատագրութեան տարիները, որոնց ընդհանուր պատկերը ներկայացրել ենք մի ուրիշ տեղում *)։ Այստեղ մեզ մնում է միայն աւելացնել, որ վաթսունական թւականները մի միապաղաղ և միանման ժամանակամիջոց չէին ներկայացնում, և այն տարիները, որ անցկացրեց Գրիգոր Արծրունին իբրև ռուսաց համալսարանի ուսանող, արդէն պատկանում էին վաթսունական թւականներին առաջ եկած երկրորդ, նոր սերունդին։

Ազատարար րէֆօրմները, գրական շարժումը առաջացրին քառասնական թւականների գաղափարներով սնված մարդիկ։ Նրանք իդէալիստներ էին, նրանց կրթողը մետաֆիզիկան էր (բնազանցութիւնը)։ Բայց ահա Ռուսաստան են մտնում նոր հոսանքներ. թարգմանվում են ժամանակակից եւրօպացի րէալիստ գիտնականների հեղինակութիւնները և հրապարակ է իջնում նոր սերունդը։ Սկսվում է անհաշտութիւն հնի և նորի մէջ և այդ դրութիւնը նկարագրված է

---

*) Տես իմ «Ստեփանոս Նազարեանց» 1902։

Տուրգենևվի «Հայրեր և Որդիներ» վէպի մէջ։ Հէնց այդ անուններով էլ կնքվում են երկու սերունդները։ Հայրերը սկսում են չը հասկանալ որդիներին։ Նոր սերունդը ռէալիստ է, իրապաշտ է, մտաւոր գործունէութեան մէջ տեսնում է ոչ թէ վերացական ձգտումներ, այլ հասարակական օգուտ։ Մինչդեռ հայրերը հետևում էին ընտանեկան և անձնական բարոյականութեան հին, աւանդական կանոններին, որդիները առաջ են քաշում անձնաւորութեան, անհատի կատարեալ ազատութիւնը, ընտանիք, հիմնված փոխադարձ սիրոյ, համերաշխութեան, համահաւասարութեան սկզբունքների վրա։ Երկու սերունդները նման են միմեանց ընդհանուր ձգտումով, որ առաջադիմական է։ Այո, համաձայն են, որ պէտք է առաջադիմել, պէտք է բարեփոխել կեանքի ձևերը։ Բայց ինչ միջոցով։ Այստեղ ահա ճանապարհները բաժանվում են, այստեղ արդէն հայրերն ու որդիները միմեանց չեն հասկանում։

Նորերի, որդիների ամենատաղանդաւոր ներկայացուցիչը գրականութեան մէջ 23—24 տարեկան մի երիտասարդ էր, Դ. Պիսարեվ, որի գրուածքները (նա գրում էր բանտի մէջ) այդ ժամանակ յափշտակութեամբ կարդում էր ամբողջ ինտելիգենտ Ռուսաստանը։ Պի-

սարեվը մի հերոս ունէր—մտածող, առաջա-
դիմող ռէալիստ. այդ հերոսի ամբողջ ձըգ-
տումն է անհատի կատարեալ ազատագրու-
թիւնը, նա պիտի կատարելագործվի, զար-
գանայ դրական գիտութիւնների ղեկավա-
րութեամբ։ Եւ այդ պատճառով Գրիսարեվը
վերին աստիճանի ոգևորված եղանակով հը-
րաւիրում էր գրողներին ժողովրդականացնել
պատմական և բնական գիտութիւնները և
ինքն էլ միևնոյն ժամանակ իր գործունէու-
թեան գլխաւոր մասը նուիրում էր այդ գոր-
ծին։

Գրիսարեվը չէ ճանաչում հեղինակութիւն-
ներ. նա կրկնում է՝ «մենք աղքատ ենք և
յիմար» ու պահանջում է կրթութիւն, դրա-
կան կրթութիւն, և ամեն բան, որ միտք չունի
ռէալական կեանքի տեսակէտից, նա համա-
րում է ապարդիւն, անհասկանալի։ Հար-
կաւոր է խելացի, օգտակար աշխատանք։ Աշ-
խատանք և աշխատանք։ Թող անկախ ու ա-
զատ լինի անձնաւորութիւնը, թող նա ինքը
որոշէ իր ոյժերը և այն՝ թէ ինչպէս և ինչ
ասպարէզում կարող է գործադրել նրանց։
Այսպիսով իւրաքանչիւր մարդ նախ և առաջ
կը տնտեսէ ոյժերը։ Իսկ ոյժերի տնտեսելը
մի մեծ սկզբունք պիտի լինի մարդկութեան
համար։

Ահա ինչ հոսանքներ էին տիրում վաթ-սունական թվականների երկրորդ կեսում․ ահա ինչ մտքեր էին յափշտակում այն ժամանակվայ երիտասարդութիւնը։ Մեր Գրիգոր Արծրունին այդ իսկ ժամանակվայ արդիւնքն էր։ Նա Պիսարեվի ուզած հերոսներից մէկն էր—մտածող, առաջադիմող ռէալիստ։

Շատ և շատ ցաւալի է որ մենք չունինք Գրիգոր Արծրունու ուսանողական տարիների մանրամասն պատմութիւնը։ Այս հանգամանքը մեզ այսօր թոյլ չէ տալիս տեսնել թէ ինչպէս մշակվեց նրա մէջ մտածող ռէալիստի տիպը, ինչ շրջաններից, ինչ ազդեցութիւններից նա քաղեց այն սկզբունքները, որոնք այնուհետև հաստատվեցին նրա մէջ, ձուլվեցան նրա գոյութեան հետ։

Միայն այնքանը գիտենք, որ Գրիգորը Պետերբուրգում մտաւ հայ ուսանողութեան շրջանը։ Երբ գործ ենք ածում «հայ ուսանողական շրջան» անունը, չը պիտի մոռանանք որ դա նշանակում է գլխաւորապէս ազգայնական հողի վրա գոյութիւն ունեցող մի համախմբում։ Հայ երիտասարդների այդ տեսակ համախմբում մենք առաջին անգամ, քառասնական թվականների վերջից, տեսնում ենք Դորպատում։ Ապա նա «Հիւսի-

տափայլի» ժամանակներում գոյութիւն է ստանում Մոսկվայում, իսկ այստեղից անցնում է և Պետերբուրգ։ Պետերբուրգեան հայ ուսանողի ամենաեռանդոտ, անխոնջ նախատիպը Ռափայէլ Պատկանեանն էր։ Դեռ յիսունական թւականներին նա, համարեա մենակ, հայերէն տպագրութիւն սկսեց հիւսիսային մայրաքաղաքում և շատ բան տուեց, գլխաւորապէս իր ամենագեղեցիկ ստանաւորները։ Այդ գործունէութիւնը հետզհետէ գրաւում է հայ երիտասարդներին և Պետերբուրգում սկսվում է մի գրական փոքրիկ ժամանակամիջոց, որ չէ կարող մոռացվել մեր պատմութեան մէջ։

1859 թւականին Պետերբուրգում երկու ազգայնական հիմնարկութիւնների միտք է ծագում. մագիստրոս Կարապետ Եզեանց ուզում է բաց անել մի դպրոց՝ յատկապէս հայ երիտասարդներին օտարացումի վտանգից ազատ պահելու և նրանց ազգային կրթութիւն տալու համար, իսկ Մ. Բուդաղեանց հայերէն լրագիր հրատարակելու թոյլտւութիւն է խնդրում, բայց չէ ստանում։ Հայերէն լրագրի միտքը Պետերբուրգում իրագործում է Ռափայէլ Պատկանեանը, որ ուսումն աւարտելուց յետոյ բնակութիւն է հաստատում մայրաքաղաքում, բաց է անում սե-

փական տպարան, տպագրում է գրքեր, իսկ 1864-ից սկսում է «Հիւսիս» լրագիրը: Պե-տերբուրգի հայ գաղութը ունէր այդ ժամա-նակներում բաւական աչքի ընկնող գրական գործիչներ: Այդտեղ էր երիտասարդ գիտնա-կան Քերովբէ Պատկանեանը, այդտեղ էր Ռա-փայէլի հայրը, քահանայական աստիճանից զրկված Գաբրիէլ Պատկանեանը. այդտեղ էր Միքայէլ Միանսարեանը: Հայ ուսանողու-թիւնը այդպիսով ունէր շատ յարմարութիւն-ներ՝ իր ազգի ցաւերի մասին մտածելու և նրա մտաւոր շահերին նուիրվելու համար:

Հանգուցեալ Երիցեանը պատմում է որ բացի հայ ուսանողական ժողովից, Պետեր-բուրգում կրթվող երիտասարդները ունէին և մի այլ շրջան—Կարապետ Եզեանցի ընտա-նիքը, ուր նրանք գտնում էին սիրալիր հիւ-րասիրութիւն և ուր խօսքն ու զրոյցը պտը-տում էր հայութեան շուրջը: Այդտեղ էին լինում և Արծրունի եղբայրները: Գրիգորը, որ դեռ գիմնազիայում յայտնի էր իբրև տաք ու վառվռուն երիտասարդ, սկսում է առանձ-նապէս հետաքրքրվել հայոց հասարակական և գրական հարցերով: Նրա ընկերակիցների մէջ ոչ ոք նրա պէս տոգորված չէր վաթ-սունական թւականների երկրորդ սերունդի գաղափարներով: Հանրամարդկային, ընդհա-

նուբ առաջադիմական իդէալները գտնում են նրա մէջ մի ջերմեռանդ երկրպագու. բայց այդ երկրպագուն չէ մնում ազգայնական գաղափարներից դուրս, կօսմօպօլիտ, այլ մասնաւորում է իր գործունէութիւնը, նուիրելով նրան ամբողջապէս իր ազգին. Նա դաւանում է հանրամարդկային առաջադիմական ձգտումները ազգայնացնող, դառնում է մտածող և առաջադիմող րէալիստ յատկապէս հայերի համար։

Երիցեանի վկայութիւնից մենք տեսանք որ Մօսկվայում, 1864-ին, Գրիգորը հեռու էր պահվում հայ շրջաններից և զարմանում էր որ ուսանողական ժողովը հայերէն լեզուն է գործ ածում, կարծես թէ աշխարհի մէջ չը կայ մի այլ լեզու։ Միջոց չունենալով ստուգելու թէ որքան ճիշտ է սա, մենք, այնուամենայնիւ, թոյլ ենք տալիս մեզ կարծելու, որ հանգուցեալ հնագէտի այդ խօսքերի մէջ կայ չափազանցութիւն։ Եւ այսպէս վարվելու մեզ իրաւունք է տալիս այն հանգամանքը, որ հէնց յաջորդ տարին, 1865-ին, Գրիգորը ոչ միայն այդպէս չէ վերաբերվում հայերէնին, այլ և գրում է երկու յօդուած հայ լրագրում։ Այդքան կարճ միջոցում այդպիսի խիստ փոփոխութիւն— շատ հասկանալի չէ։ Ամենևին չը հերքելով

որ շրջանը կարող էր վճռական ազդեցություն անել, արմատապէս փոխել աշխարհայեացքները, մենք, այնուամենայնիւ, ուզում ենք հաւատալ որ այդ կերպարանափոխութեան սկիզբը դրվեց Մոսկվայում, այն ժամանակից, երբ Գրիգորը, ազատվելով իր նախնական դաստիարակութեան կապանքներից, իր արիստոկրատ ընտանիքի նախապաշարմունքներից, ոտք դրեց ուսանողական աշխարհում իբրև հասունացած երիտասարդ, իբրև ապաւորվող, ժամանակի ոգին հեշտութեամբ ըմբռնող մարդ։

Սակայն դա այնքան էլ կարևոր չէ։ Փաստը այն է մնում, որ Արծրունին իր ուսանողութեան երկրորդ տարուց սկսում է գրել հայերէն։ Առաջին յօդուածը տպվեց «Մեղու Հայաստանի» լրագրում 1865-ի ապրիլին (№№ 13 և 14) և ունի այսպիսի վերնագիր. «Բնական գիտութիւնների նշանակութիւնը դաստիարակութեան մէջ»։ Իբրև բնական գիտութիւններ սովորող, բայց մանաւանդ իբրև հարազատ զաւակ իր ժամանակի, երբ Ռուսաստանում լուրջ և առողջ ռէալիզմը առանձին ոգևորութեամբ ուսումնասիրում էր բնական գիտութիւնները, Արծրունին, ի հարկէ, այդտեղից պիտի սկսէր։ Այս առաջին իսկ քայլում խօսում է նրա մէջ կեանքի,

*դրական պահանջների մարդը։ Իսկոյն երեւում է, որ մեր սկսնակ գրողը «Հիւսիսափայլի» ուղղութեան մարդ է. Նազարեանցի ամսագիրը, ինչպէս գիտենք, առանձին ուշադրութիւն էր դարձնում բնական գիտութիւնների վրա։ Մանաւանդ որքան «հիւսիսափայլական» շեշտեր ենք գտնում Արծրունու հետեւեալ տողերի մէջ.*

Մենք էլ ունինք լատիներէն լեզուի նման մի լեզու՝ մեր գրաբարը, ունինք նաեւ Աստուածաշունչ, քրիստոնէական հրահանգ եւ այլն, որոնք թէպէտ շատ հետաքրքիր եւ օգտակար առարկաներ են, բայց երեխանց համար անհասկանալի եւ ուրեմն վերացեալ։ Եւ ճշմարիտ, ամենին մեզանից յայտնի է, ինչ դժուար է եւ ձանձրալի երեխի համար գրաբարի հոլովմունքներ եւ խոնարհմունք սովորել, կամ թէ Մսերի գրքով Աստուած բառի նշանակութիւնը մեկնել։

*Երկրորդ յօդուածը, որ տպվեց դրանից քիչ յետոյ նոյն «Մեղու»-ի մէջ, անուանված է «Երկու խօսք աղջկերանց դաստիարակութեան վրայ»։ Այստեղ Արծրունին ցոյց է տալիս իր ապագայ գործունէութեան ամենանշանաւոր ճիւղերից մէկը—կանանց կրթութեան և ազատագրութեան պաշտպանութիւնը։ Այս մասին մենք մի քիչ յետոյ կը խօսենք։ Այժմ բերենք մի կտոր, որի մէջ*

***քան տարեկան ուսանողը հանդէս է գալիս իբրև մայրենի լեզուի ջերմ պաշտպան։***

Մայրաքաղաքներումը—ասում է նա—մեր տընային կրթութեան մէջ կայ մի ուրիշ անպիտան կողմն էլ։ Երեխերք մոռանում են իրանց լեզուն, ուրեմն եւ զրկւում են իրանց զարգացման բնական միջոցից. կորցնում են սէրը դէպի իրանց ազգը եւ շատ անգամ էլ ատում են իրանց հայրենակիցներին։ Եւ միեւնոյն ժամանակը ինչպէս հայրերը, նոյնպէս եւ որդիքը, չափազանց հպարտ են եւ ինքնահաւան, երեւի էնդուր որ չունին ոչ ազգ, ոչ կրօն, ոչ լեզու, ոչ էլ առողջ միտք։

***Շատերն են մինչև այդ գրել այսպիսի դառն ու ճշմարիտ խօսքեր։ Բայց այս խօսքերը մեզ համար առանձին նշանակութիւն են ստանում, երբ դուրս են գալիս Գրիգոր Արծրունու բերանից։ Չէ՞ որ նա ինքն էլ ընտանեկան այդ տեսակ կրթութեան զոհերից մէկն էր. չէ՞ որ նա էլ «հպարտ և ինքնահաւան» էր հէնց այն պատճառով որ չունէր «ոչ ազգ, ոչ կրօն, ոչ լեզու»։ Այստեղ մեր առջև կանգնած է օտար ու խորթ կրթութեան պտուղներից մէկը, որ հասկացել է դրութեան անբնականութիւնը և խոստովանում է իր ծնողների մեղքերը։***

***Դուրս գալով հայկական իրականութիւթիւնից, Գրիգոր Արծրունին հէնց իր առա-***

ջին քայլերից ներկայանում է նախ և առաջ իբրև սատիրիկ, անխնայ բողոքը այդ իրականութեան այլանդակութիւնների դէմ։ Եւ նրա բողոքի առարկան ամենից առաջ այն շրջանը պիտի լինէր, որ ամենից շատ էր նրան ճնշել, այսինքն ընտանիքը։ Իր ուսանողութեան երկրորդ տարում նա արդէն կանգնած է այն ճանապարհի վրա, որ նրա ամբողջ կեանքի փայլուն ճանապարհը պիտի դառնար։ Արդէն իւրացրել է որոշ, հաստատուն աշխարհայեցողութիւններ, հասկացել է մայրենի լեզուի նշանակութիւնը, բողոքողի դերը քնած ու նախապաշարված հասարակութեան մէջ։ Նա գիտէ թէ ինչպէս պէտք է ծառայել մի այդպիսի ժողովրդին և իր առաջին յօդուածի համար նշանաբան է առնում Գէօթէի խօսքերը. «Դու չես կարող մի մեծ բան չինել ու ահա սկսում ես փոքր բանից»։ Սա դրօշակ է, սա գործունէութեան մի ամբողջ ինքնուրոյն ծրագիր է։ Արծրունին իր ամբողջ կեանքում նկատի ունէր որ այդպէս է հայ ժողովուրդը. և այդ պատճառով ամեն ինչ սկսում է այբուբենից, տարրականից. բոլոր հարցերը նա քննում է վերին աստիճանի պարզ, հանրամատչելի կերպով, բազմաթիւ անգամ կրկնում է իր ասածները, լուսաբանում և արծարծում է իր

գաղափարները։ Իր դաստիարակչական դերը կատարելու համար նա բնութիւնից ստացել էր մի անգին զարդ—պարզ ու կտրուկ խօսելու շնորհք։ Այդ երկնային շնորհքը նա ցոյց է տալիս իր առաջին գրուածքներից։

Արծրունին զգում էր իր կոչումը։ Եւ այդ պատճառով նա չը բաւականացաւ «Մեղուին» աշխատակցելով։ Մի անկախ և ըմբոստ բընաւորութիւն, նա չէր կարող բացվել, ըստեղծել, եթէ չունենար խօսքի սեփական, անկախ գործիք։ Եւ մենք տեսնում ենք որ նա դեռ նոյն 1865-ին սկսում է մտածել սեփական լրագիր հիմնելու մասին։

Պատմում են որ Արծրունին մի առանձին սէր ունէր դէպի լրագիրը դեռ մանկութիւնից։ Դեռ Մօսկվայում, ասում են, փոքրիկ Գրիգորը խմբագրում էր ֆրանսերէն լեզուով մի լրագիր, որի ընթերցողներն ու բաժանորդները նրա փոքրահասակ քոյրերն ու եղբայրներն էին։ Այս երեխայական գործից մենք ոչինչ եզրակացութիւններ հանել չենք ուզում. գուցէ դա մի զուարճութիւն էր միայն, որի իսկական միտքը նա չէր էլ ըմբռնում։ Բայց ահա 1865-ին նա, համալսարանական ուսանող, արդէն հայ գրող դարձած, լրագրական գործին նուիրվելու միտքն է հաստատում իր մէջ։ Այստեղ արդէն չենք

կարող ուրանալ կատարեալ գիտակցութիւնը. այստեղ արդէն Արծրունին հանդէս է գալիս իբրև իր ապագայ գործունէութեան որոշ ծրագիր կազմած մի երիտասարդ։

Եւ լրագիր հրատարակելու միտքը նա ծածուկ չէ պահում իր մէջ։ Մի օր նա հանդիպում է Միքայէլ Նալբանդեանցին։ «Մեր հայրենիքի» և «Ազատ Աստուած»-ի հեղինակը նոր էր դուրս եկել բանտից։ Նա Երեմիա Արծրունու լաւ ծանօթն էր դեռ Մօսկվայից. իսկ երբ գնում էր Էջմիածին, Թիֆլիսում յաճախ այցելում էր Երեմիային և ճանաչում էր նրա երեխաներին։ Խօսակցութեան մէջ Գրիգորը յայտնեց Նալբանդեանցին թէ դիտաւորութիւն ունի մտնել հայ հրապարակախօսութեան ասպարէզը։ Նալբանդեանցը խրախուսում է նրան, հաւանութիւն է տալիս այդ մտքին, միենոյն ժամանակ հարկ է համարում խրատներ տալ նրան, խրատներ, որոնք հիմնված էին նրա փոթորկալից կեանքի փորձի վրա։ Նա ցոյց է տալիս իրան։ Սարսափելի հիւանդութիւնը արդէն բոլորովին կրծատել էր այդ կրակոտ մարդուն. «Հիւսիսափայլի» աշխատակիցը մի քանի ամսվայ հիւր էր այս աշխարհում։ Բացատրելով իր գլուխն եկած փորձանքների պատճառը, Նալբանդեանցը խորհուրդ է տալիս Արծ-

բունում գործել բացարձակ, օրինական ճանապարհի վրա, հեռու մնալ ռուս յեղափոխական գործիչներից։ Եւ Արծրունին պատմում էր որ իր վրա խոր տպաւորութիւն գործեց Նալբանդեանցի այդ խրատը։ Եւ իրաւ, նա իր ուսանողութեան տարիներում չը յափշտակվեց ժամանակի քաղաքական շարժումներով։ Բացի Նալբանդեանցից, Արծրունին ուրիշ ուսանողներին էլ յայտնել է իր այդ միտքը։

Պետերբուրգում Գրիգորը երկար ապրել չը կարողացաւ։ Նոյն 1865 թւականի վերջերում նա սաստիկ հիւանդացաւ, սկսեց արիւն թքել։ Այնքան սաստիկ էր հիւանդութիւնը, որ մի անգամ, երբ նա գնում էր բժշկի մօտ, փողոցով անցնողների ուշադրութիւնը գրաւեց։ Այնքան յաճախ հազում և արիւն էր թքում նա, որ անց ու դարձ անողները զարմացած նայում էին ձիւնի վրա կազմվող արեան բծերին և գլուխները շարժելով, շարունակում էին իրանց ճանապարհը։ Գրիգորը դիմում է Պետերբուրգի նշանաւոր բըժիշկներին, բայց ամենքն էլ յայտնում են որ նա չի ապրի։ Նոյն այդ վճիռն է արձակում և հռչակաւոր բժշկապետ պրօֆէսօր Բօտկինը, որին ի վերջոյ դիմել էր Արծրունին։ Բօտկինը Գրիգորի մեծ եղբայր Գէոր-

գի համալսարանական ընկերն էր, ուստի և մեծ սիրով ընդունեց հիւանդին, քննեց ամենայն խնամքով, անկեղծ կերպով ցանկանում էր օգնել իր մտերիմ ընկերի եղբօրը։ Բայց հմուտ պրոֆէսօրն էլ գալիս է այն եզրակացութեան, որ ազատել երիտասարդի կեանքը անհնարին է։ Գրիգորը պահանջում է որ բժիշկները իր երեսին յայտնեն ամբողջ ճշմարտութիւնը, ասելով թէ ինքը չէ վախում մահից։ Եւ երբ լսում է սարսափելի դատավճիռը, չէ յուսահատվում, այլ վճռում է գործ դնել վերջին միջոցները։

Բժիշկները ասել էին որ նա երկու ամսից աւելի չի ապրի։ Հաղորդելով այդ բանը իր հօրը, Գրիգորը յայտնում էր նրան թէ ինքը լաւ է համարում անցկացնել իր կեանքի այդ վերջին ամիսները Ֆրանսիայի Նիցցա քաղաքում, որ յայտնի է իր տաք կլիմայով։ Երեմիան թոյլ է տալիս գնալ և Գրիգորը անմիջապէս ճանապարհվում է Նիցցա, ուր և բնակութիւն է հաստատում։

Նիցցան Արծրունին նկարագրել է իր «Էվէլինա» վէպի մէջ, որի գլխաւոր հերոսն էլ, ի դէպ ասած, ինքն է։ Ձմեռը հրաշալի է Նիցցան և այդտեղ են գալիս Եւրոպայի զանազան կողմերից .կրծքի հիւանդութիւն ունեցողները։ Միջերկրականի ծովափը չա-

տերի համար է դառնում գերեզման, բայց երիտասարդ հասակը, առողջապահական կանոնների համաձայն կեանք վարելը բարերար ազդեցութիւն են անում Արծրունու վրա։ Նա ապրում է Նիցցայում եօթն ամիս և կենդանանում է։ Այդ եօթը ամսվայ ընթացքում նա մի բառ չէ արտասանել, որովհետև բժիշկները արգելել էին խօսել։ Նա պատմում էր, որ երբ հիւրանոց էր գնում ճաշելու և ծառան բերում էր կերակուրների ցուցակը, նա, որպէս համր, մատը դնում էր ուզած կերակուրի վրա և այդպէս ցոյց տալիս թէ ինչ է ուզում ուտել *)։ Վտանգը, շնորհիւ այդպիսի կեցութեան և տաք ու մեղմ կլիմայի, անցնում է։ Գարնանը նա բոլորովին առողջ էր։ Սկսվեցին Նիցցայի անտանելի տաքերը։ «Բժիշկների խորհրդով պէտք է փախչէի Նիցցայից,—կարդում ենք «Էվէլինա»-ի մէջ։—Քաղաքը թողնելուց առաջ ես ուզեցի հանել տալ լուսանկարս, որպէսզի իմ կենդանագիրս ուղարկեմ Կ. Պօլիս **), ծնողներիս, նրանց ցոյց տալու համար թէ

---

*) «Մշակ», 1892, № 147։

**) Վէպի մէջ Արծրունին, իր անձնաւորութիւնը քօղարկելու համար, անուանում է իրան պօլսեցի։ Դա միակ կենսագրական անճշտութիւնն է վէպի մէջ։

առողջացել եմ։ Բայց երբ ստացայ լուսանկարս, զարմացած մնացի... Միթէ ես այդ աստիճան չաղացել էի... Ես աչքերիս չէի հաւատում...»։

Մահից ազատվելով, նորից ստանալով իր



Գրիգոր Արծրունին Նիցցայում

երիտասարդական ոյժերն ու եռանդը, Արծրունին շտապում է վերանորոգել իր պարապմունքները, որոնց ընդհատել էր սարսափելի հիւանդութիւնը։ «Ուրեմն ես կատարելապէս առողջ եմ, մտածեցի ես, ուրեմն և

կարող եմ այստեղ, արտասահմանում, շա-րունակել և աւարտել համալսարանական ու-սումս», ասում է «Էվէլինայի» հերոսը: Պե-տերբուրգ վերադառնալու մասին, ի հարկէ, չէր էլ կարելի մտածել: Նա մնում էր Եւրո-պայում, հեռու, շատ հեռու իր ընտանիքից և հայրենի հասարակութիւնից: Նա ճաշակեց այնքան հեռաւորութեան տուած բարիքները և այնուհետև իր յօդուածներում պնդում էր թէ ամեն մի երիտասարդ հայ, որ կամե-նում է ազատ և բազմակողմանի զար-գանալ, իւրացնել եւրոպական քաղաքակըր-թութիւնը, պիտի շատ և շատ հեռանայ իր տանից ու քաղաքից:

«Բժիշկը խորհուրդ էր տուել ինձ երկու շաբաթից յետոյ գնալ Շվէյցարիա և այնտեղ անցկացնել ամառը: Ես վճռել էի գնալ Ցիւ-րիխ, որտեղ կարող էի համալսարանական դասախօսութիւններին էլ հետևել»: Այդպէս էլ անում է նա: Բնակութիւն հաստատելով Շվէյցարիայում, նա ուսանող է գրվում Ցիւ-րիխի համալսարանում, սկսում է եռանդով պարապել: Միևնոյն ժամանակ վերանորո-գում է իր գրական գործունէութիւնը, որի սկիզբն էր դրել Պետերբուրգում: 1866 թւի ընթացքում Թիֆլիսի հայոց պարբերական մամուլի մէջ լոյս չը տեսաւ Արծրունու և ոչ

մի յօդուածը։ Բայց հետեւեալ տարվանից նա սկսում է կանոնաւոր կերպով աշխատակցել գլխաւորապէս «Հայկական Աշխարհ» ամսագրին, երբեմն-երբեմն յօդուածներ ուղարկելով նաև «Մեղուին»։

Առաջին գրուածքը, որ Արծրունին ուղարկեց «Հայկական Աշխարհին», մի գեղեցիկ յօդուած էր «Աշխատանք» վերնագրով, քաղուածք Էդմօնդ Աբուի «Le Progrés» անունով գրքից։ Այդ յօդուածը, որի մէջ այնքան սիրուն կերպով բացատրված է աշխատանքի նշանակութիւնը, Արծրունին կազմել էր Ժընեվում 1866-ի նոյեմբերին։

Ցիւրիխի համալսարանում Արծրունին երկար չէ մնում, այնտեղից տեղափոխվում է Ժընեվ, բայց շուտով այդ տեղն էլ է թողնում. 1867-ին նա անցնում է Գերմանիա և այդտեղ ուսանող է մտնում Հէյդլբերգի համալսարանը։ Ցիւրիխում և Ժընեվում նա գլխաւորապէս լսում էր քաղաքական և քաղաքատնտեսական գիտութիւններ, իսկ Հէյդլբերգի համալսարանի փիլիսոփայութեան ֆակուլտէտում — քաղաքատնտեսութեան պատմութիւնը, ֆինանսները և ահասարակ քաղաքատնտեսական գիտութիւնները. միաժամանակ գրվել էր և բնագիտական բաժնի մի քանի դասախօսութիւններին։

Այդ բոլոր առարկաներից դասախօսում էին այնպիսի նշանաւոր պրօֆէսօրներ, ինչպէս են Բլունչլի, Ռաու, Տրէյչկէ, Կնիս, Հելմհօլց, Վունդ։ Եւ Արծրունին ընտրեց գիտութեան այդ ճիւղերը, նկատի ունենալով իր նպատակը—հայերէն լրագիր հրատարակելը։

Համալսարանական պարապմունքները չէին մոռացնել տալիս Արծրունուն հայոց մամուլը և նա մեծ եռանդով շարունակում էր իր աշխատակցութիւնը։ Նրա գրուածքները աննկատելի չէին անցնում, ընդհակառակը, գործում էին խոր տպաւորութիւն և փոքրաթիւ ընթերցող հասարակութեան մէջ առեղծում էին համակրանք դէպի երիտասարդ հեղինակը։ Այստեղ մենք դեռ այդ գրուածքների մասին չենք խօսում։ Հետաքրքրականը այստեղ այն է թէ ինչպէս Արծրունու մէջ կազմակերպվեց որոշ աշխարհայեցողութիւն, որոշ ու խիստ ուղղութիւն։

Մենք տեսանք մեր եռանդոտ ուսանողին Ռուսաստանում. տեսանք որ նա վաթսունական թւականների երկրորդ կէսի մարդ էր, այսինքն մտածող բէալիստ, անհատի ազատութեան երկրպագու, կատարելագործող, առաջ տանող աշխատանքի քարոզիչ։ Այդ պաշարով նա անցաւ Եւրօպա։ Բաղաքակիրթ, ազատ երկրների մէջ նա աւելի ևս հարըս-

***տացնում է այդ պայքարը, աւելի և լայն հո-րիզոններ է տեսնում, դրական գիտութիւն-ների մէջ հմտանում է, կրթվում, հիմնաւո-րապէս դաստիարակվում։ Նրան դաստիարա-կում էր ոչ միայն բարձրագոյն դպրոցը, այլ և կեանքը իր բազմաթիւ երևոյթներով, հա-րուստ գրականութիւնը։***

***Հետաքրքրական է պատկերացնել Արծ-րունու ուսանողական կեանքը, տեսնել թէ ինչ էր անում, ինչպէս էր աշխատում, ինչ տպաւորութիւններ էր վերցնում ուսանողա-կան միջավայրերից։ Քանի որ չը կան այդ մասին տեղեկութիւններ, մենք դարձեալ պիտի դիմենք «Էվէլինային», չը մոռանալով որ այդ վէպի հեղինակը «ես» անունով գոր-ծող անձի մէջ իրան է նկարագրել։ Ահա ինչ-պէս է նկարագրում իր կեանքը Ցիւրիխում.***

*Ես կատարելապէս առողջացած էի զգում ինձ եւ պարապում էի մեծ եռանդով. ուսանողական գործունեայ կեանքը կլանել էր ինձ իր մէջ ամբող-ջապէս։ Այդտեղ գրաւում էր ինձ եւ մի նոր երե-ւոյթ, նոր ոչ թէ միայն ինձ համար, բայց եւ ամ-բողջ Եւրոպայի համար... Ուղիղ այդ ժամանակ ե-րեւացին Ցիւրիխի համալսարանում երկու ռուս կա-նայք, Եւրոպայի համալսարանների առաջին ուսա-նողուհիներ, կանանց բարձրագոյն կրթութեան մարմ-նացած կարապետներ... Ես շտապեցի ծանօթանալ նրանց հետ եւ այն օրից յափշտակվեցայ հասարա-*

կական նոր իդէալներով։ Այդ երկու կանանց շուրջը խմբվում էինք մենք, այլ եւ այլ ազգութիւնների պատկանող ուսանողներս. նրանք, այդ կանայք էին, որոնք կազմում էին ուսանողների այդ բոլոր տարբեր խումբեր իրար մէջ կապող օղակը...»։

*Այդ ուսանողուհիների մասին Արծրունին մի յօդուած ունի «Հայկական Աշխարհի» մէջ* (1869)։ *«Հասարակական նոր իդէալներ», որոնց իւրացնում է աղամարդը կնոջ ազդեցութեան տակ—այս մասին շատ է գրել Արծրունին, այս նիւթի վրա է հիմնված նրա «Էվէլինան»։ Կինը, ինչպէս վկայում է ինքը, Արծրունին,* 1891 *թուականին գրած իր մի առաջնորդող յօդուածում, մեծ դեր է կատարել նրա մտաւոր աշխարհի մէջ, նրա հասարակական իդէալների կազմակերպվելու, ամրանալու մէջ։ Եւ հէնց այդ է պատճառը, որ Արծրունին մեղանում կնոջ իրաւունքների, կնոջ զարգացման, ազատագրութեան ամենատանխոնջ և ամենաջերմ կողմնակիցն է եղել սկզբից մինչև վերջ։*

Առաւօտները—շարունակում է «Էվէլինայի» հեղինակը—ես լսում էի դասախօսութիւնները համալսարանում, ճաշից յետոյ պարապում էի մասնագիտութեանս, քաղաքատնտեսութեան վերաբերեալ ընթերցանութեամբ, իսկ երեկոյեանները փորձում էի իմ թոյլ ոյժերս հայրենիքիս, Կ. Պօլսի հայոց լրագիր-

ներին Թղթակցութիւններ գրելում… Գրուածներս ակսում էին աւելի եւ աւելի յաճախ երեւալ Կ. Պօլսի պարբերական մամուլի էջերում։ Ես ուզում էի գրել, միշտ գրել, անընդհատ կերպով գրել։

Սա ճիշտ է, սրա ապացոյցն է «Հայկական Աշխարհի» և «Մեղուի» մէջ փռված յօդուածների բազմութիւնը։ Հայրենիքը երբէք չէր մոռացվում, չէր դադարում նրա մըտածմունքների առարկան լինելուց։ Բայց ինչպէս էր նա ճանաչում իր հայրենիքը, ինչ գաղափար էր կազմել իր ազգի մասին։ Ուսանողական տարիները թէ Ռուսաստանում և թէ Եւրօպայում մտցրել էին նրան հանրամարդկային լուսաւոր, առաջադէմ գաղափարների մէջ։ Նա մկրտվեց այդ աւազանում, ուխտեց իր ամբողջ ոյժերը նուիրել իր ժողովրդին։ Այժմ շատ կարեւոր է իմանալ թէ ինչ էր տեսնում նա այդ ժողովրդի մէջ և նրա ուխտը ինչ էր պարունակում իր մէջ։

Բարեբախտաբար, այս նշանաւոր հարցի վերաբերմամբ Արծրունու կենսագրութիւն գրողը չի խարխափի ենթադրութիւնների, հաւանականութիւնների մէջ։ Ինքը, Արծրունին, գրել է այդ մասին 1880 թւականին, այն ժամանակ, երբ նա կրակոտ եռանդով քանակռիւ էր մղում կրօնական հարցի առի-

*թով։ Գրուածքը անուանված է «Իմ խոստովանութիւնը» *)։ Եւ որովհետև այդ խոստովանութիւնը չափազանց կարևոր է Արծրունուն ճանաչելու համար, ուստի մենք կը բերենք նրա իսկական խօսքերը, կարելի եղածին չափ ընդարձակ։*

Ապրելով—ասում է նա—նախ Ռուսաստան, այն է Մօսկվայի եւ Ս. Պետերբուրգի, եւ յետոյ Արտասահմանի մտաւոր շրջաններում, ես ակամայ՝ սկսեցի ուշադրութիւն դարձնել ինձ շրջապատող երևոյթների վրա։ Ռուսը աշխատում է իր ռուս ազգի համար, գրում է, դպրոցում դասատուութիւն է անում, գրքեր է հրատարակում, համալսարանի մէջ դասախօսութիւններ է անում ռուս հասարակութեան համար։

Ես թողեցի Ռուսաստանը տկարութեանս պատճառով եւ գնացի արտասահման։ Այնտեղ այնպիսի մտաւոր կենտրոններում, ինչպէս Ցիւրիխ, Ժենեվ, Հէյդելբերգ, Վիեննա եւ Փարիզ, որտեղ ես կացել եւ ուսում եմ առել, ես աւելի էլ համոզվեցայ թէ ամեն ազգութեանը պատկանող անհատը գործում է կամ պատրաստվում է գործել իր ազգի համար։

Գերմանական համալսարանները լի են, բացի գերմանացիներով եւ այլազգի ուսանողներով՝ ամերիկացիներով, շվեդացիներով, յոյներով, դանիացիներով, շվէյցարացիներով, ֆրանսիացիներով, չէխերով, բոլգարացիներով... Եւ այդ ազգերին պատկանող իւրաքանչիւր անհատը ուսում էր առնում, գի-

---

*) «Մշակ», 1880, № 164.

տուԹիւն էր սովորում, որպէսզի ժամանակով պիտանի լինի իր ազգուԹեանը։

Երբ ես խօսում էի այդ այլ եւ այլ ազգուԹիւններին պատկանող ընկերներիս հետ, ես նախանձում էի նրանց, որովհետեւ նրանցից իւրաքանչիւրը խօսում էր իր ազգուԹեան, իր հայրենիքի, իր մայրենի լեզուի մասին։ Ընկերներիս հետ խօսելով ես երբէք չէի հարցնում Թէ ինչ կրօնի է պատկանում նրանցից իւրաքանչիւրը, այլ ինչ ազգուԹեան է պատկանում նա։ Եւ մինչեւ անգամ բօլգարը, ռումինացին, չէխը, սերբիացին, որոնք անկախ քաղաքական կեանք չունէին, այնու ամենայնիւ խօսում էին իրանց հայրենիքի, իրանց ազգուԹեան, իրանց մայրենի լեզուի, իրանց դպրոցների, իրանց հայրենի գրականուԹեան ու մամուլի մասին։

Միայն մենք, սակաւաԹիւ հայերս, նոյնը ասել չէինք կարող մեր մասին, որովհետեւ չունէինք դեռ այն ժամանակ ոչ կենդանի մայրենի լեզու, գրեԹէ չունէինք դպրոցներ, չունէինք նոր գրականուԹիւն, չունէինք մամուլ, չունէինք վերջապէս ազգուԹեան վրա գաղափար, չունէինք ազգային ինքնաճանաչուԹիւն։

Եւ ահա ինչ էր երիտասարդ հայի դրուԹիւնը, ինչ էր մանաւանդ երիտասարդ հայ գ ր ո ղ ի դրուԹիւնը, որ գրիչը ձեռքին, փորձ էր փորձում ինքն էլ օգտաւէտ հանդիսանալ իր մայրենի գրականուԹեան ու լրագրուԹեան ասպարիզում, փորձ էր փորձում ինքն էլ պատրաստվել, հմտուԹիւններ ընդունել, ապագայում իր ազգին օգտաւէտ լինելու համար,— եւ միեւնոյն ժամանակ իր առջեւ ա զ գ ու Թ ի ւ ն չէր տեսնում, այլ տեսնում էր մի կրօնական ա ղ ա ն դ։

Ի՞նչպէս գործեմ ես իմ ազգուԹեան համար, ա-

սում էի ես ինքս ինձ, երբ որ պարզ տեսնում եմ թէ մի որոշ ազգութեանը չեմ պատկանում, ինկապէս ոչինչ ազգութիւն չունիմ, այլ պատկանում եմ միմիայն մի կրօնական աղանդի, պատկանում եմ մի ցեղին, որ գուցէ մի ժամանակ եղել է մի ազգութիւն, բայց այժմ այլեւս ազգութիւն չէ, չունի ազգային ինքնածանաչութիւն, այլ միայն մի աղանդ է։

Ես ակամայ սկսում էի յիշել իմ մանկութեան եւ պատանեկութեան ժամանակ ինձ շրջապատած երեւոյթները, սկսում էի հոգեբանապէս քննել եւ զննել թէ ինչ բան է հայը։

Ես սկսում էի յիշել թէ երբ որ մարդը հարցնում էր լուսաւորված հային, թէ նա ով է, նա շատ անգամ ամաչում էր խոստովանվել թէ հայ է, իսկ եթէ պատասխանում էր թէ հայ է, իրան այդ անունը տալով չէր հասկանում այդ բառով ազգութեան գաղափարը, այլ միայն այս ինչ եկեղեցուն պատկանելը։ Հայը այն պատճառով հայ չէր, որ հայոց ա զ գ ո ւ թ ե ա ն էր պատկանում. այլ այն պատճառով հայ էր, որ հայոց եկեղեցուն էր պատկանում։ Ուրեմն նրա մէջ չը կար դեռ եւս ազգային ինքնածանաչութիւն, այլ միայն կրօնական մի աղանդին պատկանելու համոզմունքը։ Եւ այդ խօսքը՝ «ես հայ եմ», հայը մեծ մասամբ արտասանում էր մի որեւէ օտար լեզուով, որի այբենարանը անգամ նրան ծանօթ չէր։

Նոյնը երբ հարցնում էի մի ռամիկ հային՝ թէ դու ով ես։—«Հայ-քրիստոնեայ եմ», լսվում էր պատասխանը։

...Հայը իր ազգութիւնը ազգութեան մէջ չէր տեսնում, նրան անյայտ էր ազգային գաղափարը,

*այլ տեսնում էր իր հայ լինելը միմիայն աղանդի, եկեղեցու մէջ։ Պարզ է որ փոխելով կրօնը, նա կարծում էր որ փոխում է եւ ազգութիւնը, կաթօլիկ դառնալով նա այլ եւս հայ չէր լինում, այլ նա դառնում էր ֆ ր ա ն կ, բողոքական դառնալով նա դառնում էր ն է մ է ց, մահմեդական դառնալով նա դառնում էր թ ի ւ ր ք կամ պ ա ր ս ի կ եւ այլն...*

*Կաթօլիկ հային չէր կարելի մեղադրել որ նա իրան ֆրանկ է անուանում, բողոքական հային չէր կարելի մեղադրել որ նա իրան նէմէց է անուանում, որովհետեւ հայ-լուսաւորչական եղած ժամանակ նոյն հայը նոյնպէս իրան հայ չէր համարում հայրենիքով եւ լեզուով, այլ միայն կ ր օ ն ո վ հայ։*

*... Ես յիշում էի նոյնպէս որ հայ լինելու համար բոլորովին աւելորդ էր հայերէն իմանալ ոչ թէ միայն կեանքի մէջ, այլ նոյն իսկ՝ եկեղեցու խորհուրդները կատարելու ժամանակ... Թո՛ղ հայրենիքդ, թո՛ղ պատմական, հայրենի հողդ, մոռացի՛ր մայրենի լեզուդ,—ինչ փոյթ,—դու դարձեալ հայ ես, եթէ հայութեան նշոյլն էլ չը պահելով, կերթաս Հնդկաստան, Չինաստան եւ այնտեղ կը շարունակես քեզ հայ-լուսաւորչական կոչել։*

*Եւ ահա հայ երիտասարդ գրողը, յափշտակվելով այն օրինակով որ տեսնում էր իր չորս կողմը, տեսնելով որ յոյնը գործում է իր յոյն ազգի համար, բօլգարացին իր բօլգար ազգի համար, եւ այլն, երբ կամենում էր նոյնն անել եւ իր ազգութեան համար, յանկարծ նկատում էր թէ իր ոտքերի տակ գետին չը կայ, թէ իր առաջ չը կայ մի մարմին, որ ազգութիւն կարող է համարվել։*

*... Կարո՞ղ էք երեւակայել արդեօք այն բարոյական, հոգեկան տանջանքը, որ զգում էր երիտասարդ*

հայ գրողը, հասնելով այդ անմխիթար եզրակացու-թեանը. «ես ոչ մի ազգութեան չեմ պատկանում, ես կրօնական մի սեկտայի, մի աղանդի անդամ եմ միայն, ուրիշ ոչինչ, ուրեմն հէնց որ իմ ցեղակից-ներս այս կամ այն պատճառով կը սկսեն մեծ քաղ-մութեամբ կրօնափոխ լինել, ազգութիւն այլ եւս չի լինի, որովհետեւ հիմա էլ չը կայ, որովհետեւ հիմա էլ հայութիւնը հիմնվում է ոչ թէ տեւողական ան-փոփոխ հիմունքների՝ հայրենիքի, ցեղի ու մայրենի լեզուի վրա, այլ մի պրինցիպի վրա, որ ամեն տեղ, մարդկային պատմութեան ամեն ժամանակներում համարվում էր, համարվում է եւ կը համարվի մի փոփոխական, անցողական, անձնական համոզմուն-քից կախված, եւ ոչ թէ ցեղի, ազգութեան հետ ան-խզելի կապ ունեցող մի սկզբունք»...

Եւ ահա երիտասարդ հայ գրողը իր կեանքի, իր գրական ամբողջ գործունէութեան նպատակը պէտք է համարէր իր ամբողջ ջանքերը նուիրել իր ցեղակից-ներին, հասկացնել աղանդի եւ ազգութեան տարբեր լինելը, նրանց ազգութեան գաղափարի հասկացնելը, ազգի մէջ ազգային ինքնաճանաչութեան գաղափարի սերմանելը։

Եւ այդ արեցի ես։

Խոստովանութիւնը, ինչպէս տեսնում էք, վերին աստիճանի բնորոշ է՝ Արծրունու ա-մենագլխաւոր դաւանութիւնը հասկանալու համար։ Բայց եթէ հիմնվենք միայն այս խոս-տովանութեան վրա, միակողմանի գաղափար կարող ենք կազմել մեր գործիչի մասին։ Գրիգոր Արծրունին ազգայնութիւնը երբէք

*չէ հասկացել նրա, չօվինիստական մտքով՝ 1890 թուականին, իր գրական գործունէութեան 25-ամեայ յոբելեանին, Արծրունին նորից դրեց հասարակութեան առաջ իր դաւանանքների ամփոփ ու ամբողջացրած պատկերը։ Դրանց հոգին, էութիւնն է «անհատականութեան զարգացումը»։ Ահա ինչ է նշանակում այդ միտքը·*

Մարդու անհատական զարգացումը՝ նշանակում է կատարեալ եւ անարգել զարգացում նրա բոլոր բնական, ֆիզիքական, մտաւոր եւ բարոյական ընդունակութիւնների, նրա բոլոր ձիրքերի, բոլոր հակումների, բոլոր մարդկային անձնական առանձնայատկութիւնների։

*Անհատականապէս զարգացած անձնաւորութիւնը առաջ է բերում ընտանիքի անհատական զարգացումը, ընտանիքների բազմութիւնը կազմում է համայնք, համայնքների բազմութիւնը՝ հասարակութիւն։ Ապա այդ համագումարումներից գալիս է ազգութիւնը, բայց ոչ իբրև մի վախճանական հասկացողութիւն, այլ իբրև համայն մարդկութեան մի մասնիկ, մարդկային ընդհանուր ցեղի մի բաղկացուցիչ մաս։ Ահա այսպէս, անձնաւորութիւնը, ընտանիքը, հասարակութիւնը, ազգութիւնը, զարգանալով իբրև իրանց ա-*

ռանձնայատկութիւններն ունեցող անհատներ, վերջ ի վերջոյ գալիս, հասնում են իրանց նպատակին, այն է լինել պիտանի անդամ մարդկութեան, ծառայել հանրամարդկային բարօրութեան։ Այդ պատճառով էլ զարգացող անհատները պէտք ղեկավարվեն հանրամարդկային մշտնջենապէս սուրբ և անխախտելի գաղափարներով։ Եւ Արծրունին քարոզում էր այդ գաղափարները։ Քարոզում էր, ինչպէս ինքն է վկայում, քսան տարեկան հասակից, այն ժամանակից, երբ դեռ ուսանող էր։

Այսպէս ահա մենք տեսնում ենք, որ Արծրունին մտաւ հայոց գրականութեան ասպարէզը միանգամայն կազմակերպված թիբրև հրապարակախօս, թիբրև հասարակական որոշ իդէալներ ունեցող և այդ իդէալները իր մէջ մարմնացրած մի գործիչ։ Մենք, ի հարկէ, չենք ասում թէ իր գործունէութեան ընթացքում նա չը կատարելագործվեց, չը զարգացրեց իր հայեացքները։ Ո՛չ։ Այստեղ, քանի որ մենք ծանօթանում ենք հրապարակախօսի առաջին քայլերի հետ, խօսք կարող է լինել միայն սկզբունքների, հիմնական կէտերի մասին։ Իսկ սրանք անփոփոխ մնացին Արծրունու մէջ մինչև գերեզման։ Ուսանողութեան տարիներում նա վերցրեց, իւրացրեց գա-

ւանանքներ, կաղմեց հաստատ համոզմունք-ներ և այդպէս երևան եկաւ մեզանում։

Մենք տեսանք Արծրունու խոստովանու-թիւնից թէ ինչ դասեր էր տալիս նրան կեանքը։ Բայց Արծրունին ունի և մի այլ խոստովանութիւն, որ նոյնպէս շատ բնորոշ է և որի մասին չէ կարելի մի քանի խօսք չասել։

Դա «Էվէլինա» վէպն է։

Իր կեանքի նախավերջին տարիներում Արծ-րունին յիշեց իր երիտասարդութեան սէրը, յիշեց թէ կինը ինչ դեր է կատարել իր կեան-քում և գրեց այդ «հոգեբանական էտիւդը»։ Ահա այդ գրուածքի բովանդակութիւնը մի քանի խօսքով։ Երիտասարդ ուսանողը Նից-ցայում ծանօթանում է մի ֆրանսիացի օ-րիորդի հետ, սիրահարվում է, փոխադարձ սիրոյ ապացոյցներ է ստանում։ Ջերմ է այդ սէրը. նա ամբողջապէս գերում է ուսանո-ղին, տիրապետում է նրա սրտին։ Սէրը մի լուսատու աստղի պէս առաջնորդում է նրան մտքի, զգացմունքների աշխարհում. Նրա ազ-դեցութեան տակ երիտասարդը սկսում է ըմբռնել շատ բարդ հարցերի միտքը, սկսում է աւելի մեծ եռանդով նուիրվել իր պա-րապմունքներին։ Վերջացնել ուսումը, ա-մուսնանալ սիրած աղջկայ հետ ու վերա-

դառնալ հայրենիք—ահա ինչ սիրուն ապագայ է ծրագրել երիտասարդը։

Բայց սէրը դաւաճան է։ Ցրանսիացի օրիորդը հրապուրվում է մի ուրիշ տղամարդով, սառչում է, և մեր երիտասարդը համոզվում է որ նրա սիրտը այլ ևս իրան չէ պատկանում։ Մերժված սէրը սկսում է ջարդ ու փշուր անել երիտասարդի սիրտը, բայց այդ ճգնաժամին օգնութեան է հասնում բուժիչ գաղափարը։ Մի ռուս մտերիմ բարեկամ հասկացնում է յուսահատված սիրահարին որ դեռ ամեն ինչ կորած չէ, որ կեանքը դեռ չէ կորցրել իր միտքը և դեռ կարելի է երջանկութիւն ճաշակել այս աշխարհում։ Ճիշտ է, վիրաւոր սիրտը գուցէ երբէք այլ ևս չի վերակենդանանայ՝ նորից մի կին անսահման սիրելու համար, բայց նա կարող է մոռանալ իրան հասցրած մահացու հարուածները, եթէ լայն տեղ բաց անէ իր մէջ մի ուրիշ, աւելի վսեմ, ոչ եսական զգացմունքի համար—սէր դէպի տանջվող մարդկութիւնը։

Այս բարձր գաղափարն էլ դառնում է մեր երիտասարդի համար փրկութեան խարիսխ, նրա անձնական դժբախտութիւնը դառնում է մի պատուանդան, որի վրա բարձրանում է ընդհանուրի բախտաւորութեան գաղափարը։

Եսականը, անհատականը տեղի է տալիս սքանչելի մարդասիրութեան։

Ծառայել տանջվողներին... Այս է ուզում հասկացնել ռուս բարեկամը, նստեցնելով անբախտ սիրահարին մի մահամերձ, օտարական հիւանդի մօտ և պատուիրելով խնամել, պահպանել նրան։ Դիւթական բալասանը գտնված է։ Սրտաբեկ երիտասարդը զգում է որ դառնալ ուրիշների համար «եղբայրակից տանջանքի մէջ»՝ մի գեղեցիկ, ոգեորիչ անձնազոհութիւն է։ Եւ այդ յայտնութիւնից յետոյ նրա մէջ պատրաստվում է մի ամբողջ յեղափոխութիւն։ Գնալ այդ կոչման ետևից, դառնալ գթութեան եղբայր մարդկութեան համար—ահա ինչ է ստանում տանջված սիրտը իր թանկագին կորուստի փոխարէն։ Եւ սիրտը բախտաւորվում է, նորից թարմանում է, բաբախում է նոր, ուժգին եռանդով, ընդմիշտ պինդ գրկելով մարդկայնութեան վեհ գաղափարը։ Կինը իր սիրոյ հետ մոռացվում է, յետ է քաշվում։ Երիտասարդը գնում է Հէյդլբերգ՝ իր ուսումը շարունակելու։

Եւ շարունակում է շատ լաւ, ոգեորված իր նոր ապագայով, այն նոր պաշտօնով, որ կանչում էր նրան հեռուից—հիւանդապահի պաշտօնով։ Լինում են մահամերձ անհատներ. բայց կան և այնպիսի հասարակութիւններ,

որոնք նոյն օրհասական վիճակն են յիշեցնում, Արծրունին ճանաչում էր այդպիսի մի հասարակութիւն։ Ահա նա աւարտել է համալսարանը, ահա նա փիլիսոփայութեան դոկտոր է։ Մինչդեռ պատրաստվում է վերադառնալ հայրենիք, ծանր հիւանդի մօտ, անակնկալ կերպով նամակ է ստանում իր նախկին կուռքից, իր Էվէլինայից։ Կինը գալիս է նորից փաթաթվելու նրա ոտներին։ Երիտասարդի տատանումը, թուլութիւնը այդ նամակի առջև րօպէական է։ Նրա «խոցված, վիրաւորված սիրտը սաղացել, բուժվել էր», այդ բժիշկը նրա հետ էր և նա․ թելադրում է մի ժամանակվայ վառ սիրահարին հետևեալ տողերը․

Այս երկու տարվայ ընթացքում ես շատ աշխատեցի, սաստիկ պարապեցի, քանի որ մտաւոր կեանքով ապրելը դարձել էր ինձ համար կեանքի միակ մխիթարութիւն։ Ուրիշ որ եւ է զգացմունք այժմ այլ եւս մատչելի չէ իմ սրտին․ սիրտս իսպառ ցամաքել, մեռել է այդ ժամանակամիջոցում․ ես հրաժարվեցի իմ առաջվայ ապարդիւն ցնորքներից․ ես հիմա լաւ համոզվեցայ, որ ոչ մի կին չէ կարող ինձ սիրել անսահման եւ յարատեւ կերպով... Եւ ցամաքած սրտիս մէջ ամփոփված սիրոյ վերջին բեկորները ես այսուհետեւ, մինչեւ մահս, պէտք է նուիրեմ ոչ թէ կնոջ զգացմունքին փոխադարձը տալուն, այլ միմիայն իմ ազգի քաղաքակրթական գործի առաջադիմութեան ծառայելուն։

Այսպիսի սառն, հպարտ վճիռ ստորագրելու համար պէտք էր լինել մի մարդ, որ գինուոր էր գրվել ուրիշ պարտաւորութիւնների։ Կինը չը կարողացաւ տիրանալ նրան, նուաճել ամբողջովին։ Մենք պէտք է տեսնէինք մի խեղճ զոհ, որին մերժված սէրը դարձնում է մարդատեաց, յոռետես, կեանքի մէջ ոչ մի յոյս չունեցող։ Բայց այս մի զոհը մի երջանիկ բացառութիւն կազմեց։ Կնոջ սրտից աւելի մեծ, աւելի անհուն մի պաշտամունք գտաւ նա — մարդկութիւնը։ Հէնց այսպիսի մի աքանչելի գիւտի համար էլ պէտք էր չնորհակալ լինել կնոջը, իբրև պատճառի, իբրև դրդողի։ Եւ երիտասարդի մէջ չը կայ ատելութիւն դէպի այդ մերժող կինը։ Ընդհակառակն նա պահում է իր անբախտ սիրոյ առաջին առարկայի մասին մի սիրուն, ոգևորիչ յիշատակ, նրան է նայում ամեն անգամ, երբ գաղափարական կռւի դաշտում յոգնած՝ նեցուկ ու խրախոյս է որոնում նոր ոյժ ու եռանդ ստանալու համար...

Եւ այսպէս գաղափարականը գերակշիռ է հանդիսանում Գրիգոր Արծրունու կեանքի մէջ նոյն իսկ մի այսպիսի վճռական, զուտ անձնական հարցում։ Գաղափարի համար էր նա ծնված։ Եւ գաղափարականը նրա հետ էր ամեն տեղ — թէ համալսարանում, թէ ընկե-

րական շրջաններում։ Նոյն իսկ ուսանողա-
կան խմբոյքների մէջ անհոգութիւն, անտար-



Ուսանողական խմբոյք Հէյդելբերգում

բերութիւն չը՝կայ դէպի բարձր մտքերը։ «Եա
—ասում է «Էվէլինայի» հերոսը—ամբողջ

սրտով մասնակցում էր նրանց (ուսանող ընկերների) ուրախ խօսակցութիւններին, նըրանց լուրջ վիճաբանութիւններին, նրանց հետ միասին, գինու կամ գարեջրի բաժակը ձեռին, ճառում էր մեր իւրաքանչիւրի ապագայ հասարակաց գործունէութեան մասին... Այդ ճառերումն էին արտայայտվում մեր յոյսերը մարդկութեանը պիտանի լինելու, մեզանից իւրաքանչիւրի յոյսերը իր ազգին կարողութեան չափ օգտաւէտ լինելու մասին»...

Արծրունին այդպէս էլ մնաց իր ամբողջ կեանքում։ Նա մի մռայլ ասկէտ չէր, սիրում էր շրջաններ, խօսակցութիւն, վերին աստիճանի սրամիտ, վառվռուն խօսակից էր, բայց դատարկաբանութիւններից ուղղակի զզվում էր և իսկական զուարճութիւն ստանում էր այնպիսի խօսակցութիւններից, որոնց նիւթն էր որ և է հասարակական կամ գիտական հարց։ Վիճաբանութիւնների մէջ մանաւանդ Արծրունին տաք էր, առանձին ոյժ, ոգևորութիւն էր ցոյց տալիս։ Արծրունու ալբօմում մենք գտանք մի լուսանկար, որի վրա պատկերի տէրը գրել է հետևեալ բնորոշ խօսքերը. «Մնաս բարև, Նիցցա, և մեր բոլոր գըրաւիչ ճաշերը, որոնց ժամանակ իմ ամենասիրելի Գ. Ե. Արծրունին այնքան թունդ վիճում էր, ոչ թէ ինչպէս նրա համեստ, խօ-

նարհ ծառայ Վ. Բեզեկիրսկին. 5 մայիսի, 1866»։

Եւրոպական հասարակական կեանքի, գրականութեան, համալսարանի, ընկերական շրջանների արած ազդեցութեան վրա աւելացնենք և գերմանական ընտանիքը։ Աբովեանցի, Նազարեանցի նման՝ Արծրունին էլ անսահման երախտագիտութեամբ է վերաբերվում նրան։ «Մնաս բարև և դու, գերմանական նահապետական հիւրասէր ընտանիք, —ասում է Արծրունին.—դու, որ լայն մարդասիրական զգացմունքով ներշնչված՝ ամեն ջանք էիր անում, որքան հնար է, սիրալիր և ջերմ կերպով ընդունել, հիւրասիրել օտարազգի ուսանողին, նրան մոռացնել տալու համար իր հեռաւոր հայրենիքի և ընտանիքի ժամանակաւոր բացակայութիւնը»։

Մենք պէտք է աւելացնենք որ Գրիգորի համար չը կար ընտանիքի բացակայութիւն։ Նրա սիրելի Անդրէասը չը մնաց Պետերբուրգում, նոյնպէս տեղափոխվեց արտասահման և Հէյդլբերգում երկու հարազատները միասին էին։ Միասին էլ նրանք ոգևորվում են իրանց հայրենակիցներին ծառայելու մտքով։ Անդրէասը դեռ Գրիգորից առաջ է մտքում դնում վարժվել հայերէնի մէջ Մխիթարեանների մօտ։ Այս նպատակով

Նա 1868-ին գնում է Վենետիկ և այնտեղ դասեր է առնում Հ. Ալիշանից։ Անդրէասն էլ յօդուածներ էր ուղարկում «Հայկական Աշխարհին», ուր նրանք տպագրվում էին Ա. Ա. ստորագրութեամբ։ Միևնոյն ծառի երկու հարազատ ճիւղեր, միևնոյն տեսակ կրթութիւն ստացած, միևնոյն գաղափարով տոգորված, այդ երկու եղբայրները, սակայն, միևնոյն չէին իրանց խառնուածքով, իրանց ներքին կոչումով։ Անդրէասը շատ յետ մնաց իր եղբօրից հայկական հրապարակախօսութեան մէջ և փայլեց ուրիշ ասպարէզում։ Գրիգորը կեանքի, կռւի մարդ դարձաւ, իսկ Անդրէասը—եւրոպացի գիտնական պրօֆէսօր։

Գրիգոր Արծրունին, ապրելով Եւրոպայում, չէր բաւականանում միայն ուսում ըստանալով և իր իմացած ճշմարտութիւնները տպագրութեան միջոցով իր ազգին հաղորդելով։ Նա մի և նոյն ժամանակ հետևում էր մեծ ուշադրութեամբ թէ Եւրոպայում ինչ են ասում, ինչ են գրում հայերի մասին։ Շվէյցարիայի և հարաւային Գերմանիայի փոքրիկ համալսարանական քաղաքներում գոյութիւն ունէին հասարակական հարուստ գրադարաններ «Մուզէում» անունով։ Այդտեղ կենտրոնացած էր ամեն ինչ, որ վերաբերվում է գիտութեան և գրականութեան և այդպիսի

տեղերում պարապողը ամեն յարմարութիւն ունէր Եւրոպայի մտաւոր կեանքի բոլոր ճիւղերին հետեւելու: Արծրունին անդամ է դառնում այդ գրադարաններում և յատկապէս ջոկում ու դասաւորում է այն ամենը, ինչ վերաբերում է հայերին և այն մահմեդական պետութիւններին, ուր նրանք ապրում են:

Այսպիսով նա բաց արաւ «Հայկական Աշխարհի» մէջ մի շատ հետաքրքրական, բազմակողմանի բաժին, ուր հաւաքված էին արտասահմանեան օրվայ տեղեկութիւնները հայերի մասին: Այս բանի վրա ուշադրութիւն չէր դարձնվում մեր այն ժամանակվայ մամուլի մէջ: Ճիշտ է, արտասահմանեան թղթակցութիւններ մենք տեսնում ենք դեռ «Հիւսիսափայլի» մէջ, բայց դրանք պատահական երեւոյթներ են, ընդհանուր բնաւորութիւն չեն կրում և հայերի մասին շատ քիչ են խօսում: Գրիգոր Արծրունին, սիստեմ դարձնելով հայերին վերաբերվող տեղեկութիւնները մի տեղ հաւաքելը, մօտ երկու տարի կարողացաւ շատ հետաքրքրական տարեգրութիւններ տալ, որոնք «Հայկական Աշխարհի» մէջ աչքի են ընկնում իբրև խիստ բազմակողմանի, թարմ նիւթեր:

Հեռանալով արտասահմանից, Արծրունին ցանկութիւն էր յայտնում որ հայ ուսանող-

*ները շարունակեն իր սկսածը։ Բայց արտասահմանեան ուսանողութեան մէջ չը գտնվեցան երիտասարդներ, որոնք նրա պէս հասկանային հայ ուսանողի պարտաւորութիւնները։ Եւ միայն Անդրէաս Արծրունին էր, որ մնալով Եւրոպայում, բաւական երկար ժամանակ շարունակում էր այդպիսի քրօնիկագրի պաշտօնը։*

*Այսպէս էր արտասահմանում կազմակերպվում մեր ապագայ հզօր մարտնչողը։*

*Ի՞նչ էր գրում և ինչպէս էր նա գրում արտասահմանից։ Տեսնենք նախ և առաջ թէ ինչ էր մեր մամուլը այն ժամանակ։*

## II

**Ս. Նազարեանցի նամակից։—Գեղեցիկ սկսուած, չոր առաջաբան։—Շարունակողը։—Հայ մամուլը Կովկասում. «Մեղու»։—Երկու ցեսակ կրթութիւն. համալսարանական եւ Մխիթարեանների։—Մուրադեան վարժարան։—Մարկոս Աղաբէկեան եւ նրա «Կռունկը»։—Ազգայնամոլ ուղղութիւն։—Ներսիսեան դպրոց։—Վերանորոգված «Մեղու»։—Նոր խմբագրութեան անկարողութիւնը։—Նմուշներ։—Յետադիմական պատկերը, նկարված «Մեղուի» ձեռքով։—Ս. Ստեփանեան եւ «Հայկական Աշխարհ»։—Ձայներ եւ հեծեծանքներ։—Դաւանանքներ, արժանաւորութիւններ, պակասութիւններ։—Ռեֆորմ ուղղագրութեան մէջ։—Այդ ռեֆորմի անցեալը։—«Վաճառական» լրագիր եւ «Գարուն» ամսագիր։**



*Իր մահից մօտ հինգ տարի առաջ Ստեփանոս Նազարեանցը իր մասնաւոր նամակներից մէկում գրում էր հետեւեալ տողերը. «Այսպէս դադարեցաւ ու վերջացաւ մեր գործունէութիւնը, որ ես կը համարեմ միայն իբրեւ մի գեղեցիկ սկսուած, մի չոր յառաջաբան, ոչինչ աւելի» *)։*

---

*) Ս. Նազարեանց—«Ընտիր Հատուածներ». Թիֆլիս, 1889, եր. 207։

Գեղեցիկ սկսուած, լոկ առաջաբան...
Աւելի ճիշտ անուններ Նազարեանցի գրա-
կան գործունէութեան համար չէ էլ կարելի
գտնել։ Համեստ են թւում այդ անունները,
փոքրիկ։ Բայց գո՞րծը, որ այդ անուններով
է երևան գալիս։ Հեշտ է երևում նա հեռուից
նայողին, մանաւանդ նրան, որ թեթև կեր-
պով է վերաբերվում իրերին, որ երևոյթնե-
րի ու հանգամանքների կշռադատութեան
մէջ չէ խորասուզվում։ Դժուար մեծագոր-
ծութիւններից էր այդ առաջին քայլը մեզա-
նում, մեր վերակենդանութեան այդ առա-
ջաբանը։ Մենք այդ տեսանք իր տեղում։ Տե-
սանք թէ որպիսի մեծ ջանքեր էին հարկա-
ւոր, որպիսի անձնուրացութեամբ պէտք էր
կռուել յանուն առաջին խօսքերի, սկզբնական
քայլի։

Եւ ահա այդ քայլը արված է, այդ առա-
ջաբանը գրված է։ 1865-ին, երբ «Հիւսիսա-
փայլը» բոլորովին լռեց, այդ գեղեցիկ իրո-
ղութիւնը մեր ճակատագրի սեփականութիւ-
նըն էր դարձել։ Յետո՞յ։ Պէ՞տք էր կանգ առ-
նել առաջին քայլի, առաջին բառի վրա. պէ՞տք
չէր առաջ գնալ, առաջաբանից բուն գործին
անցնել։ Այս հարցերն էր տալիս ժամանակը,
այս հարցերը կենսական նշանակութիւն ու-
նէին նոր արթնացող, շարժումի անհրաժեշ-

տութիւնը նոր զգացող ժողովրդի համար, երբ մեր գրական հորիզոնի վրա երևաց Գրիգոր Արծրունին։ Նա գալիս էր պատասխան տալու, գալիս էր առաջաբանը չարունակելու։

Այստեղ մենք դեռ պարտաւոր ենք նկարագրել այն ասպարէզը, ուր սկսեց գործել Արծրունին։ Ի՞նչ կար այդ ժամանակ մեզանում, ի՞նչ էր ներկայացնում հայոց մամուլը։

Նախ ուշադրութիւն դարձնենք տեղի վրա։ «Հիւսիսափայլի» հետ վերջացաւ Մոսկվայի փոքրիկ հայ գաղթականութեան առաջնակարգ նշանակութիւնը մեր գրականութեան տեսակէտից։ Քանի կար այդ ամսագիրը, քանի Նազարեանցը դէն չէր դրել իր գրիչը, Մոսկվան էր այն տեղը, որ հայերի համար մի «զարթուցիչ մեքենայ» էր, ինչպէս ասում է այն ժամանակվայ գրողներից մէկը. Մոսկվայից էին սպասում նոր խօսքի, այնտեղից եկող համարձակ, թարմ, անողորմ մտքերն էին յուզում մարդկանց։

Առաջին քայլը Մոսկվան էր. այնտեղ գրվեց նոր հայութեան գաղափարի առաջաբանը։ Գուցէ սա մի ճակատագրական անհրաժեշտութիւն էր. գուցէ այդ մեծագործութիւնը անկարելի էր կատարել հայ ժողովրդի բնակութեան տեղում, քանի որ

պահանջվում էր այնքան սաստիկ կռիւ։ Նազարեանցը ուժեղ էր և նրանով, որ կռւում էր հեռուից, որ չէր ենթարկված իր հայրենիքի ճնշող պայմաններին։ Բայց նոյն այդ հեռաւորութիւնը լաւ չէր առաջադիմութեան շահերի տեսակէտից։ Օտար երկնքի տակ մնայուն հող չէր կարող գրաւել հայկական հրապարակախօսութիւնը։ Նա պիտի մօտենար բուն ժողովրդին, պիտի մտնէր նրա մէջ։ Լռում է Նազարեանցը և իրողութիւն է դառնում որ հայոց պարբերական մամուլը ոչ Մօսկվայում պիտի ապրէ, ոչ Պետերբուրգում, ոչ էլ Թէոդոսիայում։ Նրա համար ամենայարմար տեղը Թիֆլիսն էր, որ թէև նոյնպէս գաղթականութիւն էր հայերի համար, բայց մի գաղթականութիւն, որ նախ շատ խոշոր էր և երկրորդ՝ շատ մօտիկ էր հայի հայրենիքին։

Ինչպէս յայտնի է, Թիֆլիսում էր սկսվել հայոց մամուլը։ Առաջին շաբաթաթերթերը՝ «Կովկաս» և «Արարատ», զանազան պիտանի և անպիտան գրուածքների և տեղեկութիւնների անկապ, վայրիվերոյ ժողովածուներ էին, այսինքն պատկանում էին այն տիպին, որ հաստատվեց մեր մամուլի մէջ՝ Նրա սկզբնաւորութեան օրից։ Լրագիրը տպում էր այն, ինչ ձեռքն էր ընկնում, չը կար խըմ-

բագրութիւն, այս բառի իսկական նշանակութեամբ, չը կար դաւանանք, ուղղութիւն։ Երրորդ չաբաթաթերթ «Մեղու Հայաստանին» դարձել մի այդպիսի ժողովածու էր. և եթէ չը լինէր «Հիւսիսափայլ»-ը, չը լինէր Մեղու»-ի հակառակութիւնը նրա դէմ, Մանդինեան քահանայի օրգանը ոչ հարկաւորութիւն, ոչ էլ առիթ կունենար յայտնելու իր պաշտամունքը, իր հաւատամքը։ Միայն «Հիւսիսափայլ»-ի դէմ ուղղած գրուածքների մէջ կարելի էր տեսնել թէ ինչ է ուզում Թիֆլիսի չաբաթաթերթը, ինչն է նրան ուրախացնում և վշտացնում։ Մնացած ժամանակներում նա դէսից-դէնից հաւաքած հատուածների մի խառնարան էր, առանց որ և է ընտրութեան, առանց խմբագրական որևէ չնորհքի։

1860 թուականից Թիֆլիսի այդ տեսակ մամուլի մէջ նկատվում է բարեփոխութիւն։ Այդ թւից հրատարակվում է «Կռունկ Հայոց Աշխարհի» ամսագիրը, որի խմբագիրն էր Կ. Պօլսից Թիֆլիս եկած Մարկոս Աղաբէկեանը։ Ամսագիրը առաջինն էր Թիֆլիսում, որ ունէր որոշ ուղղութիւն, քարոզում էր, մտքեր էր արծարծում։ Ի՞նչ ուղղութիւն էր դա։

Ստեփանոս Նազարեանցի կենսագրութեան

մէջ*) մենք բացատրեցինք թէ ինչ ուղղութիւն ունէր այն կրթական շարժումը, որ սկսվեց ռուսահայերի մէջ XIX դարի առաջին քառորդից։ Այստեղ մենք տեսանք որ այդ շարժումը մի ինքնուրոյն բան չէր, այլ ընդօրինակում գլխաւորապէս Մխիթարեան միաբանութեան ստեղծած կրօնական-հայրենասիրական կրթութեան սիստեմի։ Այդ սիստեմը մեր դպրոցական հիմնարկութիւնների հոգին դարձաւ երկար ժամանակ։ Աբովեանցը և Նազարեանցը, դուրս գալով այդ դըպրոցներից, օտար բարձրագոյն դպրոցներ գնացին և այստեղ միայն նրանց առջև բացվեցին նոր ու լայն հօրիզօններ։ Նրանք հասկացան քաղաքակրթութեան, հանրամարդկային առաջադիմութեան էութիւնը և դարձան մեզանում անբաւական, բողոքող, պահանջող ոյժ։ Նրանց հետևեցին ուրիշ երիտասարդներ։ Եւ մեր աշխարհայեցողութիւնների, մեր գրականութեան մէջ յաղթող հանդիսացաւ օտար բարձրագոյն կըրթարաններից դուրս բերած առաջադիմական շարժումը։

Թիւրքահայերի վրա Մխիթարեանների կրօնական-ազգայնական նեղ ուղղութիւնը

*) Եր. 28—39։

ուեյի խոր, ուեյի երկարատեւ ազդեցութիւն թողեց։ Բայց այնտեղ էլ, թէեւ փոքր չափերով, նկատվում էր նոյն. երեւոյթը։ Եւրոպայի համալսարաններում կրթութիւն ստացած երիտասարդութիւնը լայն կերպով էր ըմբռնում ազգութեան գաղափարը, քաղաքակրթութեան պահանջները։ Դրա փայլուն ապացոյցն է մեր նշանաւոր հրապարակախօս Ստեփան Ոսկանը, ինչպէս նաեւ այն երիտասարդները, որոնք 1848-ի յեղափոխութեան գաղափարներով սնվեցին եւ ապա Կ. Պօլսում առաջ բերին մի վերանորոգչական շարժում, որի պտուղներից մէկն էր Թիւրքահայերի Սահմանադրութիւնը։

«Կռունկ»-ի խմբագիրը Մխիթարեան կրթական սիստեմի աշակերտներից էր։ Քառասնական թւականներից Մխիթարեանների դպրոցական գործի մէջ տեղի է ունենում մի մեծ փոփոխութիւն։ Նրանց դպրոցներից մէկը, Մուրատեան վարժարանը, տեղափոխվում է Պարիզ. թէեւ Ֆրանսիայի մայրաքաղաքում էլ ս. Ղազարի վարդապետները ամեն կերպ աշխատում էին իրանց դպրոցը մի փակ, վանական կրթարանի դրութեան մէջ պահել, բայց շրջապատը, միջավայրը այնպէս թէ այնպէս ազդում էր, այնպէս որ եւրոպական լուսաւորութիւնը կարողանում էր իրան

ցոյց տալ Մուրադեան վարժարանի չէմքից և այդ դպրոցի լաւագոյն ժամանակները հէնց այն տարիներն են, երբ նա գտնվում էր Գարիղում։ Այդ ժամանակամիջոցում Մուրադեան վարժարանից դուրս եկած մի խումբ աշակերտներ (Պէշիկթաշլեան, Հէքիմեան, Մամուրեան, Շիշմանեան) մեծ դեր կատարեցին Թիւրքահայերի մէջ։ Վանական կըրթութիւնը աւելի լայն հիմքերի վրա էր կանգնել. Մնալով իր էութեամբ խիստ կրօնական, նա այլևս այնքան նեղահայեաց չէր, ընդունում էր եւրօպական մտքով լուսաւորվելու անհրաժեշտութիւնը։ Միևնոյն ժամանակ վանական դպրոցը սաստիկ զարգացրել էր և իր երկրորդ իդէալը—ազգասիրութիւնը։ Դա նոյն հին ազգասիրութիւնն էր, հիմնված չօվինիստական մնապարծութեան վըրա, ամբողջովին ոգևորվող միայն պատմական անցեալով։ Գաղափարները, աշխարհայեցողութիւնները նոյնն էին, բայց դրանց արտայայտողները աւելի զարգացած էին, հետևաբար աւելի ազատ էին անհեթեթութիւններից, աւելի ոգևորված էին և ճառական աւելի մեծ ընդունակութիւններով օժըտված։

Նշանաւոր է, որ Մուրադեան վարժարանի լաւագոյն ժամանակների սաները երկու

տեսակ ուղղութիւն էին ներկայացնում ազգասիրութեան ապարէզում։ Կաթոլիկները (օր. Պէշիկթաշլեան, Հէքիմեան) աշխատում էին միութիւն ստեղծել հայերի մէջ ազգային հիմքի վրա, այսինքն, մի կողմ թողնելով դաւանական հարցերը, աչքի առաջ ունենալ այն մեծ իրողութիւնը, որ հայերը, ինչ եկեղեցու էլ պատկանեն, եղբայրներ են իրար հետ. մինչդեռ լուսաւորչականները (օր. Մամուրեան, Աղաբէկեան և կաթօլիկութիւնից վերադարձած Շիշմանեան) խստութեամբ զինվեցին կաթօլիկութեան դէմ, իրանց ուսուցիչ Մխիթարեանների դէմ և հայոց եկեղեցին հրատարակեցին ազգութեան ամենագլխաւոր հիմք։ Եկեղեցական ազգայնութեան ոսկեդարն էր. մեր ազգասէրները օտարադաւան հայերի համար փրկութեան մի միակ ճանապարհ գիտէին—վերադարձ մայրենի եկեղեցու ծոցը։

Կարդալով Մարկոս Աղաբէկեանի երկար ու ձիգ յօդուածները, մանաւանդ «Կռունկի» առաջին տարում տպվածները, դուք հազիւ էք կարողանում չը մոռանալ, որ գրողը եկեղեցու պաշտօնեայ չէ, այլ մի աշխարհական մարդ է։ Աղաբէկեանը յայտարարեց հայոց ազգը մի «կրօնական ընկերութիւն»։ Լուսաւորութիւնը, դաստիարակութիւնը, առաջա-

*դիմութիւնը նա միայն հոգևորականներից էր սպասում և անդադար կրկնում էր որ այդ միջոցից դուրս չը կայ փրկութիւն։ Հայը իր անելիքը իմանալու, իր առջևի ճանապարհը ճանաչելու համար միշտ պիտի յետ նայէ, աչք չը վերցնէ իր նախնիքներից, գաղափարական առաջնորդ ընտրէ նրանց և ոչ ուրիշ մէկին։ Բաւական է, ասում էր նա, մի լաւ եկեղեցական պատմութիւն, բաւական է որ ներկայի հայը շատ մօտիկուց ճանաչէ իր հին հայրապետներին, իշխաններին, եպիսկոպոսներին, վարդապետներին ու սըրբերին, և նրան այլևս անելու շատ բան չէ մնում։ Իր դաւանանքը նա խտացնում էր հետևեալ տողերի մէջ.*

Ըստ իմ կարծեաց, ճշմարիտ Հայ քրիստոնեայն նա է, որ իր նախնեաց հաւատոյ հոգին ունի եւ իր բարքն ու վարքն էլ ըստ այն հոգւոյն է ուղղել։ Այս հոգին մի հայ մարդ չի կարող ստանալ այսօր մեր մէջ, մինչեւ որ մեր նախնիքը քաջ չճանաչէ, չզգայ թէ նրանք ինչպէս քրիստոնեայ էին եւ այս միայն մի խորին հայկական ուսմամբ եւ կրթութեամբ կըլինի. մի լուսաւոր մտքով եւ ոչ Մխիթարեանց ձեռքով նրանց գրքերը կարդալով Հայանալ*)։

*«Կռունկը» ազդեցութիւն ունեցաւ. Նա աւելի շատ էր կարդացվում, քան նոյն իսկ*

*) «Կռունկ», 1862, եր. 889։

«Հիւսիսափայլը», մանաւանդ շատ էր տարածված նա Թիֆլիսից դուրս, գաւառներում և առաջին տարին ունէր 440 բաժանորդ։ Եկեղեցական ազգասիրութիւնը նրա մէջ հասաւ իր ամենամեծ զարգացման։ Աղաբէկեանը բողոքող չէր, ընդհակառակն, դիմադրում էր բողոքողներին, օրինակ, «Հիւսիսափայլին»։ Նա անխնայ դատափետող չէր, այլ դրուատող, երգող, լացող, աղաչող։ Ապրելով պատմական անցեալով և ուրիշներին էլ խրատելով այդպէս ապրել, «Կռունկը» մեր հնութիւնից դուրս էր բերում միայն փառք ու պարծանք. Նրա համար չը կար մի այլ ազգ, որ հայի չափ իրաւունք ունենար պարծենալու իր նահատակութիւններով, իր եկեղեցով։ Չը կայ մեր ազգի պատմական կեանքի մէջ ընդհանուր ազգային պակասութիւն, կան միայն դաւաճաններ։ Ներկայի դժբախտութիւններն ու ցաւերը առաջացել են նրանից, որ չը կայ հայերի մէջ սէր, միաբանութիւն, որ հոգևորականները կրթված չեն։ Ազգային միաբանութեան համար պէտք է թողնել կուսակցութիւնները, հակառակութիւնները։ Ի՞նչ գաղափարական կռիւներ, ինչ անհամաձայնութիւններ են հարկաւոր, երբ կայ մի միակ ճշմարտութիւնը—եկեղեցին իբրև մատակարարող ազգային-բարոյա-

կան լուսաւորութեան։ Մի սերտ միաւորութիւն ժողովրդի և հոգևորականութեան մէջ, միաւորութիւն՝ պատմութեան հովանու տակ, և հայութիւնը երջանիկ էլ կը լինի, առաջադէմ էլ։

Հեշտ է եզրակացնել թէ որքան մեծ էր տարբերութիւնը «Կռունկի» կրօնական-ազգայնամոլական ուղղութեան և «Հիւսիսափայլի» վերանորոգչական-հանրամարդկային իդէալների մէջ։ Իբրև ազգասիրական օրգան, «Կռունկը» մեզանում հանդիսանում էր Մեսրոպ Թաղիադեանցի «Ազգասէր» շաբաթաթերթի *) ուղղակի ժառանգ։ Կովկասի սահմաններից դուրս ինքնագոհ, երգող, ողբացող ազգասիրութիւնը ունէր մի ամբողջ մամուլ. այսպէս էր «Արծիւ Վասպուրականին», այսպէս էր «Արշալոյս Արարատեանը»։ Ռուսահայերի մէջ «Մեղուն», «Ճռաքաղը», «Մասեաց Աղաւնին» էին նոյն դերը կատարում։ Բայց պէտք է խոստովանել որ «Կռունկը» այդ օրգաններից ոչ մէկի նման չէր, նա մի քանի քայլ առաջ էր գնացել։ Դա պահպանողականութեան նոր սերունդն էր, որ չէր վախում եւրօպական լոյսից, առաջադիմութիւն

---

*) Կալկաթա, 1846—1851։

էր կանչում, սակայն մի առաջադիմութիւն, որ յարմարեցրած է հայ ազգի հանգամանքներին, աւանդութիւններին։ Մենք պէտք է չեչտենք «Կռունկի» և մի այլ յատկութիւնը. իր միւս դասակիցների նման նա չէր վարակված մի կոյր թշնամութեամբ Նազարեանցի և նրա «Հիւսիսափայլի» դէմ. իր ամբողջ ոյժով հակառակվելով Նազարեանցին եկեղեցական վերանորոգութիւնների հարցում, «Կռունկը» ընդունում էր և այն, որ Նազարեանցը յարգանքի և երախտագիտութեան արժանի գործիչ է։ Առհասարակ, Թիֆլիսի առաջին հայ ամսագիրը բռնում էր մի տեսակ միջին տեղ առաջադէմ և պահպանողական կուսակցութիւնների մէջ։ Այսպէս են ասում մեզանում։ Մենք կը համաձայնվէինք այս կարծիքի հետ, եթէ նրա վրա աւելացընվէր անպատճառ և այն, որ մէջ տեղ կանգնած ամսագիրը, իբրև միշտ դէպի յետ նայող, աւելի սիրում էր ետեւում կանգնածներին, յետադիմականներին, աւելի դրանց հետ էր հարազատ, համախոհ և սրտակից։

Աղաբէկեանի ուղղութեան աջողութիւնը հասկանալու համար մենք պէտք է անպատճառ նկատի ունենանք և այն խոշոր հանգամանքը, որ Թիֆլիսում նա գտաւ պատրաստ հող։ Եւ հող պատրաստողը Ներսիսեան դըպ-

րոցի այն շրջանն էր, որ յայտնի է «Շանշեանի դար» անունով։ Այդ դարը նոր էր աւարտվում, երբ երևաց «Կռունկը»։ Սկսվել էր նա դեռ Ներսէս կաթողիկոսի օրով, 1852 թւականից։ Պետրոս Շանշեանը, մի կրթված, ազնիւ մարդ, բարեկարգեց դպրոցի ուսումնական մասը, հանեց նրան հին մանկավարժական հասկացողութիւնների տիրապետութեան տակից և մօտեցրեց նոր պահանջներին։ Շանշեանն էլ ջերմ կրօնասէր մարդ էր. Ռուսաստանում ստացած իր համալսարանական կրթութիւնը (եղել էր բժշկական, իրաւաբանական ֆակուլտէտներում) լրացնելու համար գնաց արտասահման և Սորբոնում լսեց դասախօսութիւններ աստուածաբանութիւնից։ Ներսիսեան դպրոցում նա աւանդում էր կրօն իր կազմած դասագրքերով, որոնք յետոյ տպագրվեցին Թիւրքիայում, միակ հայերէն գրքերը, որ հեղինակել է իր կեանքում Շանշեանը։ Կրօնական ջերմեռանդութեան հետ դպրոցում ծաղկում էր և հայերէնագիտութիւնը։ Այստեղից ահա պարզ է, որ Ներսիսեան դպրոցի աշակերտները պիտի համակրէին «Կռունկի» ուղղութեան։ Եւ նրանցից շատերը դարձան «Կռունկի» աշխատակիցներ, արծարծում էին

Աղաբէկեանի կրօնական-ազգասիրական հայեացքները և դաւանութիւնները։

Հետաքրքրական է որ պահպանողական հին սերունդը վերաբերվեց իր նոր սերնդին այնպէս, ինչպէս վերաբերվում էր «Հիւսիսափայլի» դպրոցին։ Հին սերունդը հալածանքներ յարուցեց Շանշեանի դէմ, որ հէնց նոր, թարմ մարդ լինելու պատճառով եկեղեցի քանդող, պրօտեստանտ, հերետիկոս էր համարվում։ Ինքը, Շանշեանը հոգևոր իշխանութեան ուղղած իր դիմումներով, իսկ նրա աշակերտները մամուլի միջոցով, ինչպէս նաև կեանքում, կռիւ էին մղում հին սերնդի դէմ յանուն ազգային առաջադիմութեան, բարեկարգ կրթութեան։ Այդ հալածանքների մէջ հին սերնդի ծայրայեղ լուսավախութիւնն էր երևում։ Որ Շանշեանը ոչ պրօտեստանտ էր, ոչ էլ հերետիկոս, նոյն իսկ այն չափով, ինչ էր հին սերնդի աչքում Նազարեանցը, դրա ամենայաւ ապացոյցը այն է, որ 1866-ի կաթողիկոսական ընտրութիւնների ժամանակ լուրջ դիտաւորութիւն կար Շանշեանին նստեցնել ամենայն հայոց կաթողիկոսական աթոռի վրա։ Որդինները կռւում էին հայրերի դէմ, համարելով նրանց չափազանց անշարժ, չափազանց հընացած ու նախապաշարված։ Ահա հնապաշտ,

աւանդապահական ուղղութեան մէջ երևան եկած այս առաջադիմութեան ներկայացուցիչն էր «Կռունկը»։

«Հիւսիսափայլից» յետոյ դա երկրորդ պարբերական հրատարակութիւնն էր ռուսահայերի մէջ, որ ունէր խիստ որոշված, խիստ աչքի ընկնող գոյն և գրական արժանաւորութիւնների կողմից էլ բաւական բարձր էր կանգնած։ Եթէ «Հիւսիսափայլը» եւրոպական մտքով առաջադիմական շարժման դպրոցը հաստատեց մեզանում, «Կռունկն» էլ թթու ազգայնամոլութեան, եկեղեցասիրական—պահպանողական մտածութեան ամենաեռանդուն արտայայտիչը դարձաւ։ Եւ այս բանը Ալաբէկեանին աջողվեց մի համեմատաբար կարճ միջոցում, այն է՝ երեք տարվայ ընթացքում։ Նայելով այդ աջողութեան, նայելով համակրողների բազմութեան, պէտք էր ենթադրել թէ ազգայնական ուղղութեան հետևող ամսագրի դրութիւնը միանգամայն ապահովված պիտի լինի ժողովրդի գիտակցական վերաբերմունքով։

Բայց այդպէս չէր դրութիւնը և մենք շատ հետաքրքրական բաներ ենք իմանում այն խոստովանութիւնից, որ հրապարակ բերեց «Կռունկի» հրատարակիչ Համբարձում Էնֆիաճեանը 1862-ի սեպտեմբերին։ Ասում,

*ջերմ, դրուատող, չոյող հայրենասիրութիւնն էլ չէր կարողանում փրկել մամուլը հասարակութեան գերեզմանային անտարբերութիւնից։ Հրատարակիչը երեք տարվայ ընթացքում մեծ վնասներ էր արել։ Եւ ինչ դառն, բայց ճիշտ եզրակացութիւններ էր հասել այդ միջոցում։*

Ցաւելով պէտք է խոստովանենք թէ մեր եւ մեր պաշտօնակիցներու կողմանէ—ասում է Նա— որ այժմս Ռուսաստանի մէջ սկսուած եւ շարունակուած ազգային շրջանաւոր հանդէսները ո՛չ ազգի գիտակցութեան եւ նորա աննահանջելի բաղձանքներու ծնունդներն են եւ ո՛չ նոցա կեանքը պահպանելու չափ, չեմ ասում քանի մի հազար, այլ թէ քանի մի հարիւր կարեկից ընթերցողներ են գտնում։ Այս ճշմարտութեան դառն փորձը առանք մենք ինքնին այս երեք տարուայ միջոցումը եւ նոյնը նկատեցինք մեր պաշտօնակից միւս հրատարակութեանց վերայ։ Մինչդեռ ուրիշ ազգաց մէջ օրագիր պահպանելու համար քանի մի հազար բաժանորդք հազիւ բաւական են համարուում, մենք հայերէն հրատարակութեան ձեռնարկողներս հազիւ թէ երկու կամ երեք հարիւրից աւելի ունեցել ենք, եւ որ արժանին է ուշադրութեան, այս չնչին թիւն անգամ մեզ կարելի է եղել ձեռք բերել բարեկամաց եւ սակաւաթիւ բարենախանձ համազգի եղբարց միջնորդութեամբ։ Թո՛ղ ներուի մեզ պարզաբար ասել, որ ազգային օրագրերու բաժանորդագրութիւնը մինչեւ օրս հրատարակչաց կողմանէ առաւել մուրացկանութեան

է նմանել, քան թէ մի ինքնայօժար եւ փոխադարձ առեւտուրի։

Այս ողորմելի դրութիւնը հարկադրում է հրատարակչին ամսագիրը ամբողջովին յանձնել խմբագիր Աղաբէկեանին, ինքը մնալով լոկ սեփականատէր։ Թողնելով «Կռունկը», Էնֆիաճեանը մի այլ հրատարակչական ձեռնարկութիւն է սկսում։ Մանդինեան քահանայի «Մեղուն» հոգեվարքի մէջ էր. խմբագիրը խնդրում էր ազգասէրներին ազատել իրան ծանր բեռից, որովհետեւ բաժանորդներ չը կան, ազգը այլ եւս չէ պահպանում ազգային լրագիրը, մինչեւ իսկ չի ուզում վըճարել անցեալ տարիներից մնացած պարտքերը։ Էնֆիաճեանը, չը կամենալով որ կորչի լրագրի իրաւունքը, ձեռք է բերում «Մեղուն» եւ Մանդինեան քահանան հեռանում է ասպարէզից, վերջին անգամ աղաչելով որ իր «նիսիէքը» ուղարկեն։

Իր «Կռունկով» Համբարձում Էնֆիաճեանը հանդէս էր բերել Մարկոս Աղաբէկեանին։ Այժմ վերանորոգված «Մեղուով» նա հասարակութեան առաջ էր հանում մի նոր մարդու, որ մինչեւ այդ անյայտ էր։ Այդ նոր մարդը Պետրոս Սիմէօնեանցն էր, Նոր-Նախիջեւանցի, որ եղել էր Դորպատի համալսա-

րանում, բայց չը վերջացնելով ուսումը, եկել էր Թիֆլիս և ուսուցչութեամբ էր պարապում։ Սիմէօնեանցը յանձն առաւ խմբագրի պաշտօնը. մշտական աշխատակիցներ էին Ստեփան Պալասանեան և Գէորգ Տէր-Աղէքսանդրեան։ Այս նոր ույժերով «Մեղուն» սկսեց հրատարակվել 1863 թւականից։ Ի՞նչ էին բերում այդ նորերը։

Առանձնապէս աչքի ընկնող ոչ մի բան։ 1862-ի վերջում տպված մի յայտարարութեամբ հրատարակիչ Էնֆիաճեանը բացատրում էր ընթերցող հասարակութեան թէ ինչ պիտի լինի վերանորոգված «Մեղուն»։ Մի հաստ դաւանանք ունէր խմբագրութիւնը, այն էլ փոխ առած Ստեփանոս Նազարեանից։ Դա այն էր թէ հայերի կոչումն է դառնալ միջնորդ եւրօպական քաղաքակրթութեան և ասիական խաւարում նստած ազգերի մէջ. մի կոչում, որ պարտք է դնում հայերի վրա կատարելագործվել, կրթվել և զարգանալ։ «Մեղուն» ուզում էր ծառայել այդ գործին։ Բայց ի՞նչպէս, ի՞նչ ուղղութիւն, ի՞նչ գոյն պիտի ունենար։ Այդ մասին նոր խմբագրութիւնը չէր կարողանում մի որոշ բան ասել։ Յայտարարութիւնն էլ վկայում էր որ վերանորոգվածը նոյն «Մեղուն» պիտի

*լինի, բայց մի քիչ բարեփոխված։ Ահա ինչ էր ասում նա.*

«Մեղու Հայաստանի» լրագրոյն բովանդակութիւնը (программа) եւ չափը թէպէտ եւ մնում է միեւնոյնը, բայց նիւթերու ընտրութիւնը եւ առհասարակ նրա ներքին ուղղութիւնը նոր հրրատարակչի, նոր խմբագրի եւ նոր աշխատակցաց ազդեցութեան տակ ընկնելով, անտարակոյս մի նոր եղանակաւ ներկայացնելու է գալ տարի ընթերցասիրաց առաջեւ։ Եւ մասին մեր կողմանէ հէնց ըսկզբից որ եւ իցէ խոստմունքներ յառաջ բերել աւելորդ ենք համարում եւ թողնում ենք, որ հայ կարդացողները ժամանակին իրանք գնահատեն էս հանդիսի աւելի կամ պակաս արժանաւորութիւնը։

***«Մեղուի» ծրագիրը երեք մաս ունէր. «Քաղաքական, Բանասիրական, Զբօսարան»։ Մի կարող և ընդունակ խմբագիր այս նեղ սահմանների մէջ էլ բաւական գործ կարող էր կատարել։ Բայց «Մեղուն» մի երևոյթ չէր մեզանում, գոնէ «Կռունկի» պէս երեւոյթ։ Ունենալով քաղաքական-հասարակական մի օրգանի անհրաժեշտ հանգամանքները, նա շատ հեռու մնաց այդպիսի օրգան լինելուց. ղեկավարելու, հոսանք ստեղծելու ընդունակութիւն նա ցոյց չը տուեց։ Համոզմունքներով, հայեացքներով դա «Կռունկի» ետևից քարշ ընկնող մի արբանեակ էր, ու-***

րեմն պահպանողական բանակի նոր սերուն-
դից էր։

Նոր խմբագիրը, իբրև բարձրագոյն դպրո-
ցում եղած մի մարդ, չէր կարող Թիֆլիսի
իրականութեան մէջ աչքի չընկնել նրանով,
որ մի քանի հարցերի վերաբերմամբ նոր
հայեացքների էր հետեւում։ Այսպէս, նա գոր-
ծում էր հին աղայական դասակարգի դէմ
կռւող կուսակցութեան մէջ. Ջալալեան ե-
պիսկոպոսի և Թայիրեանի կուսակցութեան
հակառակորդն էր նա և ժողովրդական սկզ-
բունքի պաշտպան։ «Հիւսիսափայլի» հա-
մակրողն էր, բայց երբէք չը կարողացաւ նրա
համարձակ, որոշ գոյն ունեցող հրապարա-
կախօսութեան նմանվել։ Գ. Սիմէօնեանցը
բացի հրապարակախօսական յօդուածներից
ոչինչ չէր գրում. բայց նրա հրապարակա-
խօսութիւնը վերին աստիճանի թոյլ էր, ջրա-
լի։ Նա չէր կարողանում պարզ ու կարուկ կեր-
պով պահանջներ դնել, վրդովել, յուզել ըն-
թերցողին։ Լինելով մի նոր ու թարմ մարդ,
որ մտնում էր մամուլի ասպարէզը մի
այնպիսի ժամանակ, երբ հասարակութիւնը
քնած էր, երբ նրան կարող էր ցնցել իւրա-
քանչիւր ուժեղ հարուած, Սիմէօնեանցը հէնց
առաջին քայլերից չը կարողացաւ հետք թող-
նել, փոքր ի շատէ նկատելի ակօս անցկա-

*ցնել։ Նա կոչվածներից չէր, չունէր պաշար, չունէր խօսքով բորբոքելու երկնային շնորհքը։*

*Ու «Մեղուն» կենդանանալ չէր կարողանում։ Մանդինեան քահանայի և նրա յաջորդի մէջ տարբերութիւնը այնքան քիչ նկատելի էր, որ հազիւ թէ կարելի լինի երկար խօսել դրա մասին։ Մի բան ճիշտ է. վերանորոգված «Մեղուի» մէջ չէին երևում Մանդինեանի ժամանակների թոյլ, երեխայական, ծիծաղաշարժ յօդուածներն ու ոտանաւորները։ Բայց բաւական էր այդքանը։ Մի լրագրի հոգին կեանքն է, հրապարակախօսութիւնն է. իսկ Սիմէօնեանցի յօդուածներում հոգի չը կար։ Դրանք պաշտօնական, սառն, երկարաբանութեամբ ձանձրացնող քարոզներ էին։ Ու ինչպէս քարոզչի կոչում չունեցող, բայց անպատճառ քարոզիչ դառնալ կամեցող քահանան կամ վարդապետը ունի իր համար մի միանման ձև, որով դիմում է «օրհնեալ ժողովրդին», այնպէս էլ Գ. Սիմէօնեանցը անչափ սիրում էր դուրս գալ իր լրագրի էջերում՝ «յայտնի է ամենքին», «բազմիցս կրկնել ենք», կամ՝ «քանիցս մենք պատիւ ենք ունեցել յայտնելու պատուելի հասարակութեանը» խօսքերով*)։*

---

*) Կայ և աւելի լաւը.—«Թէ «Մեղուն» և թէ «Կռունկ»

Առաջին տարվայ ընթացքում վերանորոգված «Մեղուի» մեջ մի առանձին բացառութիւն կարելի է համարել Պալասանեանի գրական-քննադատական յօդուածները, որոնց մեջ երեւում է հեղինակի զարգացումը, քննադատական ընդունակութիւնը։ Բայց այդ յօդուածները երկրորդ տարուց սկսեցին չերեւալ «Մեղուի» մեջ և լրագիրը այլևս աչքի ընկնող գրական ոյժեր չունէր։ Խմբագրի դատողութիւնները պտտում են օդի մեջ, վերացական բնաւորութիւն ունեն, կեանքի երեւոյթների վրա չեն հիմնված, ամեն ինչ գրվում էր այնպէս, որ կրքեր չը յարուցվեն, որ հարուածը խիստ ընդհանուր բնաւորութիւն ունենայ, չը ցաւեցնէ։

Մշտական բաժիններից ամենահարուստը քաղաքականն էր։ Եւ սա հասկանալի է.— այդտեղ աշխատանքը եւրոպական և ռուս լրագիրներից քաղած կտորների թարգմանութիւնն է։ Բայց չէ կարելի ասել թէ նոր խմբագրութիւնը այդ կողմից մի առանձին երախտիք ունենայ իր ընթերցողների առաջ. քաղաքական բաժին ունէր և Մանդինեանի «Մեղուն» և այդ բաժինը անհամեմատ հա-

---

լրագիրը (?) քանիցս անգամ պատիւ ունեցան հրատարակելու իրանց թերթերի մէջ...» (1863, № 21)։

*բուստ էր 1861 Թւականին, երբ լրագրի գլխաւոր աշխատակիցը Միքայէլ Պատկանեանն էր։ «Ազգային» կոչված բաժինը արդէն խմբագրութեան ամբողջ անկարողութիւնն է պատկերացնում։ Այդտեղ նիւթերը, բացի խմբագրութեան դատողութիւններից և Կ. Պօլսի հայ լրագիրներից վերցրած արտատպութիւններից, համարեա միմիայն եկեղեցիների, դպրոցների դրամական հաշիւներն են. գնալով «Մեղուն» ճառերի անզուսպ սիրահար դարձաւ և լցնում էր իր էջերը զանազան հանդէսների և թաղումների ժամանակ արտասանած երկար ու անհամ ճառերով։*

*Բնորոշ է որ հէնց առաջին տարում «Մեղուի» նոր խմբագրութիւնը ընդհարվեց հասարակական պահանջների հետ և չը գիտէր թէ ինչպէս տանէ գործը որ լաւ լինի։ «Բարի Խորհուրդ» յօդուածի մէջ *) խմբագրութիւնը պատմում է այսպիսի բան.*

Այսպէս ահա շատ անգամ պատահել է եւ Մեղուի խմբագրութեանը լսել զանազան բարի խորհուրդներ, որոնք բոլորովին միմեանց հակառակ լինելով, չէ գիտացել թէ որը նրանցից աւելի ընդունէ ու նրանով վարուի, որ աւելի կարողանայ հասնել իր նպատակին, այն է ընթերցողներին օգտաւէտ

*) 1863, № 17։

լինել, տալով նրանց այն կերակուրը, որն որ նորա հասկացողութեան ու պահանջողութեան համեմատ լինի, ուստի եւ մարսական ու սննդարար։ Ահա պատմենք այս զանազան խորհուրդները, որոնք խղճուկ Մեղուն մի քանի ժամի մէջ այլ եւ այլ բարենպատակ եւ բարեկամ անձինքներից միջոց է ունենում լսելու։ Մեր պատմելու դիտաւորութիւնը այն է, որ յետոյ դառնանք բոլոր ընթերցողներին եւ խնդրենք որ ամենքն էլ յայտնեն իրանց միտքը, որ մենք էլ նոցա համեմատ վարվենք, տալով նոցա այն, ինչ որ իրանք կը պահանջեն մեզանից. տանք այն հարկը, որն որ պարտականութիւնը կ'պահանջէ, յիշելով Աւետարանի՝ տուք զկայսերն կայսեր եւ զԱստուծոյն Աստուծոյ խօսքերը։

Այս դիմումը ընթերցողին, այս հարցումը թէ ինչ կը կամենաք և ինչպէս կը կամենաք, արդէն ապացոյց է որ խմբագիրը չունէր իր սեփական որոշ գաղափարը իր առանձնած պաշտօնի մասին։ Նա ինքը չը պիտի ղեկավարէր ընթերցողին, այլ, ընդհակառակը, ընթերցողը պիտի ղեկավարէր նրան, պիտի ծրագիր տար նրան։ Բայց կարող էր տեղի ունենալ ընթերցողների պլէբիսցիտ, կարող էր կայանալ մի համայնական վճիռ, որ որոշէր թէ Պետրոս Սիմէօնեանցի «Մեղուն» ինչ պիտի անէ որ օգտաւէտ լինի։ Այսպիսի հարցերը ընթերցողը չէ վճռում, այլ հասարակական օրգանի ղեկավարը, եթէ նա

ունի կոչում, տաղանդ, ժամանակի և ժողովրդի հանգամանքների մէջ թափանցելու ընդունակութիւն։ Եւ պատահեց այն, ինչ պէտք է պատահէր։ Հայ ընթերցողը ոչինչ չասաց և «Մեղուն» շարունակեց գնալ այնպէս, ինչպէս սկսել էր։ Խմբագրութիւնը ընդունակութիւն էլ չունէր բաւարարութիւն տալու ընթերցողի պահանջներին։ Ահա մէկը Մոսկվայից գրում է որ ցանկալի է տեսնել «Մեղուի» մէջ թղթակցութիւններ գաւառներից։ Ինքը, Սիմէօնեանցը, չը հասկացաւ այդ անհրաժեշտութիւնը և նրան ցոյց տուին։ Բայց ինչ արաւ նա։ Տպագրեց այդ նամակը, իր կողմից աւելացրեց թէ ինքն էլ շատ լաւ հասկանում է որ թղթակցութիւնները շատ են հարկաւոր. Աստուած ողորմած է, դրանք էլ կը լինեն։ Եւ «Մեղուի» մէջ այնուհետև, տարիների ընթացքում, եթէ մի մի պատահում էլ էին թղթակցութիւններ, դրանք համարեա միմիայն «ազգային» նիւթ էին պարունակում. դպրոցական այս ինչ տօնը, այս ինչ առաջնորդի կատարած հանդէսը, արտասանած ճառը և այլն։ Ժողովուրդ չը կար, որովհետև լրագիրը չէր առաջացնում ժողովրդի կեանքը ուսումնասիրելու պահանջ, չէր տալիս ծրագիր թղթակիցներին, մտքեր չէր շարժում։

Անտարբերութիւնը այսպիսի հանգամանքների մէջ մի բնական երևոյթ է։ «Մեղուն» ճիշտ որ «խղճուկ» էր, ինչպէս անուանում էր նրան խմբագիրը։ Հրատարակիչ Էնֆիաճեանցի չեչտած այն իրողութիւնը թէ մուրացկանութեան պէս մի բան է ամսագիր կամ լրագիր հրատարակելը՝ զուտ ճշմարտութիւն էր և «Մեղուի» վերաբերմամբ։ Նոր խմբագրութեան երկրորդ տարին, այն է 1864-ին, լրագիրն ունէր ընդամենը 237 բաժանորդ, որոնցից միայն 183 հոգի էին վըճարել բաժանորդագինը։ Յաջորդ տարին աւելի է ընկնում լրագրի նիւթականը։ Այս անգամ «Մեղուն» ունի 270 անուանական բաժանորդ, բայց փող վճարողների թիւը իջնում է 150-ի։ Խմբագրութիւնը մուտք ունեցել է 1000 րուբլի, ծախս 1250 րուբլի։

Ոչինչ չէր օգնում, թէև գործադրվում էին մուրացկանութեան բոլոր միջոցները։ Խմբագրութիւնը իր թերթը ուղարկում էր և այնպիսի մարդկանց, որոնք բաժանորդ չէին գրվում, երևի այն յոյսով թէ այդ մարդիկ կը խղճահարվեն և գոնէ ամաչելուց բաժանորդ կը գրվեն։ Բայց դռնէ դուռն ընկած անպատիւ հայ լրագիրը ոչ խղճահարութիւն, ոչ հետաքրքրութիւն էր զարթեցնում. և մարդիկ, երկու կամ երեք ամիս «Մեղուն»

այդպէս ձրի ստանալուց յետոյ, սկսում էին յետ դարձնել համարները և յայտնում էին թէ էլ չեն կամենում ստանալ *)։

Խմբագրութիւնը աշխատում էր հասկանալ այդ երևոյթի պատճառները և ամեն յարմար դէպքում յայտնում էր թէ պատճառը մի է—այն, որ «Մեղուն» խայթում է, այսինքն որ թշնամութիւն կայ, հակառակութիւն կայ «Մեղուի» դէմ։ Մենք աւելորդ չենք համարում բերել այստեղ այդ բացատրութիւններից մէկը, որ տպված 1864 թւականի վերջում։

Գիտեմ,—ասում է խմբագիրը—պէտք է հարցնեն թէ բաս ինչու Մեղուն ինքն էլ չէ սատակում, երբ խայթում է, որ յատկական է մեղուների բնաւորութեանը։ Մենք կը պատասխանենք, որ այս հասարակ Մեղուներից չէ, սա Հայաստանի Մեղուն է. որն որ հեշտ սատկելու ապրանք չէ, թէեւ խիստ շատերը կան, որոնք կ'համաձայնէին նորա թաղման ծախսն էլ իրանց վերայ առնելու ու ճոխ դագաղ էլ շինել կ'տային նորա համար, եթէ միայն նա կամենար փոխիլ առ հարս. բայց մենք կ'ասենք, որ Մեղուն ի միխթարութիւն այսպիսի բարեկամաց աւելի աշխուժութեամբ պէտք է վարէ իր կեանքը, որի համար շատ բան հարկաւոր չէ, հերիք է մի քանի ծաղիկների հիւթն էլ. բայց Աստուծոյ ողորմութեամբ

*) 1865, № 11։

Հայաստանը, չնայելով իր աւեր եւ խոպանացեալ լինելուն, դեռ եւս ունի այնքան ծաղիկներ, որ կարողանայ կերակրել իր մէկ Մեղուին, որ սա սովամահ չմեռնի։ Թող ուրեմն նորա յիշեալ բարեկամները խնդան միայն նորա վերայ, որ Մեղուն դեռ միայն սովից չէ սատակում, բայց կազդուրել ու զօրանալ էլ չէ կարող. միայն թող յիշեն նոքա այն էլ, որ օր աւուր ծաղիկների թիւն էլ աւելանում է, ուստի եւ նոցա այս ուրախութիւնն էլ շատ կարճատեւ կ'լինի. ու այն ժամանակ Մեղուն նոցա յուղարկաւորութեան համար ներդաշնակ ու քաղցր բզզոցներ կ'հանէ «յիշատակ արդարոց օրհնութեամբ եղիցի» ասելով։

*Սա միևնոյն ժամանակ մի նմուշ է Պետրոս Սիմէօնեանցի հրապարակախօսութիւնից։ Ո՞ւմ վրա ազդէր, ի՞նչպէս ազդէր այսպիսի լեզուն, այսպիսի խօսակցութիւնը։ Եւ դեռ կարծում էին թէ «սովամահ սատակելու» դրութեան հասնելու պատճառը այսպիսի տափակութիւնն ու անհամութիւնը չէ, այլ այն, որ «Մեղուն» շատերին է խայթում։*

*Ճիշտ է, Հայաստանի Մեղուն առանց խայթի չէր։ Բայց ամբողջ հարցը նրա մէջ է, թէ արդեօք նրա խայթոցները հասնում էին նպատակին, ցաւեցնում էին շատերին թէ ոչ։ Կարդալով նրա հրապարակախօսական յօդուածները, մենք չենք զգում խայթոց, թէև տեսնում ենք տեղ-տեղ բաւական*

խստութիւն։ Սիմէօնեանցը առաջին տարի-ներում գիտէր խօսել առաջադիմութեան ա-նունից, գիտէր եթէ ոչ իսկական պատե-րազմ, գոնէ դրա նմանութիւնն ունեցող մի բան մղել հնապաշտութեան, անշարժութեան դէմ։ Բայց այդ բոլոր շարժողութիւնների, ջանքերի մէջ «Մեղուն» մնում էր «Մեղու», այսինքն թոյլ, տարուբերվող, անհաստատ։ Եթէ նա մի որևէ ազգային պակասութիւն էր երևան հանում, միևնոյն ժամանակ իր պարտքն էր համարում աւելացնել թէ այդ պակասութիւնը յատուկ է ուրիշ ազգերին էլ։ Եթէ մի մի յարձակվում էր աղաների վրա, միևնոյն ժամանակ աշխատում էր թու-լացնել այդ յարձակման նշանակութիւնը, ա-ւելացնելով, թէ, ի հարկէ, բոլոր աղաները չեն վատ և իր ասածները ամենքին չեն վերաբերվում։ «Մեղուն» դժգոհութիւններ յայտնել գիտէր, բայց անուններ տալ, փաս-տեր վերլուծել, չարիքը իր իսկական անու-նով ներկայացնել չը գիտէր։ Ամեն ինչ փըռ-ված ու տարածված էր օդի մէջ, խարխա-փում էր անորոշութեան մէջ, վերացական էր, ընդհանուր բառեր։

Փոքր ի շատէ աչող, բաւարարութիւն տուող յօդուածներից մենք, նմուշի համար, վերցնում ենք մէկը։ Շատ քիչ են այն դէպ-

***քերը, երբ «Մեղուն» պարզ ու կտրուկ ոճով արտայայտած լինի իր դաւանանքը։ Բայց մենք առանձին ուշադրութիւն դարձնում ենք այդ յօդուածի վրա այն պատճառով, որ «Մեղուն» այդտեղ շատ ճիշտ նկարել է իր սեփական պատկերը, իր ամբողջ պայագան։ «Մի քանի խօսք» է այդ յօդուածի վերնագիրը*). խօսքը առաջադէմ և յետադէմ կուսակցութիւնների մասին է։***

*Այս հակառակ կուսակցութիւնքը—ասում է «Մեղուն»—իւրաքանչիւր ազգի մէջ ծագում են այն ժամանակ, երբ նորա մի մասը յառաջադիմութեան ճանապարհի վերայ կանգնելով սկսում է առաջ երթալ ու իր հետ կամենում է տանել թուլամորթ եւ ծանրաշարժ եղբարց էլ, որոնք չեն կամենում համաձայնել իրանց սիրած անգործունէութեան եւ անշարժութեան վիճակը թողնելու։ Սրանից ծագում է կռիւը երկու կուսակցութեանց մէջ, որ միշտ վերջինների անկումովն է վերջանում։ Այստեղ յառաջադէմները յարձակողական վիճակի մէջ են, իսկ անքարեմիտները կամ անշարժները պահպանողական վիճակ են պահում։ Յառաջադէմների գեղեցիկ ճակատների վերայ գրած են ոգեւորող՝ լուսաւորութիւն, գիտութիւն, մարդութիւն, ճշմարիտ քրիստոնէութիւն եւ պարզութիւն սուրբ խօսքերը. իսկ յետադէմների հին ու փոշիով ծածկած կերպարանքների վերայ գրած են. խաւար, մոլութիւն, քսու-*

---

*) 1864, № 38։

Թիւն, խարդախութիւն, կեղծ կրօնասիրութիւն եւ ազգասիրութիւն։ Այս վերջինները դէմ յանդիման կանոնաւոր պատերազմ տալու կարողութիւն չունենալով գործ են դնում ամեն անազնիւ միջոցներ իրանց ախոյեաններուն ճնշելու համար, միայն նոցա ջանքերն էլ ի զուր են եւ իրանց գործ դրած չարիքը իրանց գլխին պէտք է հաւաքուեն։ Նոցա գըլխաւոր զէնքերն են միշտ քսութիւնը, մատնութիւնը եւ ժողովրդեան կրօնական զգացմանց լարերը, որոնք աշխատում են լարելու յառաջադէմների դէմ։ Այսպէս ամեն ազգերի մէջ էլ, երբ հիները կամենում էին հալածել յառաջադիմութեան եւ լուսաւորութեան զաւակներուն, աշխատում էին դնել սոցա վերայ անհարազատութեան կնիքը դէպի իրանց եկեղեցին։ Բնականաբար այս երեւոյթը երեւեցաւ եւ մերերի մէջ։ Սկզբումն յառաջադէմ երիտասարդները բողոքականութեան անունը ստացան, բայց երբ այս անունը չկարողացաւ հաստատուել նոցա վերայ, հանդէս դուրս բերին բարի մարդիկ նեստորականութիւնը եւ կարծեմ վերջապէս մահմեդականութիւնը ու կըռապաշտութիւնն էլ չեն մոռանալ առաջ բերելու։ Յայտնի բան է, այս ամենն էլ անարժան միջոցներ են՝ արժանի նրանց գործ դնող անարժան մարդոց։

**Այս տեսութեան «Մեղու» նորից վերադարձաւ իր № 41-ի մէջ։ Այստեղ էլ չեշտւում են նոյն հանգամանքները.**

Արդէն անքաւականութիւնները յետադէմների եւ յառաջադէմների մէջ սկսած են մեր ազգումն էլ. որովհետեւ լուսաւորութեան արշալոյսը իր շողքը գըցել է մեր վերայ էլ... Յետադէմները աւելի գործ

են ածում իբրեւ զէնք քսութիւնը, քամբասանքը, նենգութիւնը, խորամանկութիւնը, դաւաճանութիւնը եւ մատնութիւնը, որոնց մէջ կրթուել են իրանք եւ որոնց առաջնորդութեամբ անցրել են իրանց կեանքի ասպարէզը. բայց եթէ պատահում էլ է երբեմն, որ կարծես աշկարայ հանդէս են կամենում դուրս գալ, այս յուսահատութեան զօրութիւնն է, որ րոպէապէս ոյժ է տալիս նրանց։

Ո՞ր առաջադէմ, արմատական թերթ կը կարմրէր այս տողերից։ Բայց «Մեղուն» իսկական առաջադէմ թերթ չէր։ Ո՛չ, հէնց այս իսկ յօդուածների մէջ երևում են կղերական պաշտամունքի պոչերը։ «Մեղուն» գովաբանում էր առաջադիմութիւնը, օրինական և ցանկալի էր համարում պատերազմը առաջադիմութեան և յետադիմութեան մէջ, բայց ինքը նոյն առաջադիմութեան, նոյն պատերազմի զինուոր չէր։ Ի՞նչպէս բացատրենք այս երևոյթը։

«Մեղուն» դեռ երիտասարդական հասակում էր։ Երիտասարդութիւնը սովորաբար լուսասէր է, ունի իր թռիչքները դէպի առաջ, ունի իր լուսագոյն ոգևորութեան րոպէները, երբ լոյսը, ազատութիւնը, ճշմարտութիւնը խօսեցնել են տալիս բարձրաձայն։ Կեանքի մէջ անթիւ են այնպիսի անհատներ, որոնք իրանց ծաղիկ հասակում տեսել են

գաղափարական գարուն, բայց մի գարուն, որ կարճատև է եղել, միայն մի քանի ծըպ-տուն օրերից կազմված։ Թռել են այդ օրերը. և կուռքերը կործանված են, սրբությունը պղծված է, իդեալների տաճարը անգութ կերպով ավերված։

Այսպէս էր և «Մեղուն»։ Երիտասարդական ժամանակի մի քանի հատ աղօտ, առաջադէմ դաւանանքներ — որոնք մի քանի անամպ օրերն են նրա երկարատև կեանքի մէջ։ Երկար ապրեց «Մեղուն»։ Բայց ինչու՞ համար։ Ոչ թէ այդ սակաւաթիւ անամպ օրերի համար, այլ որպէսզի մարմնացնէ ճիշտ և ճիշտ այն յետադիմութիւնը, որի դէմքը, որի մտաւոր աղքատութիւնը, որի գործածած անազնիւ զէնքը ճարտար պարզութեամբ նկարագրված են վերև բերած տողերի մէջ։ Պետրոս Սիմէօնեանցը մարգարէ էր իր վերաբերմամբ։ Հայոց մամուլի ասպարէզում նրան վիճակված չէր ստեղծագործողի ինքնուրոյն դեր։ Կեղծ էր այն դրութիւնը, որ երիտասարդական հասակը տալիս էր նրան, անակնկալ կերպով յառաջացնելով նրան առաջադիմութիւնը պաշտպանողի պաշտօն։ Իսկական դերը առջևում էր, և այդ դերն էր՝ հանդիսանալ առաջադիմութեան թշնամի, խաչընդոտ։ Ահա ժամանակով, երբ Գրիգոր

Արծրունին հրապարակ կը գայ իբրև խմբագիր, մենք կը տեսնենք թէ որպիսի զարմանալի հարազատութեամբ Պետրոս Սիմէօնեանցը կը մարմնացնէ իր սեփական ձեռքով դատապարտած յետադիմական տիպը...



Եւ պէտք է նկատենք որ գրական ու հրապարակախօսական տեսակէտից այդքան թոյլ ու խեղճ «Մեղուն» միակ լրագիրն էր, որ մնում էր հրապարակի վրա, Թիֆլիսի պէս մի հայաշատ կենտրոնում։

Մեր պարբերական մամուլը դեռ խանձարուրի մէջ էր գտնվում, այնպէս որ մենք դեռ չէինք կարողանում տարբերութիւն դընել ամսագրի և լրագրի մէջ։ Ամսագիրը ուրիշ պաշտօն ունի, լրագիրը՝ ուրիշ. մեզանում այդ երկու տիպերը խառնված էին. լրագիրը ամսագրական նիւթեր էր տալիս, ամսագիրը—լրագրական։ Ահա թէ ինչու մենք նկատի ենք առնում այն հանգամանքը, որ վերանորոգված «Մեղուի» հէնց առաջին տարին ամսագրական մամուլը Թիֆլիսում անկման էր դիմում, հետևաբար և լրագրի համար ասպարէզում ուժեղ մրցակից չը կար։

1863 թուականին «Կռունկը» այլ ևս առաջվանը չէր։ Աղքատ են նիւթերը, Մարկոս

*Աղաբէկեանը այլ ևս առաջվայ Թևերը չունի, ազգայնամոլութիւնը բանաստեղծական ազմուկով չէ առաջ տանում։ Մնալով մենակ, առանց ապահով հրատարակչի, լոկ բաժանորդների տուածին ապաւինած, «Կռունկը» քայլ առ քայլ մօտենում է իր հոգեվարքին։ Բայց տարվայ սկզբին Աղաբէկեանը կարծես նոր ճանապարհի վրա էր, կարծես ուզում էր խոստովանել իր սեփական մեղքերը։*

Լաւ գիտենանք,—ասում էր նա յունվարի համարում,—լաւ գիտենանք որ քանի որ մեր մտաւոր մշակութիւնը ոտանաւորներ, Թեթեւ-մեթեւ գրուածքներ յառաջ բերելու, վերիվերոյ ճառեր, ներբողներ յօրինելու եւ այլ չեմ իմանում ինչ ·տեսակ քամու նման խօսքեր, իմաստներ շարադրելու վրայ կըկայանայ, մեր ուսումնականութիւնը շինովի զարդու կնմանի, եւ հաստատուն բան չի լինի եւ կդառնայ այն գեղեցիկ կանանց նման, որոնց բոլոր սիրունութիւնը մի քանի փողի սնգոյրով է եւ այն երիտասարդաց, որոնց բոլոր դաստիարակութիւնը իրանց արտաքին շորերուն, վայելչութեան եւ արժողութեան մէջն է։

*Ճիշտ այսպէս, այո՛։ Երգող, ճառող ազգասիրութիւնը ապաշխարում էր հրապարակով։ Բայց այդքանը միայն։ Սովորութիւնը ուժեղ է հանդիսանում բարի կամեցողութիւնից. և դրանից յետոյ էլ «Կռունկը» տալիս է*

այն, ինչին սովորել էր, այսինքն՝ ճառեր, ներբողներ և «թեթև-մեթև» ոտանավորներ։

Նշանավոր է, որ «Կռունկի» վերաբերմամբ էլ հասարակությունը պահանջներ ուներ։ Պահանջում էին որ ամսագիրը ավելի պարզ, հանրամատչելի լեզվով խմբագրվի, որպեսզի հեշտ լինի նրան հասկանալը։ Աղաբեկյանը խոստանում է կատարել իր ընթերցողների այդ պահանջը, բայց, հակառակի պես, 1863-ի «Կռունկը» նախընթաց տարիներից էլ դժվարամարս ու քիչ հասկանալի էր. նրա էջերը այժմ լցվում էին պատմական գրաբար յիշատակարաններով։ Այստեղ էլ, ուրեմն, նոյն անկարողութիւնը հասարակութեան մէջ գոյացվող պահանջների առաջ, ինչ տեսանք «Մեղուի» մէջ։ Գահավիժումը ճակատագրական էր և «Կռունկի» համար։ Նա փակում է տարին 260 բաժանորդով, բաց է անում հետևեալ տարվայ բաժանորդագրութիւնը, բայց 1864-ին չէ հրատարակվում և Աղաբէկեանը, թողնելով մի քանի հատ բաժանորդներ, գնում է Պօլիս։

Սակայն «Կռունկը» թողնում էր ժառանգութիւն։ Նրա աշխատակիցները մտնում են «Մեղուին», որի ուղղութիւնը արդէն լիովին համապատասխանում էր «Կռունկի» ուղղութեան։ Այդ ուղղութիւնը ապագայում

ստացաւ մեղուականութիւն բնորոշ անունը, թէև աւելի արդարացի կը լինէր անուանել կռունկականութիւն, քանի որ «Մեղուն» այդ ուղղութեան ստեղծողը չէր մեզանում, այլ միայն աւանդապահը։

«Կռունկը» իր խմբագրի հետ բոլորովին չանյայտացաւ մեր գրական հօրիզօնից։ 1864-ի յուլիսին հրատարակվեց մի յայտարարութիւն, որ յայտնում էր թէ «Կռունկը» պիտի չարունակէ իր գոյութիւնը։ Դարձեալ մի նոր մարդ էր հանդէս գալիս։ Յայտարարութեան տակ դրված էր ստորագրութիւն. «Խմբագրող-Տնօրինող Կանդիդատ Մոսկվայի Համալսարանի, Ուսուցիչ պատմաբանական գիտութիւնների, Ս. Ստեփանէ»։

Ստեփանոս Ստեփանէ (Ստեփանեան), մի գօրեցի հայ, որի նախնիքները Թիւրքիայից էին գաղթել, նոր էր աւարտել Մօսկվայում իր ուսումը և Թիֆլիսում ուսուցչութիւն էր անում։ Մօսկվայի հայ ուսանողութեան ամենաեռանդուն անդամներից մէկն էր Ստեփանէն, նա դեռ համալսարանում եղած ժամանակն էր սկսել գրել հայերէն և նրա անունը մենք տեսնում ենք «Հիւսիսափայլի» մէջ՝ հէնց այդ ամսագրի առաջին տարուց (1858)։ Երբ սկսվեց «Կռունկի» հրատարակութիւնը, Ստեփանէն սկսեց գրել և այդտեղ,

տպագրելով գլխաւորապէս ոտանաւորներ, որոնց համար երբեմն գործ էր ածում «Իշխան Բագրատունի» կեղծ անունը *)։

Թիֆլիսում Ստեփանէն ուզում էր նոր ամսագրի իրաւունք ստանալ։ Բայց մինչև այդ միտքը իրագործելը նա, Մարկոս Աղաբէկեանի նման, վերցրեց «Կռունկը»․ այսինքըն նա խմբագիր էր, հրատարակութեան ամբողջ գործը իր վրա էր առնում, իսկ սեփականատէր Ենֆիաճեանցը մնում էր լոկ անունով հրատարակիչ։ Այս պայմանների մէջ Ստեփանէն սկսեց իր գործունէութիւնը և շուտով տեսաւ թէ որքան անյարմար պայմաններ են դրանք, ուստի, այլևս երկար չը սպասելով, սկսեց միջնորդել իր սեփական ամսագիրն ունենալու մասին։

Յայտնի է թէ Ստեփանոս Ստեփանէն (յետոյ Խորէն վարդապետ և վերջը եպիսկոպոս), որքան զարգացած, մանաւանդ որքան եռանդոտ մարդ էր։ Վաթսունական թւա-

---

*) Միքայէլ Նալբանդեանցը շատ երիտասարդների համար օրինակ դարձաւ։ Սկսեցին նմանվել նրան ոչ միայն գրելու, գաղափարներ արծարծելու մէջ, այլ և կեղծ անուններ հնարելու մէջ։ Ստեփանէի «Իշխան Բագրատունին» անշուշտ «Կոմս Էմմանուէլի» ազդեցութեան տակ է կազմվել։ «Հայկական Աշխարհը» ունէր մի աշխատակից՝ «Դուքս Մանդակունի» անունով։

կաններին նա երևան է գալիս մեզանում իբրև ն ո ր ե ր ի ց մէկը, որ արդիւնաւոր կերպով գործում է մանկավարժական ասպարէզում, իսկ մամուլի մէջ հանդիսանում է լայն ու լուսաւոր գաղափարների քարոզիչ։ Իբրև Մոսկվայի ուսանող և «Հիւսիսափայլի» աշխատակից, նա գտնվում էր Նազարեանցի ազդեցութեան տակ։ Այդ ազդեցութիւնը այնքան սաստիկ էր, որ Ստեփանէի առաջին գրուածքներում (օրինակ, 1864-ի յայտարարութեան մէջ) մենք տեսնում ենք Նազարեանցի ոճը, դարձուածքները, նոյն իսկ սիրած բառերը։ Դա առաջին մարդն էր, որ փորձում էր «Հիւսիսափայլի» գրական դըպրոցը հաստատել Թիֆլիսում, այսինքն մօտեցնել հայկական կեանքին։

Սկզբից նեթ Ստեփանէն կամենում է որևէ կերպով զանազանել իր «Կռունկը» Աղաբէկեանի «Կռունկից»։ Ամսագրի անունը նա դարձնում է «Կռունկ Հայկական Աշխարհի (փոխանակ «Հայոց Աշխարհի»), փորձում է հեռացնել այդ անունից «Կռունկ» անունը, «որովհետև,—ասում է նա—կռունկը թռչունների մէջ յիմարների նշան է», սակայն այդ բանը չաջողվեց։ Բայց «Կռունկ Հայկական Աշխարհի» անունն էլ չը բաւականացրեց Ստեփանէին. լինելով աշխարհաբարի ջերմ

պաշտպան, նա ընդունում էր ռուս յայտնի գրող Կարամզինի ասածը—«Գրիր այնպէս, ինչպէս խօսում ես», ուստի հէնց առաջին համարից սկսեց անուանել իր ամսագիրը «Հայկական Աշխարհի Կռունկ»։ Երկրորդ փոփոխութիւնը, որ նա մտցրեց իր ստանձնած գործի մէջ, բաժանորդագնի էժանացնելըն էր. փոխանակ 8 րուբլու, նա նշանակեց 5 րուբլի, բայց միևնոյն ժամանակ ծաւալն էլ փոքրացրեց. այսպէս անում էր որպէսզի ամսագիրը գնի կողմից էլ մատչելի լինի և շատ տարածվի։

Նոր «Կռունկը» պիտի հրատարակվէր 1864-ի հոկտեմբերից։ Բայց հէնց առաջին քայլից Ստեփանէի վրա ծանրանում էր մի պակասութիւն, որ ճակատագրական էր նրա ամբողջ գործունէութեան ընթացքում. դա այն էր, որ ամսագիրը հրատարակվում էր խիստ անկանոն կերպով։ Առաջին համարը հոկտեմբերին հրատարակվելու փոխարէն լոյս տեսաւ միայն 1865-ի ապրիլին։ Միացրված էին չորս ամսվայ համարները և այնուհետև երկու, երեք ամսվայ համարները միացնելը սովորական բան դարձաւ Ստեփանէի համար։

Առաջին յայտարարութիւնը, որով Նոր խմբագիրը ներկայանում էր հասարակութեան, բաւական երկար էր, բայց և որոշ ու-

պարզ։ Դա նորօգված «Մեղուի» յայտարարութիւնը չէր։ Ստեփանէն հէնց առաջին քայլից դրօշակ էր պարզում, որի վրա գրում էր «Միտք և Քննութիւն»։ Առաջին յայտարարութիւնը ցոյց է տալիս որ նոր խմբագիրը լաւ տեղեակ է իր սկսած գործին, ունի որոշ աշխարհայեացքներ, որոշ հասկացողութիւն այն կեանքի մասին, ուր նա պիտի գործէր։ Հայկական իրականութիւնը նրան ներկայանում է իբրև մի ճահիճ. չը կայ սէր դէպի ընթերցանութիւն, հրապարակի վրա կանգնած է այն տխուր, յուսահատական իրողութիւնը, որ «Թիֆլիսում, որ կամենում է հպարտ մնալ ուրիշ հայաբնակ քաղաքների առաջ միայն հայ բնակչութեան բազմամարդութեամբ», անկարելի է հայերէն մի հատիկ ամսագիր ապահովել։ Լաւ տեղեակ լինելով այս իրողութեան, Ստեփանէն, այնուամենայնիւ, յուսով և հաւատով է սկսում իր գործը, որի նպատակն էր «տարածել Հայերի մէջ այն մտքերը և գաղափարները, որոնք, լինելով եւրոպական լուսաւորութեան և քաղաքակրթութեան պտուղներ, կազմում են եւրոպական կեանքի պարծանքը»։ Իւրաքանչիւր տետրակի ծաւալը նա նշանակում էր 2—3 թերթ և աւելացնում էր. «Եթէ մի օր ստորագրողների թիւը կը հասնէ 600—700,

*մենք խոստանում ենք տալ մեր ստորագրողներին 4—5 թերթեր»։ Ահա ինչ ակնկալություն ուներ Ստեփանէն ապագայի համար։*

1865-*ի ապրիլին, ինչպես ասացինք, լույս տեսան «Հայկական Աշխարհի Կռունկ» ամսագրի* № 1, 2, 3, 4 *մի գրքի մեջ։ Նրա ճակատին դրված էր «Օրագիր Ուսումնական և Գրականական»։ Հետևելով Նազարեանցի օրինակին, Ստեփանէն էլ ամսագրի իւրաքանչիւր տետրակի վրա դնում էր իր նշանաբանը։ Սկզբում դա պորտուգալացի հռչակաւոր բանաստեղծ Կամօէնսի* «Os Lusiadas» (*Լուսիտանականք*) *պօէմայից վերցրած հետևեալ կտորն էր. «Դու կ'տեսնես հայրենիքի սէրը ոչ թէ շարժված անարգ շահասիրութիւնից, բայց բարձր և իբր յաւիտենական»։ Իր ընտանձնած գործի պաշտօնը Ստեփանէն հասկանում էր այսպէս.*

Մեր Օրագրի առաջին սրբազան պարտականութիւնը լինելու է մշակել Հայերի առաջգնացութեան համար միշտ եւ անդադար։ Ազգի առաջգնացութիւնը կախված է ազգ կազմող մասնաւոր անձերի առաջգնացութիւնից։ Մասնաւոր անձերի առաջգնացութիւնը կարելի է միայն բարեկարգված ուսումնարանների եւ գիտութեան միջնորդութեամբ, երբ գիտութեան հետ անպայման դաստիարակվում է, լուսաւորվում է եւ սիրտը։ Առանց սրտի եւ հոգու դաստիարակութեան գիտութիւնը չունի գրեթէ

*ոչինչ կատարելու ազգի քաղաքական փրկութեան համար։ Գիտութիւնը կարելի է տարածել միայն ընթերցանութեամբ։ Ուրեմն մեր օրագիրը աշխատելու է անդադար տարածել ընթերցանութիւնը, այնուհետեւ հեշտ է իրագործել բոլոր մնացածը։ Ընթերցանութիւնից առաջանալու են բարին, ճշմարիտը եւ գիտութիւնը, երեք սկիզբները, որոնք կազմում են մարդի վերջնակէտ եւ առանց որոնց մարդս առաւել մօտ է անասնական դրութեան։ Ընթերցանութիւն, ահա առաջին եւ վերջին խօսք, որ պիտի կրկնէր ամենայն ճշմարիտ հայն իւր ընկերին, եթէ ցանկանում է նա Հայերի քաղաքական վերականգնումը, քաղաքական փրկութիւնը... Դէպի յիշված խնդիրները—ուսումնարաններ, կրթութիւն եւ լուսաւորութիւն, ազգութիւն—մենք կ'վերադառնանք միշտ եւ կ'մերկացնենք ինչ որ փաթաթված մնացել է անիմաստութեամբ մինչեւ այսօր։ Եթէ այս կը հաւանէ մեր սիրելի ընթերցողը, ուրախ ենք, եթէ կը վշտանայ (առանց վիրաւորվելու ամենեւին), առաւել ուրախ։ Եթէ նա վայր կ'գցէ տետրակը, անարդար կ'վարվի, եթէ կ'հասկանայ—ապա յոյս կայ քաղաքական փրկութեան։ Հարկաւոր չէ երբէք մոռանալ մեր ընթերցողին, որ նախընթաց օրի օտարոտի կարծիքները (պարադօկսները) յետագա օրի ճշմարտութիւններ են։*

*Կարելի է մի օր մեր լապտերի լոյսի առաջ մեր ընթերցողը տեսնէ այն կուռքերի բոլոր անճոռնութիւնը, որոնց նա երկրպագում է այսօր, կարելի է նոյնպէս նվազօղ ստվէրի յետեւից նա նկատէ նորա անմահ ժպիտով ճշմարտութիւնը, Աւետարանի դուստրը, արդարութեան քոյրը։*

*Այսպէս էր Նոր խմբագիրը հասկանում հա-*

տարականի կարիքները։ Եւ կարող ենք ասել թէ այստեղ չը կայ ըէալականութիւն, նուրբ ըմբռնողութիւն։ Ուրիշ հարցերը եթէ մի կողմ թողնենք, բաւական կը լինի վերցնել հէնց գլխաւոր նպատակը, որ ընթերցասնութիւն տարածելն է։ Հայը չէր կարդում. —սա ճիշտ որ ամբողջ դժբախտութեան պատճառն էր։ Մեծ բարերար, նոյն իսկ հերոս կը լինէր այն մարդը, որ կը կարողանար կոտրել հայի այս յամառ առելութիւնը դէպի գիրքը։ Հայը չէր կարդում. սա մի աննշան, ժամանակաւոր երեւոյթ չէր. դեռ Մովսէս Խորենացին իր ժամանակի և իրանից առաջ եղած հայերին յանդիմանում էր որ չը կայ սէր դէպի ուսումնասիրութիւնը, դէպի գիրքը։ Ինչու էր այսպէս։ Հին անընթերցասէր հային ոչ ոք չէր հարցնում և մենք չը գիտենք թէ ինչ կարող էր նա պատասխանել։ Բայց նոր ժամանակների ընթերցողը ունէր պատասխան և այդ պատասխանը նոյնպէս մի հարց էր. —Ի՞նչ կարդալ։ Այս հարցը արդէն լսվում էր Ստեփանէի ժամանակ։ Եւ իրաւ ինչ էր տալիս մամուլը, ինչ էր տալիս գրականութիւնը։

Ահա այդ մեծ պահանջը հասկանում է Ստեփանէն։ Ցոյսերով, աշխատելու պատրաստականութեամբ լի մի զարգացած երի-

տասարդ, նա վստահութեամբ յանձն է առնում ընթերցանութեան նիւթ տալ հայ գրագէտին։ Մնում էր որ հասարակութիւնն էլ իր պարտքը ճանաչէր և միջոցներ տար։ Բայց հասարակութիւնը միևնոյնն էր, ինչ «Հիւսիսափայլի», «Մեղուի», հին «Կռունկի» վերաբերմամբ։ Նոյն այդ առաջին համարում Ստեփանէն հարկադրված էր հետևեալ խոստովանութիւնն անել.

Մենք կարծում էինք, թէ ստորագրողների թիւը հնար կ'տար մեզ աշխատեցնելու մեր գործի զանազան կողմերի վերա ուրիշ գործօղ ձեռներ եւ ձեռք բերելու զանազան գրօղների գեղեցիկ յօղվածներ, վճարելով նոցա, առանձին պայմանով, նոցա արժանաւորութեան համեմատ, բայց ստորագրօղների ներկա թիւը այնպիսի է, որ կարօղանալու է հազիւ-հազ ծածկել խմբագրական տարեկան ծախսեր, տըպելով ամիս-ամիս միայն խոստացված երկու թերթը եւ այն սեփական աշխատութեան գործերից։ ...Մնալով այս պայմանների մէջ, խոստանում ենք կատարել այն, ինչ միայն հնարաւոր է այսպիսի ծանր գործերի մէջ միակ մշակին սորա ամենաջերմ աշխատութեամբ։ Թէեւ այժմ այս այսպէս, բայց մենք չենք տարակուսում բոլորովին։ Սիրելով մեր գործը, կարծում ենք որ ժամանակով գուցէ ստորագրօղների թիւը հնար կ'տայ մեզ հրաւիրել մեր գրօղներին աշխատակից լինելու մեր գործի մէջ։

Բայց այս յոյսը երբէք չիրագործվեց։ Ստեփանէի ամսագիրը մինչև վերջը տառապում

էր միջոցների պակասութիւնից և այդ պատճառով երբէք չը կարողացաւ զարգանալ։ Վերին աստիճանի անկանոն կերպով հրատարակվում էին նիհար, փոքրադիր տետրակներ. բնականաբար, դրանք չը պիտի կարողանային իրագործել այն ահագին դժուար նպատակը, որ ընթերցանութիւն տարածելն էր ժողովրդի մէջ։ Խմբագիրը պատրաստ էր, բայց ի՞նչ կարող էր անել։ Նայենք Ստեփանէի հրատարակած հաշուին *)։ Վեց տարվայ ընթացքում նա ստացել է ընդամենը 3637 րուբլի, ծախսել է 4054 րուբլի։ Եղել է տարի (1867), երբ նա ունեցել է 86 բաժանորդ. 430 րուբլով պէտք էր մի տարի ամսագիր հրատարակել։ Սա հրաշքի նման մի բան էր թւում և կարծեմ միայն հայ խմբագիրն է, որ այդպիսի ընդունելութիւն է գտնում այն հասարակութիւնից, որին ուխտել է ծառայել իր ամբողջ ոյժերով։

Երկու աջողակ տարի է ունեցել Ստեփանէն և դրանցից մէկն է 1869 թւականը։ Բաժանորդների թիւը այնքան է, որ խեղճ խմբագիրը իրան երջանիկ է համարում։ Այդ երջանկութեան մէջ նա յոյս էր յայտնում թէ եկող տարին էլ (1870 թ.) ամսագրի հա-

---

*) «Հայկական Աշ.», 1871, № 4—5։

մար «նոյնպէս բաղդաւոր կ'լինի ստորագրողների թւի կողմից, ինչպէս այս տարի»։ Եւ երևի այդ զարմանալի աջողակութիւնն էր պատճառ որ Ստեփանէն տպագրեց այդ «բախտաւոր» տարվայ բաժանորդների ցուցակը, մի բան, որ նա չէր անում։ Նայում ենք այդ ցուցակին և տեսնում ենք որ ամսագիր ստացողների թիւը հասնում է... 191-ի։ Այս էր հայ խմբագրի երջանկութիւնը։ Բայց դա բոլորը չէ. 20 օրինակի գինը տուել է Ստեփանէի եղբայր Միքայէլը, որ զանազան հիմնարկութիւններին իր կողմից նուէր ուղարկվի։ Խմբագրութիւնն էլ ունի նուէրներ, փոխանակութիւն լրագիրների հետ, ձրի ուղարկում է աշխատակիցներին։ Այդ բոլորը դուրս գալով, մնում է որ ամսագրին գործակալների միջոցով գրվողների թիւը հասնում է 120-ի։ Բախտաւորութիւն էր, այո, ստանալ ամբողջ 733 րուբլի բաժանորդագին, բայց ինչ թշուառ բախտաւորութիւն...

Բայց կրակոտ եռանդը, վառ սէրը դէպի գործը չը պիտի թոյլ տային որ Ստեփանէն էլ Պետրոս Սիմէօնեանցի նման մի անճար, աննկատելի խմբագիր դառնայ։ Ո՛չ, Ստեփանէին աջողվում է այդպիսի ողբալի պայմանների մէջ էլ կատարել աչքի ընկնող մի գործ և եթէ չը լինէր նա, «Հիւսիսափայլի»

դադարումից մինչև եօթանասնական թուականների սկիզբը մեր մամուլը կը ներկայացնէր մի կատարեալ անապատ, և նրա միակ զարդը կը մնար «Մեղուն»։ Եթէ Ստեփանէն իր ամսագրով չը կարողացաւ մեծ ազդեցութիւն անել, խոր հետքեր թողնել, գոնէ այն ծառայութիւնը մատուցեց որ վառ էր պահում առաջադիմութեան թոյլ ու փոքրիկ ճրագը։ Նրա շուրջը հաւաքվում է մի խումբ, որ գրում է մեր և օտար կեանքից։ «Մեղուից» պահանջում էին գաւառական թըղթակցութիւններ, նա ասում էր Աստուած ողորմած է։ Ստեփանէն այդպէս չէր. նա նամակներ է գրում, ամսագրի մէջ հրաւէր կարդում, ծրագիր է տպում, խոստանում է տարին երեք նամակ գրողին ձրի ուղարկել ամսագիրը. և այդ ջանքերը ի զուր չեն կորչում, Ստեփանէն սկսում է թղթակցութիւններ ստանալ։ Ուշադրութիւն դարձնելով ժամանակակից կեանքի վրա, նա սկսում է կանօնաւոր ներքին տեսութիւններ, մի բան, որ նորութիւն էր կազմում մեզանում, եթէ չը հաշւենք «Ճռաքաղի» տկար ներքին տեսութիւնները։ Ստեփանէն այս բաժնում ոչ միայն արձանագրում էր փաստեր, այլ և յաճախ քննադատում էր նրանց։

Կենդանութիւն է ստանում ամսագիրը.

գոնէ նրա պէս կենդանի, աշխոյժ մի այլ օրգան չը կար ռուսահայերի մէջ. այդ պաշտօնը կատարում է «Խմբագրութեան Պատասխաններ» բաժինը, որ շատ հետաքրքրաշարժ էր իբրև խմբագրութեան հայեացքներ և դատողութիւններ առօրեայ զանազան հարցերի վերաբերմամբ։ Ստեփանէն ոչինչ չէ խնայում միտք շարժելու, հետաքրքրութիւն զարթեցնելու համար։

Առաջին տարին նա մեծ դժուարութեամբ է վերջացնում. անցել էր 1865 թուականը, բայց խմբագրութիւնը դեռ բաւարարութիւն չէր տուել իր բաժանորդներին։ Երևում է որ Ստեփանէն յաճախ ընդհարվում էր «Կռունկի» սեփականատէր Էնֆիաճեանի հետ։ Վերջինս չէր թոյլ տալիս որ ամսագիրը տպվի մի այլ տպարանում, իսկ իր տպարանը սաստիկ ուշացնում էր «Կռունկի» տպագրութիւնը։ Ստեփանէն չէր թաքցնում դրութիւնը և մի խուլ պայքար էր մղում հրատարակչի դէմ հէնց ամսագրի էջերում։ Այսպէս նա, օրէնքով ստիպված լինելով նշանակել և հրատարակչի անունը, ընթերցողին մոլորութիւնից ազատելու համար, այս կերպ էր մի փոքրիկ նկատողութեան մէջ բնորոշում Էնֆիաճեանի դերը.

Երբեմն վաճառական մարդ, զանազան առեւտրական հաշիւներով, բոլորովին առանց ամեն մըտքի եւ կարծիքի (պրետենսիայի) օրագրականութեան գործը հասկանալու, առնում է կառավարութիւնից օրագրի հրատարակման իրաւունքը։ Սորանից առանձին պայմանով ստանում է ուրիշ քանիմաց ուսումնականը եւ վարում է օրագրի ամենատեսակ գործերը թէ արտաքին եւ թէ ներքին, այսինքն եւ հըրատարակօղի եւ խմբագրօղի պաշտօններ... Sapienti sat. Իմաստունին բաւական է այսչափ...

1866 թ. սկզբում Ստեփանէն հրատարակում է ամսագրի երեք միացած համարները և դրանով փակում է առաջին տարին։ Բայց այս անգամ ամսագիրը այլ ևս «Հայկական Աշխարհի Կռունկ» չէ, այլ պարզապէս «Հայկական Աշխարհ»։ Սա արդէն նոր ամսագիր է, որի թոյլտուութիւնը ստացել էր Ստեփանէն։ «Կռունկը» նա վերադարձրեց Ընֆիաճեանին և այլ ևս չը հրատարակվեց։ Ստեփանէն գոհութիւն էր յայտնում որ իր գործը «բոլորովին ազատվեցաւ պ. Ընֆիաճեանցի... հոգաբարձութիւնից»։ Բայց թէ քանի-քանի մանր-մունր արգելքների պիտի յաղթէր խմբագիրը՝ իր գործը կանոնաւորելու համար, երևում է այն հանգամանքից, որ նա Թիֆլիսում չը գտաւ մի այլ հայերէն տպարան, ուր տպէր ամսագիրը։ Վերջապէս նա 100 րուբլի է տալիս վրացի տպարանատէր Մէ-

լիզօվլին, որ այդ գումարով հայերէն տառեր է բերել տալիս Մոսկվայից։ Բայց դրանով դժուարութիւնը չէր վերանում. և տպարանի հարցը դեռ երկար չարչարեց Ստեփանէին մինչև որ նա սեփական փոքրիկ տպարան բացաւ։

«Հայկական Աշխարհը» հրատարակվեց մինչև 1871 թուականի կէսը։ Ի՞նչ էր ներկայացնում այդ «գրական և մանկավարժական» օրգանը։ «Հայկական Աշխարհի» երկրորդ տարուց Ստեփանէն փոխեց Կամօէնսից վերցրած նշանաբանը և այնուհետև ամսատետրակների ճակատին դնում էր հետևեալ լատինական ասացուածքը. Quod possum facio, faciant meliora potentes=Ինչ կարող եմ կատարում եմ, թող կատարէ աւելի լաւ ով կարող է»։ Սա աւելի համեստ նշանաբան էր, համապատասխանում էր Ստեփանէի ոյժերին և նրան շրջապատող հանգամանքներին։ Ի՞նչ էր նա կարողանում անել։

Նայելով «Հայկական Աշխարհի» գործունէութեան, շատերի մէջ կարծիք կազմվեց թէ Ստեփանէն ուզում է «Հիւսիսափայլի» շարունակողը դառնալ։ Այս կարծիքը Ստեփանէն արձանագրել է իր ամսագրի մէջ 1867-ին։ Եւ իրաւ, շատ հանգամանքներ կային, որոնք արդարացնում էին մի այդպիսի կարծիք։ Նախ և առաջ այն մեծ պատ-

*կառանքը, որով Ստեփանէն խօսում էր Նազարեանցի մասին։ «Հիւսիսափայլը» նա անուանում էր «լուսաքարոզ» և 1866-ին, Նալբանդեանցի մահվան առիթով, գրում էր.*

Միքայէլ Նալբանդեանի անունը անբաժան է լուսաքարոզ «Հիւսիսափայլ» օրագրի գեղեցիկ փառքի հետ։ Նալբանդեանի բոլոր յարգօղներին չպիտի յուսահատեցնէ միայն կորուստի ցաւը, այլ ամենեքեանս պիտի միշտ մտաբերենք, որ մեր առաջ դրված է, որպէս գեղեցիկ յիշատակ, նորա ազնիւ եւ արթուն գրաւոր աշխատութիւնը եւ նորա անդադար գործունէութիւնը։

*Բացի սրանից «Հայկական Աշխարհի» ուղղութիւնն էլ միևնոյնն էր ցոյց տալիս։ Ստեփանէի ամսագիրը գէթ մասամբ վերադարձրեց մեր մամուլին «Հիւսիսափայլի» հետ անհետացած գեղեցիկ ժամանակը. դարձեալ տեսնում ենք հասարակութեան որոշ վերաբերմունք դէպի ամսագիրը.—կան համակրողներ, շատ են և հակառակորդները։ Հայ երիտասարդութիւնը, գլխաւորապէս ուսանող երիտասարդութիւնը, «Հայկական Աշխարհի մէջ է երևան գալիս. ամսագրի լոյս տեսնելուն սպասում են անհամբերութեամբ. ռուսահայերի փոքրաթիւ ինտելիգենցիան նրանով է փոքր ի շատէ հետաքրքրվում։*

*Որքան նմանութիւններ «Հիւսիսափայ-*

լին»։ Եւ նմանութիւնը բոլորովին լրացնելու համար «Հայկական Աշխարհը» շարունակ բանակռիւ է մղում «Մեղուի» դէմ, անուանում է նրան խաւարամիտ, յետամնաց։ Այդ կռիւը սկսվեց հէնց առաջին տարուց, այն իսկ ժամանակից, երբ Ստեփանէն հրատարակեց «Կռունկի» առաջին համարը։ Պետրոս Սիմէօնեանցը իր իսկական դերի մէջ էր մտնում. «Մեղուն», սովորաբար թոյլ, անհետաքրքրական, փոքր ի շատէ կենդանութիւն ստանում էր հակառակորդի հետ վիճելիս։ Սեփական աղքատիկ պաշարը միշտ սպառված էր, բայց դրա փոխարէն որքա՜ն շատ կարելի էր խօսել ուրիշների գրուածքների դէմ։ Դա դառնում է ապրելու միջոց. «Մեղուին» հարկաւոր էր մի հակառակորդ. չունենալ մէկը, որին պէտք էր դիմադրել, նշանակում էր մնալ սեփական ընդունակութիւններին ապաւինած, այսինքն ջուր ծեծել, «Բազմիցս կրկնել ենք», կամ «Քանի անգամ «Մեղուի» խմբագրատունը պատիւ է ունեցել յայտնելու» դարձուածքներով։ Ստեփանէն շատ համառօտ պատասխաններ էր տալիս «Մեղուին»։ Բայց դա արգելք չէր, որ վերջինս երկար պարապի Ստեփանէի տոհմաբանութեամբ, բացատրէ թէ ինչպէս է Ստեփանեան ազգանունը Ստեփանէ դարձել և այլն....

Ահա այդքան հանգամանքներ կային, որոնք կարծել էին տալիս թէ «Հայկական Աշխարհը» աշխատում է «Հիւսիսափայլի» շարունակութիւնը դառնալ։ Բայց Ստեփանէն բոլորովին այլ տեսակ է վերաբերվում այդ կարծիքին։ 1867 թուականին նա գրում էր.

Ոմանք աննպատակ մարդիկ (բարի նպատակ չունեցողին ես աննպատակ կկոչեմ) կասեն թէ «Հայկական Աշխարհը» մտածում է հին ճշմարտաքարոզ «Հիւսիսափայլի» գործը կատարելու. Դա անմիտ խօսքերից է. Այս ասօղը կեանք, առաջադիմութիւն չպիտի հասկանա. «Հիւսիսափայլը» 1860 թւին էր, իսկ «Հայկական Աշխարհը» 1867-ին. 7 կամ 8 տարի բարոյապէս վերածնվօղ ազգի կեանքում մեծ նշանակութիւն ունի իհարկէ. Բոլորը փոխվում է. Միայն... եւ «Մեղ. Հ-ի» այո կարօղ էին երբէք չփոխվել վատից դէպի լաւ. 8 տարի առաջ ք. Մանդինեանի խմբագրութեամբ նոյն աննպատակ եւ յետախաղաց լրագիր էր նա, ինչպէս եւ այժմ պ. Սիմէօնեանի խմբագրութեամբ. 1860 թւին «Մեղ. Հ-ի» կհայհոյէր «Հիւսիսափայլը», 1867-ին նա կհայհոյէ «Հայկական Աշխարհը». Անմիտ «Մեղ. Հ-ի» բան է —միշտ եւ միշտ եւ միշտ ամէն ազնիւ եւ խելացի գործը հայհոյել. «Հայկական Աշխարհը», իհարկէ կարօղ չէ երբէք բաւականանալ միայն այնով, ինչ որ կատարեց Հիւսիսափայլը»։

Այսպէս ահա, Ստեփանէն մի տեսակ վիրաւորանք էր համարում «Հիւսիսափայլի» շարունակութիւն համարվելը։ Մոռանալով

**այն խօսքերը, որ մի տարի առաջ ասել էր Նալբանդեանցի մասին, Ստեփանէն այժմ գրում էր.**

Իսկ հանգուցած Մ. Նալբանդեանով Թող դարձեալ աննպատակ մարդիքը յափշտակվեն. «Հայկական Աշխարհը» իւր կարծիքը ասաց մի օր. Նալբանդեանը այո աշխոյժ, Թեթեւագրիչ երիտասարդ էր, բայց իբրեւ գործունէութեան կատարելատիպը Թող դարձեալ պ. Սիմէօնեանը շինէ. Իմաստուն Հայն գիտէ, որ Նալբանդեանը հաստարմատ ուղղութիւն մի կարող չէր ունենալ եւ չունէր, որովհետեւ գիտութեանը (science) ծանօթ չէր։

**Ի՞նչ է սա նշանակում։ Ստեփանէն, ի հարկէ, Նազարեանցի և Նալբանդեանցի գաղափարներին հակառակ չէր։ Նա միայն ուզում էր ասել որ «Հիւսիսափայլը» կատարելութիւն չէր, որ նա հին է, անկատար։ «Հայկական Աշխարհը» նրա կոյր ընդօրինակութիւնը չէ, այլ ուզում է աւելի առաջ գնացած, աւելի զարգացած լինի իբրև հասարակական օրգան։ Եօթը տարին քիչ ժամանակ չէ, եօթը տարուց յետոյ երևացող մի ամսագիր չը պիտի բոլորովին նման լինի նախորդին, եթէ մի ազգ առաջադիմում է և ոչ թէ կանգնած է անշարժ։**

**Դատելով անաչառութեամբ, Ստեփանէի այս խօսքերի մէջ կայ ճշմարտութիւն։ «Հայ-**

կական Աշխարհը» «Հիւսիսափայլի» հետ հա-
մեմատած՝ առաջադիմութիւն էր գոնէ այն
կողմով, որ նրա մէջ աւելի շատ էր ցոլա-
նում ժամանակակից կեանքը, որ նա խու-
սափում էր ծանր, անմարս նիւթերի կուտա-
կումից, որ «Հիւսիսափայլի» թոյլ կողմն էր։
Ի զուր էր Ստեփանէն վերցնում «Հիւսիսա-
փայլի» 1860 թուականը, որպէսզի կարողա-
նայ ասել թէ Նազարեանցի և իր մէջ 7 տար-
վայ տարածութիւն կայ։ «Հիւսիսափայլը»
դադարեց 1864-ի վերջում, այն ժամանակ,
երբ Ստեփանէն արդէն խմբագիր էր. ուրեմն
ոչինչ հեռաւորութիւն չը կայ երկուսի մէջ.
Ստեփանէն, ընդհակառակն, անմիջապէս յա-
ջորդեց Նազարեանցին։ Եւ եթէ կայ երկու-
սի գործերի մէջ մեր վերևը յիշած տարբե-
րութիւնը, դա ամենևին տարիների արածը
չէ։ «Հայկական Աշխարհը» մի քանի քայլ ա-
ռաջ էր «Հիւսիսափայլից» հէնց այն պատ-
ճառով, որ նա հրատարակվում էր Թիֆլի-
սում և նրա խմբագիր-հրատարակողը աւելի
եռանդուն էր, աւելի յարմար հանգամանք-
ներով շրջապատված։

Բայց «Հայկական Աշխարհի» այդ աջողու-
թիւնը, համեմատական առաջադիմութիւնը
աւելի արտաքին հանգամանքներ ունէր, ա-
ւելի խմբագրի կազմակերպողական ընդու-

Նակութիւնից էր կախված, քան հրապարա-
կախօսական տաղանդից։ Իբրև հրապարակա-



Ստ. Ստեփանէ

խօս, Ստեփանէն անհամեմատ ցած է Նա-
զարեանցից։ Նալբանդեանցի վերաբերմամբ

էլ Ստեփանէն անարդար էր. Նա կարող էր Նալբանդեանցից շատ բարձր լինել իր ուսումով, բայց հրապարակախօսութեան մէջ գիտութիւնը չէ չափը, այլ տաղանդը, մարդկանց սրտի հետ խօսելու ընդունակութիւնը։ Եւ հէնց այդ է պատճառը, որ Ստեփանէն, չը նայած որ մրցակից չունէր իր առջև, չը կարողացաւ Նազարեանցի և Նալբանդեանցի շարքում դասվել իբր հրապարակախօս։

Նա, ճիշտ է, կռվում էր, պահանջում էր առաջադիմութեան, եւրօպական լուսաւորութեան անունով։ Բայց այդ բոլորը արտայայտվում էր մանր-մունր չափերով, գլխաւորապէս դպրոցական հարցերի շուրջն էր պտտում։ Նազարեանցն էլ համարեա միշտ կրթութեան և դաստիարակութեան հարցերով էր հանդէս գալիս, բայց միևնոյն ժամանակ նա յարուցանում էր ընդհանուր ազգային հարցեր, քննադատում էր մեր հասարակական կարգերը, մեր գաղափարները, կռւում էր մեր յետամնացութեան դէմ այնպիսի հարցերում, ինչպէս են կրօնական համբերողութիւն, ազգայնական լայն գաղափար, հիմնված ոչ թէ եկեղեցական-դաւանական առանձնութեան, այլ լեզուի և ծագման վրա։ Ստեփանէն երբէք չը կարողացաւ Նազարեանցի պէս ըմբոստ բողոքողի դեր կատարել, առա-

*Ջադիմական հանրամարդկային հասկացողութիւնները չը գտան «Հայկական Աշխարհի» խմբագրականների մէջ այն կրակոտ, ուժգին պաշտպանութիւնը, ինչպէս «Հիւսիսափայլի» մէջ։ Նազարեանցի առջև միայն կրթական կարօտութիւնը չէր, այլ ամբողջ ազգը իր նախապաշարմունքներով, ստրկութեան երկար դարերում իւրացրած հոգեբանութեամբ. Նա հարուածում էր հայութեան հիմնաւոր արատները—առանձնամոլութիւն, անհաստականութիւն, համայնական շահերի կատարեալ բացակայութիւն։ «Հայկական Աշխարհի» խմբագիրը այդքան լայն ասպարէզ չունէր. Նազարեանցի հետ համեմատած, Նա աւելի նեղ մանկավարժ էր, քան մի հրապարակախօս՝ այս բառի ընդարձակ նշանակութեամբ։*

*Ժողովրդին մօտեցող, ժողովրդի կեանքը իր էջերի մէջ առնող մամուլը չէր կարող անշարժանալ միայն դպրոցական և եկեղեցական հարցերի շրջանում։ Ժամանակ էր որ հայ մամուլն էլ նկատի առնէր ընդհանուր տնտեսական կուլտուրական հարցեր, ըմբռնէր կեանքը իր լայն, բազմակողմանի պահանջներով։ Ստեփանէն այս գործի մէջ չը կարողացաւ մի քայլ անել դէպի առաջ։ «Հայկական Աշխարհի» մէջ շատ կայ պօլէմիկա, շատ անգամ ազնիւ բռնկումով, օրինաւորու-*

*թեամբ և արժանապատուութեան զգացմունքով մղված կռիւ. բայց հասարակական հարցեր քննադատող, առաջադիմական տեսութիւններ պարզող և ժողովրդականացնող խմբագրական յօդուածներ համարեա չը կան։*

*Եւ սա բնական է։ Ստեփանէն աւելի քարոզիչ էր, դիւրավառ մի մարտնչող, քան կեանքի հարցերը արծարծող, քննադատող։ Իր գրուածքների մէջ նա յաճախ դիմում է ատենաբանական, քարոզչական ոճին։ Օրինակ.*

Այո ես կաղաղակեմ, կգանգատեմ, կբողոքեմ, կխնդրեմ, կաղաչեմ, մինչեւ կհասնեմ նպատակիս. Եւ սիրելով անկեղծ սրտով, անյոյս չեմ. Հայկական ուսումնարանները կտեսնեմ մի օր բարեկաւ դրութեամբ եւ հոգու յաղթանակով կյայտնեմ ընթերցողներիս, կշնորհաւորեմ եւ կհանգստացնեմ նոցա.

Այո քահանաների հետ Հայերին պէտք են եւ ուսուցիչներ. Հայկական ազնիւ երիտասարդներ այս կերպով պիտի պատրաստվեն ազգին ծառայելու. Մինը պիտի կրթէ անդադար մեծերին, աւետարանը վարդապետելով, միւսը—փոքրերին իւրեանց քաղաքացիական պարտքերը ճանաչեցնելով.

... Հայեր, իմ պաշտելի Հայեր, բաւականացրէք. կամեցէք թափել ձեր վերայից բազմադարեան անէծքը։ Սկսեցէք այնպիսի կեանք վարել, որ մարդկութեանը ամօթ չլինէր խոստովանելու, թէ ահա նորա անդամ է եւ հայկական ազգը.

Հայեր, իմ ազնիւ Հայեր, լինենք այնպէս, որ մարդկութիւնը, եթէ ոչ պարծենալով, գոնէ ամաչելով չմտաբերէր Հայերին.

Հայեր, սիրելի Հայեր, ժամանակ է։ Թող շարժվի եւ մեզանում ազգային ինքնասիրութիւնը. Բաւականացնենք այն արհամարհանքը, որ վայելում ենք այսքան ժամանակ օտար ազգերի կողմից։

Հայեր, հայասէր Հայեր, ամէն ազգ ունի Հօնդրական երգի պէս—

Այն սուրբ օրեր, որոնց մեզնից իւրաքանչիւր
Սպասում է մեծ, սուրբ հաւատով.

... Հայեր, խելացի Հայեր, մեր սուրբ օրերը, Հայերի բարեքաղդութեան օրերը գալու են, երբ մենք կունենանք բարեկարգ ուսումնարաններ քանիմաց տեսուչներով եւ ազնիւ ուսուցիչներով, երբ հայկական եկեղեցի կկազմեն Յիսուսին արժանապէս պաշտօներ եւ պաշտօնեաներ, երբ մեր ժողովուրդը անհոգ ամբոխից իմաստուն հասարակութիւն կդառնա.

Ազնիւ տեսուչներ, ազնիւ ուսուցիչներ, ազնիւ քաղաքացիներ! Կրթեցէք նոր սերունդը բարոյական հիմով, աւետարանի լոյսով եւ ճշմարտութեամբ.

Իր ճառական ոճով, ռոմանտիկ զեղումներով Ստեփանէն աւելի անցեալին էր պատկանում, քան նոր օրերին, ապագային։ Նա էլ, Նազարեանցի նման, շատ էր սիրում ճառեր տպագրելը, մանաւանդ երբ դրանք դամբանականներ էին մեռած ուսանողների գերեզմանների վրա։ Անձնական տարրը մեծ դեր էր խաղում Ստեփանէի համակրանքների մէջ։ Այսպէս 1865-ին նա մի ահագին մահացուցակ տպագրեց Գրիգոր Տէր-Մկրտչեանի մասին, որ իր ուսանող ընկերներից էր,

*մեռել էր Թոքախտից, չը կարողանալով վեր-ջացնել ուսումը. ոչ միայն մահացուցակը, այլ և ամսագրի առաջին երեսը սև շրջանակներով էին պատած։ Ստեփանէն յիշատակում էր հանգուցեալի մահվան նոյն իսկ տարեդարձները։ Եւ սակայն, այդ ուսանողը միայն մի յուսատու երիտասարդ էր և առանձին մի ծառայութիւն չէր մատուցել իր ազգին։ Այնուամենայնիւ, Ստեփանէն ողբում էր այդ մահը իբրև հասարակական դժբախտութիւն։*

*Խօսելով Ստեփանէի Թերութիւնների մասին, չէ կարելի զանց անել և այն, որ նա հաւատացած էր թէ ամսագիրը հրատարակում է միայն ընտրեալների համար։*

Ով է համակրում մեր օրագրին եւ ով է կարող բնականապէս համակրել, սիրել եւ հետեւել նրան? —հարցնում է նա մի տեղ եւ իսկոյն պատասխանում.—Այն ամեն Հայն, որ զգում է մտաւորական զարգացման կարօտութիւն, նա, որ ցանկանում է առաջադիմութիւն, նա, որ հանգիստ եւ անվրդով լսում է ճշմարտութիւն, մի խօսքով նա, որ զուրկ չէ առողջ իմաստից։ Մեր օրագրի միտքը եւ ցանկութիւնը հասկանալու համար հարկաւոր է անշուշտ մտաւորական զարգացումն, հարկաւոր է հասկացողութեան ընդունակութիւն ունենալ։ Այն յօդուածները, որ մենք հրատարակում ենք, այն լեզուն, որ մենք գործ ենք ածում, այն մտքերը եւ ճշմարտութիւնները, որ մեր օրագիրը քարոզել է եւ մինչեւ

վերջին շունչը պիտի քարոզէ, կարող են հասկանալ եւ համակրել նոքա միայն, որոնք ունին մի մտաւոր զարգացումն, եւ որովհետեւ մտաւորապէս զարգացածները անբաղդաբար մեր մէջ այնքան բազմաթիւ չեն, ուստի օրագիրս պիտի բաւականանայ սակաւաթիւ ստորագրօղներով, մինչեւ կբազմանան հայկական աշխարհի բաղդից մեր հասարակութեան մէջ առաւել հասկացօղները եւ զարգացածները, մինչեւ կաւելանան մեր ընտրված անդամները։

**Այստեղ ահա Ստեփանէն բոլորովին չէր հասկանում հայ պարբերական հրատարակութեան խորհուրդը։ Ընտրեալների, զարգացածների համար հայերէն ամսագիր... Բայց մեծ հարց է՝ այդ ընտրեալները կարօտ էին «Հայկական Աշխարհին»։ Ինտելիգենտ, զարգացած հայը չը պիտի կարդար Դօբրօլիւբօվից, Պիսարեվից թարգմանած կտորները կամ Մասէի «Մի կտոր հացի պատմութիւնը», որոնք տպվում էին «Հայկական Աշխարհի» մէջ. ինտելիգենտ հային հարկաւոր չէր Մասէն, իսկ Դօբրօլիւբօվ և Պիսարեվ նա կարող էր կարդալ ռուսերէն։ Այդ դասակարգից չը պիտի կազմվէր ընթերցողների այն քանակը, որ կարողութիւն կը տար հայ խմբագրին աւելի ընդարձակել իր գործը։ Ընտրեալ հայը կը հետաքրքրվէր հայերէն ամսագրով այն ժամանակ, երբ սրա մէջ կը գտնէր հայկական կեանքի արտայայտութիւնը, հա-**

սարակական և գրական հարցերի ուսումնասիրութիւնը։ Այդ կողմից «Հայկական Աշխարհը» քիչ հետաքրքրական էր, հարուստ չէր։

Ո՛չ, հայերէն ամսագիրը, լրագիրը ուրիշ տեսակ ընթերցող պիտի ունենար, մանաւանդ այն ժամանակները, երբ ինքնուրոյն աշխարհային գրականութիւնը դեռ համարեա չը կար, երբ հրապարակախօսութիւնը միայն դպրոցական և եկեղեցական կարիքներով էր զբաղված և չունէր իր առջև աւելի լայն հասարակական հօրիզօններ։ Սկսելով իր գործը այն բոլորովին անսխալ համոզմունքով թէ հային դեռ պէտք է կարդալ սովորեցնել, Ստեփանէն շատ շուտ մոռացաւ այդ իրողութիւնը և սկսեց կարծել որ եթէ իր ամսագիրը փոխանակ սպասած 6—7 հարիւր բաժանորդների մի քանի տասնեակ ընթերցող ունի, պատճառն այն է, որ ընտրեալներ չը կան։ Ընթերցողներ ստեղծելու, ժողովրդական խաւերից հետաքրքրվողներ առաջ քաշելու մասին նա չէ էլ մտածում։ Կարծես ընտրեալները երկնքից պիտի ընկնէին. մինչդեռ եթէ ընկնէին էլ, հայերէն ամսագիր չը պիտի կարդային։ Առհասարակ, վաթսունական թւականների մեր մամուլին չէր աջողվում ընթերցողների շրջաններ նուա-

ճել. ինչքան մարդիկ կարողանում էր հաւաքել բաժանորդագրութիւն անուանվող մուրացկանութիւնը, այդքան էլ ընթերցող ունէր ամսագիրը կամ լրագիրը։

Եւ երբ մի խմբագիր համոզվում է թէ իր ամսագիրը ժողովրդի, ամբոխի համար չէ, թէ ինքը միայն զարգացած մարդկանց հետ կարող է գործ ունենալ, հասկանալի է թէ որքան պիտի նա սահմանափակվի, որքան պիտի հեռու մնայ ժողովրդի գործից, որքան անօգուտ պիտի համարէ եռանդը, անդադար կատարելութեան ձգտելու պահանջը։ Հաւատալ թէ պէտք է մի կերպ տանել ամսագիրը ամենաողորմելի դրութեան մէջ, մինչև որ ընտրեալները կը բազմանան—դա նշանակում էր սպանել գործը, սպանել սեփական հաւատը, վստահութիւնը։

Ասացինք որ Ստեփանէն մոռանում էր այն, ինչ հաստատ գիտէր գործը սկսելիս։ Այս հանգամանքը մենք ուզում ենք առանձնապէս շեշտել։ Որքան առաջ էր գնում «Հայկական Աշխարհը», այնքան Ստեփանէն թուլանում էր իբրև մարտնչող, առաջադէմ հրապարակախօսութեան ներկայացուցիչ։ Շուտով մենք կը տեսնենք, որ նա չափաւորներից էր, համարձակ, արմատական մտքերը նրան էլ վախեցնում էին, ուստի և նա տպագրում

էր Գրիգոր Արծրունու մի քանի յօդուածները զանազան վերապահումներով։ Դա, ուրեմն, նորերից չէր, իր ժամանակի ամենաառաջաւոր քարոզիչ խմբագիր չէր, մէկը այն իսկական հրապարակախօսներից, որոնք գընում են զարգացող գաղափարների հետ, չեն հնանում։

«Հայկական Աշխարհի» խմբագիրը մեծացաւ այն ազատամիտ աշխարհայեցողութիւնների շրջանում, որոնց ներկայացուցիչը մեզանում «Հիւսիսափայլն» էր. բայց այդտեղ էլ նա չը կարողացաւ հաստատ պահվել։ Ազատամիտ դպրոցը մեծ կարեւորութիւն էր տալիս կրօնական կրթութեան։ Ստեփանէն այս կողմից աւելի առաջ գնաց, քան իր նախորդները։ «Ազատութիւնը բարւոքացնում է բարքը և կրօնասիրութիւն է տարածում» —ահա մեր երիտասարդ, համալսարանական խմբագրի դաւանանքը։ Եկեղեցու և եկեղեցականների վերաբերմամբ Ստեփանէի բռնած դիրքը նմանութիւն անգամ չունի այն դիրքերին, որ բռնել էր Նազարեանցը։

Վերցնենք հէնց մի փաստ։ «Հիւսիսափայլի» մարդիկ, Նալբանդեանցի ղեկավարութեամբ, կռւում էին Գաբրիէլ վարդապետ Այվազեանի դէմ։ Այդ պայքարի հանգամանքները, պատճառը մենք պատմել ենք մի ու-

րիչ տեղ *). յայտնի է նոյնպէս, որ «Հիւսի-սափայլի» անհաշտ թշնամիներից մէկն էլ Այվազեանն էր, որ ամենայն հաճութեամբ տպագրում էր իր ամսագրում ամենաան-զուսպ յարձակումներ Նազարեանցի դէմ։ Ընդհարումը ունէր իր խոր, օրինաւոր պատ-ճառները. Այվազեանը կղերական-վանական դաստիարակութեան ներկայացուցիչն էր, մինչդեռ «Հիւսիսափայլի» մարդիկ աշխար-հական ազատ կրթութիւն էին պահանջում։ Ստեփանէն ոչ միայն ի նկատի չէր առնում այս բոլորը, այլ և հիացած էր Այվազեանի վրա։ Լսելով որ Երևանի ժողովուրդը ու-զում է Այվազեանին իր առաջնորդ ունենալ, նա գրում էր. «Փառք և պատիւ Երևանի ժո-ղովրդին... Պարծանք ձեզ, Երևանի Հայեր»։

Այսքան հիանալու համար բաւական էր այն հանգամանքը, որ Այվազեանը կրթված, գիտուն հոգևորական էր։ Մինչդեռ «Հիւսի-սափայլի» խմբի համար գլխաւորը գիտնա-կանութիւնը չէր, այլ ոգին, ուղղութիւնը։ Այսպիսով Ստեփանէն աւելի Աղաբէկեանի «Կռունկի» դպրոցին էր յարած։ Գիտութիւն ստացած հոգևորականութիւն—և այլևս ոչինչ,

*) «Ստեփանոս Նազարեանց», հատոր երկրորդ։

ամեն ինչ ինքն իրան կը գայ, կը մնի. չէին քննադատվում եկեղեցու վարչական կարգերը, բարեփոխութիւններ չէին առաջարկվում, մրցութիւն, կռիւ չը կար։ Այս բանի մէջ Ստեփանէն Նազարեանցի յաջորդը չէր։ Դրա ամենալաւ ապացոյցն այն է, որ Ստեփանէի դէմ չը զինվեցին պահպանողական տարրերը, նրան ազգի և եկեղեցու թշնամի չը յայտարարեցին և նա առանց դժուարութիւնների հոգևորական դարձաւ։

1866 թուին կաթողիկոսական ընտրութիւն կար։ Մեր մամուլի վերաբերմունքը դէպի այդ հարցը այսպէս էր։ «Մեղուն» հետևեալն էր գրում.

Բայց ո՞վ են այս հայրապետին, Աստուծոյ ծառային եւ պաշտօնատարին ընտրողները, մարդի՛կ, Թոյլ եւ տկար մահկանացուներ... Ուստի Թող բոլոր ազգը եւ մանաւանդ յարգոյ եւ սրբազան պատգամաւորները խնդրեն առաջ Աստուածմէ, որ Սա չը դարձնէ իր երեսը նրանցից, «Տէր, մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն»։ Եւ յետոյ կշռեն, դատեն, քննեն, հասկանան, որ ինչ բարին է, աղօթեն Աստուծոյ, որ ցոյց տայ իր ընտրեալ Դաւթին, ու յետոյ Թափեն սորա գլխին իւղը*)։

Իսկ ինչ ունէր ասելու Ստեփանէն, որ

*) 1866, № 35։

*«Մեղուի» խմբագրին բթամիտ, հնամոլ, ոչընչութիւն էր անուանում։ Ահա ինչ.*

Յոյս ունինք, որ թէ պատգամաւորների ընտրութիւնը եւ թէ նոցա ձայն տալը կաթողիկոսի համար կլինի սուրբ սրտով եւ անարատ մտքով։ Հաւատում ենք, որ այս գործը ամեն Հայի համար սուրբ եւ մեծ գործ է։ Համարձակվում ենք նկատել, որ կաթողիկոս պիտի ընտրվի այն անձն, որ արդէն հանդիսացել է ազգի առաջ իւր գեղեցիկ գործերով ազգաշինութեան կողմից։

*Ինչպէս տեսնում էք, տարբերութիւն համարեա չը կայ ազատամիտ և պահպանողական խմբագիրների մէջ։*

*Մեր տեսութիւնը «Հայկական Աշխարհի» որպիսութեան մասին փակում ենք հետեւեալ եզրակացութիւններով։ Ստեփանէն մի լաւ կրթված մարդ էր, առաջադիմական ձգտումներով, բայց չունէր հրապարախօսական տաղանդ։ Նրա ամենամեծ ծառայութիւնն այն էր, որ ազատամիտ հրապարակախօսութեան առաջին փորձը մտցրեց Կովկասում, Թիֆլիսի մէջ։ Ինքը չը լինելով մեծ ընդունակութիւններով օժտված մարտնչող, այնքան սէր և համակրութիւն ունէր դէպի երիտասարդութիւնը, դէպի եւրոպական լուսաւորութիւնը, որ կարողացաւ իր ամսագիրը դարձնել հայ երիտասարդութեան համար աշխատելու տեղ։ «Հայկական Աշխարհը» դադարելուց չը*

կազմեց մեզանում, ինչպէս կազմել էր «Հիւսիսափայլը», նոյն իսկ «Կռունկը»։ Նա սկըսված առաջադիմական ուղղութեան շարունակութիւնը չէր, ոչ էլ մանաւանդ զարգացումը։ Նրա մէջ պահվում էր առաջադիմական մտքի ընդհանուր ոգին, համեստ ճրագը։ Խմբագիրը մեծ դեր չը կարողացաւ կատարել, որովհետև մեծ պաշար չունէր, համարձակ վերանորոգիչ չէր, մանր-մունր հարցերի վրա էր սպառում իր եռանդը, պայքար էր մղում աւելի անձնաւորութիւնների, քան սկզբունքների, ուղղութիւնների դէմ։

Միայն մի բանի մէջ Ստեփանէն հանդիսացաւ շատ համարձակ րէֆօրմատօր և դրանով էլ բաւական աղմուկ հանեց։ Այդ բանը ուղղագրութիւնն էր։ Գրիգոր Արծրունին նրա ազդեցութեան տակ իւրացրեց ուղղագրական մի քանի ձևեր և նրա «Մշակը» այսօր էլ հետևում է այդ կանոններին։ Ուստի մեզ հարկաւոր է մի քիչ մանրամասն խօսել այդ մասին։

Աշխարհաբար լեզուն արդէն քաղաքացիութեան իրաւունք էր ստացել ամբողջ հայութեան մէջ։ Այդ յաղթանակը ձեռք էր բերվել երկարատև պատերազմից յետոյ։ Բայց յաղթանակողը դեռ շատ տկար ու աղքատ մի բան էր։ Գրական լեզու դառնալիս՝ աշ-

խարհաբարը ոչ գրական անցեալ ունէր, ոչ մշակված ու կանոնաւորված հարստութիւն։ Ժողովրդի բերանում ապրած, հարիւր ու մի ճիւղերի բաժանված մի բազմադարեան լեզու էր դա, որ յղկվելու, քաղաքակրթվելու պէտք ունէր։ Եւ նոր լեզուն իր բարեկարգութեան համար աշխատող մշակների պակասութիւն չը տեսաւ։ Իրանց գրական զարգացումով ռուսահայերից շատ առաջ անցած Թիւրքահայերը աւելի ընդունակ և փորձված հանդիսացան այդ գործի մէջ։ Նրանց աշխարհաբարը հեշտ և շուտ կազմակերպվեց։ Կանոնաւորելով լեզուն, պէտք էր ձեռնարկել նրա կանոնադրութեան, պէտք էր սահմանել նրա համար օրէնքներ։ Այդ գործն էլ առաջ Թիւրքահայերը սկսեցին։

1848-ի ֆրանսիական յեղափոխութիւնը մեծ դաստիարակչական ազդեցութիւն ունեցաւ մի քանի Թիւրքահայ ուսանողների վրա, որոնք այդ միջոցին գտնվում էին Պարիզում։ Փետրվարեան յեղափոխութիւնը, որից ծընվեց երկրորդ հանրապետութիւնը, իր ազատական մուխի մէջ կռեց-կոփեց հայկական ազատամիտ, հակակղերական, համարձակախօս հրապարակագրութիւնը, որի առաջին դրօշակակիրը հանդիսանում էր յեղափոխութեան մասնակցող ուսանողներից Ստեփան Ոսկա-

նը։ Նոյն այդ քաղաքական հրդեհը ներշնչեց իր մի ուրիշ զինուոր ուսանողին, բժշկականութեան ճիւղը ընտրած Նահապետ Ռուսինեանին, արմատական բարեփոխութիւնների անհրաժեշտութիւնը։

Ուսումը աւարտելուց յետոյ Նահապետ Ռուսինեանը վերադարձաւ Կ. Պոլիս։ Այդտեղ նրան ընկերացաւ Թիւրքահայ բարձր դասակարգից մի համակրելի գործիչ, Նիկողայոս Պալեան, որ նոյնպէս Ֆրանսիայումն էր ուսում ստացել և թէև փետրվարեան յեղափոխութեան անձամբ մասնակցողներից չէր, բայց նրա գաղափարների ամենաջերմ կողմնակիցներից էր, քանի որ կրթվել էր 1830-ի յուլիսեան յեղափոխութեան առաջացրած ազատական կուսակցութեան գրական գործիչների ազդեցութեան տակ։ Այդ երկուսի հետ էր և մի ուրիշ երիտասարդ, Գրիգոր Օտեան, Թիւրքահայերի մի այլ նշանաւոր գործիչը *)։

Այս երրորդութիւնը դարձաւ այն կորիզը, որից առաջացաւ Թիւրքահայերի մէջ

*) Գրիգոր Օտեան երեք ընկերների կատարած դերը գեղեցիկ կերպով բացատրել է այն առաջաբանի մէջ, որ գրել է Ռուսինեանի կազմած փիլիսոփայութեան դասագրքի համար։

այնքան նշանաւոր և համակրելի շարժումը յիսնական թւականներին։ Նահապետ Ռուսինեանը այնպիսի անձնաւորութիւններից չէր, որոնք շատ լաւ և շատ յարմար տեղաւորվում են կեանքի ստեղծած սովորական, շաբլօնական շրջանակներում։ Նա ուզում էր նորութիւններ ստեղծել, բարեփոխող և յեղափոխող կարգեր առաջ բերել։ Առաջին գործը, որ նրա ուշադրութիւնը գրաւեց, աշխարհաբար լեզուն էր։ Ռուսինեանը կանոններ մշակեց նրա համար, այնպիսի կանոններ, որոնք, նրա կարծիքով, պիտի հեշտացնէին լեզուն, միանման ընդհանուր կերպարանք պիտի տային նրան։ Այդ նպատակով նա 1856-ին հրատարակեց իր «Ուղղախօսութիւնը»։ Ապա ձեռք զարկեց օրացոյցը բարեփոխելուն. ջնջեց ամիսների հռոմէական անունները և, ինչպէս վայել էր մի յեղափոխական գործիչին, ընդունեց ֆրանսիական առաջին յեղափոխութեան ժամանակ մտցրած անունները, թարգմանելով դրանց հայերէնի։

Ռուսինեանի նորմուծութիւնները, ի հարկէ, աղմուկ և աղաղակ բարձրացրին Կ. Պօլսում և ընդունելութիւն չը գտան։ Աւելի բախտաւոր գտնվեց Ռուսինեանը իր երրորդ և ամենամեծ ձեռնարկութեան մէջ. դա թիւր-

քահանայերի Ազգային Սահմանադրութիւնն էր, որ նա յղացաւ և խմբագրեց իր ընկերակիցների և համախոհների հետ, հիմնվելով փետրվարեան յեղափոխութեան սկզբունքների վրա, այն է ժողովրդական քուէ, որ սահմանափակում է անհատական իշխանութիւնը։

«Ուղղախօսութիւնը» մերժվեց և նոյն իսկ պատրիարքի բանադրանքին ենթարկվեց։ Բայց նրա մի քանի կանոնները ընդունելութիւն գտան ռուսահայերի մէջ և ընդունողն ու գործադրողը Ստեփանէն էր։ Պէտք է ասել որ բոլոր ուղղախօսական կանոնները Ռուսինեան իրանից չէր հնարել. շատ բան նրանից առաջ գործ էին ածել առաջին անգամ աշխարհաբար գրքեր շարադրած Մխիթարեանները (Ինճիճեան, Բժշկեան). այսպէս, նրանք շատ տեղերում ու երկբարբառը փոխարինում էին վ տառով, մանաւանդ կրաւորական բայերի վերջում (օր. տարվան (տարի բառից), սորվին, մտվընին), ող վերջաւորութիւնը գրում էին օ-ով (ծնօղ, սորվօղ), փորձում էին դէն գցել յ տառը բառերի վերջից, ուր նա չէր արտասանվում և այդ փորձը կատարվում էր վրայ բառի վերաբերմամբ, որ գրվում էր առանց յ-ի։

Մեզանում Նազարեանցն էլ իր. գրականական գործունէութեան սկզբում ընդունել

էր մի քանիսը այդ ձևերից, բայց նրանց չուտ թողեց: Ստեփանէն «Հայկական Աշխարհի» հէնց առաջին տարուց ընդունեց այդ բոլոր ձևերը, ինչպէս նաև Ռուսինեանի նըման՝ յոգնակի եր վերջաւորութիւնը գրում էր է-ով (գործէր, գրքէր, սարէր): Այս բոլորը դեռ ոչինչ: Ստեփանէն առաջ գնաց և կանօն ընդունելով—«գրիր, ինչպէս խօսում ես», սկսեց գրել այնպէս, ինչպէս արտասանվում է տառը, մանաւանդ յ-ն, որը շատ տեղերում փոխարինեց հ-ով: Չը բաւականանալով այսքանով, նա ջնջեց հայկական կէտադրութիւնը և մտցրեց եւրօպականը. մեր միջակէտը նրա համար վերջակէտ էր, իսկ վերջակէտը եւրօպական միջակէտ (;), աւելացրեց «կէտուստորակէտ» նշանը (;), բոլորովին վռնդեց հայոց հարցական և բացականչական նշանները, մտցնելով եւրօպական նշանները: Ամենից զուարճալին այն էր, որ Ստեփանէն այս նորմուծութիւնները փաստաբանում էր նրանով թէ այդպէս աւելի հեշտ կը լինի թարգմանութիւններ կատարելը:

Եւ ահա իր կանօններին հաւատարիմ մընալով, Ստեփանէն գրում էր այսպէս.

Թիֆլիսում հայկական Ներսիսեան ուսումնարանում քննութիւնը կատարվեցավ. Ուսումնարանի հը-

բավէրից օգուտ քաղօղը չեղավ. Ով պիտի գնար «վկա լինելու նորա ուսումնական վիճակին», ինչպէս հրատարակված էր? Ով չգիտէ ուսումնարանի ամէնաթշվառ դրութիւնը? Ով չգիտէ, որ ուսումնարանում չկա օրինավոր ուսում? Ով համոզված չէ, որ ուսումնարանը կարօտ է հիմնավոր հեղափոխութեան?

Ուսումնարանի աշակերտնէրը զուրկ են հայկական լեզվի իմացութենից (նոքա մի օր կարօղ էին գոնէ հայկական լեզվօվ պարծենալ), հին հայկականը շատ թոյլ կերպով կուսուցանվի, նոր հայկականը ամենեւին չի ուսուցանվի. Հայկական պատմութիւնը չի ուսուցանվի, ռուսական պատմութիւնը նոյնպէս, եւ սորա ինչ լինելը չգիտեն սիրելի եւ միանգամայն ցավալի աշակերտնէրը,—այս առարկանէրի համար ուսուցիչնէր չկան Թիֆլիսում, կասէ ուսումնարանի բարեմիտ կառավարութիւնը; նոքա, որոնք կան Թիֆլիսում եւ կարօղ էին բոլորովին արժանի կերպօվ ուսուցանել յիշված առարկանէրը, յարմար չեն եկել ուսումնարանի ազգասէր խնամատարնէրի մտքերին.

Բարեբախտաբար. Սանթիանէն այս նորաւթիւնների մէջ մի յամառ ու կոյր րէֆօրմատօր չէր։ Նախ և առաջ, նա չէր բռնանում ուրիշների վրա, փաթաթելով նրանց վզին իր ուղղագրութիւնը. երկրորդ, հաճութեամբ լսում էր հակառակ կարծիքները։ Նրան ցոյց տուին, օրինակ, որ ոչ մի միտք չը կայ գործածելու եւրօպական հարցականը, քանի որ

հայերէնը այն առաւելութիւնն ունի, որ
գնվում է անմիջապէս այն իսկ տառի վրա,
ուր հարց կայ և ոչ թէ նախադասութեան
վերջում, ինչպէս եւրոպականը։ Ստեփանէն
համաձայնվեց և հրաժարվեց շատ նորութիւն-
ներից, պահպանելով միայն մի քանի բաներ։



Սակայն «Մեղուն», «Կռունկը», «Հայկա-
կան Աշխարհը» հայոց մամուլի միակ ներ-
կայացուցիչները չեն 1860-ական թուական-
ներին։ Պատկերը լրացնելու համար մենք
պիտի յիշատակենք և մի քանի երկրորդա-
կան հրատարակութիւններ, որոնք ապրում
էին այդ ժամանակները թէ Թիֆլիսում և
թէ Թիֆլիսից դուրս։

1862 թուականը, մի կատարեալ աղէտի
տարի, խոստովանել տուեց «Հիւսիսա-
փայլի», «Մեղուի» և «Կռունկի» խմբագիր-
հրատարակիչներին որ շարունակել գործը
այլ ևս անհնարին է։ Մինչդեռ «Հիւսիսա-
փայլը» դրանից յետոյ ապրում է էլի մի տա-
րի (1864) և ոչնչանում, «Մեղուն» անցնում
է ուրիշ մարդկանց, իսկ «Կռունկը» դառնում
է «Հայկական Աշխարհ», Թէոդոսիայում Գաբ-

րիէլ վարդապետ Այվազեանի «Մասեաց Աղաւնիին», որ արդէն հոգեվարքի մէջ էր, կորցրած իր նախկին նշանակութիւնն ու արժէքը, մեռաւ բոլորովին աննկատելի կերպով (1865)։ Նոյն այդ ժամանակ, դարձեալ ոչ ոքից չը նկատված, մեռաւ Մոսկվայում «Համբաւաբեր Ռուսիոյ» թերթը, հանգուցեալ «Ճռաքաղի» այդ ուղեկիցը և շարունակութիւնը, որ կատարելապէս ոչինչ դեր չէ կատարել մեր գրականութեան մէջ։

Մեռնում էին միմեանց ետևից, մեռնում էին լաւերն էլ, վատերն էլ։ Մեռնում էին զանազան տեսակ առողջութեան տէր հրատարակութիւնները։ Մի ընդհանուր ցաւ ըսպանում էր—սակաւարիւնութիւնը. ընթերցող չը կար, սառն անտարբերութիւնը յուսահատեցնում էր թէ երիտասարդական աշխոյժով լցվածին, թէ մեռած ծնվածին։ Բայց մահերին հետևում էին նոր անուններ։

Յիսնական թուականների լրագրական և ամսագրական սերունդը անցնում էր, նրա տեղ երևան էր գալիս վաթսունական թուականների սերունդը։ 1864-ին Ռափայէլ Պատկանեանը սկսում է իր «Հիւսիս» շաբաթաթերթի հրատարակութիւնը Պետերբուրգում։ Բայց Պատկանեանը խմբագիր չէր, այլ բանաստեղծ։ Նա մտաւ իրան խորթ, անսովոր

ասպարեզի մեջ, որպեսզի ցույց տայ իր կատարելապես անկարողությունը։ «Հիւսիսը» ոչինչ ազդեցություն չարավ իր ժամանակակիցների վրա։ Ռափայել Պատկանեանը հրապարակախոս էր իր ոտանավորների մեջ. այդտեղ նա զավեշտութեամբ դուրս էր բերում մեր կեանքի այլանդակ կողմերը, հարուածում էր ազգային անտարբերությունը, մեծամտությունը, ծաղրում էր սպականված բարքերը և խարազանում էր կուռքերը. բայց «Հիւսիսի» մեջ այդպիսի ձայն չունէր, այլ տպագրում էր «Ծովագնաց Սենդբադի» հէքիաթական ճանապարհորդությունները, դրոյցներ պատմությունից, զանազան տեղեկություններ։ Աննկատելի մնաց «Հիւսիսը» և հազիւ մի տարի ապրեց։

Այդպէս օր-պակաս էին և երկու նոր պարբերական հրատարակություններ Թիֆլիսում—«Վաճառական» և «Գարուն», որոնք ծնվեցան «Հայկական Աշխարհի» հետ։ «Վաճառականի» մասին արդէն կարելի է մի քիչ երկար խօսել, որովհետև դա մի հետաքրքրական երևոյթ էր մեր մամուլի զարգացման տեսակէտից։

«Վաճառականը» իրան կոչում էր «Թիֆլիսի առևտրական գազէթ» և առաջին անգամ լոյս տեսաւ 1866-ի մարտի 6-ին։ Խմբագիրն

էր Գէորգ Տէր-Աղէքսանդրեան, գլխաւոր և համարեա միակ աշխատակիցը—Աղէքսանդր Երիցեան. երկուսն էլ մեծ ուսում չը ստացած, բայց բարի դիտաւորութիւններով լըցված: «Վաճառականը» ժողովրդական լրագրի մի փորձ էր. այդ քիչ է, նա խօսում էր այնպիսի առարկաների մասին, որոնք տեղ չէին գտնում դպրոց և եկեղեցի միայն ճանաչող մեր միւս լրագիրների և ամսագիրների մէջ:

«Հայկական Աշխարհը» սաստիկ ծաղրում էր այդ նոր թերթը: Բայց ինքը, այդ «Հայկական Աշխարհը», երբէք չէր գրում տնտեսական, արդիւնաբերական, առևտրական հարցերի մասին: Այդ բանը անում էր «Վաճառականը»: Ճիշտ է, անում էր շատ թոյլ, միամիտ կերպով, այնպէս, ինչպէս թոյլ էր տալիս նրա խմբագիրների տկար կարողութիւնը մի այդպիսի՝ մեզանում նոր, մասնագիտական պատրաստութիւն պահանջող գործի մէջ: Բայց հօ «Վաճառականն» էլ կարող էր իւրաքանչիւր համարի ճակատին գրել «Հայկական Աշխարհի» նշանաբանը. «Ինչ կարող եմ, կատարում եմ, թող կատարէ առաւել լաւ ով կարող է»:

Աւելի լաւ կատարողներ չը կային: Հայ ընթերցողը միշտ պիտի լսէր վարդապետութիւններ, քարոզներ բարձր առարկաների

*մասին, բայց գործնական կեանքին ծառայող մամուլ չունէր։ «Վաճառականը» գալիս է այդ պակասը լրացնելու. Նա յայտնում է թէ ինչ դրութեան մէջ է տնտեսական աշխարհը Եւրօպայում, տալիս է Թիֆլիսի շուկայի գները. Նա գիտէ որ հայ վաճառականների մեծ մասը արքունական կապալներով է պարապում, ուստի տպագրում է զանազան կապալների և աճուրդների յայտարարութիւնները։ Եւ չը կարծէք թէ «Վաճառականը» չը գիտէ լրագրական ուրիշ պարտաւորութիւններ։ Ո՛չ, Նա տալիս է և գրականութիւն. գրական կրիտիկա, պատկերներ կեանքից, մի-մի անգամ էլ նոյն իսկ հասարակական հարցեր էլ է շօշափում։ Նա աշխատում է միանգամայն հասկանալի լինել վաճառականին, խօսել Նրա հետ Նրա գործածական լեզուով, ուստի բանեցնում է այսպիսի լեզու.*

Գասուդարստվեննիխ Իմուշչեստվ Դեպարտամենտումը նշանակած է էս մարտի 20-ին Թէլաւի ուեզդի Օժիօ եւ Խօրխելի անունով գեղերի մէջը գտընված երկու եկեղեցական բաղի իջարով տալու տորգը։

Կավկազսկի Վաեննի Օկրուգի Վոյեննո Մեդիցինսկի ուպրավլենիումը նշանակած է ապրիլի 4-ին Թիֆլիսի Ջապասնի ափտեկի մատերեալների, պրիպասների եւ կաւէ ամանների հասցնելու տորգը։

Այսպիսի սրտաբաց պարզութեամբ չաբաթաթերթը յարմարվում էր իր ընթերցողների լեզուագիտական կարողութեան նաև իր ուրիշ բաժիններում, ուր խօսքը «տորգերի» մասին չէր, այլ վերաբերվում էր տնտեսական և առևտրական կացութեան, գրականութեան: Հարցը, սակայն, սրա մէջ չէ: Իբրև առևտրական-գրական չաբաթաթերթ, «Վաճառականը» շատ քիչ ուշադրութեան է արժանի և կարելի է ապահով լինել որ նորա ընթերցող հայ վաճառականը ոչ առանձին հարուստ ու բազմակողմանի տեղեկութիւններ է ստացել նորանից, ոչ մանաւանդ զարգացել է իբրև վաճառական, որի միտքը ուզում են լուսաւորել, որին ուզում են ղեկավարել, ցոյց տալ, տանել դէպի առաջ:

Բայց մամուլի պատմութիւն գրողը, կարդալով «Վաճառականի» առաջնորդողները, ուրիշ բաժինները, կանգ կառնէ մի հանգամանքի առաջ, որ հետաքրքրական երևոյթի կերպարանք ունի: Նա կը տեսնէ ժամանակից ծնվող պահանջը: Դա այն պահանջն է, որ մամուլը պիտի թողնէ իր խրատական-ճառական ուղղութիւնը, ամպերից վայր իջնէ և այս աշխարհի հարցերն էլ քննէ, մարդու, հողի, բնութեան ոյժերի, մարդկային յարաբերութիւնների, մի խօսքով գործնա-

կան, կենդանի կեանքի հարցերը։ Այդ պահանջը զգացվում էր, և մեղաւորները «Վաճառականի» խմբագիրները չէին, որ կարողութիւն չունէին այդ պահանջին բաւարարութիւն՝ տալու։ Նրանք կարող էին մի փորձ անել և անպատճառ անաջող փորձ։ Դա պատաղ ու ճառող ամսագրական մամուլից առօրեայ լրագրութեան անցնելու փորձն էր։ Եւ, ի հարկէ, երկար ապրել չէր կարող. յաջորդ տարին նա արդէն մեռած էր, իսկ «Հայկական Աշխարհը» չարախնդաց հեգնութեամբ թաղման մի երկար հանդէս էր կատարում նրա գերեզմանի վրա։

Գալով «Գարուն» ամսագրին, բաւական կը լինի ասել այսքանը միայն, որ նրա խմբագիրն էր «Մեղուի» հիմնադիր Ստեփան քահանայ Մանդինեանը։ 1862-ին «Իմ Նիսիէքը» աղերսական աղաղակով մամուլի ասպարէզից փախած քահանան դարձեալ գալիս էր խմբագրի պաշտօնով։ Ի՞նչ ունէր անելու։ —Իր եկեղեցական պատմութիւնը տպելու, Տէրունական աղօթքի մեկնութիւնը տալու, դէսից դէնից ձեռք բերած յօդուածներով գարուն ստեղծելու։

Մեր ամսագրի անունը կոչեցինք «Գարուն», որ եկեղեցական, կրօնական, ուսումնական եւ բարոյա-

կան գիտուԹիւնների բուրաստաններից քաղելով ծաղիկներ, փունջ կապենք ամսագրիս միջոցով, եւ ամեն ամիս ընծայենք մեր սիրելի եղբարց, ինչպէս Գարնան վարդի փունջ։

***Այս էր ասում Մանդինեան քահանան իր ամսագրի առաջին համարում։ Բայց նրա գարունը դուրս եկաւ մի չոր, անապատ ու մեռած աշնանավերջ։ Թաղվեց «Վաճառականի» հետ։***

---

## III

*Գրիգոր Արծրունու աշխատակցութիւնը «Մեղուին» եւ «Հայկական Աշխարհին»։—Հաստատ ուղղութիւն, ոճ, գրութեան ձեւ։—Հայերէն լեզու։—Անդրանիկ յօդուած. դաստիարակութիւն, կանանց հարց։—Ստեփանէի վերաբերմունքը իր նոր աշխատակցին։—«Գերդաստանի ազդեցութիւն եւ համալսարան»։—«Բացված մարդ» հասկացողութիւնը։—Ի՞նչ է զարգացումը։—Խառն ուսումնարանների հարց։—Ազատութիւնը զարգացման հիմք։ Գրական-հասարակական ցաւեր։—«Երկուսից ո՞րն է չարը»։—Գեղարուեստի նշանակութիւնը։—«Գրականութիւն չը կայ»։—Օգուտ, ժողովրդի դասը, մտածող ռէալիստ։—Մի հակաճառութիւն։—Արծրունին եւ Պիսարեվ։—Հասարակական կարծիքի ոռնումն. «Շարունակե՞նք թէ ոչ»։—Տնտեսական հարցեր եւ կրթական ընկերութիւն։*



*Այդպէս էր հայոց մամուլի դրութիւնը Ռուսաստանում, երբ Գրիգոր Արծրունին սկսեց գրել։*

*Իր առաջին երկու յօդուածները, ինչպէս տեսանք, նա տպագրեց «Մեղու Հայաստանի» լրագրում* 1865-*ին։ Այնուհետեւ էլ նա մի*

քանի անգամ երևաց այդ լրագրում։ Սակայն նրա աշխատակցությունը ամենից շատ բեղմնաւոր էր Ստեփանէի «Հայկական Աշխարհի» մէջ։ Այստեղ Արծրունին մի շատ եռանդոտ աշխատակից էր, գրում էր իր իսկական ստորագրութեամբ և այնքան շատ ու լաւ, որ շուտով անուն հանեց ամսագրի ընթերցողների շրջանում։

Հէնց սկզբից, գրական գործունէութեան առաջին, դեռ նոյն իսկ թոյլ, անվստահ քայլերից, Գրիգոր Արծրունին երևան է գալիս իբրև մի շատ ինքնատիպ դէմք, մի անկախ բնաւորութիւն։ Քսան և հինգ տարեկան երիտասարդը արդէն վերջնականապէս կազմակերպված է իբրև հասարակական գործիչ, ունի իր որոշ գոյնը, յայտնի և պարզ դաւանանքները։ Դա նրանցից չէր, որոնք ասպարէզ մտնելուց յետոյ են սկսում ճանապարհներ որոնել, ենթարկվել տատանումների, աջից ձախ և ձախից աջ ընկնել։ Գլխաւոր սկզբունքների, հիմնական դաւանութիւնների տեսակէտից չէ կարելի գտնել այնպիսի գրուածքներ, որոնցից Արծրունին հրաժարվելու կարիք ունենար իր ամբողջ կեանքի ընթացքում։ Այս պատճառով ոչինչ չէր նշանակում այն, որ նա երկար ժամանակ գրում էր «Մեղուի» դէմ մի լրագրում,

որ յետոյ դարձաւ նրա ամենաթունդ թշնամին։ «Մեղուի» մէջ էլ Արծրունին Արծրունի էր, նոյն գրական գործիչը, որ առանց սայթաքվելու, առանց շեղվելու գնում էր իր ուղիղ ճանապարհով։

Սա Արծրունու ամենախոշոր, նշանաւոր յատկութիւններից առաջինն էր։ Երկրորդ նշանաւոր յատկութիւնը մտքեր արտայայտելու ձևն էր։ Դեռ մի անյայտ ուսանող, նա ունէր իր սեփական, իրան միայն յատուկ ոճը. կտրուկ, եռանդոտ, հանրամատչելի։ «Մեղուի» և «Հայկական Աշխարհի» ճապաղ անգոյն գրուածքների մէջ աչքի է ընկնում այդ սկսնակի ինքնուրոյն ոճը. կարճ նախադասութիւններ և պարբերութիւններ, մի աշխոյժ հետաքրքրութիւն շարժող արտայայտութիւն, և այդ արտաքին թեթև ձևի մէջ՝ համարձակ միտք, գեղեցիկ կերպով պատճառաբանված տեսութիւններ, թարմութիւն, ոյժ։ Գր. Արծրունին սիրում էր իր յօդուածները բաժանել մանր մասերի. Նա սառն կերպով վարդապետող չէր, չէր ճառում, այլ զրոյց էր անում ընթերցողի հետ։ Լինել պարզ ու հասկանալի, նկատի ունենալ որ ընթերցողը ոչինչ պատրաստութիւն չունի և կարօտ է տարրական հասկացողութիւնների, խուսափել աւելորդ շատախօ-

սութիւններից և երկարաբանութիւններից, խուսափել մի յօդուածի մէջ ամեն բան ասելու մոլութիւնից—ահա նրա գրելու ձևը։ Աւելացնենք դրա վրա և մի այլ, միայն Արծրունուն յատուկ ձև—կրկնութիւնները, միևնոյն միտքը միևնոյն բառերով շատ տեղ արտայայտելը, սրանով նա, կարծես, հալում



Գրիգոր Արծրունին ուսանող Հէյդելբէրգում

ածում էր իր գաղափարները ընթերցողի մէջ, ինչպէս ասում ենք՝ ծամում, բերանն էր դընում։

Իսկ ի՞նչ լեզուով էր գրում Արծրունին։— Մենք արդէն գիտենք թէ ինչպէս էր նա վե-

րաբերվում հայերէն լեզուին։ Այժմ, ուսանողութեան ժամանակ, երբ հասկացողութիւնները այնպէս արմատապէս փոփոխվել էին, երբ նա որոնում էր թէ ուր է իր ազգութիւնը, առաջ է գալիս լեզուն իմանալու անհրաժեշտութիւն։ Եւ Արծրունին սկսում է սովորել, այնպէս սովորել, որ կարողանում է յօդուածներ ուղարկել հայերէն պարբերական հրատարակութիւններին։ Եւ ո՛րպիսի կարճ միջոցում…

Դա մի փայլուն օրինակ է։ Հայերէնը նոյն իսկ ընտանեկան-գործածական լեզու չէր եղած նրա համար. Նա կրթվել էր համարեա բոլորովին օտարացած։ Բայց ուսանողական առաջին տարիներում վճռելով գրել հայերի համար, դառնալ հայ հրապարակախօս, նա, բնականաբար, պէտք է սովորէր իր համար գրեթէ խորթ, օտար հայերէնը։ Եւ նա սովորեց, սովորեց՝ որքան կարող էր սովորել մի ուսանող։ Շատ շատերը կան մեզանում, որոնք ծնված լինելով աւելի նպաստաւոր հանգամանքների մէջ, այսինքն հայախօս ընտանիքներում, հարկաւոր են համարում կատարելապէս մոռանալ իրանց մայրենի լեզուն և արդարացնում են իրանց անտարբերութիւնը դէպի հայկական գրականութիւնը այն տերէօտիպ խօսքերով թէ

հայերէն չը գիտեն։ Բայց դա արդարացում չէ, այլ ցոյց է տալիս միայն թշուառ հասկացողութիւնների տիրապետութիւնը։ Մենք շուտով կը տեսնենք թէ ինչպէս էր Արծրունին ըմբռնում մայրենի լեզուի նշանակութիւնը. կը տեսնենք և այն, որ բաւական չը համարելով ինքնակրթութեամբ, ուսանողական պարապմունքների մէջ ինքնագլուխ վարժութիւններով ձեռք բերած հայերէնագիտութիւնը, Նա գնաց հայերէնի դասեր էլ առնելու։ Կան մարդիկ, որոնք իրանց կոչման ետեւից գնում են կատարեալ գիտակցութեամբ. սակաւաթիւ են լինում այդպիսի մարդիկ, և Արծրունին, մէկը այդ սակաւաթիւներից, արաւ այն, ինչ չեն անում կամ չեն ուզում անել հարիւրաւոր Նրա նման օտարացածները։

Ի հարկէ, հեշտ չէր միանգամից իւրացնել հայերէն լեզուն։ Նա դեռ թոյլ էր իբրև հայերէն գրող և խմբագրութիւնները ուղղում էին Նրա լեզուն։ Այս բանը կարելի է հեշտ իմանալ, համեմատելով Արծրունու այն յօդուածները, որոնք տպվում էին «Մեղուի» և «Հայկական Աշխարհի» մէջ. օրինակ, միևնոյն գրչի տակից դուրս եկած գրուածներում մենք մի տեղ տեսնում ենք «էնդուր որ» («Մեղուի» լեզու), միւս տեղ «այնոր

համար» («Հայկական Աշխարհի» լեզու)։ Եւ Արծրունին ոչինչ չունէր դրա դէմ. Նա մինչև անգամ հրապարակով շնորհակալութիւն էր յայտնում «Հայկական Աշխարհին», որ «նա այնպէս գեղեցիկ կերպով ուղղում է իր ոճը»։ Լեզուին նա նայում էր ոչ իբրև նպատակի, այլ միջոցի վրա։ Եւ սակայն Արծրունու հակառակորդները միշտ այն էին պահանջում որ նա լեզուն նպատակ դարձնէ։ Այս առարկային մենք դեռ կը վերադառնանք։ Այժմ հետևենք Արծրունու գրուածքներին։

Իր անդրանիկ յօդուածում *) Արծրունին զինվում է դոյութիւն ունեցող դաստիարակչական սիստեմի դէմ։ Սերունդ դաստիարակողներն են դպրոցը և ընտանիքը։ Դպրոցում տիրում է անօգտակար դաստիարակութիւն, որ չէ ծանօթացնում դաստիարակվողին բնական գիտութիւնների հետ, այսինքն չէ հասկացնում թէ ինչ է մարդը, ինչ է նրա ընդհանուր հայրենիքը—աշխարհը, ինչ օրէնքներով է կառավարվում բնութիւնը, տիեզերքը և այլն։

Գալով երկրորդ դաստիարակչին, այսինքըն ընտանիքին, Արծրունին ասում է որ

---

*) «Բնական գիտութիւնների նշանակութիւնը դաստիարակութեան մէջ» («Մեղու», 1865, № 13 և 14)։

ընտանիքը ազատ, խելացի, առաջադէմ զարգացման թշնամին է։ Ինքը, այդ երիտասարդ ուսանողը, ընտանիքի բռնակալ լուծից ազատված միտքն էր։ Գեներալ Արծրունու երկաթէ խնամակալութիւնը Գրիգորին շատ բան էր սովորեցրել, ազդու բողոքի շատ նիւթ էր պատրաստել։ Կեանքի երկարամեայ փորձը այն աստիճան ճնշող էր նրա համար, որ նա իր ազատութեան հէնց առաջին քայլերից զինվեց ծնողական լուծի դէմ։ Ընտանիքը—նախապաշարմունքների բոյն. ընտանիքը—հին, փտած գաղափարները խստութեամբ պահպանող, նուիրագործող. ընտանիքը—հաւասարութեան, ազատութեան սկզբունքը խեղդող և անսահման բռնակալութիւնը սրբագործող։—Ի՞նչ կը լինի այդպիսի մթնոլորտում մեծացող նոր սերունդը։

Պէտք է այդ սերունդը ազատել ընտանիքի խեղդող ազդեցութիւնից. պէտք է նրան միջոց տալ հեռանալու նախապաշարմունքների միջավայրից, կրթվելու ազատ եւ անկախ, կրթվելու իբրև ժամանակի զաւակ, դրական գիտութիւնների պահանջների համաձայն։

Նայելով հայ ընտանիքի խորքին, Արծրունին տեսնում է այդտեղ դարաւոր մեծ անարդարութիւնը։ Տղամարդը դեռ կարող է

*հեռանալ ընտանիքից, կրթվել Նրա ազդեցությունից դուրս։ Բայց ինչ անէ կինը։ Նա չէ կարող հեռանալ, Նա պինդ կապված է ընտանիքի հետ, ճնշված է այնտեղ և միշտ ոգէտ է, անպատրաստ։ Բարեկարգ, լուսաւոր ընտանիք, ընտանեկան դաստիարակութիւն չէ էլ կարող լինել, քանի որ ընտանիքի և հասարակութեան մէջ այնքան կարեւոր դեր կատարող կինը միանգամայն անպատրաստ է, ոգէտ։ Եւ Արծրունին պահանջում է կնոջ համար էլ օգտակար, իրական և լայն կրթութիւն՝ տղամարդի հետ համահաւասար։*

*Այսպէս, իր առաջին իսկ քայլից Արծրունին հանդիսանում է կանանց հարցի ջերմ, պերճախօս պաշտպան։ Կինը իբրև լիակատար իրաւունքներով մարդ, կինը իբրև հասարակական գործիչ—ահա Արծրունու իդէալը այն օրից, երբ Նա առաջին անգամ գրիչ վերցրեց իր ձեռքը։*

*Ահա ինչ էր գրում այդ գրիչը.*

Խեղճ հայոց կանայք, կարծում են թէ ձեզ հարկաւոր չէ կրթութիւնը. ձեր հայրեր չեն տուել ձեզ կրթութիւն եւ չեն էլ տալիս մինչեւ հիմի։ Կարծում են, թէ գեղեցկութիւնը եւ փողը աղջկայ ամենամեծ արժանաւորութիւններ են, եւ այս արժանաւորութիւնների տէր լինելով աղջիկը կարող է մարդու գնալ։ Բայց չեն մտածում այն բանի վերայ, որ,

մայր դառնալով, նա չէ կարող օրինաւոր դաստիարակութիւն տալ իր որդկերանց, էնդուր որ ինքն տըգէտ է. չունի մինչեւ անգամ մի թեթեւ հասկացողութիւն մարդու բնութեան վերայ, կեանքի եւ դաստիարակութեան վերայ։ Մարդու բնութիւնը, կասեն ինձ. միթէ կարելի է մի ջահէլ աղջկայ ձեռքին տալ մի գիրք, որի բովանդակութիւնը լինի Անատօմիա եւ Ֆիզիօլօգիա, այսինքն, մարդու մարմնի եւ կեանքի ուսումը։ Միթէ այդ ամօթ չէ։ Ինչո՞ւ է ամօթ, պատասխան եմ տալիս ես, ինչի՞ էք կարծում, որ աղջկերք տգէտ պէտք է լինին, եւ տղայոց նման չպէտք է ուսում առնեն. ինչո՞ւ... Բայց ինձ չեն էլ ուզում լսել եւ կրկնում են. ամօթ է, ամօթ. ուրեմըն, եթէ այդպէս է, պատրաստեցէք մի անպիտան սիրունդ, անպիտան թէ հոգով եւ թէ մարմնով. այս երեւի ամօթ չէ։

Նախապաշարմունքները, պապենական աւանդութիւնները չեն թողլ տալիս իւրացնել դաստիարակութիւնը լայն հայեացքով։ Եւ իր առաջին բողոքը այդ նախապաշարված իրականութեան դէմ Արծրունին վերջացնում էր Հերշէլի հետեւեալ խօսքերով. «Յառաջադիմութեան համար հարկաւոր է մարդուս ոչ թէ միայն շատ բաներ ուսանել, բայց և հարկաւոր է նրան շատ բաներ մոռանալ»։ Այս գեղեցիկ խօսքերը Արծրունին նշանաբան է դարձնում իր ամբողջ գործունէութեան համար։ Նա ոչ միայն ինքն է շատ բան մոռանում, այլ և իր ամբողջ ոյժով աշ-

խատում է որ հասարակութեանն էլ մոռացնել տայ շատ բան։

Նոյն այդ դաստիարակութեան հարցին Գրիգոր Արծրունին վերադառնում է իր երկրորդ յօդուածում, որ նուիրված էր յատկապէս աղջիկների կրթութեան *)։ Ասելով իր առաջին յօդուածի մէջ թէ հայ կինը միանգամայն տգէտ է, միանգամայն անպատրաստ, Արծրունին միայն խաւար ու անուս մեծամասնութիւնը չունէր ի նկատի, միայն այն բազմութիւնը, որ առհասարակ հարկաւոր չէր համարում ուսում տալ աղջիկներին։ Ո՛չ, նա խօսում էր ընդհանրապէս, աչքի առաջ ունենալով և կրթութիւն ստացող աղջիկներին։

Ծանօթ էք դուք մեր աղջկերանց դաստիարակութեան կանոնների հետ,—հարցնում է նա։—Այս կանոնները շատ հեշտ է մտքում պահել։ Ով որ կարողութիւն ունի, պարտաւորութիւն պէտք է համարի սովորցնել իր աղջկան ֆրանսզերէն լեզու, պիանո ածելը, լաւ ճաշակ ունենալ շորեր ընտրելու ժամանակ եւ գլխաւոր բանը—մունջ կենալ։

Ահա մեր կրթութեան ուղղութիւնը։ Ահա ամենամեծ կրթութեան աստիճանը, որին մեռերի կար-

---

*) «Երկու խօսք աղջկերանց դաստիարակութեան վերայ», № 23։

ծիքով կարող է հասնել կնամարդը։ Իսկ ես կասեմ որ այդ տեսակ կրթութիւնը կրթութիւն չէ։

Ի՞նչ ենք պահանջում կնամարդուց։ Մենք պահանջում ենք նրանից, որ նա օգուտ բերի հասարակութեան, իսկ այդ կերպով կրթած կնամարդը երբէք օգուտ չէ կարող բերել, որովհետեւ նորա ըստացած կրթութիւնը չէ բաւականացնում հասարակութեան պիտոյքներին։

***Դպրոցական կրթութիւնը Արծրունին այսպէս է նկարագրում.***

Բոլոր ուսման ժամանակը աղջկերք սովորում են մեծ աշխատասիրութենով իրանց դասերը, խօսում են ֆրանսզերէն, կորցնում են մեծ մասը իրանց առողջութիւնը, լցնում են իրանց գլուխները դարդակ բաներով ու նախապաշարմունքներով, իսկ իրանց մտքի զարգացումը շատ քիչ են առաջ տանում։ Սովորում են բառ առ բառ ձեռնարկութեան գրքի խօսքերը, շատ անգամ առանց նրանց միտքն էլ հասկանալու, իսկ վարժապետները այսպիսի հանգամանքների մէջ պարտաւորութիւն են համարում իսկական իրողութիւնների միտքը չմեկնել նրանց։ Եւ այն աղջիկը, որ կուզենայ այս կամ այն իրողութեան վերայ դատողութիւն անել, կհամարվի ազատախօս կամ յիմար։

***Եւ ոչինչ հասկացողութիւն կնամարդի կոչման կամ մօր պարտաւորութիւնների մասին. աղջիկները ոչ միայն սեփական դատողութիւն ունենալու պատրաստութիւն չեն***

*ձեռք բերում, այլ և կորցնում են իրանց ու֊նեցածը և նրանց մէջ սպանվում է բնական միտքը։*

Այդ կողմից ցածր դասի կանայք մինչեւ անգամ վեր են այդ տեսակ կրթած կնամարդերից. ցածըր դասի կնամարդը չէ կորցրել գոնեայ իր բնական խելքը, իսկ այն կրթեալ կոչվողներին շատ անգամ տիրապետում է մի դարդակ ուղղութիւն, որ յարուցանում է նոցա մէջ զզուանք դէպի մտաւոր եւ մարմնաւոր աշխատանքը, սպանում է նրանց մէջ ուղիղ հայեացուածքը կեանքի վրայ, զարթուցանելով միայն էր դէպի անդադար զբօսանք եւ դարդակ պճնասիրութիւն։

*Ու հերքելով այն հին նախապաշարմունքը թէ կին մարդը ուրիշ կերպ չէ էլ կարող լինել, թէ նա ընդունակութիւն էլ չունի մըտաւոր գործունէութեան, զարգացման մէջ, Արծրունին անցնում է հայ աղջիկների տընային դաստիարակութեան։ Դպրոցը այնպէս է. իսկ ինչ է տալիս ընտանիքը.*

Մեր տնային դաստիարակութիւնը հասարակաց դաստիարակութենից (դպրոց) անգամ վատ է։ Ոչինչ չէ սպանում այնքան մարմին ու հոգի, ինչքան այս դարդակ դաստիարակութիւնը։ Ինչու է այդպէս։ Ընդուր որ մենք չենք հրաժարվել հին սովորութիւններից, իսկ նոր ուղղութիւնը չենք ընդունել իսկապէս։ Եւրոպացիների կրթութենից մենք սեփհակա-

նայրել ենք մեզ միայն արտաքին կողմը, իսկ կըրթութեան հիմունքը դարձեալ ասիականն են։ Մէկ կողմից երեխերանց ուսուցանում ենք ֆրանսզերէն խօսել, պիանօ ածել, կարդացնում ենք Թեթեւ գըրականութեան անօգուտ գրքերը (օգտաւէտ գիտութիւնները շատ քիչ են ուսուցանում), հագցնում ենք նրանց եւրոպական շորերը.—իսկ միւս կողմից գերդաստանի հայրը նոյն ասիական հրամայողն է մընում, որի խօսքը պէտք է կատարվի առանց հակառակվելու։ Երեխերք չունին մտածելու ու գործելու ազատութիւնը.—եւ այսպիսի ուղղութեան պըտուղը ինչ է, անշուշտ Թէ մարմնական Թէ մտաւոր չզարգացումն։ Տղայք շուտ են ազատվում այդ ուղղութեան լուծից, իսկ աղջկերք շատ անգամ բոլոր կեանքը չեն կարողանում ազատվել այս վատ կրթութեան ներգործութենից։

*Դա հասարակական դժբախտութիւն է։ Չէ կարող հասարակութիւն զարգանալ, երջանկանալ, եթէ կինը մնայ անկիրթ կամ դրսից միայն կրթված։*

Տղամարդը բազմութիւն է դաստիարակում, կնամարդը անհատներին. բայց անհատներից է կազմվում եւ հասարակութիւնը. ուրեմն կնամարդու նըպատակն էլ նոյնպէս է հասարակութեան համար օգտաւէտ անդամներ պատրաստելը. նպատակը մի է՝ բերել օգուտ հասարակութեան։ Որովհետեւ կնամարդը առանձին անձների հոգեւոր եւ մտաւոր դաստիարակչի պաշտօն է կատարում, ուրեմն նա կարող է ոչ Թէ միայն իր զաւակներին բարոյական ուղղու-

թիւն տալ, այլ նա նոյնպէս ընդունակ է եւ ամեն մարդու վերայ, ով որ նրա ձեռքի տակն է ընկնում, քարոյական ազդեցութիւն ունենալ։ Յայտնի բան է, որ ինչքան հաստատ կրթութիւն կստանան կնամարդիկ, այնքան էլ աւելի կերեւայ նոցա ազդեցութիւնը հասարակութեան մէջ։ Իսկ անկիրթ ազգերի մէջ այս ազդեցութիւնը գրեթէ աննկատելի է, ինչպէս ընդհանրապէս եւ մեր Հայերի մէջ էլ։ Մեր կնամարդիկ առհասարակ չեն ստացել կրթութիւն, այնպէս որ նոցա մեծ մասը միշտ իրանց մարդոց կոպիտ ազդեցութեան տակն են ընկնում։ Հայը անսահման հրամայող է իր գերդաստանի մէջ, նորա կինը ու որդիքը պէտք է լսեն նորա խօսքերը առանց հակառակելու։ Այս հանգամանքից Հայի մէջ ծագեցան այն աննախանձելի յատկութիւնները, որոնց ամենավատերը են իշխանասիրութիւն եւ կամակորութիւնը․ Նորա այս պակասութիւնները երեւում են նորա ամեն գործի մէջ։ Աւելացրէք այդ պակասութիւնների վերայ եւ մեր մտաւոր զարգացման պակասութիւնը, եւ ձեզ հասկանալի կլինի, թէ ինչու երբէք յաջողութիւն չկայ մեր ընդհանուր գործերի մէջ, թէպէտ եւ գործը ամենահեշտ ու չնչին գործ լինէր։

*Ի՞նչ անել, սակայն, որ ընտանիքը կենդանանայ, ինչպէս ազատել նրան «հրամայող, իշխանասէր և կամակոր» հօր ազդեցութիւնից։ Արծրունին խելացի, կանոնաւոր, օգտաւէտ կրթութիւն է պահանջում։*

Փոխանակ աղջկան գլուխը յիմար ու անօգուտ առարկաններով լցնելու, ծանօթացնենք նրան հաս-

տատ գիտութիւնների հետ։ Փոխանակ նորա բնական ուսումնասիրութենից ամէն բան թագցնելու, ամօթ չհամարենք ծանօթացնել նրան բնութեան հետ, մարդու, մարմնի ու կեանքի ուսման հետ։ Հարկաւոր չէ յափշտակել նորա միտքը զանազան առասպելներով, բայց ընդհակառակն, պէտք է աշխատել կազմելու նորա մէջ բնական եւ ուղիղ հայեցուածք աշխարհի վերայ։ Մէկ խօսքով չպէտք է սպանել նորա հոգին ու մարմինը ասիական դաստիարակութենով, այլ նախապաշարմունքները դէն դցելով ծանօթացնել նրան իսկական գիտութիւնների հետ եւ մօտացնել նրան տղամարդոց ընկերութեան, որի զարգացումը աղջկերանց մտաւոր զարգացման կարող է մի մեծ օգուտ բերել եւ հիմքը դնել մի ուրիշ ուղղութեան, մի ուրիշ կեանքի։

Այս երկու յօդուածները, ինչպէս գիտենք, Արծրունին գրեց Պետերբուրգից։ Այնուհետեւ հիւանդութիւնը տարաւ նրան արտասահման և նա համարեա մի տարի ստիպված էր լռութիւն պահպանել։ Պետերբուրգում գրած սկիզբը, ինչպէս տեսնում էք, չէ կարելի վատ անուանել մի հրապարակախօսի համար։ Թէև այդ սկսնակը դեռ երկրորդ կուրսի ուսանող էր, դեռ 25 տարեկան, բայց հանդէս էր գալիս բաւական լուրջ պատրաստութեամբ։ Փոքր ինչ խակութիւն գրուածքի մէջ, ի հարկէ, երևում է և չէ կարող չերեւալ։ Բայց որքան իմաստալից յօդուածներ

են, որպիսի վստահութեամբ երիտասարդ հեղինակը գրիչ է շարժում, որքան կտրուկ կերպով լուծում է հարցերը։

Գրիգոր Արծրունու առաջին խօսքը ընտանիքի, անշարժութեան, բռնութեան դէմ էր։ Ուսանողական նստարանից նա դատափետում էր անօգուտ, վերացական դաստիարակութիւնը, արտաքուստ իւրացրած քաղաքակրթութիւնը։ Երեսուն հինգ տարուց աւել է անցել այն օրից և դեռ այսօր էլ ճըշմարտութիւն շատ և շատ կայ այդ տեսութիւնների մէջ։ Այսօր էլ ընտանիքը միևնոյն է, միևնոյն է մանաւանդ կանանց կրթութիւնը, հասարակութեան պահանջներին անհամապատասխան, պիանօի, արդ ու զարդի, պճնամոլութեան մի կրթութիւն։ Կինը դեռ դաստիարակիչ չէ այն մտքով, ինչպէս հասկանում էր Արծրունին։

«Ես այդ կրթութիւնը կրթութիւն չեմ համարում», «հարցնում եմ», «ինձ պատասխան չեն տալիս»... Ո՛րպիսի համարձակութիւն գրական ասպարէզում նոր լոյս ընկած մի ուսանողի կողմից։ Այդ ինքնավստահութիւնը, համոզված մարդու այդ կորովը Արծրունու առաջին քայլերի հետ երևացող հիմնական յատկութիւններ են։ Դա նրա բնութիւնն էր, նրա բարոյական դէմքն էր

կազմում։ Երկրորդ յօդուածը նա վերջացնում էր այսպիսի կծու հեգնութեամբ.

Բայց չկարծէք, յարգոյ ընթերցողներ, որ այս տողերի գրողը նպատակ ունէր խորհուրդներ տալու. ոչ, նա մտադիր էր միայն իր միտքը յայտնել, եւ երբէք սովորութիւն չունի խրատելու, էնդուր որ նա չէ մոռացել մեր սիրելի քանաստեղծի *) գեղեցիկ խօսքերը՝ թէ

Գրքիդ մէջ պարսաւանք մի տալ Հային,
Հայը խրատ (թէեւ խելօք) ասում է.
Մի ծիծաղիլ նորա տխմար գործերին,
Որ նա աւանդ հայրենական կարծում է...

Սկզբից և եթ պատերազմող, քանդող։ Արտասահմանը աւելի ևս զարգացնում է նրա մէջ այս յատկութիւնները։ Արտասահմանում նա աւելի ևս համարձակ ու ինքնավստահ է դառնում և նրա գրուածքները, արդէն արծրունական յատուկ ոճով, շօշափում են հասարակական և կրօնական զանազան հարցեր։ Նա գրում է անդադար։

«Հայկական Աշխարհի» 1867 թուի № 4—5-ի մէջ տպվեց «Աշխատենք» յօդուածը։ Դա քաղուածք էր ֆրանսիացի գրող Էդմոնդ Աբուի «Le Progrés» (Առաջադիմութիւն) անունով գրքից։ Յօդուածի տակ դրված էր.

*) Գամառ-Քաթիպա։

*«Գրիգոր Արծրունի.—Նոյեմբեր, 1866»։ Խմբագրութիւնը աւելացնում էր այդ յօդուածին հետեւեալ նկատողութիւնը.*

Այս գեղեցիկ յօդվածը մենք հեռու տեղից, Ժենևից ստացանք վերջին օրերում մի հայկական ազնիվ երիտասարդից, որը, ինչպէս լսել էինք, գընացել էր Զվէյցարիա իւր առողջութիւնը վերականգնելու. Հասկանալի է, որ յօդվածս առանձին նշանակութիւն ունէ մեզ համար եւ շտապեցինք նորան հրատարակելու, մանավանդ սորա գեղեցիկ մըտքերը շուտ հաղորդելու ընթերցողներիս։

*Ստ. Ստեփանէն առհասարակ քնքշութեամբ և առանձին հիացմունքով էր վերաբերվում ուսանող երիտասարդներին, որոնք գրում էին իր ամսագրում։ Բայց այլ էր նրա վերաբերմունքը դէպի Գրիգոր Արծրունին և այս նկատողութիւնը վերջինը չէ, որի մէջ նա արժանաւոր մեծարանք էր մատուցանում իր աշխատակցի ընդունակութիւններին։ Այնուհետև էլ մինչև 1871 թւականը, ինչպէս կը տեսնենք, Ստեփանէն, ամեն յարմար դէպքում, գովասանքներով էր յիշատակում Գրիգոր Արծրունուն, որ շուտով դարձաւ «Հայկական Աշխարհի» մէջ մի կենտրոնական անձն, մի ույժ, որ ստուերի մէջ էր թողնում նոյն իսկ խմբագրին։ Այս հանգա-*

մանքը ցոյց է տալիս որ Ստեփանէն ունէր մարդ ճանաչելու ընդունակութիւն. հէնց առաջին թարգմանական յօդուածից նա իմացաւ որ իր նոր աշխատակիցը «հայկական ազնիւ երիտասարդների» սովորական տիպին չէ պատկանում, որ նա ասելիքներ ունէր։

Առաջին յօդուածը, ճիշտ է, թարգմանական էր, ուրիշի յայտնած մտքերի քաղուածք էր, բայց հէնց ընտրութիւնը պարտաւորեցնում էր ուշադրութիւն դարձնել բժշկվելու համար արտասահման գնացած երիտասարդի վրա։ Էդմոնդ Աբուն փառաբանում էր աշխատանքը իբրև միակ անկասկած միջոց մարդկութիւնը բարեբախտութեան հասցնելու համար։ Աշխատանքը իբրև ընդհանուր պարտականութիւն, իբրև իւրաքանչիւր մարդու հաւատամք. աշխատանք՝ չը նայած գործի դժուարութեան, աշխատանք՝ առանց վարձատրութեան, դափնիներ ստանալու ակնկալութեան. աշխատանք՝ մարդու, հասարակութեան օգտի համար։ Այդ մտքերը շատ լաւ յարմարվում էին Արծրունու բնաւորութեան, ուղղութեան։ Մի ռէալիստ աշխատաւորի հոգին էր խօսում նրանց մէջ։ Արծրունին, ինչպէս այդ տեսակ աշխատաւորի առաջին խոշոր տիպ մեզանում, Աբուի նոյն այդ մտքերով դուրս եկաւ հասարակութեան առաջ,

երբ յայտարարում էր թէ 1872 թուից պիտի հրատարակէ «Մշակ» լրագիրը.

«Ի՞նչ վնաս, թող յայտնի չլինին ապագայ սերունդներին մեր անունները։ Մեզ բաւական է, թէ մեր աշխատած գործը օգուտ կբերէ մարդկութեանը։

«Թո՛ղ կորչէ անունը—բարի գործը չի կորչի... Աշխատե՛նք»։

Թարգմանութեան հետեւեցին ինքնուրոյն յօդուածներ։ Նոյն 1867-ին Ստեփանէն տպագրեց Արծրունու երկու յօդուածները—«Գերդաստանի ազդեցութիւն և Համալսարան» և «Քանի մի մտքեր»։ Դրանց մէջ Արծրունին պտոյտ էր անում այն հարցերի չուրջը, որոնց շօշափել էր 1865-ին «Մեղուի» մէջ տպված իր յօդուածներում։ Մենք տեսնում ենք նրան դարձեալ կռուելիս ընտանիքի վատ ազդեցութեան դէմ, դարձեալ կանանց համար ազատ ու օգտակար կրթութիւն պահանջելիս։

Առաջին յօդուածում Արծրունին խօսում է Թիֆլիսում համալսարան հիմնելու մասին։ Ցանկալի՞ է այդպիսի մի բան թէ ոչ։ Եւ առանց տատանվելու, Արծրունին ասում է թէ ցանկալի չէ, ինքը չէր կամենայ որ Կովկասի մայրաքաղաքը ունենայ բարձրադոյն դպրոց։ Պատճառը միևնոյնն է—ասիական

բանական ընտանիքի գոյութիւնը։ Այդ ընտանիքը պիտի ոչնչացնէ համալսարանի նշանակութիւնը, ազդեցութիւնը։

Բերենք մի քանի կտորներ այդ յօդուածից՝ աւելի Գրիգոր Արծրունու գրութեան ձևի, ոճի, դատողութեան եղանակի հետ ծանօթացնելու համար.

Ասենք Թիֆլիսում համալսարան կայ։ Ասենք ես երէկ գիմնազիստ էի Թիֆլիսի գիմնազիայում, եւ այսօր միեւնոյն քաղաքի մէջ ուսանող դարձայ. փոխվեցա՞ւ արդեօք իմ դրութիւնս։

Ամենեւին ոչ։ Այսօր երէկվայ նման ես դասերից յետոյ տուն եմ գալիս, նոյնպէս տեսնում եմ իմ գերդաստանի կեանքը, նոյնպէս լսում եմ իմ ծընողների խօսակցութիւնը, նոյնպէս երեխայ եմ։

Ուրեմն ձեր բոլոր ցաւը, կասեն ինձ, այն է որ երեխան իւր դրութիւնը չէ փոխում իւր գերդաստանում մնալով։—Այո, այդ է իմ ցաւը եւ գիտէք ինչի։ Այնոր համար որ ես կկամենայի, որ մարդիկ լաւանան (սա կարծեմ վատ ցանկութիւն չէ), բայց լաւանալ մարդիկ կարող են միայն փոխելով իւրանց դրութիւնը։

Մենք լաւ մարդիկ ենք, այդ ճշմարիտ է, բայց մեր երեխաներ մեզնից լաւ պէտք է լինին, իսկ մեր երեխաների երեխաներ առաւել եւս լաւ կլինին։ Ինչի՞ է այդպէս։ Այնոր համար որ ինչքան գնում են մարդիկ, այնքան շատանում են գիտութիւններ։ Գիտութիւնների շատանալու ժամանակ մարդիկ լաւանում են։ Շատ մտածելուց լաւանալը մարդիկների մէջ ասում են «զարգացումը»։

Մենք ամէնքս պէտք է աշխատենք զարգացնել մեր խելքը, որովհետեւ այն ժամանակ աւելի հեշտ կլինի մեր հայրենակիցներին օգուտ բերել, ուրեմն եւ հետագայ սերունդներին եւս առաւել լաւ կեանք պատրաստել։

Դուք համաձայն էք ինձ հետ, սիրելի ընթերցող *), որ մենք պէտք է աշխատենք մեր խելքը զարգացնելու, բայց ասացէք ինձ, դուք ինչպէս էք կարծում, մենք որտեղ կարող ենք աւելի լաւ զարգացնել մեր խելքը՝ գերդաստանում ապրելով, կամ թէ մեր ծնողներից հեռու մնալով ուսում առնելու ժամանակ։

Ես ասում եմ, որ երիտասարդի համար աւելի հեշտ է իւր խելքը զարգացնել իւր գերդաստանից հեռու ապրելով, քան թէ իւր ծնողների մօտ մնալով։—«Ինչի է այդպէս, կասեն ինձ, մի՞թէ չէ կարելի սովորել ամեն տեղ»։ Այդ ճշմարիտ է, պատասխանում եմ ես, բայց մարդս բացվելու ու առաջ գնալու համար բաւական չէ որ սովորէ, հարկաւոր է նմանապէս, որ նա եւ շատ մոռանայ։ Եւ մոռանալ մինչեւ անգամ աւելի դժվար է քան թէ սովորել։ Ի՞նչ է հարկաւոր մեզ մոռանալ։ Հարկաւոր է մոռանալ գերդաստանի մէջ ստացած թիւր եւ ցուրտ մտքերը, բարքերի եւ վարքի կոպտութիւնը եւ երեխայութենից գլխի մէջ արմատացած նախապաշարմունքը։

... Իւր ծնողներից միշտ կախված լինելով, երի-

---

*) Ես ասում եմ «ընթերցող», բայց չեմ իմանում լինում են արդեօք ընթերցողներ այդպիսի յօդուածներին։

Հեղ. ծան.

տասարդը չէ ուսումնասիրում կեանքը, չէ զարգացնում իր բնութիւնը, միշտ անփորձ է մնում կեանքի մէջ։ Ոչինչ չէ զարգացնում այնպէս երիտասարդին, ինչպէս անկախ կեանքը, երբ որ մարդը սովորում է սեփական ընդունակութիւններին եւ բնութեան զօրութիւններին հաւատ ընծայել, ստիպված լինելով օգնել իւր անձին կեանքի ամէն դժուարութիւնների մէջ։

*Մենք չենք քննի այստեղ այն հարցը թէ որքան ճիշտ էր Արծրունու հայեցակէտը կովկասեան համալսարանի մասին։ Կարելի էր առարկութիւններ անել այդ մտքերի դէմ։ Կարելի էր, օրինակ, ցոյց տալ որ Թիֆլիսի համալսարանը, միւս կողմից, այն օգուտը կը տար որ մատչելի կը դարձնէր բարձրագոյն ուսումը մեր երկրի ազգաբնակութեան ստորին, անապահով դասակարգերին. Կովկասը այն օգուտը կը ստանար, որ բարձր ուսում ստացած մարդիկ շատ կունենար։ Ինքը Արծրունին, տարիներ անցնելուց յետոյ, «Մշակի» մէջ սկսեց քարոզել թէ պէտք է բաց անել համալսարան Թիֆլիսում։ Այդ ժամանակ նա, յիշելով իր յօդուածները «Հայկական Աշխարհում», ասում էր թէ Թիֆլիսը փոխվել է, առաջադիմել է, այժմ կարող է համալսարանական քաղաք դառնալ։ Վիճելի է և այդ հանգամանքը։ Բայց մենք մի կողմ*

թողնելով այդ բոլորը, այստեղ կանգ կառնենք Արծրունու գլխաւոր մաքի վրա, որ, մեր կարծիքով, անհերքելի ճշմարտութիւն է ներկայացնում։

Բանն այն է, որ Արծրունին բաւական չէր համարում այն ուսումը, որ տալիս է համալսարանը։ Ոչ թէ դիպլոմ, ոչ թէ պաշտօնապէս վկայված կրթութիւն, այլ իսկական զարգացում։ Անշուշտ, այն ժամանակներն էլ կային դիպլոմ ստացած շատերը։ Բայց մի՞թէ դրանք բոլորը իսկապէս կրթված, իսկապէս լայն զարգացման տիրացած մարդիկ էին, որ կարողանային յեղափոխութիւն առաջացնել մեր կեանքի մէջ։—Ի հարկէ, ոչ։

Ի՞նչ էք հասկանում լուսաւորութիւն բառով,— հարցնում է Արծրունին։—Այն, որ մեր մէջ աւելի կլինին ուսումն աւարտած երիտասարդներ. այդպէս չէ՞։ Բայց այդ բաւական չէ։ Ցանկալի կլինէր, որ բացված մարդիկ առաւել մեծ թւով լինէին մեր մէջ։

Սա մի շատ կարեւոր հայեցակէտ է Արծրունու գործունէութեան մէջ։ Այժմից նա պարզում էր այն, ինչ ապագայում ամենակատաղի կռիւների առարկայ պիտի դառնար։ Արծրունին պատերազմ հրատարակեց ոչ միայն հին սերունդի, յետամնացութեան, խաւարասիրութեան դէմ, այլ և համալսարանա-

կան այն ինտելլիգենցիայի դէմ, որ չէր կատարում իր դերը, որ ընդունակութիւն և պատրաստութիւն չունէր կեանքի մէջ կուլտուրական—առաջադիմական գործ կատարելու և՝ ընդհակառակն, խոչընդոտ էր հանդիսանում, արգելքներ էր առաջ բերում։ Եւ հարուածելով այդ ինտելլիգենցիան, Արծրունին ի նկատի չէր առնում համալսարանական դիպլօմները։ Բաւական չեն դիպլօմները, յայտարարում էր նա դեռ իր գրական գործունէութեան սկզբում. հարկաւոր են զարգացած, «բացված» մարդիկ։ Եւ այսպիսի համալսարանական սերունդ պատրաստելու համար, ի հարկէ, յարմար միջավայր չէր Թիֆլիսը, ուր համալսարանի պատերից դուրս ուսանողը ընդանուր զարգացողական շրջաններ չէր գտնի։ Արծրունին առաջնակարգ խոչընդոտ համարում էր ընտանիքը։ Եւ մի՞թէ կարող էր ուրիշ կերպ դատել հայ ընտանիքից դուրս եկած երիտասարդը։ Յիշենք Աբովեանցին, Նազարեանցին, յիշենք թէ որքա՛ն ահագին ազդեցութիւն ունեցաւ նրանց զարգացման վրա գերմանական ընտանիքը, որի ծոցում ապրում էին մեր առաջին պիօներները։ Այնքան մեծ էր տարբերութիւնը եւրօպական և ասիական ընտանիքի մէջ, որ Աբովեանցն էլ, Նազար-

եանցն էլ կտրվեցին իրանց հայրենի ընտանիքներից, գերմանուհիների հետ ամուսնացան։

Համալսարանի փոխարէն Արծրունին խորհուրդ էր տալիս հիմնել Թիֆլիսում հասարակական դասախօսութիւններ։ Այդ միջոցով գիտութիւնը հասկանալի կը դառնար հասարակութեան բոլոր խաւերի համար։ Ուսանող երիտասարդութիւնը, ի հարկէ, դարձեալ կը դիմէր օտար երկիրներ՝ համալսարան մտնելու համար, որովհետև հասարակական դասախօսութիւնները չեն կարող փոխարինել համալսարանը. նրանք այն օգուտը կը տան միայն, որ ժողովուրդը կը ծանօթանար գիտութեան հետ և այդպիսով կամաց-կամաց կը դաստիարակվէր, կը դառնար մի այնպիսի հասարակութիւն, որ այլևս չի լինի համալսարանական կրթութեան համար մի վերին աստիճանի աննպաստ միջավայր։

Ուրեմն, դեռ 1867 թուին Արծրունին մեր երկրի համար առաջարկում էր ժողովրդական համալսարան, այն մեծագործ հիմնարկութիւնը, որ այժմ այնքան տարածված է արևմուտքում և քաղաքակրթված ազգերի պարծանքն է կազմում։

Նոյնպիսի գեղեցիկ նորութիւն պարունակում է իր մէջ և «Քանի մի մտքեր» յօդ-

ուածը։ Ազատ, բնական զարգացման կողմնակից Գրիգոր Արծրունին այստեղ դատապարտում է միակողմանի զարգացումը, խօսում է բարոյականացնող դաստիարակութեան մասին։

Բարոյականացնող դաստիարակութիւն... Չը կարծէք թէ Արծրունին այնպէս էր հասկանում այդ բանը, ինչպէս առհասարակ հասկանում էին այն ժամանակները։ Բարոյականացնող դաստիարակութիւնը, տիրող ընդհանուր կարծիքով, ձեռք է բերվում բարոյական-խրատական ուղղութեամբ, այսպէս անուանված՝ հոգեշահ ընթերցանութեամբ, կրօնասիրութեամբ, մի խօսքով այն բոլոր միջոցներով, որ մշակել է կէս-վանական և կէս-աշխարհական դաստիարակութիւնը։ Արծրունին այդ բոլոր միջոցների մասին խօսք անգամ չէ ասում. բարոյականացնող դաստիարակութիւնը նրա համար նոյն ազատ, բնական, օգտակար կրթութիւնն էր։

Բարոյական հասկացողութիւնն էլ անհատի ստացած կրթութեան հետևանք է։ Եթէ այդ կրթութիւնը չէ եղել միակողմանի, սահմանափակ, եթէ մարդը իսկապէս զարգացած է, եթէ նրա բնական ընդունակութիւններն են նրա զարգացման հիմքը դարձել, նա, ուրեմն, ունի ինքնաճանաչութեան, ինք-

***նաքննութեան մի հզօր միջոց իր արարքները քննելու և նրանց լաւն ու վատը իմանալու համար։ Քիչ կրթված, միակողմանի կըրթված, մանաւանդ անբնական, արհեստական կրթութիւն ստացած մարդը անկարող է հասկանալ թէ ինչ է վատութիւնը։***

***Երեխային դեռ դպրոցական հասակից են զրկում այդպիսի բնական, լայն զարգացում ստանալու հնարաւորութիւնից։ Երեխան ուղարկվում է այն դպրոցը, ստանում է այն կրթութիւնը, ինչ որոշում են ծնողները։ Ի՞նչ պէտք է դառնայ երեխան ապագայում —այդ վճռում են նրա ծնողները, մինչդեռ վճռողը ինքը երեխան պիտի լինի։ Եւ այսպէս մոռացվում, արհամարհվում է բնական մեծ օրէնքը։***

*Մարդիկ հաւասար ընդունակութիւններով չեն ծնվում։ Մէկ երեխայ մի առարկայի ընդունակութիւն է ցոյց տալիս, միւսը ուրիշին։ Եւ եթէ չէք իմանում ինչ բանին ընդունակ է երեխան, նորա խելքը չսպանելու համար, տուէք նորան այնպիսի դաստիարակութիւն, որ նա փոքր թէ շատ ամէն առարկաների վերա տեղեկութիւն ունենայ։ Ես ասում եմ տեղեկութիւն ունենայ, եւ ոչ թէ իմանայ։ Հարկաւոր չէ երեխային առարկաներ իմանալ, բաւական է, որ նա նոցա վերա հասկացողութիւն ունենայ, որ նա կարողանայ զարգացնել իւր միտքը, այսինքն տեսնել ինչ բանի նա ընդունակ է եւ ինչ բանի*

ընդունակ չէ։ Այն ժամանակ նա, մեծանալով եւ հասկանալով թէ ինչ առարկայի ընդունակութիւն է զգում նա իւր մէջ, կընտրէ այն առարկան եւ կպարապէ նրանով առանձնապէս։

Այդ պատճառով կարելի է ասել թէ մարդիկ ըսպանում են իւրանց երեխաների միտքը, երբ դեռ փոքր հասակից, չիմանալով երեխաների ընդունակութիւնը, ստիպում են նոցա այս կամ այն բանով պարապել, այս կամ այն առարկայ ընտրել։ Մէկին ստիպում են զինուորական լինել, միւսին վաճառական։

**Միտք սպանող այս կրթութիւնը, այս ստիպողական ուսումը տալիս է հետեւանքներ, որոնք աղէտալի են դաստիարակվողի համար։**

Երեխան ուրիշ առարկաներ չիմանալով, եւ պարապելով միշտ ծնօղներից նշանակած առարկայով, որի ընդունակութիւն չունի նա, կորցնում է վերջապէս հաւատ դէպի իւր հասկացողութիւնը։ Նա իւրան անընդունակ տղայ է համարում, աւելորդ արարած աշխարհիս երեսին։ Իսկ երբ որ մարդս իւրանից, իւր հասկացողութիւնից յոյս չունի, նորան մնում է միայն իւրան արհամարհել եւ անմիտ ու անգործ եւ անքարոյական կեանք վարել։

Ուրեմն առաջին նա կորցրեց ընդունակութիւն, եւ երկրորդ քարոյականութիւն։

**Զարգացած խելքը անքարոյականութեան թշնամին է. զարգացրէք խելքը, և քարոյա-**

*կանութիւնը, որ մեծ կապակցութիւն ունի նրա հետ, ինքն ըստ ինքեան կը գայ։*

Մեծ մասով մարդիկ այն պատճառով վատ են գործում, որ չեն մտածում արած բանի վերա։ Ե՛րբ էք տեսել որ մարդը ուրիշ մարդին վատութիւն անելու ժամանակ, հաստատ իմանար, թէ նա վատութիւն է անում. մարդը վատ գործ եւս անելու ժամանակ կարծում է թէ նա արդար է։ Ինչի է այդպէս. նորա համար որ նա կամ առիթ չէ ունեցել, կամ սովոր չէ իւր գործերը խելքով քննելու։ Եւ թէպէտ նա արդար եւս չէ, նա պատճառ է գտնում, որը, նորա կարծիքով, նորան պէտք է արդարացնէ ձեր աչքերում։

*Այդ միտքը հաստատելու համար Սմայլսը բերում է մի քանի օրինակներ, որոնցից կը վերցնենք մէկը.*

Այնպիսի մարդն եւս շատ անգամ տեսած կլինիք, որը թէպէտ եւ լաւ մարդ է, լաւ է իմանում իւր գործը, աշխատասէր է եւ օգտաւէտ իւր հասարակութեան համար, բայց իւր գերդաստանում եւ մասնաւոր կեանքի յարաբերութիւններում մինչեւ այն աստիճան անքաղաքավարի է լինում, որ ստրկութեան մէջ է պահում իւր կինը, կոպիտ կերպով է վարվում երեխաների հետ, չէ թոյլ տալիս իւր աղջկան իւր միտքը զարգացնել,—մի խօսքով սպանում է իւր գերդաստանի մէջ ամէն տեսակ մտաւոր կեանքը։ Եւ այդ բոլորը անելով, այն լաւ մարդը կարծում է թէ դեռ լաւութիւն է անում իւր երեխաներին եւ

իւր կնոջ, նոցա հետ այդ կերպով վարվելով։ Նա կարծում է Թէ արդար է, որովհետեւ առիԹ չէ ունեցել իւր կեանքում դաստիարակուԹեան վերա մտածելու։ Նա լաւ է իմանում իւր գործը, բայց աւելի ոչինչ չէ իմանում։ Եւ այդ բոլոր մարդիկ եւս կարծում են Թէ արդար են, որովհետեւ առիԹ չունեցան կամ սովոր չէին իւրանց կեանքի մէջ, իւրանց վարմունքի վերա մտածելու եւ իւրանց գործերը քննելու։

Այդ բոլոր մարդիկների անքարոյականուԹիւնը միակողմանի ուսումից է ծագում։ Իսկ միակողմանի ուսումը, կամ միակողմանի զարգացումը այն ժամանակ է ծնվում, երբ որ մարդիկ առիԹ չունին կամ սովոր չեն իւրանց արած գործերի վերա մտածել, նոքա չեն մտածում, բայց ընդհակառակն նոքա հիմնում են իւրանց վարմունքը հին արմատացած նախապաշարմունքի եւ ընդունած սովորուԹիւնների վերա։

ԵԹէ մտադիր էք վատ չանելու, պէտք է մտածէք այն բանի վերա, որ մտադիր էք անելու։ Ուրեմն ինչքան շատ կմտածէք ձեր գործերի վերա, այնքան սակաւ վատուԹիւն կանէք։

*Իսկ մտածել, սեփական գործերը քննադատել կարող է այն մարդը, որ զարգացած է բազմակողմանի կերպով։ Նեղ, միակողմանի զարգացումից պէտք է հեռու մնալ։ Միակողմանի նախապաշարմունքներով լի կրԹուԹեան սխտեմի մի երեւոյԹ է և այն, որ տղաները և աղջիկները անջատվում են միմեանցից, առանձին-առանձին դպրոցներում*

են սովորում։ Արծրունին ապացուցանում է այդ սիստեմի անբարոյականացնող ազդեցութիւնը և առաջարկում է խառն դպրոցներ բաց անել։

Ամէնից մեծ անբարոյականութիւնը փակված ուսումնարանների մէջ է լինում, թէ տղաների եւ թէ աղջիկների,—ասում է նա։—Այն ուսումնարանների մէջ, որոնք թէպէտ եւ փակված չեն, բայց դարձեալ բաժանված են, անբարոյականութիւնը այնքան մեծ չէ։ Միայն մէկ հնարք կայ անբարոյականութիւնը հեռացնելու,—այդ հնարքը խառն ուսումնարաններն են։

Ոչինչ այնքան անբարոյական չէ, ինչպէս այն կասկածը, որը երեխաների մէջ է ծնվում բաժանված ուսումից։ Աղջիկներին կրկնում են թէ ամօթ է եւ լաւ չէ տղաների հետ ընկերութիւն անել, տղաներին ասում են, որ հեռանան աղջիկներից։ Այդ տեսակ անլուծանելի խորհուրդը կասկած է գցում երեխաների մէջ։ Այդ կասկածից կարելի է աւելի սպասել վտանգ, քան թէ աղջիկների եւ տղաների շարունակ բնական յարաբերութիւններից։

Խառն ուսումնարանները Ամերիկաում կան եւ մի քանիս եւս Զվէիցարիաում։ Բայց Զվէցարիաում նոքա միայն սկզբնական ուսումնարաններ են։

Սովորութիւնը մեծ բան է։ Ամերիկաի ուսումնարանների մէջ տղան այնպէս սովորում է ամէն օր իւր կողքին աղջիկներ տեսնել, որ վերջապէս նոցա յարաբերութիւնները ընկերական եւ եղբայրական են դառնում։ Երբ նոցա յարաբերութիւնները բնական են դառնում, խորհրդաւոր կարծիքները կորչում են նոցա գլուխներից։

Մի ուրիշ լաւ կողմ եւս կայ, ինչպէս ես սաացի, խառն ուսման մէջ. տղաները աղջիկների հետ ուսումնարանի մէջ լինելով կորցնում են իւրանց կոպտութիւնը, որը աւելի կմեծանար, եթէ նոքա միշտ իւրանց ընկերների, տղաների մէջ էին մնացել:

Աղջիկներն իւրանց կողմից աւելի խելօքանում են, սովորում են աւելի պարզ դատել, աւելի ազատ վարվել եւ խօսել:

«Բացի սրանից այդ տեսակ ուսումնարաններիմ մէջ աղջիկ եւ տղան ամէն օր միմեանց տեսնելով, միմեանց հետ քարեկանում են եւ քարեկամութենից շատ անգամ դուրս է գալիս սէրը:

Ասում են որ այդ բարեկամութենից ծագած սէրը ամենաբաղդաւոր ամուսնութեններ է ծնում»:

*Առաջարկվում էր հայերին մի այնպիսի նորութիւն, որ այդ ժամանակ առաջաւոր մարդկութիւնը միայն երկու երկրում էր կարողացել իրագործել. կարող էր մեզ պէս մի ասիական ժողովուրդ այնքան հիմնաւոր, ցնցումներ առաջացնող մի մեծ յեղափոխութիւն ընդունել իր հասկացողութիւնների մէջ: Զարմանալին հէնց այն է, որ մեզ պէս մի յետ մնացած, խեղճ ժողովրդի մէջ էլ նոր, արմատական միտքը պատուաստվում էր առանց մեծ դժուարութիւնների: Հարկաւոր էին միայն լուսաւոր միջնորդներ, ազատ մտքի տէր առաջնորդներ: Խառն ուսումնարանի միտքը իրագործեց Թիֆլիսում Ստեփանէն, բաց անելով Հաւլաբարում իր*

Մարիամեան դպրոցի բաժանմունքը, ուր տղայ և աղջիկ միասին էին սովորում։

Ի՞նչ էր դա ցոյց տալիս։—Այն, որ առաջաւոր հրապարակախօսը չը պիտի ծածկէր իր ազգից լուսաւոր մարդկութեան գաղափարները լոկ այն պատճառով, որ այդ ազգը դեռ պատրաստուած չէ, դեռ չէ հասել քաղաքակրթված եւրոպական հասարակութիւններին։ Ազգերը աշակերտում են իրար։ Եւ ինչպէս անհատների կրթութեան մէջ անպայման հարկաւոր էր ազատութիւն, լայնարձակ համբերողականութիւն, այնպէս էլ մի ազգ համաշխարհային կրթարանում չը պիտի անգէտ ու սահմանափակված մնայ քաղաքակրթութեան հարցերի վերաբերմամբ։ Գրիգոր Արծրունին իր գործունէութեան սկզբից հետևում էր այդ գաղափարին։ Նա այն տեսակ գործիչներից չէր, որոնք կանգ են առնում «աստիճանաբար», «յաջորդաբար» հասկացողութիւնների առջև։ Իր ազգին գաղափարներ քարոզելիս նա ղեկավարվում էր այն ճշմարտութեամբ, որ հայութիւնը իբրև ազգ, պիտի հետևէ ժամանակի մտաւոր-հասարակական հոսանքներին, պիտի նոյնպէս մտածէ այն հարցերի վրա, որոնք յուզում են լուսաւոր մարդկութիւնը, պիտի նայէ իր կեանքին ու գործերին նորագոյն քաղաքակրթու-

թեան տեսակէտից, պիտի քննէ իրան ու իր շրջապատը այնպէս, ինչպէս եւրօպացի առաջաւոր մարդն է քննում։

Այս բացարձակ, անսահմանափակ եւրօպականութիւնը մէկն էր Արծրունու այն յատկութիւններից, որոնք այնքան խիստ տպաւորութիւն, մի տեսակ սարսափ էին ազդում հայ հասարակութեան շատ անդամներին։ Գրիգոր Արծրունու դէմ բողոքներ, հայհոյանքներ բարձրացրած մարդկանց ահագին մեծամասնութիւնը այն զէնքը ունէր իր ձեռքին, որ նա ի նկատի չէ առնում հայ ազգի առանձնայատկութիւնները, չէ որոշում ու կշռում թէ ինչ մասեր կարելի է քարոզել մեզանում և ինչ մասեր պէտք է թողնել այն պատճառով, որ հայը պատրաստուած չէ նրանց ընդունելու և գործադրելու։ Բայց Արծրունին յանձն չէր առնում այդպիսի դատաւորի, սրբագրողի, վճռողի դեր։

Եւ կարօղ էր նա մի այդպիսի դեր կատարել, մնալով իր կոչման, իր համոզմունքների մէջ։—Ո՛չ, դա անհնարին էր։ Արծրունին ունէր մի գերագոյն իդէալ—համամարդկային առաջադիմութիւնը։ Այդ առաջադիմութիւնը, յանուն ընդհանուր մարդկութեան երջանկութեան, պահանջում էր որ բոլոր ազգերը հաղորդակից լինեն իր բարիքներին։

Եւ Արծրունին իւրաքանչիւր զարգացած մարդու պարտականութիւնն էր համարում կատարել համամարդկային առաջադիմութեան առաքեալի դերը իր շրջանում, իր ազգի մէջ։ Սկզբից և եթ քարոզելով անհատի ազատութիւն, կրթութեան ազատութիւն, նա չէր կարող սահմանափակումների, արքագրութիւնների կողմնակից լինել, և եթէ կային տանելի բաներ, դրանցից առաջինը Արծրունու համար այն էր, որ մի տեսակ խնամակալութիւն է հաստատվում անհատի, ազգի վրա, մի տեսակ ցէնզուրայի է ենթարկվում մարդկային միտքը։

Ահա մի ուրիշ փաստ։ 1867 թւին Միքայէլ Միանսարեանցը հրատարակեց Պետերբուրգում Էդուարդ Լաբուլէի երեք հրապարակական դասախօսութիւնների թարգմանութիւնը՝ «Ազգային Կրթութիւն» վերնագրի տակ։ Դասախօսութիւններն էին. «Ինքնակրթութիւն», «Ազգային կրթութիւն» և «Ազգային գրատուններ»։ Վերջին հատուածի առիթով Գրիգոր Արծրունին «Ազգային գրատուններ» վերնագրով մի քննութիւն տպագրեց նոյն 1867-ին «Մեղու Հայաստանի» լրագրի մէջ *)։ Այստեղ Արծրունին ա-

*) № 49։

առաջին անգամ ցոյց է տալիս իր վերաբերմունքը դէպի մեր գրականութիւնը, առաջին անգամ յայտնում է իր կարծիքը մեր գրականութեան մասին։ Ինչո՞ւ համար է Միանսարեանցը տպագրել Լաբուլէի դասախօսութիւնները։ Երևի այն մտքով որ հայերն էլ սկսեն ժողովրդական ազգային գրադարաններ բաց անել՝ ինքնակրթութեան գործը իրանց մէջ տարածելու համար։ Բայց հայերը բաց կանեն գրադարաններ։—Արծրունին պատասխանում է.

Մեզ մօտ, Հայերի մէջ, հարկաւոր չէ տանջվել եւ պատճառը պտռել, ինչու մենք գրատուն չենք հիմնում... Հոգս չքաշէք, խնդրեմ. ժողովրդական «դահլիճ» կարող էք ունենալ, ժողովրդական «պահարաններ» էլ կարող էք շինել,—բայց ժողովրդական «գրատուն» չէք կարող կազմել, այն պատճառով, որ ժողովրդական լեզուով գրքեր գրած չկան։

Գրականութիւն չը կայ, ուրեմն։ Արծրունին այդպիսի խօսքերով էր մտնում մեր գրականութեան մէջ։ Այս միտքը նա պարզել և ապացուցել է մի ուրիշ յօդուածում, որին շուտով կը դիմենք մենք։ Այժմ հարկաւոր է մեզ ծանօթանալ «Ազգային գրատուններ» յօդուածի գլխաւոր գաղափարի հետ, որի մէջ Արծրունու ազատ հայեացքներն են դրված։

*Էդուարդ Լաբուլէն, դասախօսութիւն կարդալով Վերսալում՝ ժողովրդական գրադարան հիմնելու մասին, չէ բաւականացել գրադարանների ընդհանուր կրթական նշանակութիւնը պարզելով, այլ և փորձել է գրադարանների բովանդակութեան մասին վըճիռ տալ։ Գրադարանը, ասում է նա, քաղաքական մտքեր տարածելու նպատակ չը պիտի ունենայ։ Դրէք գրադարանում կրօնական այնպիսի գրքեր, որոնք չեն յուզի մեզ։ «Մենք չենք ընդունիլ միայն այնպիսի գրեանք, որոնց մէջ պարունակվում են կրօնական բանակռուութիւնք. մենք չենք սիրում վիճաբանութիւն, թէև նա լինէր աստուածաբանական, և ցանկանում ենք միայն, որ մեր մէջ թագաւորէր խաղաղութիւնը։ Ինչ որ վերաբերում է այն գրքերին, որոնք քաղաքական ներկայ հարցերովն են զբաղված, մենք այդ տեսակ գրեանքն էլ չենք ընդունիլ»։*

*Այս սահմանափակումների, այս արգելքների դէմ ահա Արծրունին բողոքում է։ Նա ասում է.*

Միթէ վիճաբանութիւնները անխաղաղութիւն պիտի ծնեն, եւ ինչպէս կարելի է առանց վիճաբանութիւնների ինքնակրթութեան նպատակին հասնել։ Խաղաղութիւն ինքնակրթութեան մէջ չէ կարող լինել. խաղաղութիւնը ինքնակրթութեան մէջ կանուան-

մի—անշարժութիւն։ Միթէ պ. Լաբուլէ չէ իմանում որ կրթութիւնը մշտնջենաւոր մինաքանութիւն ու կռիւ է սեպհական տգիտութեան դէմ։—Այբուբէն սովորելու ժամանակ մարդ պիտի կռվի սեպհական տգիտութեան դէմ, մի ինչ եւ իցէ գիրք կարդալու ժամանակ մարդ պիտի կռվի նախապաշարմունքի դէմ,—մի ուսում սովորելու ժամանակ մարդ պիտի կռվի իր անհասկացողութեան դէմ։ Երբ որ մարդը քիչ թէ շատ բացվել է, կռիւը էլի չէ դադարում. նա էլի պիտի սովորի, որ իւր հասկացողութեան ընդունակութիւնը չկորցնէ, նա էլի պիտի կարդայ, որ իւր ճնշած նախապաշարմունքներին հնար չը տայ կրկին անգամ տիրապետելու նրան։ Նախապաշարմունքը մարդու մշտնջենաւոր թշնամին է, որի դէմ եթէ մարդը չի պատերազմիլ իւր բոլոր կեանքը, նա վըտանգի մէջ կլինի նորա իշխանութեանը ենթարկվելու։ Նախապաշարմունքը անտեսանելի թշնամի է, որ միշտ աշխատում է մարդու վերայ իշխել եւ եթէ բաւական ուշադրութիւն չի դարձնիլ մարդ նորա վերայ—նա կյաղթէ։

Նոյն իսկ պատահել է եւ պ. Լաբուլէի հետ։

Կան մարդիկ, որոնք թէպէտ եւ լաւ աշխատող մարդիկ են, բայց մտածողների ոչ մի կուսակցութեան չը պատկանելով, շատ անգամ ձգտելով դէպի անհասանելի գաղափարներ,—մի ինչ եւ իցէ սկզբունք են պաշտպանում եւ իսկ այդ սկզբունքների դէմ են գործում իրողապէս։

Քարոզելով կրթութիւն, պ. Լաբուլէ չէ նկատում, որ նա ինքն կրթութեան դէմ է գործում, էնդուր որ ցոյց է տալիս անհամբերութեան (intolérance) օրինակը, արգելք դնելով այնպիսի գրքերին, որոնց նա չէ սիրում, հասարակաց գրատունը մտնելու։

Քարոզելով կրթութիւն, պ. Լաբուլէ չէ նկատում, որ նա ինքնակրթութեան արգելք է դնում, էնդուր որ հնար չէ տալիս այս կամ այն տեսակ գրքերին ազգային գրատան մէջ տեղ բռնել, ուրեմն եւ հնար չէ տալիս ամենեւին անարգել պարապել այն գրքերով, որոնց համար մարդ ընդունակութիւն կամ համակրութիւն է զգում։ Քարոզելով խաղաղութիւն, չէ նկատում, որ խռովութեան օրինակ է տալիս, չընդունելով այս կամ այն տեսակ գրքեր, որոնք նա չէ սիրում, ուրեմն պատճառ է տալիս եւ միւս անդամներին ինչ եւ իցէ ուրիշ տեսակ գրքերին արգելք դնել, որոնք նոքա չեն սիրում։

Ուրեմն դարձեալ նոյն հիանալի սկզբունքը—ազատ կրթութիւն, լինի դա դպրոցում, թէ դուրսը, հասարակութեան մէջ։ Ազատ մտքի դէմ արգելքներ չը պիտի դնվի. Թող նա արտայայտվի, ազատ քննադատութիւնը կարող է զտել թէ ինչն է հարկաւոր և անհարկաւոր։ Այս միտքը աւելի լայն ու պարզ կերպով արծարծված ենք տեսնում Արծրունու մի ուրիշ յօդուածում։ Նկատենք այստեղ, որ վերեւում բերած մեր կտորի մէջ, բացի ազատ զարգացման սկզբունքից, ուշադրութեան արժանի հանգամանք է և այն, որ Արծրունին նախ խիստ անհրաժեշտ է համարում կռիւը զարգացման, առաջադիմութեան համար և երկրորդ խօսում է մտածողների որոշ կուսակցութեան պատկանե-

լու մասին, իբրև նոյնպիսի մի անհրաժեշտութեան՝ գործողի համար։ Բաւական չէ լաւ աշխատող մարդ լինել. պէտք է ունենալ որոշ ուղղութիւն, պատկանել որոշ բանակի, որոշ կուսակցութեան։ Ինքը, Արծրունին, սկզբից և եթ խիստ գունաւորված հասարակական գործիչ էր և մեզանում բանակների, դրօշակների անհրաժեշտութիւնը կեանքի մէջ գործադրողը դարձաւ։

«Ազգային գրատուններ» յօդուածի առիթով Ստեփանէն գրում էր «Հայկական «Աշխարհի» դեկտեմբերի համարում.

*Հայկական երիտասարդ Գ. Արծրունին, որի գըրիչը բաւական յայտնի է «Հայկական Աշխարհի» ընթերցողներին, «Մեղ. Հ.-ի» լրագրում (№ 49) «Ազգային գրատուններ» անունով յօդված է հրատարակել. Արժէ այդ իմաստուն յօդվածը կարդալ. Միայն կցաւեմ, որ այդ յօդվածի ոճը նոյնպէս սիրուն եւ կանոնաւոր չէ, ինչպիսի լինում է «Հայկական Աշխարհում» տպված պ. Արծրունու յօդվածներում առհասարակ։*

Այս նկատողութիւնը առիթ դարձաւ որ Գրիգոր Արծրունին մի շարք խիստ և սուր մտքեր յայտնէ մեր գրականութեան մասին։ Ստեփանէն մասնաւոր նամակով խնդրել էր նրան յայտնել իր կարծիքը «Հայկական Աշխարհի» այդ նկատողութեան առիթով։ Եւ Արծրունին յայտնում է իր կարծիքը մի հա-

*մարձակութեամբ, որ նրա ամենագեղեցիկ գրուածքների զարդն է կազմում։ Յօդուածը անուանուած է «Նամակ դէպի խմբագրող Նիցցաից» և տպուած է «Հայկական Աշխարհի» 1868 թ. № 2—3-ի մէջ։*

*Խօսքը ոճի մասին է և Արծրունին, շնորհակալութիւն յայտնելով որ Ստեփանէն այդպէս լաւ ուղղում է իր ոճը, ասում է թէ ինքը ամենևին արգելք չի դնի որ «Մեղուի» խմբագրութիւնն էլ իր կարծիքների և կանոնների համեմատ ուղղէ իր ոճը։ «Թող ամէն օրագիր ուղղէ ոճը, ինչպէս որ կամենում է... ես սրան մեծ գին չեմ գնում», աւելացնում է նա։*

Ո՛րն է այդ երկու ոճերից առաւել կանոնաւորը, —«Հայկ. Աշխարհի» թէ «Մեղու Հայաստանի»։— ճշմարիտ ձեզ ասեմ—ես չեմ համարձակի դատաւոր լինել այդպիսի բաներում։ Մանաւանդ որ կրկնում եմ, ես ոճին մեծ գին չեմ դնում, լեզուին մեծ նշանակութիւն չեմ տալիս յօդվածի մէջ։

Թող լեզուն հասկանալի լինի... այդ բաւական է։

Առհասարակ կասեմ, ոճը եւ լեզուն մեծ նշանակութիւն չեն կարող ունենալ, երբ ազգի գլխաւոր պակասութիւնը—տգիտութիւնն է։

Երբ որ ձեր նպատակն է ազգին ինչ եւ իցէ միտք հասկացնել, ազգին մտածել տալ,—միթէ միեւնոյն չէ, ձեր ոճը «Հայկական Աշխարհի» թէ «Մեղու Հայաստանի» ոճը կլինի.—Միթէ միեւնոյն չէ դուք ձեր յօդվածում «մարդուն» կասէք թէ «մարդին»։

*Սա մի շատ հիմնաւոր հարց էր, որ այն ժամանակ հրապարակ էր բերում ռէալական օգտի, գործնական առաջադիմութեան կողմնակից միտքը։ Մեր գրողները, խմբագիրները լեզուի մասին էին խօսում, վիճում։ Ստեփանէի մտցրած նորաձևութիւնները աղմուկ էին հանել. վիճում էին դրանց դէմ, պահանջում էին վերացնել, Ստեփանոս Նազարեանցը մինչև իսկ ուզում էր «Լապտեր Հայաստանի» հրատարակել՝ լեզուն նորմուծութիւններից ազատելու համար։ Հարցը, ի հարկէ, կարևոր էր։ Բայց Արծրունին գալիս էր այդ վէճերի ապարդիւն լինելը ցոյց տալու։ Ապարդիւն, ի հարկէ, ընդհանուրի տեսակէտից։ Միևնոյն չէ՞։ Ունեցէք նոյն իսկ շատ լաւ մշակված, կանոնաւոր լեզու, ի՞նչ օգուտ, երբ ժողովուրդը կարդալու բան չունի։ Լեզուի մասին էին վիճում. բայց ում համար, քանի որ ժողովուրդը սէր չունի դէպի գրականութիւնը, հայերէն չէ կարդում։ Արծրունին չարունակում է.*

Պարոն Ե. Ս., որը «Հայկ. Աշխ.» օրագրին (№ 9) Մոսկվայից նամակ էր գրել, ասում է իւր նամակում ձեր օրագրի նորաձեւութիւնների պատճառով. «Շատերը հեռացել են, կհեռանան եւ մընացորդքը... ամէնքը գուչեցին, բողոքեցին, մեծից մինչեւ փոքրը... Ժողովրդին ընթերցանութիւն է հար-

կաւոր, ընթերցանութիւն, եւ ոչ այբ, բեն, գիմ նոր ի նորոյ ուսուցանել։ Յունվարը Յ-ով գրել, յայտարարութիւնը կամ յայտնութիւնը Յ-ով, ոչինչ յառաջադիմութիւն չի յառաջանալ»։

Իմ միտքս այն է, որ եթէ արդարեւ հասարակութիւնը հարկաւորութիւն էր զգացել կարդալ եւ մտածել, նորան աններելի կլինէր հեռանալ կարդալուց եւ թողնել միակ օրագիրը միայն այն պատճառով, որ այն օրագիրը թէպէտ եւ գեղեցիկ յօդվածներ է տպում, բայց «յունվար» Յ-ով է գրում, եւ «վերայ» առանց յ տառի, եւ այլն։

Կարծեմ որ պ. Ե. Ս. սխալվում է, ասելով, թէ «ժողովրդին ընթերցանութիւն է հարկաւոր»։ Եթէ ժողովրդին ընթերցանութիւն «հարկաւոր» լինէր (հայերէն լեզւով), Կովկասում երկու օրագրներից առաւել կլինէր, եւ այդ երկու օրագիրները այնքան աղքատ չէին լինի... Կարծեմ ես յայտնել եմ միտքըս սորա մասին շատ անգամ։

Հայերը երբէք ուրախութեամբ չէին կարդում, երբէք չէին ստորագրվում որ եւ իցէ օրագրին, որ եւ իցէ նպատակ աչքի առաջ ունենալով. նոքա մինչեւ այժմ եւս չէին հասկանում թէ հարկաւոր է օրագիրը մտածելով կարդալ, եւ ոչ թէ ամէն գրված խօսքին հաւատալ։ Մինչեւ այժմ Հայերը .մի որ եւ իցէ օրագրին ստորագրվելով, «ազգասիրութեան» պատճառով էին ստորագրվում, եւ ոչ թէ օգտի պատճառով, կարդալու նպատալով, խելք զարգացնելու նպատակով։

Հայն շատ կկամենար հրաժարվիլ օրագրի ստորագրութենից, բայց մինչեւ այժմ պատճառ չկար որ հրաժարվէր... Ազգասէր ես, պէտք է հայ օրագիր ստանաս։

Բայց այժմ «Հայկ. Աշխ.» օրագիրը, «վերայ» բառը առանց յ գրեց եւ «յունվար» հ-ով գրեց... ահա պատճառ կայ հեռանալու եւ հրաժարվելու ըստորագրութենից... «Դու ինչ ես կարծում, պ. Ստեփանէին փող տամ, որ նա մեր հին հայկական լեզուն, աղամային լեզուն աղաւաղէ... չէ, եղբայր, ես ազգասէր եմ ու աւելի լաւ է ոչինչ չեմ կարդայ, յիմար ու տգէտ կմնամ, քան թէ «յունվար» հ-ով կարդամ եւ «վերայ» առանց յ տառի...»։

«Գոչեցին, թողոքեցին մեծից մինչեւ փոքր»։ Տէր Աստուած... դուք ինչ արեցիք, պ. Ստեփանէ... առաջ Հայերը խիստ շատ էին կարդում, այժմ դուք նոցա ազգասիրութիւնը այնքան վիրաւորեցիք, որ նոքա վճռեցին, ազգասիրութեան պատճառով, իւրանց ամբողջ կեանքը տգէտ մնալ, բացի օրացուցից ոչինչ չկարդալ...

Ո՛չ, պ. Ե. Ս., իմ կարծիքով դուք սխալվում էք... ժողովրդին ամենեւին ընթերցանութիւն հարկաւոր չէ։

Գիտէք ինչ կպատահէր, եթէ արդարեւ ժողովրդին հարկաւոր լինէր ընթերցանութիւնը։ Եթէ նկատել էր, թէ օրագիր մի այլանդակում է նորա լեզուն, ժողովուրդը, այո, կգոչէր, կթողոքէր, անբաւականութեան կլինէր, բայց որովհետեւ նա առանց ընթերցանութեան չէր կարող մնալ, նոր անբաւականութենից խսկոյն մարդիկներից մէկը օգուտ կքաղէր եւ կհիմնէր մի ուրիշ օրագիր։ Փոխանակ գոչելու, հիմնեցէք ուրիշ օրագիր... Չէք կարող։

Այո, ես շատ լաւ եմ հասկանում, որ չէք կարող, որովհետեւ գիտէք թէ ժողովուրդը չէ վարձատրում, չէ ապահովացնում մտաւոր աշխատանք. օ-

թագիր հրատարակելը Հայերի մէջ նշանակում է իւր անձը քաղցած մահին զոհել։

Ոչ, մեր ժողովրդին հարկաւոր չէ ընթերցանութիւն, բայց «հարկաւոր է մեր ժողովրդին կարդալ սովրեցնել», նորան ընթերցանութիւնը «սիրել տալ», նորան «մտածել սովրեցնել»։

Ես հայկական լեզւի վերա չեմ նայում որպէս նըպատակի վերա, բայց ինչպէս միջոցի վերա։ Ոչ թէ «կարդանք հայերէն», որովհետեւ «Հայեր ենք»,— այլ կարդանք հայերէն, որովհետեւ հայերէն առաւել լաւ ենք հասկանում, քան թէ ուրիշ լեզու։ Օրագիր հրատարակեցէք ոչ թէ այն նպատակով, որ ընթերցողներից «հայասէրներ» եւ «ազգասէրներ» շինէք,— բայց այն նպատակով, որ Հայերից «մարդիկ» շինէք։

Մայրենի լեզուի հարցը Արծրունին այստեղ անցողակի կերպով է շօշափում և այդ պատճառով նրա այն ձևակերպութիւնը թէ հայերէն պէտք է կարդալ այն պատճառով որ այդ լեզուն աւելի լաւ ենք հասկանում, քան մի ուրիշը, բաւական խախուտ և անհիմն է թւում։ Սակայն այս նախադասութիւնից չը պէտք է դատել թէ ինչ վերաբերմունք ունէր Արծրունին առհասարակ դէպի մայրենի լեզուն։ Մենք դեռ մի քանի անգամ առիթ կունենանք տեսնելու թէ որքան խոր պատճառաբանութեամբ էր նա հարկաւոր համարում որ մայրենի լեզուին առաջնակարգ դեր և նշանակութիւն տրվի կրթութեան գործում։

Եւ այսպէս ահա, Արծրունին բոլորովին այլ կերպով էր լուծում այն ահագին, կեանքի և մահվան նշանակութիւն ունեցող հարցը, որ այնքան տանջում էր մեր խմբագիրներին։ Դա օրվայ հարց էր. այն երևոյթը, որ հայերի մէջ չէ կազմվում ընթերցող դասակարգ, որ ամսագիրը, գիրքը գնող չէ գտնում,—սֆինքսի պէս կանգնած էր գրական մարդկանց առջև և մնում էր անհասկանալի։ Աշխատում էին հասկանալ նրան. կարծում էին թէ ընթերցող չը կայ, որովհետև հայը զուրկ է գիտութիւնից, որովհետև նա բարեխիղճ չէ, հասկանալ չէ ուզում որ գրականութիւնը հարկաւոր է ազգային դէմք, ինքնուրոյնութիւն պահպանելու համար։ Մենք տեսանք նոյնպէս, որ «Մեղուն» ընթերցողների պակասութիւնը թշնամիներին էր վերագրում, մինչդեռ «Հայկական Աշխարհը» կարծում էր թէ հայերէն գիրքը, լրագիրը կը տարածվեն այն ժամանակ միայն, երբ կրթվածների, ընտրեալների թիւը կը բազմանայ։

Գրիգոր Արծրունին մօտենում էր այդ տանջող սֆինքսին ուրիշ կողմից։ Նա ասում էր. գրականութիւն չը կայ, ժողովուրդը չէ կարդում, կարդալու պահանջ չունի. պէտք է նրան սիրել տալ ընթերցանութիւնը, պէտք

*է սովորեցնել նրան մտածելը։ Մինչև այդ խմբագիրների առջև ժողովուրդն էր մեղաւոր։ Արծրունին ասում էր. ժողովուրդը մեղաւոր է մի յայտնի չափով, բայց մեղք ունին և գրողները։ Հասկանալով հանդերձ որ հայերի մէջ լրագիր հրատարակելը նշանակում է սովամահի զոհ դառնալ, Նա, այնուամենայնիւ, ընդունում էր որ ժողովրդին կարելի է սիրել տալ ընթերցանութիւնը և պէտք է սիրել տալ։ Ստեփանէն էլ մի ժամանակ գիտէր որ պէտք է ընթերցասիրութիւն տարածել. բայց մի կարճ միջոցում համոզվեց որ այդ չէ կարելի անել մամուլի միջոցով, պէտք է դեռ սպասել որ զարգացած մարդիկ շատանան։ Այսպէս դատելով, Նա, ի հարկէ, համոզված էր որ ինքը, իբրև խմբագիր, արել է և անում է այն, ինչ հարկաւոր էր և պէտք էր անել։ Սակայն Արծրունին ասում էր. ոչ, մամուլը չէ անում ինչ հարկաւոր է, մամուլը իր պարտականութիւնը լաւ չէ կատարում։*

Հասարակութիւնը չէ մտածում, ժողովրդի մէջ հասարակական կարծիք չկայ,—ասում է Նա։—Գոնէ օրագիրը պէտք է ուղղութիւն էր տուել հասարակութեան կարծիքին։

*Ահա ինչն է մոռացվում, ահա ինչից է*

*այնքան մահամերձ հիւանդ մեր մամուլը։ Եւ Արծրունին այդ պակասութիւնը ցոյց է տալիս մի օրինակով, որ վերցնում է իր մասին եղած զովասանական նկատողութիւնից, այսինքն նոյն «Հայկական Աշխարհից»։*

Բայց ինչ ուղղութիւն են տալիս մեր օրագիրները, հարցնում է նա։

Գրեցէք մի յօդված, օրագիրը կասէ. «արժէ կարդալ այդ յօդվածը»։ Մինթէ սա կրիտիկա է։ Ինչի արժէ կարդալ այդ յօդվածը։—Ասում է նմանապէս. «իմաստուն յօդված է»։

Ի՞նչ է նշանակում «իմաստուն»։ Մինթէ այդ բառը հասարակութեանը կհասկացնէ յօդվածի «ինչ լինելը»։

Օրինակ ես կարդացի մի յօդված եւ չհասկացայ նորան. միւս յօդվածը կարդացի եւ չհամաձայնեցի նորա մտքերին։ Մինթէ այդպիսի եւ սորա նման խօսքերը «արժէ կարդալ այդ իմաստուն յօդվածը», ինձ կհասկացնեն ինչ որ ես չեմ հասկացել, ինձ կմեկնեն այն մտքերը, որոնց հետ ես համաձայն չեմ...

Օրինակ, իմ «Համալսարան» յօդվածի մասին պ. Հայասէրը ասաց թէ նա «քաղցր տպաւորութիւն ունեցաւ հասարակութեան վերա»։

Ինչի քաղցր տպաւորութիւն ունեցաւ նա հասարակութեան վերա։ Նորա համար, որ ես հայ եմ եւ հայերէն յօդված գրեցի, կամ նորա համար, որ ես ասացի թէ համալսարանի հիմնելը առաւել վնաս կբերէ, քան թէ օգուտ... կամ թէ նո՛րա համար, որ ես հասարակական դասախօսութիւնների միտք տուի...

կամ թէ նո՛րա համար, որ ես ասացի թէ որքան հեռու փախչենք մեր ազէտ ծնօղներից, այնքան լաւ կլինի։

Յայտնի չէ ինչի նա «քաղցր տպաւորութիւն» ունեցաւ։

Միթէ այդպիսի խօսքերը կարող են ինչ եւ իցէ օգուտ բերել կարդացօղին, միթէ կարող են մարդին ինչ եւ իցէ միտք մեկնել, յօդված հասկացնել, ուղղել հասարակութեան կարծիք։

Ժողովուրդը չէ մտածում, եւ օրագիրը պիտի սովորեցնէ մտածել...

Սմբատեանէն ոչինչ չը պատասխանեց. ընդհակառակն, երբ 1868-ին «Մեղուի» մէջ տըպվեց Արծրունու «Շարունակենք թէ ոչ» յօդուածը, նա «Հայկական Աշխարհում» նորից տպեց մի այդպիսի նկատողութիւն, այն զանազանութեամբ միայն որ «իմաստուն յօդված» չէր այս անգամ գրված, այլ «իմաստալից յօդված»։

Հետեւելով ժամանակագրական կարգին, մենք «Ազգային գրատուններ» յօդուածից յետոյ պիտի յիշատակենք «Ի՞նչ է կնամարդ» անունով յօդուածը, որ տպվեց «Հայկական Աշխարհի» 1868 թ. № 1-ի մէջ։ Այդտեղ Արծրունին նորից կանանց հարցն է պաշտպանում եւրօպական հեղինակաւոր մարդկանց վկայութիւնների միջոցով, մէջ է բերում գիտնական աշխարհի ապացոյցները թէ

կինն էլ միանգամայն ընդունակ է աշխատանքի, հետևաբար ոչ մի հիմք չը կայ զրկելու նրան գործելու հնարաւորութիւնից։ Մենք նորից չենք դիմի այդ յօդուածի մանրամասնութիւններին, քանի որ արդէն գիտենք թէ ինչ հայեացքներ ունէր Արծրունին կանանց հարցի վերաբերմամբ։ Կասենք միայն, որ գրելու ձևի, մտքերը քարոզելու, համարձակ, նոր եզրակացութիւններ բերելու և ապացուցանելու մէջ նա աւելի և աւելի առաջադիմում է։ Օրինակ, ո՛րքան գեղեցիկ է այս ձևակերպութիւնը. «Ոչ, վատը ճանաչել արժանաւորութիւն չէ, բայց այն է արժանաւորութիւնը, երբոր մարդս լաւն ու վատը իմանալով, լաւը վատից կարող է զանազանել»։

Մինչև այժմ Գրիգոր Արծրունին խօսում էր գլխաւորապէս դաստիարակութեան մասին, դնելով նրա մէջ հասարակական հարցերի քննադատութիւն։ Բայց ահա 1868-ին նա տալիս է և գրական քննադատութեան առաջին փորձը։ «Երկուսից ո՞րն է լաւը» յօդուածում նա պատասխանում է այն հարցին թէ ինչ են գեղարուեստական ստեղծագործութիւնները։

Ասում են թէ չը պէտք է կարդալ այնպիսի վէպեր, որոնց մէջ կեանքի անբարոյա-

*կան, վատ կողմերն են նկարագրված։ Այդպիսի վէպերի ընթերցանութիւնը կարող է անբարոյականացնող ազդեցութիւն ունենալ երիտասարդ սերունդի վրա։ Պիսարեվը սահատարակ բացասական վերաբերմունք ունէր դէպի գեղարուեստը, համարելով նրան անօգուտ մի բան։ Դաստիարակութեան մասին գրած իր մի յօդուածում Պիսարեվը սաստիկ դատապարտում էր այն ծնողներին, որոնք թոյլ են տալիս իրանց երեխաներին կարդալ Պօլ-դը-Կօկի, Դիւմա-հօր եւ Դիւմա-որդու վէպերը։ Դրանք ամօթալի դատարկապորտութեան պտուղներ են, այլանդակ և անբարոյական բաներ։ Գրիգոր Արծրունին հակառակվում է այդ մտքին։ Եւ այստեղ էլ մենք տեսնում ենք ազատ մտածողութեան, ազատ զարգացման համոզված կողմնակցին։*

*Նա հարցնում է թէ ինչ նպատակով են գրվում գրական ստեղծագործութիւնները։ Գրողը իր միջավայրի, իր հասարակութեան, իր ժամանակի պտուղն է, արտայայտութիւնն է։*

Որովհետեւ գրողները միայն, առանձնապէս չեն ապրում, իսկ հասարակութեան մէջ են ծնվում ու ապրում, հասարակութեան կարծիքներ ու տպաւորութիւններ են բաժանում,—ուրեմն նորա հասա-

րակութեան պտուղներ են, ոչ թէ երկնքից ընկած հրաշքներ։

Հասարակութիւնը ինչ կարծիքներ, ինչ ձգտողութիւններ, ինչ կիրքեր ունի, իւրանց լաւ եւ վատ յատկութիւններով,—այդ բոլորը այն հասարակութեան գրողներ եւս ունին, միայն թէ նոցա մէջ կեանքի այդ բոլոր երեւոյթները առաւել հաստատ ուղղութիւն ստացան, ընդարձակվեցան նոցա ընդունակութեան միջոցով, զարգացան, եւ գրականական ձեւը ստացան։

... Ուրեմն գրողը իւր դարի պտուղն է, իւր ժամանակի արտայայտութիւնն է։

*Գրական ստեղծագործութիւնները գրվում են այն նպատակով, որ սովորեցնեն հասարակութիւնը մտածել և իր կեանքը քննել, ուրեմն և ձգտել դէպի լաւը, դէպի առաջադիմութիւնը։*

Մարդկային հասարակութիւնը կատարեալ չէ, նա անքարոյական է լինում, պակասութիւններ ունի։ Ի՞նչ միջոցով կարող է նա իւրան լաւացնել։—Մըտաւոր աշխատանքի միջոցով։

Երկու հնար կայ մարդիկներին մտածել սովորեցնելու. այդ հնարներից առաջինը այն է, երբ գրողը առաջարկում է հասարակութեանը կատարեալ գաղափարներ, կատարեալ մտքեր։ Երկրորդը այն է, երբ գրողը ներկայացնում է հասարակութեանը նորա կեանքի պակասութիւններ։

Առաջինը ներկայացնում է իւրանից հնարած լաւ օրինակը, կատարեալ գաղափարը,—երկրորդը

ներկայացնում է իսկական կեանքի մէջ գտնված կողմը, կամ եթէ կարելի է ասել, ներկայացնում է վատ գաղափարը։

Առաջինը առաջարկում է հասարակութեանը ձգտել դէպի «լաւը»,—երկրորդը հրաւիրում է հասարակութիւնը քննել բոլոր նորա մէջ գտնված «վատը»։

Երկուսից որն է լաւը։

Ես կարծում եմ, որ ինչպէս առաջին, նոյնպէս եւ երկրորդ հնարները լաւ են եւ օգտաւէտ են։

Հարկաւոր է որ մարդս, ձգտելով դէպի լաւը, աչքի առաջ կատարեալ գաղափար ունենայ։ Բայց նմանապէս հարկաւոր է նորան եւ իւր սեփական պակասութիւններ իմանալ եւ քննել, որ նա հնար ունենայ այդ պակասութիւններից բժշկվելու։

**Այս հասկացողութիւնը գեղարուեստական երկերի մասին Գրիգոր Արծրունին պահեց մինչև իր կեանքի վերջը և նրա մահից մի տարի առաջ գրված մի գրական քննադատութեան մէջ մենք տեսնում ենք այս միևնոյն վերաբերմունքը դէպի գեղարուեստի մէջ տիրող ուղղութիւնները։ Հաւասարապէս յարգելով այն ուղղութիւնը, որ կեանքի անողորմ մերկացում և վերլուծում է տալիս և այն, որ խուսափում է այդ վերլուծումից և ներկայացնում է կատարելատիպեր և իդէալներ, Արծրունին ինքը անձամբ աւելի համակրում էր այս վերջին, գաղափարական ուղղութեան. դրա ապացոյցն է նրա «Էվէլինան»։**

*Սակայն նա ընդունում էր միւս, նատուրալիստական ուղղութեան օրինականութիւնն ու օգտակարութիւնն էլ, և ոչ միայն չէր վրդովվում այդ ուղղութիւնից, շատ շատերի նման չէր աղաղակում թէ նա բարքերի կատարեալ ապականութիւն է առաջացնում, այլ ընդհակառակն, համարում էր նրան անհրաժեշտութիւն, կեանքը ճանաչելու, կեղտերը մերկացնելու մի լաւ միջոց։ Շարունակելով իր դատողութիւնները, նա ասում էր.*

Եվրոպայի հասարակութեան մէջ պակասութիւններ կան, անբարոյականութիւն կայ,—բայց եւ կան մարդիկ, որոնք այդ պակասութիւնները յայտնում են, անբարոյականութեան երեւոյթները քննում են։

Մեր ժողովրդի մէջ, Հայերի մէջ, միթէ պակասութիւններ չկան, միթէ անբարոյականութիւն չկայ,—բայց կա՞ն արդեօք Պօլ դը Կօկի կամ Դիւմաների նման գրողներ, որոնք ներկայացնէին հասարակութեան կեանք, պակասութիւններ յայտնէին։

Եվրոպացիների մէջ անբարոյականութիւն կայ, բայց մի եւ նոյն ժամանակին նոքա եւ գրողներ ունին, որոնք յայտնում են անբարոյականութիւնը.—մեր մէջ, Հայերի մէջ, անբարոյականութիւն կայ, բայց մենք մեր անբարոյականութիւնը չենք յայտնում։

Երկուսից ո՞րն է լաւ։

*Ի հարկէ, անբարոյականութիւն մերկացնելը։ Եւ Արծրունին գտնում է, որ քանի որ*

*մենք չունինք մեր սեփական կեղտերը մերկացնող հեղինակներ, գոնէ պիտի օգուտ քաղենք օտար գրականութեան գրքերից, գոնէ նրանց պիտի կարդանք, որպէսզի սովորենք առհասարակ մարդկային անբարոյականութիւնը քննել։*

Պօլ դը կօկը եւ Ալէքսանդր Դիւմա-որդին իւրանցից չեն հնարել այն անբարոյականութիւնը, որ նոքա նկարագրում են։ Այն անբարոյականութիւնը կայ, ուրեմն ոչ ոք իրաւունք չունի նորան չիմանալ։

*Իմանալը պարտաւորական է, իմանալուց վախ չը կայ, վտանգ չը կայ։ Ի՞նչպէս։ Արծրունին վստահ է քննող, զտող, զարգացած մտքի վրա։ Կայ այդ միտքը, և մարդը այնքան ուժեղ է, որ անբարոյականութիւնը նրան չի դիպչի, նրան չի վարակի, ընդհակառակն, արիութիւն կը ներշնչէ նրա դէմ կռուելու, նրան ոչնչացնելու համար։ Եւ ահա որքան գեղեցիկ կերպով է նա ձեւակերպում իր անսահման վստահութիւնը դէպի զարգացած, ուժեղ միտքը.*

Կամ (գուցէ) այնքան փոքր յոյս ունինք մեր բնութեան զօրութենից, մեր խելքից եւ մեր բարոյական զօրութենից, որ վախենում ենք ռօմաններ կարդալով այն ռօմանների մէջ նկարագրված պակասութիւններից օրինակ առնել...

*Եթէ այդպէս է, շատ լաւ ենք անում, որ չենք կարդում։*

*Եթէ այդպէս է, շատ լաւ ենք անում, որ մեր երեխաներին եւս կարդալ չենք տալիս այն գրքերը։ Եթէ մենք մեզ այնքան Թոյլ, չքացված եւ անբարոյական ենք համարում, որ երեխաներին չենք իմանում մեկնել գրքերի մէջ նկարագրված պակասութիւնները,—առաւել լաւ կանենք, որ նոցա չտանք այն գրքեր կարդալու։ Եթէ մենք ինքներս եւս մեզ այնքան «Թոյլ» ենք համարում կամ զգում, որ Պօլ դը Կօկի րօմանը կարդալով, փոխանակ մտածելու, նորա նկարագրած անբարոյական անձից օրինակ կառնենք եւ մենք եւս նորա նման անբարոյական կդառնանք… առաւել լաւ կանենք, որ չկարդանք։*

***Եւ այսպէս, Արծրունին այստեղ էլ, ինչպէս «Ազգային գրատուններ» յօդուածում, աւելորդ, նոյն իսկ վնասակար է համարում սահմանափակումների մէջ դնել ընթերցանութիւնը, պահանջում է որ ընթերցողը ազատ լինի իր ընտրութիւնների մէջ, որ դաստիարակողը լինի կեանքը իր դրական և բացասական կողմերով։ Միակողմանի դաստիարակութեան թշնամի լինելով, Արծրունին, ի հարկէ, չէր էլ կարող ուրիշ կերպ դատել։ Գրքերի բովանդակութիւնը ինչ ուզում է թող լինի. մտքերը, գաղափարները թող հակասական լինեն։ Ո՞նչ վնաս։ Գլխաւորն այն է, որ ընթերցողը լինի պատրաստ-***

*ված։ «Բացված մարդ»—ահա այն դրութիւնը, որի մէջ մարդկութեան իւրաքանչիւր անդամ կարող է և պարտաւոր է ամենայն ազատութեամբ և համարձակութեամբ իմանալ չարն ու բարին իրանց ամբողջ մերկութեամբ։ Ո՜րպիսի հաւատ դէպի բազմակողմանի, լայն զարգացումը։ Արծրունին երբէք չը շեղվեց այդ ջերմ հաւատից, երբէք չը թուլացաւ այն պաշտամունքի մէջ, որի մարմնացումը «բացված մարդն» էր։*

*Մենք տեսանք թէ Գրիգոր Արծրունին ինչպէս էր բացատրում այն հանգամանքը, որ հայերի մէջ մամուլը ոչինչ հեղինակութիւն չունի։ Մամուլը հասարակական կարծիք չէ առաջացնում, մտածելու նիւթ չէ տալիս հասարակութեան, ասում էր նա։ Ինքը, այդ նոր սկսող հրապարակախօսը, ունէր մի առանձին շնորհք իր գրչով աղդելու, մտքեր յարուցանելու, որովհետև գիտէր թարմ, հետաքրքրական հարցեր արծարծել։ Այսպէս, նրա «Գերդաստանի աղդեցութիւնը և Համալսարան» յօդուածը, ինչպէս վկայում է ժամանակակիցներից մէկը*), «ձեռքէ ձեռք անցաւ», տարօրինակ թւաց, «Հայկական Աշխարհը» վկայեց որ այդ յօդուածը «առանձին*

---

*) Աղ. Երիցեան, «Գրիգոր Արծրունի», եր. 75։

*քաղցր տպաւորութիւն» թողեց ընթերցողների վրա։ Մենք տեսանք որ Արծրունին ուզում էր իմանալ թէ ինչու քաղցր տպաւորութիւն է թողել յօդուածը, ուզում էր իմանալ հրապարակական կարծիք իր մտքերի մասին, կրիտիկա։ Բայց ոչ ոք չը խօսեց մամուլի մէջ։ Միայն մասնաւոր խօսակցութիւններից իմացաւ Արծրունին որ կան մարդիկ, որոնք բոլորովին համաձայն չէին նրա հետ, առարկութիւններ ունէին նրա դէմ։ Ուստի նա մի անգամ էլ վերադարձաւ Թիֆլիսում համալսարան հիմնելու հարցին, տպագրելով «Հայկական Աշխարհի» մէջ «Կրկին համալսարանի մասին» յօդուածը։ Այդտեղ նա ջրում էր բերանացի առարկութիւնները, սակայն նոր իրողութիւններ և փաստեր չէր բերում։ Մենք արդէն մանրամասն գիտենք թէ ինչու Արծրունին դէմ էր Թիֆլիսի համալսարանին։*

*Անշուշտ այդ նոր յօդուածն էլ օտարոտի պիտի թւար շատերին։ Սա մի շատ նշանաւոր երևոյթ է, այս օտարոտի տպաւորութիւնը։ Նշանակում էր որ հայ ընթերցողը սովոր չէր այդպիսի ինքնուրոյն մտքերի, նշանակում էր որ Գրիգոր Արծրունին սովորական գրողներից չէր, այլ իր գրուածքներով մտցնում էր ոչ միայն քաղցր տպաւորութիւն, այլ և զարմանք, մի թերահաւատ*

տրամադրութիւն, որ կարծես հարցնում էր. «ճի՞շտ է նա ասում»։ Մեր անշարժութեան, մեր մտաւոր տափակութեան մէջ ընթերցողը չէր սպասում այդպիսի համարձակ նորութիւնների։ Եւ ինչու միայն ընթերցողը։ Հայ խմբագիրն էլ յանկարծակիի էր գալիս, շփոթվում էր, չը գիտէր թէ ինչ անէ Արծրունու գրուածքների թողած օտարոտի տըպաւորութեան տակ։

Այդ կողմից շատ նշանաւոր է Արծրունու «Գրականութիւն չկայ» յօդուածը, որ տպագրվեց «Հայկական Աշխարհի» սեպտեմբերի համարում։ Ստեփանէն դրեց յօդուածի սկզբում մի ծանօթութիւն, որ նրա կատարեալ շուարումն է ցոյց տալիս և միևնոյն ժամանակ շատ լաւ պատկերացնում է այն տպաւորութիւնը, որ թողնում էր Արծրունին հայկական շրջանների վրա։ Բանից դուրս էր գալիս որ նա ութ ամիս պահել էր յօդուածը, չը կարողանալով իմանալ թէ ինչ անել.—տպե՞լ թէ չը տպել։ Ահա մեր խմբագրի խոստովանութիւնը.

Այս յօդվածը ստացել ենք յունվար ամսին։ Բայց, ցանկանալով օրագրումս աւելի այնպիսի յօդվածներ հրատարակել, որոնց համար պատասխանատու կարող էինք մենք եւս դառնալ եւ սորան այսպիսի յօդվածներից չհամարելով, դժվարանում էինք հրա-

տարակել։ Մի եւ նոյն ժամանակ բոլորովին ցանկանում էինք մտածող ընթերցողներիս մասնակից կացուցանելու այն խելացի եւ միանգամայն օգտաւէտ մտքերին, որոնք գտնվում են այս յօդվածում։ Ուստի մենք ահա հրատարակեցինք այս յօդվածը, պատասխանատվութիւնը նոյն ինքն հեղինակին թողնելով։

Իսկ որ տարօրինակ հանգամանք։ Մարդը չէ կարող պատասխանատւութիւն յանձն առնել, հետեւաբար համաձայն չէ այն մտքերի հետ, որ յայտնում է Գրիգոր Արծրունին. բայց միևնոյն ժամանակ այդ մտքերը այնքան գեղեցիկ և օգտակար են երևում, որ խմբագիրը մեղք է համարում թագցնել նրանց իր ընթերցողից։ Համաձայն չը լինել և միևնոյն ժամանակ խոստովանել մտքերի գեղեցկութիւնը—ահա ինչ վերաբերմունք է ստեղծվում հայկական իրականութեան և Գրիգոր Արծրունու մէջ այդքան վաղ ժամանակից։ Եւ այդ վերաբերմունքն էր տեսնում Արծրունին իր ամբողջ կեանքում։

Սակայն արդար լինենք Ստեփանէի վերաբերմամբ։ «Գրականութիւն չկայ» *) յօդ-

*) Այս վերնագիրը յիշեցնում է ռուս նշանաւոր քննադատ Բէլինսկու առաջին մեծ յօդուածը, որ նոյնպէս մեծ տպաւորութիւն թողեց ընթերցող հասարակութեան վրա։

*տուածը, իսկ որ, անօրինակ մի երեւոյթ էր մեր մամուլի մէջ։ Պատմել նրա համառօտ բովանդակութիւնը կը նշանակէր զրկել նրան այն ոյժից, այն ինքնուրոյնութիւնից, որոնք նրա զարդերն են կազմում։ Ուստի մենք կը բերենք համարեա ամբողջ յօդուածը, թոյլ տալով մեզ համառօտութիւններ այնտեղ, ուր այդ հնարաւոր է։*

## I

Ինչի՞ էք սովորում որ եւ իցէ լեզու։

Երեք նպատակով. առաջինը, որ կարողանաք մի հասարակութեան հետ յարաբերութիւններ ունենալ,—երկրորդը, որ ծանօթանաք այն հասարակութեան գրականութեան հետ,—եւ երրորդը, որ կարողանաք ինքներդ այն հասարակութեանը նորա լեզւի միջոցով ձեր միտքը յայտնել, շարադրութիւններ գրելով։

Ինչի՞ ենք սովորում հայկական լեզու։—Մի եւ նոյն երեք նպատակով։

Առաջինը, որ կարողանանք հայկական հասարակութեան հետ յարաբերութիւններ ունենալ... Բայց հայկական հասարակութեան հետ յարաբերութիւններ ունենալու համար անպատճառ հարկաւոր չէ հայերէն իմանալ։ Վրաստանի Հայերը վրացերէն առաւել լաւ են խօսում, քան թէ հայերէն. Հայաստանի կողմերի (օրինակ Երեւանի) Հայերը ոչ թէ միայն հայերէն են իմանում, բայց ամէնքը նմանապէս եւ Թուրքերէն են խօսում։ Վերջապէս Ռուսաստանի Հայերը ռուսերէն են իմանում։

Ժողովրդի ստորին դասերը առաւել վրացերէն կամ Թուրքերէն են խօսում,—ժողովրդի վերին դասերը, այսինքն ուսում առածները, առաւել ռուսերէն են խօսում։ Ինձ կասեն Թէ նոքա այն պատճառով են խօսում ռուսերէն, որ ուսում են առել ռուսերէն լեզուով։ Ցայտնի բան է, սա է պատճառը.—ապա ի՞նչ լեզուով կկամենայիք որ նոքա ուսում առնեն։ Ռուսերէն լեզու մեզ միջոց է տալիս գիմնազիօններ եւ համալսարաններ մտնել,—իսկ հայերէնը այդ միջոց չէ տալիս, որովհետեւ հայկական օրինաւոր ուսումնարան չկայ։ Ռուսերէնը մեզ հնար է տալիս ուսումնական գրքեր կարդալ,—իսկ հայերէնը... բայց սորա մասին յետոյ կխօսեմ։

Ուրեմն իրողուԹիւնը նոյն է մնում, որ Հայերի հետ յարաբերուԹիւններ ունենալու համար հարկաւոր չէ անշուշտ հայերէն իմանալ։

## II

Երկրորդ նպատակը, որ մարդս պիտի աչքի առջեւ ունենայ մի որ եւ իցէ լեզու սովորելու ժամանակ, այն է որ նա կարողանայ հասարակուԹեան գրականուԹեան հետ ծանօԹանալ։ Իսկ գրականուԹեան հետ ծանօԹանում ենք այն նպատակով, որ նորանից ինչ եւ իցէ օգուտ քաղենք։

Ուրեմն մենք հայերէն ենք սովորում, որ կարողանանք հայկական գրականուԹեան հետ ծանօԹանալ։

Հայկական գրականուԹիւն... Ի՞նչ հայկական գրականուԹիւն... Կա՞յ արդեօք հայկական գրականուԹիւն։ Եւ եԹէ կայ, ի՞նչ օգուտ կարող ենք նորանից քաղել։

Նոր հայկական գրականութիւն չկայ։ Գոնէ ես չեմ կարծում, որ երկու կամ երեք գիրք, չորս կամ հինգ օրագիրներ,— կարեքի լինէր գրականութիւն անուանել։ Հին հայկական գրականութիւն կայ, եւ շատ հարուստ է, այդ ճշմարիտ է։ Հին հայկական գրականութիւն ոչ թէ միայն հարուստ է, բայց եւ ուղղութիւն ունի։

Բայց ինչ ուղղութիւն։ Ցարմար է նա արդեօք մեր այժմեան հարկաւորութիւններին։ Կարճղ ենք արդեօք մեր հին գրականութենից այնպիսի մտքեր քաղել, որոնք կարօղանային մեր ազգի բարք ու վարքը նորոգել, եւ մեր կեանքին ու մեր խելքի ընդունակութիւններին մի նոր օգտաւէտ ուղղութիւն տային։

Հարկաւոր է վերջապէս խոստովանել մեր պահանջմունքը. հարկաւոր է ասել թէ ինչ է հարկաւոր մեզ մեր կեանքը նորոգելու համար։

Կեանքի մէջ երկու կողմ կայ. Նիւթական եւ մտաւորական կողմեր։ Այդ երկու կողմերը հարկաւոր է զարգացնել։

Նիւթական կողմերից մեր ազգին հարկաւոր են. Երկրագործութիւն, Վաճառականութիւն, Արվեստ, Վաճառաշահութիւն եւ ճանապարհներ։

Մեր բարոյական կեանքը զարգացնելու համար մեզ հարկաւոր են. Ուսումնարաններ (աղջիկների եւ տղաների), Գրականութիւն, Օրագիրներ, Թատրոններ, Հասարակական դասախօսութիւններ, Արհեստ, խելացի եւ ուսումնական Հոգեւորականներ։

Մի խօսքով մեզ հարկաւոր է հարստութիւն, նիւթական եւ մտաւորական հարստութիւն։ Իսկ հասարակութիւնը չէ կարօղ հարստութեանը հասնել առանց աշխատանքի։ Եւ օրինաւոր աշխատանք կազմելու

համար, հարկաւոր է ուսում տարածել երկրի մէջ։ Իսկ ուսում տարածելու եւ ուսում ընդունելու համար հարկաւոր է կրկին աշխատանք:

Ուրեմն մեր բոլոր պահանջմունքն ինչ է։—«Ա շ խ ա տ ա ն ք» մտաւորական եւ նիւթական։

Այժմ ես ձեզ հարցնում եմ. կարօղ է արդեօք մեր հին գրականութիւնը մեր մտաւոր եւ նիւթական աշխատանքին օրինաւոր ուղղութիւն տալ, այսինքն այնպիսի ուղղութիւնը, որ մեր այժմեան պիտոյքներին յարմար լինէր։—Չէք իմանում...*)։

... Մենք մեր հին գրականութենից կարօղ ենք ծանօթանալ հին Հայերի կեանքի հետ։ Մեր հին գրականութիւնը մեզ ցոյց է տալիս հին Հայերի յարաբերութիւններ ուրիշ ազգերի հետ, մեզ ցոյց է տալիս, որ հին Հայերը զօրեղ էին, քաջ էին, որ նոցա քաղաքական եւ հոգեւորական զարգացումը մեծ աստիճանին էր հասել, որ կնամարդիկ քիչ թէ շատ բացված էին, եւ վերջապէս որ Հայերը հին ժամանակներից սկսած երկրագործութեամբ եւ վաճառականութեամբ էին պարապում։

Այդ բոլորը նա մեզ ցոյց է տալիս,—բայց նա մեզ չէ ցոյց տալիս թէ մենք մեր այժմեան կեանքին ինչ ուշադրութիւն պէտք է տանք, որ մեր այժմեան պիտոյքներ կատարենք, որ երկրի մէջ աշխատանք տարածենք։

Հին գրականութիւնը մեզ ցոյց է տալիս թէ «մենք ինչ ենք եղել եւ ինչ ենք արել»,—բայց նա մեզ չէ ցոյց տալիս թէ «մենք ինչ պէտք է անենք»։

---

*) Այստեղ Արծրունին հին կեանքի և գրականութեան մասին վկայութիւններ է բերում Եզովի «Внутренній бытъ древней Арменіи» աշխատութիւնից։

Մեր հին գրականութիւնը պատմագրական ուղղութիւն ունի, եւ բացի սորանից այն ազգասիրութիւնը, որով ոգեւորված էին մեր հին գրողները, նորան բանաստեղծական ուղղութիւն է տալիս։

Կարող է արդեօ՞ք այդպիսի ուղղութեան գրականութիւնը օրինաւոր ուղղութիւն տալ մեր այժմեան պիտոյքներին։

Ես ասացի, որ մեր այժմեան պահանջմունքը աշխատանք է, մտաւոր եւ նիւթական։

Ասենք թէ դուք մտադիր էք երկրագործութեամբ կամ շերամապահութեամբ պարապելու,—կամ մտադիր էք երկաթի հանքեր կառավարելու... Կարծէ էք դուք արդեօք ձեր գործը օրինաւոր կերպով առաջ տանել, եթէ դուք եվրօպացիների, արեւմտեան գրականութեան եւ ուսման հետ ծանօթ չէք։ Եթէ դուք միայն հին հայկական դրականութեան հետ էք ծանօթ, կարծէ էք դուք օրինաւոր կերպով առաջ տանել ձեր գործը։ Ոչ, չէք կարող, այնոր համար, որ հայկական գրականութիւնը չունի բէալական, գործնական ուղղութիւն, այսինքն չունի այնպիսի ուղղութիւն, որից մարդս կարողանար այնպիսի ուսում եւ տեղեկութիւններ քաղել, որոնք նորան հարկաւոր լինէին իւր ամենօրեայ պահանջմունքը կատարելու եւ հարկաւոր աշխատանք կառավարելու։

Երբ ես կամենում եմ երկրագործութեամբ կամ շերամապահութեամբ պարապել, ես չեմ դառնայ դէպի այնպիսի գրականութիւն, որ պատմագրական եւ պօէտիկական ուղղութիւն ունի։ Կամ երբ ես տեսնում եմ իմ հասարակութեան տգիտութիւնը, տեսնում եմ որ հայրենակիցներս վատ են դաստիարակում իւրանց երեխաները,—եւ ես մտադիր լինիմ օրինաւոր մանկավարժական ուղղութեամբ ուսումնա-

համար, հարկաւոր է ուսում տարածել երկրի մէջ։ Իսկ ուսում տարածելու եւ ուսում ընդունելու համար հարկաւոր է կրկին աշխատանք։

Ուրեմն մեր բոլոր պահանջմունքն ինչ է։—«Ա շ խ ա տ ա ն ք» մտաւորական եւ նիւթական։

Այժմ ես ձեզ հարցնում եմ. կարօղ է արդեօք մեր հին գրականութիւնը մեր մտաւոր եւ նիւթական աշխատանքին օրինաւոր ուղղութիւն տալ, այսինքն այնպիսի ուղղութիւնը, որ մեր այժմեան պիտոյքներին յարմար լինէր։—Չէք իմանում...*)։

... Մենք մեր հին գրականութենից կարօղ ենք ծանօթանալ հին Հայերի կեանքի հետ։ Մեր հին գրականութիւնը մեզ ցոյց է տալիս հին Հայերի յարաբերութիւններ ուրիշ ազգերի հետ, մեզ ցոյց է տալիս, որ հին Հայերը զօրեղ էին, քաջ էին, որ նոցա բարոյական եւ հոգեւորական զարգացումը մեծ աստիճանին էր հասել, որ կնամարդիկ քիչ թէ շատ բացված էին, եւ վերջապէս որ Հայերը հին ժամանակներից սկսած երկրագործութեամբ եւ վաճառականութեամբ էին պարապում։

Այդ բոլորը նա մեզ ցոյց է տալիս,—բայց նա մեզ չէ ցոյց տալիս թէ մենք մեր այժմեան կեանքին ինչ ուշադրութիւն պէտք է տանք, որ մեր այժմեան պիտոյքներ կատարենք, որ երկրի մէջ աշխատանք տարածենք։

Հին գրականութիւնը մեզ ցոյց է տալիս թէ «մենք ինչ ենք եղել եւ ինչ ենք արել»,—բայց նա մեզ չէ ցոյց տալիս թէ «մենք ինչ պէտք է անենք»։

---

*) Այստեղ Արծրունին հին կեանքի և գրականութեան մասին վկայութիւններ է բերում Եզօվի «Внутренній бытъ древней Арменіи» աշխատութիւնից։

Մեր հին գրականութիւնը պատմագրական ուղղութիւն ունի, եւ բացի սորանից այն ազգասիրութիւնը, որով ոգեւորված էին մեր հին գրողները, նորան քանաստեղծական ուղղութիւն է տալիս։

Կարող է արդեօ՞ք այդպիսի ուղղութեան գրականութիւնը օրինաւոր ուղղութիւն տալ մեր այժմեան պիտոյքներին։

Ես ասացի, որ մեր այժմեան պահանջմունքը աշխատանք է, մտաւոր եւ նիւթական։

Ասենք թէ դուք մտադիր էք երկրագործութեամբ կամ շերամապահութեամբ պարապելու,—կամ մտադիր էք երկաթի հանքեր կառավարելու... կարօղ էք դուք արդեօք ձեր գործը օրինաւոր կերպով առաջ տանել, եթէ դուք եվրօպացիների, արեւմտեան գրականութեան եւ ուսման հետ ծանօթ չէք։ Եթէ դուք միայն հին հայկական գրականութեան հետ էք ծանօթ, կարօղ էք դուք օրինաւոր կերպով առաջ տանել ձեր գործը։ Ոչ, չէք կարող, այնոր համար, որ հայկական գրականութիւնը չունի բէալական, գործնական ուղղութիւն, այսինքն չունի այնպիսի ուղղութիւն, որից մարդս կարօղանար այնպիսի ուսում եւ տեղեկութիւններ քաղել, որոնք նորան հարկաւոր լինէին իւր ամենօրեայ պահանջմունքը կատարելու եւ հարկաւոր աշխատանք կառավարելու։

Երբ ես կամենում եմ երկրագործութեամբ կամ շերամապահութեամբ պարապել, ես չեմ դառնայ դէպի այնպիսի գրականութիւն, որ պատմագրական եւ պօէտիկական ուղղութիւն ունի։ Կամ երբ ես տեսնում եմ իմ հասարակութեան տգիտութիւնը, տեսնում եմ որ հայրենակիցներս վատ են դաստիարակում իւրանց երեխաները,—եւ ես մտադիր լինիմ օրինաւոր մանկավարժական ուղղութեամբ ուսումնա-

րան հիմնել, ես չեմ դառնայ դէպի այն գրականութիւնը, որը պատմագրական եւ պօէտիկական ուղղութիւն ունի, եւ որը մի օրինաւոր մանկավարժական գիրք չունի...

Կարելի է այն գրքերի մէջ, որոնք Վենետիկում, Վեննայում կամ Կ. Պօլսում են հրատարակվում, կան «մարդկային ամեն գիտութիւններից առած աշխատանքներ»—բայց սոքա միայն թարգմանութիւններ են եւ այնքան փոքր թւով են, որ բաւական չեն կարող լինել մի ինչ եւ իցէ գործ կամ գիտութիւն սիստէմատիկական կերպով ուսումնասիրելու համար։

... Ուրեմն իրողութիւնը նոյն է մնում, որ մենք հայկական լեզու այն նպատակով չենք սովորում, որ մեր գրականութեան հետ ծանօթանանք եւ նորանից օգուտ քաղենք... որովհետեւ գրականութիւն չկայ։

III

Ես ասացի որ երրորդ նպատակը, որ մարդս պիտի աչքի առաջ ունենայ մի որ եւ իցէ լեզու սովորելու ժամանակ, այն է որ նա կարողանայ հասարակութեանը նորա լեզուի միջոցով իւր միտք յայտնել ինչ եւ իցէ յօդվածներ կամ գրքեր գրելով։

Ես նմանապէս ասացի, որ մենք գրականութիւն չունինք, որ մենք ոչինչ չենք գրում,—իսկ այժմ ես հարցնում եմ ձեզ, ինչ է պատճառը որ մեր մէջ ոչինչ չէ գրվում։

Պատճառը, որ մեր մէջ ոչինչ չէ գրվում (կամ շատ սակաւ է գրվում) այն է, որ մեր հասարակութիւնը հարկաւորութիւն չէ զգում դէպի ընթերցանութիւնը։

Ե՛րբ էք տեսել որ մի որ եւ իցէ բան կատար-

վի, պատրաստվի կամ ստեղծվի մի հասարակութեան մէջ, երբ այդ հասարակութիւնը այն բանի հարկաւորութիւն չէ յայտնում։

Օրինակ Ֆրանսիայում, ամբողջ օր աշխատելուց յետոյ, մարդիկ հարկաւորութիւն են զգում գիշերը միասին հաւաքվելու, խօսելու, կաֆէ կամ գինի խմելով օրագիրներ կարդալու, կամ բիլիարդի խաղով մարմինը քիչ վարժելու,—եւ հասարակութեան այդ հարկաւորութեանը նայելով հիմնում են Ֆրանսիայի ամեն քաղաքների մէջ պանդոկները մեծ Թւով։

Մեր մէջ մարդիկ չեն զգում հարկաւորութիւն հաւաքվելու, օրագիրներ կարդալու կամ խօսելու,—ուրեմն եւ այնպիսի հաւաքվելու տեղեր եւս չեն հիմնվում մեր մէջ։

Շվէիցարիայում գրքեր կարդալու հարկաւորութիւն կայ,—ուրեմն եւ գրեթէ ամեն քաղաքում հասարակական գրատուններ կան, որտեղ ուրախութեամբ օտար մարդին անգամ ձրի ներս են բերում գրքեր կարդալու։

Մեր մէջ հասարակութիւնը հարկաւոր չէ զգում գրքեր կամ օրագիրներ կարդալու, ուրեմն եւ ոչ Թէ միայն հասարակական գրատուններ չեն հիմնվում, բայց եւ գրքեր անգամ չեն գրվում մեր լեզւով։

Եւ ինչից պիտի իմացվի, որ մի ինչ եւ իցէ բանը ձեզ հարկաւոր է,—ինչից պիտի իմացվի, օրինակ, որ ձեզ հարկաւոր է հացը, շորերը եւ այլն։

Նորանից կարող եմ ես միայն եզրափակել որ ձեզ այդ բաները հարկաւոր են, երբ ես տեսնում եմ որ դուք փող էք միսում այդ բաներ գնելու համար։

ԵԹէ հարուստ էք, ձեր հարստութեան մէկ մաս էք տալիս նոցա գնելու համար, եԹէ հարուստ չէք,

կաշխատէք եւ ձեր աշխատանքից ստացած փողով կգնէք ձեզ հարկաւոր բաներ։

Մեր մէջ, Հայերի մէջ, հայկական օրագիր հրատարակողներ կամ գրքեր գրողներ չեն կարող այդ աշխատանքով ապրել, որովհետեւ այդպիսի աշխատանքը մեր հասարակութեան մէջ չէ վարձատրվում —ուրեմն սորանից կարելի է եզրափակել, որ հասարակութիւնը հարկաւորութիւն չէ զգում մտաւոր աշխատանքի։

Կամ կկամենայիք, կարելի է, որ գրողը ձեզ համար ձրի աշխատէ։ Կկամենայիք ձրի ստանալ գրողի աշխատած գրքերը, կամ կկամենայիք որ ձրի հրատարակվին օրագրներ... Բայց եթէ գրողը ձրի պիտի աշխատէ, նա, ապահովացրած չլինելով, երկար ժամանակ չէ կարող աշխատել, որովհետեւ իւր աշխատանքի համար վարձատրված չլինելով, քանի մի ժամանակից յետոյ կամ պիտի քաղցած մեռնէ, կամ պիտի դադարեցնէ իւր աշխատանքը եւ ուրիշ մի բանով պարապէ։

Միթէ կամենում ենք նմանել այն հարուստ մարդին, որ ուսուցչին իւր տունը կանչելով, իւր որդուն դաս տալու համար, պարծենում է թէ բարերարութիւն է անում ուսուցչին, որովհետեւ նորան պարապեցնում է, հաց է տալիս նորան... Նա չէ կամենում համաձայնել, որ ուսուցիչը նորան նմանապէս մեծ բարերարութիւն է անում, որովհետեւ լուսաւորութիւն է տալիս նորա տգէտ երեխային։ Բաւական չէ, որ ուսուցիչը լուսաւորում է տգէտ երեխային,—հարուստ մարդը կկամենար, որ նա այդ բանը ձրի անէր... Բայց ինչո՞վ պիտի ապրէ ուսուցիչը, եթէ նա իւր աշխատանք ձեզ ձրի կառաջար-

կէ... Ուրեմն ինչով էք պարծենում, որ դուք նորա աշխատանքը վարձատրում էք։

Կային ի հարկէ մարդկային պատմութեան մէջ այնպիսի մարդիկ, որոնք զոհել էին իւրանց կեանքը իւրանց ազգ լուսաւորելու համար, որոնք վարձատրված չլինելով, ծրի ուսուցանելով,—քաղցած կամ սպանված էին մեռել։ Այն ազգերը, որոնք ունեցել են այդպիսի մարդիկներ, կարող էին, այո, երեւելի ազգեր լինել,—բայց նոքա իրաւունք չունէին իւրանց «հասարակութիւն» անունը սեփականացնել։—Ինչի։ Այնոր համար որ ազգը կարող է իւրան «հասարակութիւն» կանչել միայն այն ժամանակ, երբ նա աշխատանքի հարկաւորութիւն է զգում առհասարակ, եւ գլխաւորապէս մտաւոր աշխատանքի, որ ամեն ուրիշ աշխատանքների հիմն է եւ կառավարիչ։ Եւ նորանից միայն կարող է մարդս եզրափակել, որ հասարակութեանը հարկաւոր են մտաւոր աշխատողներ, երբ նա ապահովացնում է մտաւոր աշխատողներին, այսինքն վարձատրում է հեղինակների աշխատանքներ։ Իսկ երբ որ ազգը առանց վարձատրելու մտաւոր աշխատողներին, սպասում է որ դարի մէջ գան մէկ կամ երկու մարդիկ, որոնք ծրի նորան կուսուցանեն եւ յետոյ քաղցած մեռնեն... այդպիսի ազգը «ազգ» կարող է իւրան անուանել, բայց նա դեռ չէ հասել այն աստիճանին, որ իւրան «հասարակութիւն» անուանէ։

Բայց ինձ կասեն, թէ ես սխալվում եմ, թէ Հայերը եթէ հարկաւորութիւն չեն զգում հայ լեզուով գրած գրքերը կարդալու,—դա չէ նշանակում, որ նոքա առհասարակ պահանջմունք չունէին մտաւոր աշխատանքին։ Ընդհակառակն, կան նոցա մէջ այդ պահանջմունքը, միայն թէ նոքա հարկաւորութիւն

քն զգում, որ այդ պահանջմունք ուրիշ միջոցով կատարվի, այսինքն որ գրքեր եւ օրագիրներ ոչ թէ հայ լեզուով գրվեն, այլ որ եւ իցէ օտար լեզուով։ Որովհետեւ նոցա լեզու հնացել է, նոցա համար անհասկանալի, կամ գոնէ դժուար հասկանալի է դարձել, եւ նոցա հարկաւոր է այժմ մի ուրիշ, օտար, աւելի կենդանի, աւելի հասկանալի, աւելի մշակված լեզու...

Կարելի է որ սա ուղիղ է, պատասխանում եմ ես, բայց այն ժամանակ երկուսից մէկը պէտք է ընտրէք։

Եթէ հայերը մտաւոր աշխատանքի պահանջմունք ունին, բայց կամենում են, որ այդ պահանջմունքը ուրիշ որ եւ իցէ օտար լեզուի միջոցով կատարվի, եւ ոչ թէ իւրանց «սեփական լեզուի» միջոցով,—այն ժամանակ Հայերը իւրանց «ազգ» չեն կարող անուանել։

Կամ եթէ ամենեւին հարկաւոր չէ Հայերի համար մտաւոր աշխատանքը,—այն ժամանակ նոքա «հասարակութիւն» չեն կարող իւրանց անուանել։

Ուրեմն երկուսից մէկը.
Կամ մենք «ազգ» չենք,
Կամ «հասարակութիւն» չենք։

## IV *)

... Ուրեմն, եթէ մենք այն նպատակով հայկական լեզու չենք սովորում, որ յարաբերութիւններ ունենանք, այն նպատակով եւս չենք սովորում, որ

---

*) Այստեղ Արծրունին համառօտ կերպով նորից կըրկնում է իր ասածները։

կարդանք, ոչ եւս այն նպատակով, որ գրենք,— ուրեմն ինչի՞ ենք սովորում հայկական լեզու...

Վայ... Այդ էր պակաս... Հայեր ենք ու հայերէն չսովորենք...

—Ես ձեզ չեմ ասում, թէ հայերէն մի՛ սովորէք, բայց ես ձեզ հարցնում եմ. ի՞նչ նպատակով էք սովորում հայկական լեզու, կամ ի՞նչ օգուտ էք քաղում այդ լեզու սովորելուց։

Ի՞նչ է ասում... օգուտը ի՞նչ է... Հայ ես,— պէտք է հայերէն սովորես։

Սա պատասխան չէ։



Եւ իրաւ, դա պատասխան չէր։ Այդպիսի մութ, անորոշ, օդային պատասխանով չէր լուծվի այնքան կարեւոր ու մեծ հարց, որպիսին է մայրենի լեզուն մի ազգի համար։ Հայը իր լեզուի վրա ուշադրութիւն էր դարձնում ազգասիրաբար. մինչդեռ անհրաժեշտութիւն պիտի դարձնէր իր համար օգտակարութեան տեսակէտից, պիտի նրան ընտրէր իբրև ամենազօրեղ զէնք իր նիւթական և մտաւոր հարստութեան, իր երջանկութեան համար։ «Ես ձեզ չեմ ասում թէ հայերէն մի՛ սովորէք»։ Արծրունին, այո, այդ չէր ասում։ Չէր ասում և այն, թէ եթէ չը կայ հայկական գրականութիւն, դա նշանակում է որ նա չը պիտի էլ լինի, եթէ ժո-

ղովրդի մէջ ընթերցանութեան պահանջ չը կայ, չը պէտք է էլ փորձել ընթերցանութիւնը պահանջ դարձնել։ Արծրունին ուզում էր միայն հաստատել իրողութիւնը, այն, որ գրականութիւն չը կայ։ Եւ դուք տեսնում էք թէ որպիսի ուժեղ տրամաբանութեամբ էր նա այդ հաստատում։ Հաստատելուց յետոյ նա դիմում էր հայերին և հարցնում էր. երբ դրութիւնն այսպէս է, ինչ էք ուզում անել։

Եւ հարցը այդպէս չը լուծված չէր թողնում Արծրունին։ Ասելով թէ դա պատասխան չէ, նա ամեն ինչ վերջացրած չէր համարում։ Իր յաջորդ յօդուածը, «Իդէալիստներ» վերնագրով, նա սկսում էր այն խօսքերով, որոնցով վերջացրել էր «Գրականութիւն չկայ» յօդուածը։

Այո՛, սա պատասխան չէ,—գրում էր նա,—կամ աւելի լաւ ասեմ, սա պատասխան է, բայց սա «իդէալիստների» պատասխան է։

Վաթսունական թուականների այն սերունդը, որ պահանջում էր գործ, դրական գիտութիւն, աշխատանք հասարակաց բարիքի համար, «իդէալիստ» փոքր ինչ հեգնական անունով էր մկրտում այն մարդկանց, որոնք գաղափարներին երկրպագելն էին համարում

առաջադիմութեան ամենալաւ միջոցը։ Իդէալիստ—դա րէալիստի հակապատկերն էր։ Րէալիստը պահանջում էր մարդու գործունէութիւնից, տաղանդից, ընդունակութիւնից անմիջական, իրական օգուտ, մինչդեռ իդէալիստը հաւատում էր որ միայն հացով չէ մարդ ապրում։ Արծրունին, իբրև նոր սերունդի ներկայացուցիչ, այս յօդուածի մէջ շատ խիստ գոյներով դուրս էր բերում րէալիստի պատկերը, արհամարհանքով վերաբերվելով դէպի իդէալիստները։ Ճիշտ է, մեզանում չը կար հարուստ գրականութիւն, չը կար մանաւանդ գեղարուեստ, որի շուրջը յաճախ ընդհարվում էին իդէալիստները և րէալիստները, բայց և այնպէս, մեզանում էլ շատ թեթև կերպով գծագրված էր երկու սերունդների, հայրերի և որդիների գոյութիւնը։ Կային մեզանում շատ իդէալիստներ. դրանք յիսունական և վաթսունական թւականների հասարակական հոսանքների ազդեցութեան տակ կրթվածներն էին։ Ահա երևան էր գալիս և անողոք րէալիստը, որ գալիս էր օգուտ պահանջելու և ժխտելու այն, ինչ օգուտ չէ տալիս։ Մեր գրականութեան մէջ դեռ ոչ ոք չէր ներկայացրել աշխատաւորի, գործնական րէալիստի պահանջները։ Այդ անում էր Արծրունին։ Եւ որքա՜ն սիրուն կերպով։

*Գիտէք «իդէալիստ» ինչ է նշանակում, հարցնում է նա եւ պատմում.*

*Ես ծանօթ էի մի նկարչի հետ։ Այդ նկարիչը շատ գեղեցիկ կերպով էր նկարում սարեր, ձորեր, երկինք ու ջուրը։*

*Մի անգամ նորա պատկերների վերա նայելով, ես հարցրի նորան.—ինչի աշխարհիս երեսին աղնիւ ու գեղեցիկ բաները ամէն մարդի համար հաւասար կերպով հասանելի չեն։ Օրինակ ձեր գեղեցիկ նկարչութիւնները, որոնք բնութեան պատկերներ են ներկայացնում, հասկանալի են միայն քիչ թէ շատ ուսում առած մարդին, բայց ժողովրդի ամէն անդամին, մանաւանդ հասարակ մարդին, արվեստաւորին *) օրինակ, հասկանալի չեն։ Ձեր պատկերներ ով կգնէ,—այնպիսի մարդ, որ աւելորդ փող ունի։ Ձեր պատկերը երբ որ դահլիճում էր դարսած, ուր ժողովուրդը նորան տեսնելու էր գնում,—ձեր պատկերը ով հասկացաւ...*

*Շատ սակաւ մարդիկ նորան հասկացան, եւ այնպիսի մարդիկ, որոնք քիչ թէ շատ բացված էին։*

*Իսկ ժողովուրդը... նորան ինչ, որ դուք գեղեցիկ կերպով սարեր ու ջուր էք նկարում... Նա ուրիշ հարկաւորութիւններ ունի, նա աղքատ է, նա հարկաւորութիւն է զգում իւր կեանքը լաւացնելու,*

---

**) Պէտք է ի նկատի ունենալ, որ արհեստ և արուեստ բառերը այն ժամանակ գործ էին ածվում բոլորովին հակառակ այն նշանակութեան, որ նրանք ունին այժմ։ «Արուեստաւոր» այստեղ պէտք է հասկանալ մեր այժմեան «արհեստաւորի» մտքով, և ընդհակառակն, «արհեստ» հիմիկվայ մեր «գեղարուեստան» է։*

նա աշխատանքի է կարօտ, նա անբարոյականութեան մէջ է, նա մարմնի ու հոգու պակասութիւններ ունի... Նորան ինչ, որ դուք նկարում էք բընութիւնը։

«Ես նկարում եմ բնութիւնը, պատասխանեց նըկարիչը, որովհետեւ բնութիւնը գեղեցիկ է։ Ամեն գեղեցիկ բանի տեսարանը գոյացնում է մարդիս մէջ բարձր ու ազնիւ զգացմունք, գոյացնում է գեղեցկութեան ճաշակը, եւ մաքրում է նորա սիրտը կոպիտութիւնից, կոպիտ զգացմունքից»։

—Շատ գեղեցիկ կերպով էք խօսում, պարոն նկարիչ, բայց մի՞թէ դուք կարծում էք թէ ժողովուրդը ժամանակ ունի (եւ այնքան զարգացած է) որ կարողանայ ձեր գեղեցիկ նկարչութիւններից այդ ուսմունք քաղել։ Դուք կամենում էք նորան կոպիտութիւնից ազատել, նորա զգացմունքը մաքրել... բայց ժողովրդի կեանքն ինքն կոպիտ է։ Նորան կոպիտութիւնից ազատելու համար, նորա կեանքը հարկաւոր է փոխել։ Իսկ ժողովրդի կեանքը փոխելու համար, նորան հարկաւոր են աշխատանք եւ ուսում։ Նորան հարկաւոր է աշխատել, հացը ճարել, նորան հարկաւոր է տգիտութիւնից ազատվել, մտածելու սովորել, որ նա կարողանար առաւել բարոյական լինել։

Իւր աշխատանքն եւս կառավարելու (համար ?) ժողովրդին հարկաւոր է մտածելու սովորել։... Ես եւս ինձ կատարեալ մարդ չեմ համարում, ես եւս ժողովրդից եմ, ես եւս հարկաւորութիւն եմ զգում մտածելու, որովհետեւ մտածելը ինձ հնար է տալիս առաւել արդար կերպով վարվել մարդիկների հետ, ուրեմն մտածելուց եւս առաւել բարոյական եմ դառնում։ Ես հարկաւորութիւն եմ զգում մտածելու, եւ

կարծում եմ որ արհեստը անօգուտ չպէտք է մնայ, այլ նա եւս պէտք է օգնէ ինձ մտածելու։

Նկարեցէք այնպիսի բաներ, որ ստիպեն ժողովուրդը մտածելու, նկարեցէք հասարակութեան կեանքից այնպիսի անցքեր, որոնք մեր վատ դաստիարակութեան, մեր տգիտութեան, մեր նախապաշարմունքի հետեւանք ու պտուղներ են... Նկարեցէք մեր բարոյական ու մարմնական պակասութիւնները, նկարեցէք այն մեր բարոյական պակասութիւնները, որոնք մեր հասարակութեան նախապաշարմունքի պտուղներ են, որոնց մենք տեսնում ենք, բայց որոնց վերա մենք ուշադրութիւն չենք կամենում դարձնել, վախենալով հասարակութեան նախապաշարմունք վիրաւորելու... Նկարեցէք հասարակութեան կեղտը... Նկարեցէք...

—Ո՛չ, պարոն, ոչ... երբէք ես այդպիսի բան չեմ անի եւ երբէք այն նկարիչը, որ իւր անձն է պատւում, չպէտք է այդպիսի բան անէ... Արհեստը աստուածների գործ է, նորան ո՞վ կհամարձակի ցածրացնել մինչեւ այն աստիճան, որ նորա միջոցով ներկայացնէ հասարակութեան պակասութիւններ, հասարակութեան կեղտը... Ո՛չ, ես այդ բարձր, աստուածային գործը կեղտի մէջ չեմ ման ածի... Արհեստը պէտք է արհեստի համար ապրէ...

Ընթերցող, հասկացա՞ք դուք ինչ որ ասաց նկարիչը։ Եւ ճանաչեցի՞ք արդեօք, ինչ մարդ է իմ նըկարիչս... Նա «իդէալիստներից» է։

Իսկ ես, իմ նկարչի խօսքերը ամենեւին չեմ հասկանում,—ճշմարիտ։—Ես միայն այն գիտեմ, որ ես «ժողովուրդ» եմ եւ կկամենայի որ անօգուտ բան իրաւունք չունենար աշխարհիս երեսին ապրելու։ Ես կկամենայի, որ ամեն բան ինձ օգնէր լաւանալու,

ձգտելու դէպի բարոյականութիւնը, դէպի իմ կեանքի լաւացնելը, դէպի առաջադիմութիւնը... Իսկ այնպիսի նկարչութիւնները, որտեղ ներկայացրած է (Թէպէտ եւ երեւելի Ռաֆայէլի ձեռով) գեղեցիկ կնոջ տկլոր մարմինը, կամ բնութեան տեսարանը, սարեր, ձորեր ու ջուրը,—սորանից, ես խոստովանում եմ ձեզ, սորանից ես առաւել բարոյական չեմ դառնում։

Եւ մի չարք այսպիսի «իդէալիստներ»։ Ահա մէկը գիրք է կարդում։ Հարցնում էք նրան ինչպէս է դուր գալիս գիրքը, նա պատասխանում է՝ «շատ լաւ է գրած»։ Եւ ուրիշ ոչինչ, նա չի պարզի գրքի արժանաւորութիւններն ու պակասութիւնները, որովհետեւ նա գրքից օգուտ քաղելու համար չէ ընթերցանութեամբ պարապում, այլ «կարդում է... կարդալու համար»։

Ահա մի գրող, դիցուք Ֆրանսիացի գրող Լամարտինը։ Գրել է նա անհագին քանակութեամբ գրքեր։ Լեզուն շատ լաւ է, կարդում էք մեծ ախորժակով։ Բայց միտք շատ քիչ կայ այդ գրուածքների մէջ։ «Այնպիսի գրքեր մեզ չեն դրդում մտածել, բայց ընդհակառակն սպանում են մտածելու ընդունակութիւնը, և ծուռ մտքեր յայտնելով, ոչնչացնում են իրանց ձևի շնորհով մարդի զգացմունք ու ցնորք»։ Դա, ուրեմն անօգտակար գրող է, դա գրում է գրելու համար։

Ահա մի մարդ, որ շատ սիրում է խօսել, բայց խօսել ոչ թէ այն նպատակով որ մի միտք յայտնէ, այլ խօսել այն նպատակով որ առիթ ունենայ «իր սեփական ձայնը լսելու»։ Խօսելու ժամանակ նա սիրահարվում է իր սեփական ձայնի վրա։ Ուրեմն մի մարդ է դա, որ խօսում է խօսելու համար։

Ահա հարուստի որդին։ Ամբողջ օրը ոչինչ չէ անում, իսկ գիշերը թատրոն է գնում։ Ինչո՞ւ։ «Հասարակութիւն տեսնելու, իր սեփական անձը ցոյց տալու համար, և բեմի վերա աղջիկներին... ոտներ տեսնելու համար»։ Նա, ուրեմն, թատրոն է գնում ոչ թէ օգուտ ստանալու համար, այլ թատրոն գնացած լինելու համար միայն։ Մինչդեռ բեմի վրա հեղինակը արծարծում է որ և է հարց, որի մասին վիճելով, մենք կարող ենք մի յայտնի օգուտ ստանալ, մի յայտնի հայեացք կազմել հասարակական այս կամ այն երևոյթի մասին։ Հարուստի որդին, որ թատրոնում գտնում է իրան ցոյց տալու և ուրիշներին տեսնելու բաւականութիւն միայն, նոյնպէս «իդէալիստ» է։

«Առհասարակ—ասում է Արծրունին—երբ որ մարդը մի գործ անելով մի առանձին նպատակ կամ օգուտ աչքի առջեւ չունենալով, այն գործի «գոր-

ծողությանն» մէջ իւր համար բոլոր բաւականութիւն է գտնում—այդպիսի մարդը «իդէալիստ» է»։

*Այդպէս որոշելով «իդէալիստի» տիպը, Արծրունին դիմում է հայ ազգին և ասում է.*

Մենք Հայերս, ամենքս «իդէալիստներ» ենք։

Երբ որ ես ձեզ հարցնում եմ, ինչ նպատակով էք սովորում հայկական լեզու, կամ ինչ օգուտ էք քաղում այդ լեզու սովորելուց։—Դուք ինձ պատասխանում էք. «Օգուտը ո՞րն է... Հայ ես—պէտք է հայերէն իմանաս»։

Մենք «իդէալիստներ» չենք միթէ, երբ մեր սեփական լեզու այն նպատակով չենք սովորում, որ նորանից օգուտ քաղենք, որ նորա միջոցով մտքեր յայտնենք, յարաբերութիւններ ունենանք, նորա միջոցով զարգացնենք մեր խելքը, գրքեր կարդալով, կամ յայտնենք մեր մտքերը, գրքեր գրելով։

Մենք «իդէալիստներ» չենք միթէ, եթէ մենք մեր սեփական լեզու սովորելուց ոչինչ օգուտ չենք քաղում, բայց այնուամենայնիւ սովորում ենք նրան։

Մենք «իդէալիստներ» չենք միթէ, եթէ մենք մեր լեզու միայն այն նպատակով ենք սովորում... որ սովորենք մեր լեզու։ «Ո՛չ, մենք ազգասիրութեան պատճառով ենք սովորում մեր լեզու»։

Հասկանու՞մ էք դուք արդեօք ինչ է ազգասիրութիւնը։

Ազգասիրութիւնը այնպիսի զգացումն է, որով մարդը պարտաւորվում է «օգտաւէտ» լինել իւր հասարակութեան։

Ուրեմն, սա ամենեւին ազգասիրութիւն չէ, երբ որ մարդը իւր ազգի լեզու իմանալով, ոչինչ «օգուտ»

չէ քաղում այդ լեզւի ուսումից, ուրեմն իւր լեզու իմանալով, ոչինչ «օգուտ» չէ բերում, ուրեմն «օգտաւէտ» չէ լինում իւր հասարակութեանը։

Ազգասիրութենից մարդը պարտաւորվում է «օգտաւէտ» լինել իւր ազգին։ Իսկ նա ազգասիրութեան պատճառով է սովորում իւր ազգի լեզու։ Բայց լեզու սովորելուց նա ոչինչ «օգուտ» չէ քաղում, եւ չէ բերում իւր ազգին։—Ուրեմն նորա ազգասիրութիւնը «անօգուտ», աննպատակ ազգասիրութիւն է, կամ «իդէալիստի» ազգասիրութիւն է։

Այն Հայն, որ Հայերի մէջ ապրելով, երկիր է փորում,—Թէեւ նա «ամենեւին» հայերէն չէր իմացել,—առաւել մեծ ազգասէր է (այնոր համար որ երկիրը փորելով նա «օգտաւէտ» է լինում իւր հասարակութեանը), ասում եմ, առաւել մեծ ազգասէր է քան Թէ այն Հայն, որ հայերէն իմանալով, ոչինչ օգուտ չէ քաղում իւր հայերէն գիտենալուց։

*Ահա ինչ գրականութիւն չը կար հայերի մէջ։ Գրքեր, ի հարկէ, կային, հեղինակներ, Թարգմանիչներ եղել էին և կային։ Բայց դրանք «իդէալիստներ» էին։ Գալիս է բէալիստ մարդը և ասում է գրականութիւն չը կայ։ Նրան չեն հասկանում. չեն հասկանում որ բէալիստի համար այդ գրքերը, որքան էլ գեղեցիկ լինին, ոչինչ են, քանի որ օգուտ չեն բերում ժողովրդին, ոչինչ են, ինչպէս նկարչի այն հիանալի պատկերը, որ ներկայացնում է բնութիւնը, բայց որից ոչինչ օգուտ քաղել չէ կարող ժողովուրդը։*

Օգուտ, միայն օգուտ։ Ինչպէս է ձեր մաքուր արուեստը, ինչպէս են ձեր ազգասիրական ճառերը, երբ ժողովուրդը ագէտ է, անբարոյական հասկացողութիւնների մէջ ընկած, երբ նա հաց պիտի ճարէ իր համար, բայց միջոցներ չը գիտէ։ Ես ժողովուրդ եմ, բացականչում է մեր ռէալիստը ինքնավստահութեամբ, պահանջողի խստութեամբ. ես ժողովուրդ եմ, կեանքը ինձ ճնշում է, տապալում է։ Ինձ հարկաւոր է օգուտ քաղել գիտութիւնից, քաղաքակրթութիւնից և ինձ համար այն ամենը, ինչ իմ անմիջական, իրական օգուտից դուրս է, գոյութեան իրաւունք չը պիտի ունենայ. ես ժողովուրդ եմ, իսկ դուք ինչ էք տալիս ինձ. ազգասիրական ճառեր, խրատներ, վարդի ու սոխակի պատմութիւն...

Ժողովուրդը, նրա կեանքը, նրա օգուտը, հողը, արդիւնաբերութիւնը և գիտութիւն, դրական գիտութիւն—ահա ինչ դրօշակով է հրապարակ գալիս մեզանում այդ նոր մարդը։ Եւ նրա խօսքը արտասանված է ժամանակին. դա մի խիստ բողոք էր մեր ուղղութեան դէմ. դա գալիս էր կանգնեցնելու մեր բռնած ընթացքը, յեղաշրջելու մեր հասկացողութիւնները գործի և պարտականութեան մասին։ Արծրունին ոչ միայն յայտնում էր

մտքեր, այլ և պատրաստ էր պաշտպանել նրանց։ Բայց նրան չէին հակառակում, նրա դէմ բանակռիւ չէին սկսում, թէև նա ինքն էր բանակռւի հրաւէր կարդում և այդ հրաւէրը մենք տեսնում ենք ուղղած նոյն իսկ «Հայկական Աշխարհին»։

«Իդէալիստներ» յօդուածն էլ Ստեփանէն տպագրեց վերապահութիւններով, պատասխանատւութիւնը հեղինակի վրա թողնելով, այսինքն յայտարարելով թէ համաձայն չէ հեղինակի հետ *)։ Խմբագրական կարճ նկատողութիւններից դէնը Ստեփանէն չէր գընում. նա երբէք չը յայտնեց թէ ինքը ինչ կարծիքներ ունի, թէ ինչու համաձայն չէ իր աշխատակցի մտքերին։ Արծրունին, ինչպէս տեսանք, ուզում էր որ «Հայկական Աշխարհը» դուրս գայ այդ անորոշ դիրքից, գոնէ ասէ թէ ինչու է գովում, իմաստուն անուանում նրա յօդուածները։ Պատասխան չեղաւ։ «Գրականութիւն չը կայ» յօդուածին կցած խմբագրական նկատողութիւնը առիթ դարձաւ, որ Արծրունին մի անգամ էլ հրաւէր ուղղէ Ստեփանէին։ «Հայկական Աշխար-

*) Պէտք է նկատենք, որ «Հայկական Աշխարհում» շատ ուրիշ յօդուածներ ու նամակներ էլ էին տպվում գրողների պատասխանատւութեամբ։

*նի» 1869 թ. № 1—2-ի մէջ տպված «Նամակ խմբագրութեան»-ը այդպիսի հրաւէր է պարունակում։ Այդտեղ Արծրունին նորից ապացուցանում էր որ ճիշտ է իր ասածը թէ հասարակութիւնը կարդալու պահանջ չունի։ Եւ ապացոյցը հէնց ինքը «Հայկական Աշխարհն» էր։ Խմբագրութիւնը իր յայտարարութեան մէջ ասել էր թէ այն ժամանակ նա կը կարողանայ ընդարձակել իր գործունէութիւնը, երբ բաժանորդների թիւը կաւելանայ։*

Ի՞նչ է նշանակում ստորագրողների թւի մեծանալը,—հարցնում էր Արծրունին։—Նշանակում է թէ ժողովրդի մէջ աւելի ու աւելի է յայտնվում կարդալու եւ մտածելու պահանջմունք։

*Ու դիմելով քաղաքական տնտեսութեան, նա արծարծում է փոխանակութեան օրէնքը, որ մի եւ նոյն բանն է հաստատում։ Բայց ինչո՞ւ է Արծրունին հրապարակ հանում մի այդպիսի իրողութիւն։ Որովհետեւ նա հետազօտող է, իսկ հետազօտողի պարտքն է մերկացնել իրողութիւնները ամենայն ճշտութեամբ։ Ասելով թէ ժողովուրդը կարդալու պահանջ չունի, նա ամենեւին չէ կամեցել մեղադրել ժողովուրդը, հետեւաբար և եզրակացնել թէ ի զուր է աշխատել այդ ժողովուր-*

*դի համար։ Մի մասնագէտ ուսումնասիրում է մի լեռնային սառցակոյտի դիրքը, հաշւում իմանում է որ սառցակոյտը այս ինչ ժամանակ պիտի վայր ընկնէ և վնաս հասցնէ սարի ստորոտում ապրող ժողովրդին։ «Մի՞թէ դուք կասէք թէ այդ իրողութիւնը հաստատելով, ուսումնագէտը մեղադրում է բնութիւնը», հարցնում է Արծրունին։*

*Մենք, ի հարկէ, այդպիսի բան չենք ասի։ Հաստատել իրողութիւնները, նշանակում է որոշել հիւանդութեան յատկութիւնները, գտնել հիւանդութիւնը, նրա դիագնօզը դնել։ Հաստատելով իրողութիւնը, Արծրունին կանգ չէր առնում։ Ո՛չ, հաստատելը բաւական չէ։ Հիւանդը իմանում է թէ ինչ ցաւ ունի։ Յետո՞յ։ Յետոյ նա բնականաբար հարցնում է՝ ի՞նչ է հարկաւոր անել։ Արծրունին պատասխանում է.*

Նամակիս վերջում կասեմ թէ մեզ, Հայերիս, հարկաւոր է այժմ (եւ կարելի է ունենալ) միայն երկու ուղղութեան գրուածքներ, որոնք մեզ օգտաւէտ կարողանային լինել, օգնելով աշխատանքի տարածմանը.—Նախ այնպիսի ուղղութեան գրականութիւնը, որնոր ժողովրդին առաջարկէր գիտութեան փաստեր,—երկրորդ որ քննէր հասարակութեան կեանքի երեւոյթները։

*Բայց ահա դեռ ուրիշ ինչ կայ իմանալու.*

Սա չէ նշանակում, որ այդ երկու ուղղութիւններին հետեւելով բոլոր գրողները միեւնոյն աչքով պէտք է նայեն երեւոյթների վերա.—ամենեւին ոչ, այս երկու ուղղութիւններին եւս հետեւելով, գրողներից ամէն մէկը կարող է իւր սեփական հայեացքով նայել գործի վերա։ Բազմակողմանի կերպով քննված երեւոյթը առաւել հասկանալի է հասարակութեանը։ Զանազան ուղղութիւններին հետեւող գրողները անշուշտ հարկաւոր են գրականութեան մէջ։

Մտքերի ազատ փոխանակութիւն էր ուզում Արծրունին, կարծիքների տարբերութիւնը նա շատ ցանկալի էր համարում։ Սա շատ բնորոշ է այն մարդու համար, որին շնորհված էր անսպառ եռանդով մտքեր յուզել մեզանում, ահագին բանակռիւներ բաց անել, գաղափարական պայքար բորբոքել։ Թող ուրիշները նոյնպէս յայտնեն իրանց կարծիքները։ Իսկ մինչև այդ Արծրունին իր սեփական համոզմունքն էր դնում մտածող հայերի առաջ, ուղղելով նրանց հետևեալ ըմբոստ ու կծու տողերը.

Իսկ այնպիսի գրուածքները, որտեղ բարոյականութիւն, կարգ եւ ազգասիրութիւն է քարոզվում... այնպիսի գրվածները թող գրողը տանէ...։ Բաւական են մեզ քարոզողները, մանաւանդ ազգասիրութեան... Հերիք է այս խափանացած (?), հնացած, մաշված ուղղութիւնը... Մեզ հարկաւոր է այժմ աշխատանք,—իսկ աշխատանքին կարող է օգնել գրա-

կանութիւնը, միայն այդ երկու ճանապարհներ ընտրելով. գ ի տ ո ւ թ ի ւ ն  ե ւ  ք ն ն ո ւ թ ի ւ ն։

Այս տողերը այլ եւս ոչինչ անորոշութիւն չեն թողնում Արծրունու հրապարակախօսական դէմքը ամբողջովին գծագրելու համար։ Ամեն ինչ պարզված է, առաջին քայլերը չափազանց խոշոր, ուղղագնաց, անյողդողդ են։ Բայց մենք կը կամենայինք այստեղ մի հիմնական հարց էլ շօշափել։ Ո՞րքան ինքնուրոյնութիւն կար Արծրունու մէջ, ո՞րքան սեփական աշխատանք ունէր նա իր աշխարհայեցողութիւնները մշակելու, իւրացնելու մէջ։ Այս հարցը մեզ տանում է մի հետաքրքրական համեմատութեան։

Մենք մի քանի անգամ առիթ ունեցանք յիշատակելու մի ռուս գրողի անուն, որի ազդեցութիւնը այնքան նկատելի է Արծրունու վրա։ Դա Պիսարեւն է։ Տեսնենք ինչ կապ կայ այդ երկուսի մէջ, ինչ էր Արծրունին Պիսարեւի վերաբերութեամբ—արդեօք հետեւո՞ղ թէ կրկնող, թարգմանիչ...

Կարդալով Արծրունու ուսանողական ժամանակների մի քանի դրուածքները (օր. «Իդէալիստներ», կանանց կրթութեան մասին), մենք իսկոյն յիշում ենք Պիսարեւին։ Անկարելի է չը յիշել, որովհետեւ այդ երկու գրող-

ների մէջ նմանութիւնը այնքան մեծ է, որ ակամայ այսպիսի հարց է ծագում. արդեօք Արծրունին, այդ յօդուածները գրելիս, իր սեղանի վրա բացած չունէր Պիսարեվի գրուածքները, արդեօք յաճախ չէր նայում այդ բաց էջերին։

Վաթսունական թւականների նոր սերունդին նուիրած մեր տողերում մենք խօսեցինք Պիսարեվի մասին։ Երբ Արծրունին մտաւ համալսարան, Պիսարեվը արդէն անուն վաստակած գրող էր և նրան յափշտակութեամբ կարդում էր ամբողջ երիտասարդ Ռուսաստանը։ Դեռ 1864-ին նա գրել էր իր «Ռէալիստներ» աշխատութիւնը, մի հրապարակախօսական գոհար, որի մէջ նոր սերունդը հանդէս էր բերված իր գաղափարներով, հասկացողութիւններով, պահանջներով։ Մենք արդէն գիտենք թէ ինչ էր այդ նոր սերունդի, այդ ռէալիստների հաւատամքը։ Անձի կատարեալ ազատութիւն, բնական գիտութիւն, աշխատանք, իրական օգուտ, զարգացած միտք, մտածող ռէալիստ—այս բոլոր հասկացողութիւնները, նոր ժամանակի այս գաղափարները Պիսարեվը արծարծել, պաշտպանել ու վեր է հանել շատ փայլուն կերպով։ Դիմենք մի քանի մանրամասնութիւններին։

*Պիսարևը անհաշտ թշնամի էր այն ուղղության, որ կոչվում է «արուեստը արուեստի համար»։ Նա պահանջում էր որ բանաստեղծը լինի իր ժամանակի առաջավոր մարդ, ոչ թէ երգէ լուսին, սոխակ ու վարդ, այլ մտածելու նիւթ տայ ընթերցողին, ոչ թէ սեփական փոքրիկ զգացմունքները, «ես»-ը հանէ հրապարակ, այլ հասարակական հարցերին արձագանք տայ։ Գրողից նա պահանջում էր օգուտ։ Ով որ օգուտ չէ բերում իր գրուածքներով, նա թերուս է, անհասկացող է, տափակութիւն է։ Ահա, օրինակ, ինչ էր նա ասում բանաստեղծների մասին։*

*Իմ կարծիքով, ճշմարիտ բանաստեղծը, գրիչ վերցնելով, իրան տալիս է խիստ ու պարզ հաշիւ այն մասին, թէ դէպի ինչ ընդհանուր նպատակ կը լինի ուղղված նրա նոր ստեղծագործութիւնը, ինչ տպաւորութիւն պիտի թողնէ այդ ստեղծագործութիւնը ընթերցողների մտքի վրա, ինչ սուրբ ճշմարտութիւն ցոյց կը տայ փայլուն պատկերներով, ինչ վնասակար մոլորութիւն արմատախիլ կանէ։ Բանաստեղծը—կամ մտքի մեծ մարտնչող է, անվախ եւ անբիծ «ասպետ ոգու», ինչպէս ասում է Հենրիխ Հէյնէն կամ թէ մի չնչին պարազիտ, որ զուարճացնում է միւս չնչին պարազիտներին մանր-մունր ձեռնածութիւններով։ Միջին տեղ չը կայ։ Բանաստեղծը կամ տիտան է, որ ցնցում է դարաւոր չա-*

րիքի սարերը, կամ թէ մի քողոճ, որ փորփորում է ծաղկի փոշին։

Նախապաշարմունքները զզուելի էին Գրիտարեվի համար. զարգացած մարդ, կամ, ինչպէս Գրիգոր Արծրունին էր ասում, բացված մարդ է հարկաւոր հասարակութիւն կազմելու համար։ Նախապաշարմունքների, արբացրած սովորութիւնների դէմ Գրիտարեվը սաստիկ կռւում էր մանաւանդ կանանց հարցի մէջ։

Կանանց դատարկ ու անմիտ դաստիարակութիւնը միտք ու հոգի սպանող մի բան է։ Աղջկան ասում են թէ նա կրթված, լուսաւորված կին պիտի դառնայ։ Բայց ինչ են սովորեցնում նրան։—Փոքր ինչ աշխարհագրութիւն, մի քիչ քերականութիւն, յետոյ պատմութիւնից այս ինչ թւականը և անունը, յետոյ պար։ Ամեն ինչ վայրիվերոյ, կցկտուր, անկապ։ Ուղեղը ճնշված է, սահմանափակ. և ամեն միջոց ձեռք է առնվում որ նա չը զարգանայ։ Հարստութիւնը, գեղեցիկ շորերը, հասարակութեան դուր գալը կեանքի նպատակներ են և դրանց համեմատ էլ կինը ստանում է այն, ինչ անհրաժեշտ է։ Կեանքը անցնում է դատարկ իրարանցման մէջ. կնոջը միշտ ճնշում են խոհանոցի, նրն-

ջարդանի և մօդային խանութի մանր-մունր, գրօշանոց հոգսերը։

Րէալիստը պահանջում է ազատել կնոջը այդ սպանող պայմաններից։ Բայց նրա հակառակորդը, որ գեղագէտն է (էսթէտիկ), բողոքում է, ասելով թէ Պիսարեւի նման րէալիստները քանդում են ընտանիքի հիմքերը, քարոզում են անբարոյականութիւն։ Ո՛չ, այդպէս չէ, ասում է րէալիստը։ Ես տղամարդ եմ, մտածող րէալիստ. և ես պիտի ունենամ ընկեր և բարեկամ կին։ Երկուս լծակիցներ, աշխատակիցներ ենք հասարակութեան մէջ և տանը. մենք գործում ենք միասին, փոխադարձաբար իրար օգնում ենք, մէկի գիտութիւնը, փորձը լրացնում է այն պակասը, որ ունի միւսը։ Վերջապէս մենք միասին դաստիարակում ենք մեր երեխաներին և այս պարտաւորութիւնը աւելի ևս մօտեցնում է մեզ, շաղկապում է մեր հոգեկան շահերը, մեր գոյութիւնը։ Եւ այսպէս մենք միմեանց շատ հարկաւոր, շատ անհրաժեշտ բարեկամներ, ընկերներ ենք։ Իմ այսպիսի ընտանիքը կարո՞ղ է քանդվել, կարո՞ղ է անբարոյական հասկացողութիւններ մտցնել իր մէջ։ Ես և կինս միշտ կը սիրենք իրար, երբէք չենք յոգնի միասին ապրելուց, միասին աշխատելուց։ Իսկ դո՞ւք, գեղագէտներ,

ռոմանտիկներ, որ ընտանեկան բարոյականութեան պաշտպան էք հանդիսանում, դո՛ւք ինչ հասկացողութիւն ունիք կնոջ մասին։ Նա ձեզ համար վայելչութիւն է, խաղալիք է։ Ահա հէնց այդպիսի հասկացողութեան վրա հիմնած ընտանիքն է խախտւում ու փըլչում, որովհետև վայելչութեան զգացմունքը շուտ է ձանձրանում մէկի հետ մնալուց, իսկ խաղալիքը, հէնց որ կորցնում է իր փայլը, աղբանոց գցելու իր է դառնում։

Տեսնո՞ւմ էք որքան նմանութիւններ կան Պրօշեանի և Արծրունու մէջ։ Եթէ էլ առաջ գնանք, էլ շատ բան կը տեսնենք։ Կը տեսնենք բառերի, դարձուածքների նմանութիւնն էլ։ Պրօշեանը, օրինակ, գրում է. «Մեր հայրենակիցների ընթերցանութիւնը նպատակ չունի. ռուս մարդը ոչինչ չէ որոնում գրքի մէջ, ոչ մի բանի մասին հարց չէ տալիս, ոչ մի բանի չէ ուզում հասնել»։ Ճիշտ այս մի և նոյն վկայութիւնը չէ՞, որ տալիս է Արծրունին հայ ընթերցողի մասին։ Պրօշեանը, խօսելով կանանց կրթութեան մասին, զարմանում է թէ ինչո՞ւ իգական դպրոցում առաջնակարգ տեղ չը պիտի բռնէ բնական գիտութիւնը, ինչո՞ւ ամօթալի, անպարկեշտ բան պիտի համարվի ծանօթացնել աղջկան մարդակազմութեան և բնախօսութեան հետ

այնպէս, ինչպէս ծանօթանում են տղամարդիկ. ինչ պատճառով ամօթ պիտի լինի որ կինը իմանայ թէ ինչպէս է կատարվում մարսողութիւնը։ Յիշում էք, Արծրունին էլ իր առաջին յօդուածում ասում էր. «Ինչո՞ւ է ամօթ աղջկայ ձեռքը տալ Անատոմիա կամ Ֆիզիօլօգիա, ինչո՞ւ էք կարծում, որ աղջկերքը պէտք է տգէտ մնան»...

Կանգնած այս երեւոյթի առաջ, մենք մեզ հարց ենք տալիս. ինչ է սա ցոյց տալիս։ Ցոյց չէ՞ տալիս արդեօք թէ Արծրունին արտագրում էր Պիսարեվի մտքերը և իբրև սեփական մտքեր մատուցանում էր հայ հասարակութեան։

Ո՛չ, ընթերցող։ Այսպիսի վճիռ կայացնել չէ կարելի։

Մենք կարող ենք ասել թէ Արծրունին կրթվել ու դաստիարակվել է այն գաղափարների ու սկզբունքների վրա, որոնց արտայայտողը եղել է Պիսարեվը իբրև այն ժամանակվայ երիտասարդութեան ներկայացուցիչ։ Մենք կարող ենք ասել որ Արծրունին, իր ժամանակակիցների պէս, յափշտակութեամբ կարդացել է Պիսարեվի գրուածքները, եղել է նրանց ազդեցութեան տակ։ Կարող ենք այն էլ ասել որ այդ ազդեցութիւնը մեծ դեր է կատարել նրա կեանքի այն

շրջանում, երբ նա գաղափարներ և սկզբունքներ էր իւրացնում։ Այս բոլորը շատ ճիշտ կը լինի։ Բայց այս բոլորը դեռ չէ նշանակում թէ Արծրունին Գրիբոեդովի ընդօրինակողն էր. նա բոլորովին անկախ, ինքնուրոյն մտածող էր։

Ոչինչ տպաւորութիւն չէր թողնի Արծրունին, եթէ Գրիբոեդովի թարգմանիչը հանդիսանար մեզանում, եթէ չունենար իր սեփական դատողութիւնը, վերլուծութիւնը, պաշարը։ Ինչպէս տեսանք և դեռ կը տեսնենք, նա խոր տպաւորութիւն էր թողնում իր գրուածքներով և այդ՝ գլխաւորապէս մեր համալսարանական երիտասարդութեան վրա, որ, ի հարկէ, շատ լաւ ծանօթ էր և Գրիբոեդովի հետ, ուրեմն և կարող էր հեշտ նկատել թէ Արծրունին ուրիշի մտքերն է կրկնում, առանց սեփականն ունենալու։

Եւ մի՞թէ հնարաւոր է դառնալ մի օտարազգի հրապարակախօսի պատճէն։ Ո՛չ, դա անհնարին է, որովհետև չէ կարող լինել այնպիսի հրապարակախօսութիւն, որ կապված չը լինի այն ազգի կեանքի հետ, ուր նա գործում է, որ չը կերակրվէ այն իրականութիւնից, որին նա նուիրվել է ուզում։ Բաւական չէ որ մենք միմեանց կողքի դնենք ռուս Գրիբոեդովին և հայ Արծրունուն։ Մենք պէտք

երկու ժողովուրդներն էլ դնենք իրար մօտ։

Եւ ինչ համեմատութիւն կարող է լինել ռուս և հայ կեանքի մէջ։ Ռուսները ունէին մեծ գրականութիւն՝ փառաւորված անուն-ների մի երկար շարքով, ունէին համալսա-րաններ, բարեկարգ դպրոցների մեծ թիւ, հարուստ մամուլ, աչքի ընկնող գրողների բազմութիւն, հասարակական և կուլտուրա-կան հարցեր, բանակներ, ուղղութիւններ։ Իսկ մենք, ինչ ունէինք մենք։ Մենք դեռ սխօլաստիկներ էինք, տիրացու ազգասէրներ և մեր անցեալում միայն մի «Հիւսիսափայլ» ունէինք, այն էլ մեր անտարբերութեան, մեր թշնամութեան զոհված, կէս-կուշտ կէս-քաղցած «Հիւսիսափայլ»։ Գրականութիւն չունէինք, մեզանում 100—200 բաժանորդով էր լրագիր կամ ամսագիր ապրում։

Այդքան տարբեր հասարակութիւնների մէջ հրապարակախօսութիւնը չէր կարող մի և նոյն նպատակներն ունենալ, մի և նոյն ճանապարհներն ընտրել։ Պիսարեվը խիստ քննութեան էր ենթարկում ռուսաց համալ-սարանական կրթութիւնը. Արծրունին չէր կարող նոյնը անել, քանի որ մի ռուսի հա-մար մեծ պակասութիւններ ունեցող համա-լսարանը հայի համար շատ լաւ էր։ Եւ Արծ-րունին, պահանջելով որ նոր սերունդը ա-

զատված լինի տաճկական բռնակալ ընտանիքի սպանող ազդեցութիւնից, չէր ուզում որ համալսարան հիմնվի մեր երկրում, որպէսզի երիտասարդութիւնը դիմէ օտար երկիրներ, Ռուսաստան և արտասահման, բացվելու, զարգանալու համար։ Արծրունին տեսնում էր որ հայը կարող է մեծ դահլիճ վարձել, պահարաններ առնել, բայց չէ կարող դրամոցից ժողովրդական գրադարան կազմել, քանի որ չը կայ ամենագլխաւորը—գիրքը։ Պիսարեվին այսպիսի դժբախտ իրողութիւն չէր կարող տանջել։ «Գրականութիւն չը կայ» յօդուածը Արծրունին կարող էր գրել և ոչ թէ Պիսարեվը, որովհետև միայն հայ հրապարակախօսի առջև էր արձանացած այն հրէշաւոր երևոյթը, որ մայրենի լեզուն սովորվում է, գործ է ածվում իբրև ազգասիրութեան նըշան, որ ոչ ոք հարկաւոր չէ համարում այդ լեզուն գործ ածել թէ սեփական օգտի և թէ հասարակաց օգտի համար։

Եւ այսպէս մի շարք առանձնայատկութիւններ։ Մեզանում ամեն ինչ դեռ պէտք էր սկսել այբուբենից, տարրականից։ Պիսարեվը, անշուշտ, կը ծիծաղէր, եթէ նրան առաջարկէին գրել մի այնպիսի յօդուած, որի մէջ պէտք լինէր ապացուցանել թէ երբ 500 հազարից բաղկացած մի ժողովուրդ այնքան

բաժանորդ չէ տալիս իր միակ ամսագրին, որ նա կարողանայ մի քիչ շունչ քաշել, ընդարձակվել, դա նշանակում է որ այդ ազգը կարդալու պահանջ չունի։ Ինչո՞ւ կը ծիծաղէր Պիսարեվը։—Որովհետեւ այդ բանը չափազանց տարրական հասկացողութիւն կը համարէր իր ժողովրդի համար, չափազանց անտեղի ժամավաճառութիւն։ Իսկ մեզանում դա շատ հարկաւոր էր. մեզանում այդ իրողութիւնը հաստատելու համար պէտք էր դիմել քաղաքական տնտեսութեան էլ, բերել այնտեղից օրինակներ՝ փոխանակութեան էութիւնը հասկացնելու համար։ Եւ մեզ համար դա շատ հետաքրքրական, շատ շահագրգռող նորութիւն էր։ Մեր գրողը ընթերցող չէր գտնում։ Եւ եթէ նա այդ բանի վրա սկսէր դատողութիւններ անել, հասկանալի՛ կը լինէր դա Պիսարեվի համար, այն Պիսարեվի, որ տեսնում էր իր առջև ոչ միայն սոսկ ընթերցողներ, այլ և ջերմ երկրպագուներ, որոնք ոչ միայն կարդում են, այլ և յափշտակվում են, միանում ձուլվում են գրողի հետ, ստեղծում են նրա համար հեղինակութիւն, տիրապետութիւն...

Ո՛չ, մենք ջոկ էինք և ջոկ պիտի լինէր մեր հրապարակախօսը։ Մենք մեր առանձին խաւարն ունէինք, մեր առա՛նձին ցաւերն ու

պակասութիւնները և մտքի արտայայտութիւնն էլ մեզանում պիտի յարմարվէր մեր գործերի ընթացքին, նրանց հետ քայլէր։

Այսպէս, ուրեմն, ընդհանուր սկզբունքների, ղեկավարող հիմնական գաղափարների շրջանում է Արծրունին այնքան մօտենում Պիսարեվին, որ մեզ թւում է թէ նրա մտքերն է կրկնում։ Եւ մենակ Պիսարեվին։ Կարելի չէ ասել թէ Պիսարեվը ստեղծեց ժամանակը, այլ պէտք է ասել թէ ժամանակը ստեղծեց Պիսարեվին։ Տաղանդաւոր ռուս երիտասարդը ժողովրդականացնում էր արեմտեան գիտութիւնը, խօսում էր իր ժամանակի առաջաւոր մարդկանց խօսքերով։ Ահա նա փառաբանում է աշխատանքը․ բայց մի՞թէ դա նրա սեփական գիւտն է․ մի և նոյնը, և աւելի սիրուն ու ուժեղ կերպով անում է ֆրանսիացի Էդմոնդ Աբուն, և Արծրունին սրան էլ է դիմում։ Կանանց կրթութեան նուիրված յօդուածում մեզ զարմացնում է Արծրունու նմանութիւնը Պիսարեվին։ Բայց մի քիչ ուշադրութեամբ նայեցէք, և դուք կը տեսնէք որ այդտեղ Արծրունին իր տեսութիւնները հիմնում է Կարլ Ֆօխտի, Բօկլի և ուրիշ հեղինակութիւնների վրա, այսինքն այն աղբիւրների վրա, որանց դիմում էր և Պիսարեվը։ Նշանաւոր է որ միայն մի տեղ

է Արծրունին վկայութիւն բերում Պիսարեվից («Երկուսից որն է լաւը»), այն էլ նրան հերքելու համար։ Ինչպէս գիտենք, Պիսարեվը պահանջում էր դէն գցել Պօլ դը-Կօկի և Դիւմաների վէպերը իբրև անբարոյականացնող գրքեր։ Իսկ Արծրունին ասում էր, ո՛չ, չը պէտք է դէն գցել, արգելել. Թոյլ տուէք ազատ կարդալ՝ կեանքի բացասական կողմերի հետ ծանօթանալու համար. անբարոյականութիւնը հեղինակները չեն ստեղծում, այլ կեանքը, իսկ մենք պարտաւոր ենք ճանաչել կեանքը։

Այստեղ մենք տեսնում ենք հայեացքների հիմնական տարբերութիւն, գեղարուեստի վերաբերմամբ։ Մինչդեռ Պիսարեվը չափազանց բացասաբար էր վերաբերվում վիպագրութեան և յայտնի երգիծաբան Շչեդրինի մասին ասում էր թէ նա աւելի օգուտ կը տար իր ժողովրդին, եթէ թողնէր երգիծաբանութիւնը և ժողովրդականացնէր գիտութիւնները,—Արծրունին ընդունում էր որ գեղարուեստը, ընդհակառակն, շատ հարկաւոր է, քանի որ նա օգուտ է բերում, մի կողմից ցոյց տալով հասարակութեան այն, ինչ չը կայ, բայց ինչին պէտք է ձգտել հասնել, միւս կողմից նկարագրում է այն, ինչ

կայ, բայց նը պիտի լինի իբրև անբարոյականութիւն, իբրև ապականութիւն։

Այսպէս ուրեմն, կատարեալ ինքնուրոյնութիւնը Արծրունու մէջ անուրանալի է, թէև նրա մի քանի յօդուածների մէջ— կրկնում ենք մի քանիսի մէջ միայն—երևում է Գրիգորեվի ազդեցութիւնը։ Քանի որ Արծրունին ուսանող էր Ռուսաստանում, այդ ազդեցութիւնը և' հասկանալի էր, և' բնական, ինչպէս այն, որ Գրիգորևին էլ Չէրնիշեվսկու և Դօբրօլիւբօվի ազդեցութեան տակ էր զարգացել։ Բայց Եւրոպա անցնելուց յետոյ, նրան կրթողը այլ ևս միայն ռուսաց գրականութիւնը չէր, այլ եւրոպական միտքն ու գրականութիւնը։ Տիրապետելով եւրոպական լեզուներին (ֆրանսերէն և գերմաներէն), լինելով զարմանալի աշխատասէր, արագ ըմբռնող, նա ձեռք է բերում բազմակողմանի զարգացում, մկրտվում է եւրոպականութեան աւազանի մէջ։

Ո՛չ, պատճէն չէր նա, ինքնուրոյնութիւնից, անկախութիւնից զուրկ մի պատճէն. օտար հողի բոյս չէր նա։ Ծնված մեր իրականութիւնից, նա համաշխարհային մտաւոր ծաղկանոցից հիւթեր հաւաքեց և եկաւ մեզ մօտ, մտաւ մեր կեանքի մէջ իբրև անձնուէր մշակ։ Ի՞նչ կը դառնար նա, եթէ,

դիցուք, ռուս հասարակութեան նման մի միջավայրում աշխատելու լինէր,—չը գիտենք։ Գիտենք այն, որ նա հայկական ցաւերի ու կարիքների համար էր պատրաստուած։ Նա տեսնում էր ոչ միայն Պիսարեվին, այլ և սրանից անհամեմատ աւելի բարձր մտաւոր գործիչներին և որքան շատ էր տեսնում այդպիսիններին, որքան գերմանական հռչակաւոր պրոֆէսօրների դասախօսութիւնները լայնացնում էին հորիզոնները նրա մտքի առաջ, այնքան աւելի խիստ էր նա զգում իր հայրենի երկրի, իր ազգի ամբողջ դժբախտութիւնը։ Նրա աչքից հեռաւոր օտարութեան մէջ էլ չէր խուսափում մեր իրականութիւնը։ Եւ ահա այդ իրականութեան ցաւերից մէկն է խօսում նրա «Շարունակե՞նք թէ ոչ» յօդուածի մէջ, որ տպվեց 1868-ին «Մեղու» լրագրում (№ 35)։

Այստեղ Արծրունին շարունակում է քըննադատութիւն, հասարակական կարծիք որոնողը մնալ։ Որոնում է նա, բայց միայն մըռայլ ու յուսահատ դատարկութիւն է գըտնում։ Շարունակե՞նք թէ ոչ, հարցնում նա։ Ի՞նչը։—Գրելը։ Ահա մի հարց, որ ճիշտ որ պիտի կանգնեցնէր հայ երիտասարդին։ Գրել, բայց ինչո՞ւ, ո՞ւմ համար։

Չորս տարի առաջ—ասում է նա—մենք ուսանողներս հաւաքված էինք մի փոքր սենեակում. խօսակցուԹիւնը մեր հայկական օրագրուԹիւնների վերա էր։—Ո՛չ, պարոններ, ասաց ուսանողներից մինը, ես այժմ տեսնում եմ, որ մենք սխալվեցանք սկսելով յօդուածներ հրատարակել հայկական օրագիրների մէջ. միայն այն մարդն ունի իրաւունք յօդուածներ գրելու, որը վստահ լինելով իր զարգացման վերա, կարող է ժողովրդի հասկացողուԹեան յարմար յօդուածներ առաջարկել։

Ինքն ըստ ինքեան անսխալ չէ այս միտքը։ Բայց ցաւն այն է, որ այդ խօսքերը շատ յաճախ վարագոյր են դառնում, որի ետեւում Թագնվում է անկարողուԹիւնը, ծուլուԹիւնը. Թագնվում է շատ յաճախ և այն մտաւոր տափակուԹիւնը, որ ինքը չէ անում և չէր ուզի որ ուրիշներն էլ անեն։ Արծրունուն չէր կարող բաւարարուԹիւն տալ այդ չափը։ Վստահ լինել իր զարգացման վրա։ Բայց ո՞րն է այդ զարգացումը. ի՞նչպէս չափել նրան։

Ես—ասում է Արծրունին—չեմ ընդունում իմ համալսարանական ուսումի աւարտելը ինչպէս իմ զարգացման ապացոյց. ես չեմ կարծում նոյնպէս, որ ուսումս աւարտելով ես անպատճառ կհամոզվեմ, որ բաւական զարգացել եմ, որ հասել եմ վերջապէս այն բօպէին, երբ իրաւունք ունիմ գրականական գործունէուԹիւն սկսել... Մենք իրողուԹիւններ ենք տեսնում, որ հայրենիք վերադարձած ուսում-

նաւարտ երիտասարդներից շատերը, թէ բժիշկներ, թէ իրաւաբաններ, թէ բնագէտներ՝ այնքան թոյլ, երեխայական զարգացում ունին, որ ոչ թէ միայն գրել չեն կարող մի օրինաւոր յօդուած, այլ խօսակցութեան մէջ եւս չեն կարող որոշ մէկ միտք յայտնել։ Նոցա սովորական խօսակցութեան պարունակութիւնը անվայելուչ բաներ են կամ հայհոյանք։ Դուք ինքներդ շատ անգամ տեսած կլինէք, ինչպէս մեր Թիֆլիսի լուսաւորեալ մարդիկ, ուսում աւարտածներից կամ չաւարտածներից, երբ որ դուք նոցա հետ ծանր խօսակցութիւն էք սկսում, գարձնում են իրանց խօսքը թեթեւ եւ կեղտոտ բաների վերա։

*Այս տողերը շատ լաւ ցոյց են տալիս որ Արծրունին դեռ պատանեկութիւնից ճանաչել էր մեր ինտելիգենցիան, գիտէր թէ ինչ են ներկայացնում մեր ուսուցիչները, նոյն իսկ համալսարանականները։ Եւ կարող ենք ասել թէ նա լաւ չէր ճանաչում, քանի որ նրա բերած գծերը իրողութիւն են ոչ միայն այն ժամանակի, այլ և ներկայի համար։*

Ուրեմն ինչ անենք,—շարունակում է նա։— ... Գրե՛նք եւ թո՛ղ դատէ հասարակութիւնը։ Հասարակութի՜ւն. ինչ հասարակութիւն. կա՛յ արդեօք հայկական հասարակութիւն։ Հասարակութիւն, որ կազմված է ուսում չաւարտած ուսանողներից, նիւթապաշտ, տհաս, անհոգ մարդերից եւ անուս կնամարդերից, որոնք կարծել են թէ եւրօպական կրթված կին կոչվելու համար՝ բաւական է միայն եւրօպա-

կան զգեստներ հագնել։ Ի՞նչ հասարակութիւն… Ե՞րբ ես տեսել, որ մի տպած յօդուածի վերա հայն իր միտքը յայտնէ, դատողութիւն անէ, մտքի մէջ պակասութիւններ եւ արժանաւորութիւններ տեսնէր։ Փոխանակ կրիտիկայի նա կարող է հայհոյել—այդ նորա բանն է։

***Ուրեմն ինչ է մնում անել մի այսպիսի ժողովրդի մէջ։ Մի քանիսներն ասում են թէ իրաւունք չունինք գրելու, միւսները պնդում են թէ ունինք, թող ամեն մէկը գրէ, թող հասարակութիւնը դատէ։***

Ես համաձայն չեմ այն մտքի հետ—շարունակում է Արծրունին—թէ գրողը պիտի քարոզիչ լինի։ Ո՛չ, թէպէտ եւ գրողը պիտի ունենայ մի հաստատ ուղղութիւն, պիտի ունենայ իւր սեպհական կարծիքը, պինդ պինդ պաշտպանէ իւր մտքերը,—բայց մի եւ նոյն ժամանակ նա պիտի հասարակութիւնից եւս սպասէ օգնութիւն, կրիտիկա պիտի սպասէ, որ հասարակութիւնը ուղղէ, դրստէ նորա յօդուածների պակասութիւնը։

***Հասարակական գիտակցութիւն, հասարակական կարծիք, հրապարակական կրիտիկա—ահա ինչ է ուզում Արծրունին հայ ժողովրդից։ Նա չէ ուզում քարոզիչ լինել, այսինքն ամբիոնի վրա բարձրացած մի մարդ, որի խօսքերը լսում է բազմութիւնը առանց քննադատելու, լոկ իբրև ունկնդիր։ Այդպիսի***

քարոզ և այդպիսի ունկնդիրներ լինում են միայն եկեղեցում, մինչդեռ հասարակական մամուլը այն ասպարեզն է, ուր պիտի կարծիքներ փոխանակէին, ուր մտքերի ընդհարում պիտի տեղի ունենայ։

Բայց չը կարծենք թէ Արծրունին, այսպիսի պահանջներ անելով, չէր ճանաչում հայ ժողովուրդը։ Ահա նա վերլուծում է ժողովուրդ կազմող տարրերը. և դասաւորում է նրանց այսպէս.

Կարդալ ու գրել չիմացողներ (ստորին ժողովուրդը և այլն)։

Վաճառականներ և արհեստաւորներ։

Երկրորդական ուսումնարանների կամ գիմնազիօնների աշակերտներ։

Համալսարանների ուսանողներ, համալսարանների մէջ ուսում աւարտածներ և չաւարտածներ։

Անուս կնամարդիկ։

Եւ վերջապէս եկեղեցականներ։

Այնուհետև նա մի առ մի քննում է այդ տարրերը և հասնում է այսպիսի եզրակացութիւնների։ Կարդալ-գրել չիմացողը, ի հարկէ, դատել չէ կարող։ Վաճառականներն ու արհեստաւորները բացի օրացոյցից ու էֆէմէրտիից ոչինչ չեն կարդում։ Մինչդեռ կարդացողը պիտի իմանար լեզուն, պիտի զար-

գացած լինի, որ կարողանայ վճռել թէ յարմա՞ր են արդեօք կամ ընդդէմ են հայոց ազգի ոգուն յօդուածի մէջ յայտնած մտքերը։ Երկրորդական ուսումնարանների և գիմնազիօնների աշակերտներից շատերը «իւրանց լեզուն չգիտեն», աշակերտ են, դեռ իրանք պիտի սովորեն։ Ուսանողները չեն կարող կարդացողներ լինել, որովհետև չէ կարելի ասել թէ մեր ուսանողները զարգացած մարդիկ լինէին։ Ուսում աւարտածները, հայրենիք վերադառնալով, հազիւ գործ են գտնում։ Եւ գործ տուողը հասարակութիւնը չէ, «հասարակութիւնը աշխատանք չէ տալիս ուսում առած մարդերին,—ուրեմն կարելի՞ է, որ ուսում առած մարդիկը հասարակական հարցերով հետաքրքրվեն։ Հասարակութեան համար օտար մնալով, իւրանց հասարակութիւնը ևս իւրանց համար օտար են համարում»։

Ո՞վ մնաց։ Միայն եկեղեցականները։ Դրանք ճիշտ որ շփվում են ժողովրդի հետ, ծանօթ են նորա պահանջներին և եթէ աւելի զարգացած, հիմնաւոր ուսում ստացած լինէին, «միակ դասն են հասարակութեան մէջ, որի անդամների վերա գրողը իրաւունք կունենար նայել, որպէս իր գրուածների բնական դատաւորների վերա»։

Զարգացած, հիմնաւոր ուսում ստացած։ Ե՞րբ պիտի հայ հոգևորականը հասնէր այդ վիճակին։ Եւ Արծրունին աւելացնում էր. «Բայց մինչև այն ժամանակ չարունակե՞նք թէ ոչ»։

Այս հարցին նա չէ պատասխանում։ Բայց հարկաւո՞ր է պատասխան, ինքն ըստ ինքեան չէ՞ ստացվում արդեօք պատասխանը։

Արծրունու գծագրած պատկերը դարձեալ միևնոյն հանգամանքներն է պարզում։ Չը կայ պահանջների տէր, քննողի, դատողի դեր ստանձնելու արժանաւորութիւնն ունեցող հասարակութիւն. չը կայ զարգացած, ընդունակ, հասարակական շահերին նուիրված ինտելլիգենցիա։ Բոլոր հանգամանքները այն են ցոյց տալիս, որ չը պէտք է գրել։ Բայց հեշտ է մի այսպիսի վճիռ կայացնելը և մանաւանդ կատարելը։ Ի՞նչ անել ժամանակի այն պատգամի դիմաց, որ կարգադրում էր «կամ ոչնչանալ անշարժ մնալով, կամ առաջ գնալ և երջանկութիւն որոնել քաղաքակրթութեան մէջ»։ Դրութիւնը ցոյց էր տալիս որ մեզ պէս մի ժողովրդի վերաբերմամբ դրած հարցին պէտք է պատասխանել. «Այո՛, շարունակենք»։ Շարունակենք, որովհետև զարգացած, քննելու ընդունակ հասարակութիւն երկնքից չը պիտի ընկնէ, այլ պիտի ստեղծ-

վի կամաց-կամաց, աստիճանաբար։ Հասարակական իդէալներ, ճիշտ է, չը կան, մենք օրացոյցի և էֆէմէրտիի մարդիկ ենք։ Բայց որտեղից պիտի գային այդ իդէալները, եթէ ոչ գրչից ու խօսքից։ Շարունակենք, այո։

1868 թւին տպված յօդուածներից վերջինը կրում է «Ինչի՞ չենք հիմնում» վերնագիրը և զետեղված է «Հայկական Աշխարհի» Նոյեմբերի համարում։ Հիմնելի բանը պիտի լինէր մի մեծ ընկերութիւն, որի հաշւով բարձրագոյն ուսում կառնէին երիտասարդները։ Միտքը նոր չէր. նոյնը վեց տարի առաջ, 1862-ին, առաջարկել էր Ստեփանոս Նազարեանցը «Հիւսիսափայլի» մէջ *)։ Արծրունին նոյն իսկ ընկերութեան կազմակերպութեան գործում հեռու չէր գնացել Նազարեանցից. նա էլ կարծում էր թէ կարելի է հայերի մեծամասնութիւնը անդամ դարձնել այդ ընկերութեան։ Նա հաշւում էր որ հազարներով կը լինեն այնպիսի մարդիկ, որոնք չեն կարողանում իրանց որդիներին բարձրագոյն ուսում տալ, բայց այնքան աղքատ չեն որ տարին 25 ռուբլի չը կարողանան տալ ընկերութեան։ Այդպիսով կազմվում է մի խոշոր դրամագլուխ, որի տոկոս-

*) Տես իմ «Ստեփանոս Նազարեանց», II հ., եր. 171։

ներով տարին 166 ուսանող կարող են սովորել։ Ուսանողներին օգնող ընկերութիւնը կարող է գրքեր էլ, մանաւանդ դասագրքեր, տպել։

Հետաքրքրականը այնքան այդ ընկերութիւնը չէ, որ չիրագործվեց և չէր էլ կարող իրագործվել, որքան այն պատճառաբանութիւնները, որոնք այսպիսի մի հիմնարկութեան անհրաժեշտութիւնն էին ցոյց տալիս։

Նազարեանցը իր առաջարկութիւնը բացատրում էր քաղաքակրթական և դաստիարակչական նպատակներով։ Ընկերութիւնը նախ և առաջ կը մարմնացնէր ինքնօգնութեան գաղափարը, որից զուրկ են հայերը, և երկրորդ՝ օգտա՛կար, պատրաստված գործիչներ կը տար մեզ։ Արծրունին էլ նոյն օգուտներն էր նախատեսում ընկերութիւնից, բայց նա անհրաժեշտութիւնը հիմնում էր գլխաւորապէս տնտեսական-արդիւնաբերական հողի վրա։

Նա սկսում էր իր յօդուածը այն անբնական և ոչ ցանկալի երեւոյթից, որ հայերի մէջ ամեն բան թողնված է հարուստներին։ Մի գործ սկսելու համար հայերը ստորագրութիւն են բաց անում։ Եւ ո՞վ է ստորագրվողը։
—Միշտ հարուստը։ Ամեն դէպքում հարուս-

*տը պիտի անէ, ամեն անգամ նրան են դի-մում։*

Այդ կերպով հասարակութիւնը սովորում է հարուստների վերա նայել, ինչպէս հասարակութեան ամենահարկաւոր անդամների վերա։ Եւ աղքատ մարդիկներից շատերը, թէեւ ընդունակ, ուսումն առած լինելով, ազգային գործի մէջ հասարակութեան աւելորդ անդամներ են համարում իւրանց։

*Եւ հասարակութիւնը միշտ հարուստներից է կախված։ Հարուստը տալիս է փող, այդ փողը իսկոյն ծախսվում է և երբ հարկաւոր է մի նոր գործ, մի նոր ժողովարարութիւն, դարձեալ նրան են դիմում։*

Հարուստները փքվում են, հասկանալով որ հասարակութիւնը ոչինչ չէ կարող, կամ ոչինչ չէ իմանում անել առանց նոցա օգնութեան, իսկ անհոգ հասարակութիւնը ոչինչ բանի տեղ չդնելով իւր սեփական հասկացողութիւն եւ զօրութիւնները, — նայում է հարուստների վերա ինչպէս իւր փրկիչների, իւր աստուածների վերա, նոցանից է սպասում ամէն կարելի եւ անկարելի գործեր։

*Այդպիսի դրութեան մէջ երկար չէ կարող մնալ մի հասարակութիւն։ «Այն հասարակութիւնը, որ միշտ բարերարութիւն է սպասում, նա իրաւունք չունի իւրան հասարակութիւն անուանել. բարերարութիւն*

*ապասելը նշանակում է մուրալ։ Ուրեմն հասարակութիւնը պիտի գործէ ինքօգնութեան, հաւաքական գործունէութեան միջոցներով։ Առանց այդպիսի ընկերական գործունէութեան մենք չենք կարող ապրել նոյն իսկ իբրև վաճառական, թէև մեր մասին կազմվել է այն համբաւը թէ վաճառական ազգ ենք։*

*Ճիշտ չէ որ մենք վաճառական ազգ ենք։*

Այո՛, մենք վաճառականութեամբ ենք պարապում, մենք առնում ենք եւ ծախում ենք, վաճառականութենից շահվում ենք,—բայց միթէ այնպիսի ազգին, որ միայն առնում է եւ ծախում է, իսկ ինքն ոչինչ չէ արդիւնաբերում, կարելի է վաճառականական ազգ անուանել։

*Նոր-Նախիջևանի օրինակը բերելով, Արծրունին ասում էր, որ հայերը չուտով կը զրկվեն և առևտրական միջնորդների դերից։ Նոր-Նախիջևանցին Մոսկվայում ապրանք էր առնում և բերում իր քաղաքը, ծախում. այժմ Մոսկվայի արդիւնաբերող վաճառականը աւելի ձեռնտու է համարում բաց անել իր պահեստները Նոր-Նախիջևանում, ինքը ծախել իր ապրանքը։ Միջնորդներ, ուրեմն, այլ ևս հարկաւոր չեն. հայը պէտք է հեռանայ ասպարէզից։*

Նոյն իսկ կպատահէ եւ կովկասեան հայ վաճառականութեան հետ։

Կովկասի բոլոր հարստուԹիւններից մենք շատ քիչ օգուտ ենք քաղում։ Եւ եԹէ արդիւնքների մի քանիսներից օգուտ ենք քաղում, եԹէ քանի մի արդիւնքները պատրաստում ենք,—դարձեալ այնքան օգուտ չենք իմանում քաղել, եւ այն կատարելուԹեանը չենք հասնիլ, որքան օգուտ են քաղում եւ որ աստիճանի կատարելագործուԹեանը օտարազգիներ են հասել, իւրանց արդիւնքներ պատրաստելում։

*Այդ խրողուԹիւնը նա հաստատում է գերմանացի Պէտցօլդի մի հետազօտուԹեան մէջ լոյս հանած փաստերով, որոնք վերաբերվում էին տորոնի մշակուԹեան։ Հէնց որ տորոնի գինը բարձրացաւ Ռուսաստանում, ամենքը Թափվեցին այդ գործի վրա։ «Ջինուորականներ, զանազան աստիճանների պաշտօնեաներ, վաճառականներ, շինականներ, այրի կանայք, առանց կարողուԹեան մարդիկ,—ագարակ էին առնում վարձով, գործին հարկաւոր գումարը վաշխառուԹեամբ էին մեծացնում, որ կարողանան մասնակից լինել այն մեծ շահին, որ առաջարկում էր տորոնի գործը»։ Հետեւանքը այն եղաւ, որ արդիւնագործուԹիւնը չափից դուրս զարգացաւ, իսկ պահանջը պակասեց, գները ընկան և այն բոլոր գործողները, որոնք դրամատէրեր չէին, սնանկացան։*

Ուրեմն—շարունակում է Արծրունին—մենք

տեսնում ենք որ ոչինչ բանից օգուտ չենք իմանում քաղել, ամէն գործի մէջ վնասվում ենք մեր տգիտութեան պատճառով:

Գլխաւոր պահանջմունք է մեզ համար ուրեմն տարածել գիտութիւն մեր մէջ, մեր գործնական աշխատանք օրինաւոր կերպով կատարելու համար: Եթէ ոչ, երբ կշինվեն մեր երկրում երկաթուղիներ, երբ մեր երկիրը աւելի յայտնի կլինի եւրոպացիներին, նորա կգան մեր երկիրը, կհիմնեն գործարաններ, եւ գիտնական մարդիկ լինելով, իւրանց գումարներ մեզանից լաւ կառավարել գիտենալով, մեր բնական արդիւնքները կպատրաստեն առաւել մեծ քանակութեամբ, առաւել մաքուր, առաւել առողջ, վաճառաշահութեան առաւել յարմար արդիւնքները: Այնպէս որ Հայերին խնդրակցութիւն (մրցակցութիւն?) կանեն, Հայերի ձեռից գումարները կխլեն: Հարկաւոր է ուրեմն աշխատել Հայերի մէջ գիտութիւն տարածելու, գործնական աշխատանքին ընդունակ մարդիկ պատրաստելու:

**Ահա ինչու է հարկաւոր ուսանողներին օգնող ընկերութիւնը: «Այն երիտասարդները, որոնք ձեր ծախսով ուսում կառնեն, երբ յետ կդառնան, ձեր գործին օգուտ կբերեն, ձեր գործանոցները, կամ ձեր վաճառականական գործերը, կամ երկրագործութեան արվեստը օրինաւոր կերպով կառավարելով»:**

**Մեր մամուլի մէջ էլ մտնում էր գործնական կեանքը՝ իրական պահանջները, տընտեսական շահերը գլուխ էին բարձրացնում**

մեր առաջ, ուշադրութիւն էին գրաւում, իրանց անհագին կարեւորութիւնն էին ցոյց տալիս։ Այդ նոր հոսանքը բերողը Գրիգոր Արծրունին էր։ Նրանից առաջ հայ մամուլը եկեղեցու, դպրոցի, դաստիարակութեան շուրջըն էր պտոյտներ անում։ Բայց դա բաւական չէր. մեր քաղաքակրթական առաջադիմութիւնը ունէր ուրիշ շատ խոշոր, շատ առաջնակարգ հարցեր էլ։ Հայ ազգի առջեւ միայն բարոյական վերածնութեան պահանջ չէր դնում ժամանակը։ Բարոյականի հետ գործնական տնտեսական կեանքն էլ պիտի առաջ գնար։ Մեր աշխարհը փիլիսոփայ բարոյագէտների, բանաստեղծների հայրենիք չը պիտի դառնայ միայն, այլ և գիտութեամբ զինուած աշխատանքի, շահագործող ոյժի, տընտեսական մրցութեան ասպարէզ պիտի լինի։ Եւ Արծրունին կանչում էր. պատրաստուեցէք, կազմակերպուեցէք, թէ չէ կը գայ օտարը, ձեզանից աւելի խելօք, աւելի գիտուն, —և կը խլէ ձեր ձեռքի հացը։ Այսպէս աղաղակում, նախազգուշացնում էր նա և յետոյ։ Եւ այսօրվայ մեր տնտեսական կեանքը շատ լաւ ցոյց է տալիս թէ որքան խոր ճըշմարտութիւն կար Արծրունու այդ նախազգուշացումների մէջ։

Օգտակարութիւն և աշխատանք քարոզող

ռէալիստը հետզհետէ էր բաց անում այն, ինչ ունէր տալու իր ազգին։ 1868 թւականի վերջերից նա իր գործունէութեան վրա աւելացնում է և մի նոր ճիւղ։ Ամենայն ուշադրութեամբ և բարեխղճութեամբ նա հաւաքում էր եւրօպական գրականութիւնից և մամուլից հայերին վերաբերվող տեղեկութիւններ և ուղարկում էր «Հայկական Աշխարհին»։ Սկսած այդ ժամանակից ամսագրի «Մեր Ներքին Գործեր» անունով մշտական բաժինը լցվում էր Գրիգոր Արծրունու հաղորդած հետաքրքրական տեղեկութիւններով։ Մենք արդէն տեսանք թէ ինչպէս էր նա հաւաքում այդ տեղեկութիւնները, ինչպէս էր հասկանում Եւրօպայում գտնվող ուսանողի պարտականութիւնը։ Այժմ պէտք է տեսնել թէ ինչ էին այդ տեղեկութիւնները հէնց իր, Արծրունու համար։

Տեղեկութիւնները շատ են, մանր-մունր և խօսել բոլորի մասին անհնարին է։ Հաւաքելով, թարգմանելով տեղեկութիւնները, Արծրունին ոչ միայն հետաքրքրական նիւթ էր տալիս հայ ընթերցողին, այլ և, որ, մեր կարծիքով աւելի նշանաւոր է, ինքն էլ բազմակողմանի կերպով ծանօթանում էր իր ազգի հետ, այդ ազգի ոչ միայն ներկայի, այլ և անցեալի հետ։ Դա մի անհրաժեշտ,

կարևոր պաշար էր, որ ստանում էր հայ հրապարակախօսը։ Արծրունին իր բոլոր նախորդների համեմատութեամբ այն անբարեյաջող հանգամանքի մէջ էր գտնվում, որ կրթութիւն էր ստացել օտար դպրոցում, մէկն էր այն բազմաթիւ հայ երիտասարդներից․ որոնք դպրոցական հասակում հազիւ հազ մի երկու կտոր բան են սովորում հայերէնից՝ այն էլ իսկոյն մոռանալու համար։ Արծրունին, սակայն, բացառութիւն կազմեց․ հետզհետէ վարժվելով հայերէնագիտութեան մէջ։ Բայց դա բաւական չէր, պէտք էր ճանաչել ազգը, պէտք էր ծանօթանալ նրա անցեալի, նրա գրականութեան հետ։ Արծրունին այդ պահանջը լրացնելու համար էլ միջոցներ գտաւ։ Աշխատող մարդու համար, այն մարդու, որ հասկանում է իր կոչումն ու պարտաւորութիւնը, չեն կարող լինել անյաղթելի դժուարութիւններ։

Այսպէս, մենք նկատում ենք, որ Արծրունին առանձին հետաքրքրութեամբ հետևում էր հայագիտութեան գործին Եւրոպայում։ Հին հայ հեղինակների հետ անմիջապէս ծանօթանալու հնարաւորութիւն չէր ունեցել նա, դրա համար պէտք էր գրաբար սովորել։ Բայց ահա հայ մատենագիրները թարգմանվում են ֆրանսերէն, գերմաներէն լեզունե-

րով, եւրոպացի հայագէտները հրատարակում են ուսումնասիրութիւններ հայոց պատմական կեանքի և գրականութեան մասին։ Արծրունին հետևում է այդ բոլոր գործերին, և մեր Ագաթանգեղոսները, Զենոբները, Վարդան պատմիչները նրան անյայտ, անհասկանալի բաներ չեն մնում. նա ճանաչում է դրանց եթէ ոչ մանրամասնօրէն, գոնէ համառօտ կերպով, գլխաւոր կէտերի կողմից։ Միևնոյն ժամանակ, մօտ լինելով Մխիթարեաններին, Արծրունին հետևում էր Վիեննայի և Վենետիկի վանքերի գրականութեան։

Այդ հետաքրքրական բաժինը Արծրունին վարեց մինչև Եւրոպայից հեռանալը։ Բայց նոյն իսկ Թիֆլիսում էլ նա չէր մոռանում հաղորդել «Հայկական Աշխարհի» ընթերցողներին թէ ինչեր են տպվում եւրոպական թերթերում հայերի մասին։

## IV

*Համակրական ցոյցեր։—Համալսարանական երիտասարդների ընթրիք Թիֆլիսում։—«Կեցցեն Արծրունի եղբայրները»։—Դրական հակառակորդների հարցը։—Բարոյականութիւնը ո՞ւմ արտօնութիւնն է։—Օր. Ձուշանիկի նամակը։—Ինչո՞ւ չը կայ հայկական թատրոն։—Անհատների դերը։—Հէյդլբէրգը—Արէնք։—Փիլիսոփայութեան դոկտորը։—Արծրունին Պարիզում եւ Վիեննայում։—Հայերէնի դասեր։—Վիեննայի Միխիթարեան վանքը։—Ֆրանսիացու բնաւորութիւնը։—Հին եւ նոր սերունդ։—Վենետիկայում։—Ս. Ղազար։—Ծերացած ազգ։—Հ. Ալիշան։—Կարելի՞ է սիրել հայ ժողովուրդը։—«Մտքեր յայտնելու իրաւունք»։—Մեր երկրի հարստութիւնները։—Հասարակական կրթութեան գլխաւոր գործօնը։—Մամուլի պակասութիւնները։—Քրիստոնէութիւն եւ մահմեդականութիւն։—«Պուր լա բօն բուշ»։*



*Որքան էլ անմխիթար լինէր մեր իրականութիւնը, որքան էլ խլացած ու մեռած լինէին մեր հոգեւոր պահանջները և որքան էլ հայ գրողը յուսահատութեամբ նայէր իր չորս կողմը, չիմանալով թէ ում համար և ինչու գրել,—կար և այն տխուր հանգաման-*

քը, որ մարդիկ են պակասում մեզ, տաղանդով, եռանդով լցված մարդիկ։ Կեանք չը կար, այո, բայց մեր միջավայրը Սահարայի անապատը չէր, որ ամեն մէկի համար պարզ լինէր թէ զուր է կեանք չարժելու որ և է փորձ անելը։ Չէին սովորում մեզանում, բայց սովորեցնողները միթէ շատ էին։ Ո՛չ, մեզանում էլ կար հետաքրքրութիւն, մեր մարդիկ էլ լսելու կարօտութիւն ունէին։ Այդ մարդիկ, ճիշտ է, շատ չէին, բայց քաղց ու ծարաւ զգում էին, պատրաստ էին համակրութիւններ արտայայտել, ուրախանալ, հրճուել անգամ։ Իսկ մի մեռած մարմին, մի սառն դիակ—եթէ հայ ժողովուրդը սառած դիակ լինէր,—չէ կարող այդպիսի յատկութիւններ ունենալ...

Թէ որքան մեծ էր կարօտութիւնը հայ փոքրաթիւ ընթերցող հասարակութեան մէջ, այդ ցոյց է տալիս «Հայկական Աշխարհը»։ Մի շատ փոքրիկ, բովանդակութեամբ աղքատ ու միակողմանի, վերին աստիճանի անկանոն հրատարակվող ամսագիր էր դա։ Բայց ինչպէս էին սպասում նրան, որքան մեծ հետաքրքրութեամբ էին ձեռք առնում այդ վըտիտ տետրակները։ Մարդ այժմ էլ չէ կարողանում առանց յուզմունքի կարդալ Դերբենտից կամ Մոսկվայից ուղարկած այն տաքե-

քը թէ «Հայկական Աշխարհի» ստացվելուն սպասում էին «անտանելի ակնկալութեամբ», թէ «ինչպէս սուրբ Սարգսի ողջ պասը ծոմապահութեամբ անցկացնողները հացի վերա կընկնեն, այնպէս եւ ես ընկայ «Հայկական Աշխարհի» վրայ»։—Անգամ ընթերցողներ,—ակամայ ասում էք դուք ձեր մտքում.—կը լինէիք դուք, շատ կը լինէիք, եթէ երկինքը մեզ շնորհած լինէր իր կրակով վառված շատ անհատներ։ Բայց երկինքը գթառատ չէր մեր վերաբերմամբ...

Մարդիկ, այո, կային։ Եւ այդ ծարաւներն ու պապակողները չէին կարող ուշադրութիւն չը դարձնել Գրիգոր Արծրունու գրուածքների վրայ։ Ընդամենը մի տարի էր, ինչ երիտասարդ ուսանողը սկսել էր կանոնաւոր գրել, այնքան հեռաւորութիւնից քըրքրել մեր պակասութիւններն ու կարիքները,—և ահա պատրաստ է նրա համար ընթերցողների համակրութիւնը։ «Հայկական Աշխարհի» 1869 թուի առաջին համարը Արծրունի եղբայրների հասցէին ուղղած մի շարք համակրական ցոյցեր է պարունակում իր մէջ։

Ահա Ագուլիսից Մեսրոպ քահանայ Փափազեանը գրում է թէ կարդալով «հայրենասէր պ. Արծրունու «Ինչի՞ չենք հիմնում» ի-

մատալից յօդուածը», ինքը կղացել է մի առաջարկութիւն։ Մի խելացի առաջարկութիւն է դա—հիմնել «Շահաբեր» անունով մի ընկերութիւն, որի նպատակը պիտի լինէր զարգացնել գիւղատնտեսութիւնը, արդիւնաբերութիւնը և արհեստները Հայաստանում։ Քահանայի յօդուածի վերնագիրն է «Եկէք հիմնենք»։

Մի ուրիշը, «Ռուսաստանում դաստիարակված հայ երիտասարդ» անունով, նոյն Ագուլիսից ուղարկում է մի պատասխան Արծրունու «Գրականութիւն չը կայ» յօդուածի դէմ։ Պատասխանը չէ տպագրվում «Հայկական Աշխարհի» մէջ *), բայց խմբագրութեան ուղղած նամակից իմանում ենք որ «Հայ երիտասարդը» չատ դժգոհ է մնացել «Գրականութիւն չը կայ» յօդուածից, քանի որ, ասում է նա, «այսպիսի համոզմունքը տարածվելով կարող են վնաս պատճառել մեր ամեն տեսակ տարրերից գոյացած հասարակութիւններին, որոնց մեծ մասը գիտութիւնները միայն կ ո պ ի տ ն ի ւ թ ա կ ա ն ի համար են սիրում»։ Սակայն յետոյ, կարդալով Արծրունու «Իդէալիստներ» յօդուածը, «Հայ երիտասարդը» փոխել է իր կարծիքը առաջին

*) Խմբագրութիւնից անկախ պատճառներով։

յօղուածի մասին և ամբլացնում էր իր նամակին հետևեալ տողերը.

Այս նամակով ես չեմ կարող չուղարկել արտասահման իմ անկեղծ շնորհակալութիւնը պ. Գր. Արծրունուն, որ այսպիսի հետաքրքիր եւ կենդանի հարցեր է յարուցանում մեր աղքատիկ հասարակական կեանքին վերաբերված։

Երրորդ ցոյցը աւելի նշանաւոր է։ 1869 թւի յունվարի 12-ին, երեկոյեան, Մօսկվայի համալսարանի նախկին ուսանողները Թիֆլիսում հաւաքվում են մի մասնաւոր տան մէջ՝ ընկերական ընթրիքով համալսարանի տարեդարձը յիշատակելու համար (Տատեանայի օրը)։ Դրանց միանում են և Պետերբուրգի համալսարանի մի քանի նախկին ուսանողներ. կազմվում է 20 մարդկանց մի ընկերակցութիւն։

Բազմած սեղանի չորս կողմը—գրում է մասնակցողներից մէկը,—ուրախ-ուրախ անց էին կացնում ժամանակը, զրուցում էին, վիճում էին եւ կենաց Թասեր խմում... մի խօսքով քէֆ էին անում եւ սրտերը պարզացրած,—մի կողմը դնելով իւրաքանչիւրը իւր անձնական յատկութիւնները,—բարեկամաբար յայտնում էին իւրանց բարի ցանկութիւնները եւ ունեցած յոյսերը...

Այդ գաղափարական խօսակցութեան մէջ երիտասարդ համալսարանականները յիշում են բացակայ եղողներին։ «Ուստի ներկայ

*գոնվողներից մինը կենաց Թասը տաւաջար-կեց, և ամենքը սիրալիր կերպով ընդունե-ցին եւ կեցցէներ գոչեցին։ Այդ կենաց Թա-սը տաւաջարկվեցաւ «Հայկական Աշխարհի» արգիւնաւոր աշխատակիցների Գ. և Ա. Արծ-րունիներին»...*

Այս կենաց Թասի Թէ առաջարկելն եւ Թէ ամեն-քի կողմից սիրալիր ընդունելուԹիւնը նման չէ այն կենաց Թասին, որ առհասարակ մարդիկ առաջար-կում են իւրանց ազգականների եւ մասնաւոր բա-րեկամների հեռանալու պատճառով։ Ոչ, մասնաւոր բան չէ սա, այլ սակաւաԹիւ ամբողջի մի արտա-յայտված զգացմունք։ Ես կամենում եմ ասել, Թէ այս մի փոքր բանը ցոյց է տալի, որ մեր խեղճ դրականուԹեան մէջ աշխատաւոր—ազնիւ երիտա-սարդների գործունէուԹեանք համակրող եւ պատ-վողներն եւս պակաս չեն, Թէպէտ այդ համակրող-ների Թիւը քիչ է։ Արդարեւ շատ ախորժելի էր խը-մել այդ ազնիւ երիտասարդների կենաց լի Թասը, նամանաւանդ որ նոքա խոստանում են, ինչպէս կարդացինք օրագրումը, շարունակել իւրանց աշխա-տակցուԹիւնը։ Ուրեմն կարող ենք յուսալ, որ այս տարի եւս մտածել պատճառօղ յօդվածներ եւ շատ հետաքրքիր տեղեկուԹիւններ Եվրոպայում մեզ վե-րաբերուԹեամբ աշխատօղների մասին կլսենք ան-դադար։

*Այս նամակին «Հայկական Աշխարհի» խմբագրուԹիւնը աւելացնում էր հետեւեալ ծանօԹուԹիւնք.*

Պ. պ. Արծրունիներից մինն միայն—պ. Գրիգորը—յօժարեց հրատարակել, որ նա կշարունակէ օրագրիս աշխատակցութիւնը, եւ միւսի—պ. Անդրէասի—մասին ուրախ ենք յայտնել օր մի առաջ, որ նա նոյնպէս շարունակելու է անդադար աշխատակցութիւն «Հայկական Աշխարհում», ահա այս առաջին №№-ից արդէն իսկ սկսելով իր գեղեցիկ յօդվածով *)։ Այո, մեր օրագրականութեան մէջ (Ռուսիայում) նոր գործ է հեռաւոր տեղերում մի եւ նոյն առարկայի մասին մոքեր գրգռել եւ մտածել տալ։ Գոնէ Գր. Արծրունին իւր իմաստուն յօդվածներով կապում է մտածութեան կողմից, ինչպէս ընթերցողը կկարդայ այս №№-ումն եւս, Թիֆլիսի, Հէյդլբէրգի, Ագուլիսի, Պետերբուրգի մտածող Հայերին։ Այո, կեցցեն ուրեմն Անդրէաս եւ Գրիգոր Արծրունիներն։

Նկատենք այստեղ, որ այն ժամանակվայ գրողներից ոչ մէկը այսպիսի ցոյցերի չէ արժանացել. տարիներ առաջ, երբ հրատարակվում էր «Հիւսիսափայլը», միայն Ստեփանոս Նազարեանցն էր ընթերցողների կողմից հրապարակով համակրանքի և հիացմունքի վկայութիւններ ստանում։ Այսպիսով ընթերցող փոքրաթիւ հասարակութեան զգաց-

*) Այդ գեղեցիկ յօդուածն էր «Վան գաւառի նկարագիրը», թարգմանութիւն ֆրանսերէնից։ Առհասարակ, Անդրէաս Արծրունին աշխատակցում էր «Հայկական Աշխարհին» թարգմանութիւններով։

մուտքն ինքն էր, որ անսխալ կերպով ցոյց էր տալիս թէ մեր հրապարակախօսութեան մէջ Նազարեանցից յետոյ Գրիգոր Արծրունին է գալիս իբրև խոշոր, աչքի ընկնող ոյժ։ Եւ վերոյիշեալ բոլոր վկայութիւնները ասում են մեզ որ ընթերցող հասարակութիւնը սկզբից ևեթ ճանաչեց Արծրունու տաղանդի յատկութիւնները. այստեղ չեշտվում է ամենագլխաւորը—«մտածել պատճառող» գըրութիւն, «մտքեր գրգռել և մտածել տալ»։ Մենք դեռ էլ կը տեսնենք այսպիսի ցոյցեր։ Առայժմ շարունակենք հետևել Արծրունու գրուածքներին։

Հետաքրքրական հանգամանք է որ 1869-ին Արծրունու գրուածքները «Հայկական Աշխարհում» շօշափում են գլխաւորապէս մի հարց միայն—կանանց հարցը։ Այսպէս են «Ցիւրիխի Համալսարան», ուր խօսքը կին ուսանողուհիների մասին է, «Հայկական Քընարի առիթով», «Կանանց աշխատանք Ֆըրանսիայում» (ֆրանսիացի հեղինակների, գլխաւորապէս Ժիւլ-Սիմօնի, Լը-Հարդի տեսութիւնները կանանց աշխատանքի մասին), «Բարոյական արտօնութիւն», «Խառն ուսումնարանների խնդիր Հէյդլբէրգում»։ Այդ գրուածքներից մի քանիսը թղթակցութեան կերպարանք ունեն կամ պարզապէս եւրո-

պացի գրողների մտքերն են թարգմանում։ Մենք կարող ենք վերցնել միայն այնպիսի յօդուածները, ուր երևում է Արծրունու սեփական մտածութիւնը, ուր նա սկզբունքներ և գաղափարներ է պաշտպանում։

Միքայէլ Միանսարեանցը *) 1868 թւին հրատարակեց իր «Քնար Հայկական» յայտնի, հարուստ երգարանը։ Այդ ժողովածուին նա կցել էր մի մեծ առաջաբան՝ ազգային երգերի մասին և մի վերջաբան, որի վերնագիրն է «Մտածութիւնք ազգային լուսաւորութեան մասին»։ Իբրև ժամանակի առաջադէմ ոգուն հետևող մի համակրելի մարդ, Միանսարեանը ազգային լուսաւորութեան գործի մէջ ահագին նշանակութիւն էր տալիս կնոջ կրթութեան և պահանջում էր որ այդ կրթութեան վրա մեզանում ամենամեծ ուշադրութիւնը դարձնվի։ Բայց Միանսարեանը իր աշխարհայեցողութիւններով հայրերի դասակարգին էր պատկանում և Արծրունին չէր կարող համակրել այն մտքերին, որ յայտնում էր նա կանանց կրթութեան մասին։ Ահա այդ պատճառով էլ նա հերքում է Միանսարեանի մի քանի հայեացքները, ա-

---

*) Միանսարեանցի մասին տես իմ «Ստեփանոս Նազարեանց», հատ. II, եր. 225։

նուաճելով նրանց հին սերունդի հայեացքները։

Այս առիթով Արծրունին նորից պարզում էր թէ ինչպէս պէտք է վերաբերվել հասարակ կարծիքներին հրապարակական գործունէութեան շրջանում։ Նորից նա կրկնում է այն, ինչ ասել է այդ մասին և այս անգամ աւելի ևս պարզ կերպով։

Մարդը անհատ է,—ասում է նա,—եւ գրողը մարդ լինելով պիտի իւր անհատական (ИНДИВИДУАЛЬНЫЙ) կարծիք եւ համոզմունք ունենայ։ Ոչ միայն չպէտք է փախչենք բազմակերպ կարծիքներից եւ համոզմունքից,—այլ եւ պէտք է ցանկանանք, որ զանազան ուղղութիւնները բազմանան գրականութեան մէջ, որպէս եւ զանազան կուսակցութիւնները քաղաքական կեանքի մէջ։

Գրողը չպէտք է նայէ իւր հակառակորդի վերա ինչպէս թշնամու վերա,—այլ որպէս մի եւ նոյն ասպարէզում գործօղ, թէեւ ուրիշ ուղղութեան հետեւօղ, ընկերի վերա։

Այսպէս դատում էր մտքերի փոխանակութեան, կարծիքների տարբերութեան մեծ նշանակութիւնը հասկացած երիտասարդը։ Նա կարծիքների կատարեալ ազատութեան ջատագով էր, նա գտնվում էր Եւրոպայում, ուր տեսնում էր թէ ինչպէս հակառակ համոզմունքները կռւում են գիտութեան և հասարակական հարցերի ասպարէզում, առաջացնելով կենդանութիւն, շարժում, նպա-

տակ ունենալով ծառայել ճշմարտութեանը։ Ապագայում, երբ Արծրունին մտաւ մեր իրականութեան մէջ, երբ կատաղի կռիւ բոլորեց իր շուրջը, նրա հակառակորդները աղաղակում էին թէ նա անհամբերող է ուրիշների առածների վերաբերմամբ, չէ ուզում կարծիքների տարբերութիւն, կամենում է որ ամենքը իր նման մտածեն և հասկանան իրողութիւնները։

Բայց սա ճիշտ չէ, և «Մշակի» Արծրունուն մենք չենք կարող համարել «Հայկական Աշխարհի» Արծրունու դաւանանքները մոռացած մի կուռք։ Կարծիքների տարբերութիւնը անհրաժեշտ համարելը չէ նշանակում իր սեփական կարծիքները թոյլ կերպով պաշտպանել, նրանց չը հաւատալ։ Ազատ համարելով ամեն մէկին իր համոզմունքը արտայայտելու մէջ, Արծրունին իր սեփական օրինակով ցոյց էր տալիս որ ամեն մէկը իրաւունք ունի և պաշտպանել իր համոզմունքը, պաշտպանել սաստկութեամբ, կրքոտ կերպով, հրաշունչ եռանդով։ Եթէ մէկը համոզված է որ իր կարծիքներից ու հայեացքներից դուրս փրկութիւն չը կայ, որ միայն իր ասածն է ճիշտ, որ միայն իր նման պէտք է հասկանալ երևոյթները, այդ դեռ չէ նշանակում թէ նա չէ ընդունում որ դիմացինը

կարող է բոլորովին հակառակ կարծիքներ ու հայեացքներ ունենալ։ Ո՛չ, հակառակորդն էլ կայ և նա էլ իրաւունք ունի նոյն սաստկութեամբ իր համոզմունքը պաշտպանել։ Եւ այդ է պատճառը, որ Արծրունին միշտ բանակռիւ էր մղում իր հակառակորդների դէմ, մի հանգամանք, որ տեղի չէր ունենայ, եթէ նա հակառակորդներ չընդունէր։ Ամբողջ թիւրիմացութիւնը առաջ էր գալիս նրանից, որ այդ հակառակորդներից ոչ մէկը չէր կարողանում այնպէս կռուել, ինչպէս կռուում էր Արծրունին. Ջախջախվողները իրանց պարտութիւնը չէին տեսնում Արծրունու անհագին ոյժի մէջ, այլ համարում էին նրան հետեւանք այն բանի, որ Արծրունին անհամբերող է, չէ ուզում որ տարբեր կարծիք ունեցող լինի։ Միայն այն ժամանակ, երբ հակառակութիւնը դուրս եկաւ գրական վայելչութեան սահմաններից, երբ համոզմունքներն ու կարծիքները ազնիւ, բարեխիղճ պայքարի շրջանից հեռանալով փոխվեցան սուր, անձնական թշնամութեան և կեղտոտ փողոցային շահատակութիւնների,—միայն այդ ժամանակ Արծրունին սկսեց արհամարհել, անտես անել այդպիսի հակառակութիւնը։ Իսկ սա դարձեալ չէ կարելի համարել ուրացումն այն սկզբունքների, որոնք յայտն-

ված են «Հայկական Աշխարհի» այս և ու-
րիշ յօդուածներում։

«Բարոյականութեան արտօնութիւն» յօդ-
ուածը նուիրված էր հայ կանանց։ Արծրու-
նին նորից և նորից կրկնում էր իր մտքերը
կանանց կրթութեան մասին։ Բայց չէ կա-
րելի ասել թէ այդ կրկնութիւնների մէջ չը
կային նոր, ինքնուրոյն մտքեր էլ։

«Քրիստոնէութիւնը ճշմարտութիւն է», ա-
սում է Արծրունին։ Քարոզելով ճշմարտու-
թիւն, սէր և հաւասարութիւն, ոչ Քրիստոսը,
ոչ էլ նրա աշակերտները տարբերութիւն չը
դրին կանանց և տղամարդիկների մէջ։ Կինն էլ
հաւասար իրաւունք ունէր ճանաչել և իրա-
գործել քրիստոնէական վարդապետութիւնը.
եկեղեցական ոչ մի հանդէսին, ոչ մի քարո-
զին, ոչ մի ժամասացութեան երբէք արգել-
ված չէր կանանց ներկայ լինել։ Կինն էլ
քրիստոնէութեան եռանդոտ կուսակից հան-
դիսացաւ։ Քրիստոնէական ճշմարտութիւնը
զօրեղ ու յաղթող հանդիսացաւ այն պատ-
ճառով, որ մարդկային երկու սեռերն էլ ար-
համարհված չէին նրանից, կատարեալ իրա-
ւունքներ ունէին նրա առջև։ Իսկ երբ ճըշ-
մարտութիւնը երկու սեռերի հաւասարու-
թեան վրայ է յենված, նա անեղծ հաստատ
հիմք է ստանում մարդկութեան մէջ։

Եվրոպական գիտութիւնը քրիստոնէութեան պտուղն է, նորա ազդեցութեան տակ է ծնվել եւ զարգացել։ Նորա նպատակը արդարութիւնն է նմանապէս. նորա միջոցը աշխատանք է (մտաւոր եւ նիւթական)։ Այս ա շ խ ա տ ա ն ք խօսքը նշանակում է սէր, հաւասարութիւն, ճշմարտութիւն եւ վերջապէս արդարութիւն։ Ս է ր, որովհետեւ աշխատելով՝ ամեն մի անհատը աշխատում է ոչ թէ միայն իւր համար, այլ եւ ուրիշների համար, հասարակութեան համար։ Հ ա ւ ա ս ա ր ո ւ թ ի ւ ն, որովհետեւ աշխատելով՝ հարուստը եւ աղքատը հաւասարվում են. հարուստի աշխատանքը աղքատի աշխատանքից աւելի մեծ արժանաւորութիւն չունի հասարակութեան համար եւ տգիտութենից ազատվելու համար հարուստը միեւնոյն աշխատասիրութիւն պիտի գործ դնէ ինչքան աղքատը։ Ճ շ մ ա ր տ ո ւ թ ի ւ ն, որովհետեւ ամեն մի անհատի որ եւ իցէ աշխատանքը օգտաւէտ է հասարակութեան համար։ Վերջապէս Ա ր դ ա ր ո ւ թ ի ւ ն, որովհետեւ աշխատելով մարդը բարվոքում է կեանքը, ուրեմն միջոց է տալիս հասարակութեանը ձգտել դէպի առաջադիմութիւնը, դէպի կեանքի բարվոքումն, ուրեմն եւ դէպի արդարութիւնը։

Բայց գիտութիւնը կամ աւելի լաւ ասած՝ գիտութեան քահանաները, այսինքն գիտնականները այնպէս չըհասկացան արդարութիւնը, ինչպէս հասկացել էր քրիստոնէութիւնը։ «Փոխանակ մարդկութեան նախապաշարմունքի դէմ բացարձակ կռուելու, փոխանակ քրիստոնէութենից օրինակ առնելու, մարդկութեան երկու սեռերին ես հաւասարեցնե-

լու, երկուսին ևս, քրիստոնէութեան օրինակով, ճշմարտութիւնը հաւասարապէս սովորեցնելով,—գիտութիւնը տղամարդիկներին միայն իրաւունք էր տալիս լուսաւորութեններից օգուտ քաղել։ Մարդկութեան կէսը (կանայք) իրաւունք չունէին ճշմարտութեան լուսով լուսաւորվելու։

Հարկաւոր էր երկար ժամանակ որ գիտութիւնը իր այդ անարդար վերաբերմունքի գոնէ մի մասից հրաժարվէր։ Մի մասից, որովհետև թէև բացվել են սկզբնական և միջնակարգ դպրոցներ կանանց համար, բայց համալսարաններում կանանց ուսում առնելը դեռ արգելված է։

Քրիստոնէութիւնը ճշմարտութիւն է,—եւ նա բացարձակ յայտնեց իւր ուսումը մարդին եւ կնոջ հաւասարապէս։

Գիտութիւնը ճշմարտութիւն է,—բայց նա աշխատեց զարգացնել միայն տղամարդին եւ արհամարհեց կնոջը։

Երբ մի ժողովուրդ դեռ տգէտ է, երբ մի հասարակութիւն լուսաւորութեան մեծ աստիճանի չէ հասել,—նա չէ կարող հասկանալ ոչ իր կեանքի պահանջները, ոչ էլ իր օգուտները։ Հասկանում է հայ հասարակութիւնը իր պահանջներն ու օգուտները։ Եթէ

հասկանար, նա կունենար պատրաստ գումարներ երիտասարդներին և օրիորդներին ուրիշ տեղեր ուղարկելու և բարձր ուսում տալու, ուսումնարաններ հիմնելու, գրականութիւնը զարգացնելու համար։

Եւ եթէ մենք ինչ եւ իցէ հիմնարկութիւններ ունինք, միայն բարերարութիւններին ենք պարտական, եւ ոչ թէ ժողովրդի ի ն ք ն ա օ գ ն ու թ ե ա ն ը հասարակական գործերում։

Երբ ժողովուրդը դեռ լուսաւորված չէ, ժամանակ առ ժամանակ դուրս են գալիս նորա մէջից մարդիկ, որոնք յաջողակ հանգամանների մէջ լինելով (եւ շատ անգամ աղքատութիւնն է յաջողակ հանգամանքը, եթէ աղքատը կարողացաւ հասնել գիտութեանը), զգալով ժողովրդի թշուառութիւնը, տեսնելով նորա պահանջմունքը,—նորա կեանքի արտայայտութիւն են դառնում։ Եւ այն զգացմունքը, կամ այն աշխատանքը, որ բաժանված պէտք է լինէր հազարների մէջ, նոքա իւրանց վերա են առնում։ Այս տեսակ մարդիկներին հանճարներ են անվանում։

Այսպիսով հանճարեղ անհատները մի ազգի մէջ այդ ազգի տգիտութեան նշաններ են։ Արծրունին դիմում է մի այսպիսի խիստ դարձուածքի. «Ամօթ է այն ժողովրդին, որ հանճարներ ունի»։ Առաջին անգամից շատ տարօրինակ, անհանդուրժելի է երեւում այս միտքը։ Բայց Արծրունին հասարակական

*զարգացման տեսակէտից է ամօթ համարում հանճարներ ունենալը։*

Որովհետեւ—ասում է նա—նորա ապացոյց են ամբոխի անքնական դրութեան, ապացոյց են նորա սաստիկ տգիտութեան, ապացոյց են որ ժողովուրդը դեռ լուսաւորութեան չէ հասել, երբ բարոյական զգացմունքի եւ գիտութեան բեռը շալակված է մի անհատի ուսերի վերա։—Բայց դարձեալ հարկաւոր են հանճարներ ժողովրդի համար, երբ որ նա դեռ մոաւոր ստրկութեան, այսինքն տգիտութեան մէջ է։

*Նոյնպիսի անբնական, հիւանդոտ երեւոյթ է ներկայացնում մի ժողովուրդ, որ ինքնօգնութեան միտքը չէ հասկանում։*

Ամօթ է այն ժողովրդին, որ հարուստների բարերարութիւններով է ապրում։—Բայց դարձեալ հարկաւոր են հարուստների բարերարութիւնները, երբ ժողովուրդը դեռ չէ հասել իւր կեանքի պահանջմունքի եւ օգուտների հասկանալուն, երբ իւր հասարակական գործերում նա ինքնաօգնութեանը դեռ չէ հասել։

*Դիմելով կանանց հարցին, Արծրունին կանգ է առնում այն ընթացիկ հասկացողութեան առաջ, որ մարդիկ ունեն բարոյականութեան մասին։ Ի՞նչ է պահանջվում կնոջից։ Որ նա բարոյական լինի։ Եւ ահա այդ հասկացողութեան համեմատ վարվող կնոջ պատկերը։*

Նա աղջիկ է, հարուստ ընտանիքի զաւակ։ Թեթև հասկացողութիւն ունի ամեն բանի մասին, ոչինչ գործ կամ գիտութիւն հիմնաւոր կերպով չէ ուսումնասիրում, սովորում է զանազան լեզուներ, որոնց չէ գործադրում կեանքի մէջ և այնուհետև պսակվում է, առանց ճանաչելու իր ամուսնուն։ Ճանաչել չէ էլ կարող, քանի որ տգէտ է, քանի որ մարդ ճանաչելու համար հարկաւոր է լինել զարգացած։ Նրա կեանքի նպատակը պսակվելն է. ոչ պսակվելուց առաջ, ոչ յետոյ Նա հարկաւոր էլ չէ համարում զարգացնել իր մտաւոր ընդունակութիւնները, ծանօթանալ դրական գիտութիւնների հետ։ Մի գործ, մի պարապմունք է միայն նա ճանաչում—լինել բարոյական։ Լինել տգէտ, բայց բարոյական, որպէսզի իր սէրը և կուսութիւնը տայ անբարոյական մարդուն—սա հասարակութեան հասկացողութիւններին համապատասխանող դրութիւն է։

Իսկ աղքա՛տ աղջիկը։ Նա ստիպված է աշխատել, բայց չունի կրթութիւն, որ կարողանար նրան օգնել «ամենօրեայ հացը ազնիւ կերպով ճարելու»։ Ի՞նչ անել։ Նա նպատակ է դնում շուտով պսակվել մի այնպիսի մարդու հետ, որը քիչ թէ շատ կարողու-

*թիւն ունի, որպէսզի կարողանայ առանց աշխատանքի ապրել։*

*Սա էլ բնական է համարվում։ Բայց որքան բարոյական է։*

Բարոյական է միթէ այն կինը, որը ինքն չգիտենալով իւր աշխատանքով բաւականութիւն տալ իւր ամենօրեայ պիտոյքին, շտապում է մարդի գընալ, որ կարօղանայ առանց աշխատանքի ապրել։ Բարոյական է միթէ այն կինը, որ տգէտ լինելով, չէ կարօղ ոչ իւր մարդի բարոյականութեան վերա ազդել, ոչ օրինաւոր կերպով դաստիարակել երեխաները։

*Այսպէս ահա դուրս է գալիս որ բարոյական լինելու համար պէտք է հարուստ լինել, որ բարոյականութիւնը հարուստների արտօնութիւնն է։ Իսկ աղքատ աղջիկը, նա, որ հարուստ կամ ունևոր մարդու գնալ չէ կարող, հետևաբար պէտք է միշտ իր աշխատանքով ապրէ, իրաւունք չունի բարոյական լինելու։*

Հարուստ աղջիկները կարօղութիւն ևս ունենալով ուսում առնել և կրթվել, իւրանց միակ պարտաւորութիւն են համարում բարոյական լինել, և չեն հասկանում մի ուրիշ հասարակական պարտաւորութիւն, այն է իւրանց ազատ ժամանակը և դրամական միջոցները գործ դնել օրինաւոր կերպով

գիտութիւններ ուսումնասիրելու, համալսարաններ եւ մանկավարժական ուսումնարաններ մտնելու, ժամանակով, ստացած գիտութիւնը ժողովրդի մէջ տարածելու համար, իւրանց աղքատ, անքարոյական եւ տգէտ հայրենակից քոյրերին օգնելու, մանկավարժական ուսումնարաններ հիմնելով, եւ այդ ուսումնարանները կառավարելով։

Նոքա պարծենում են իւրանց քարոյականութեամբ...

*Այս յօդուածը Գրիգոր Արծրունին վերջացնում էր հետեւեալ դառն խօսքերով.*

Բայց աւելորդ է այսքան խօսել... Աւելորդ է աւելի բացատրել մտքերը,—որովհետեւ հայերէն գըրած յօդվածները բացի օրագրի խմբագրութենից ոչ ոքից չեն կարդվում։

Թէեւ հայկական կանանց են վերաբերում այս տողերը, ես հաւատի եմ, որ ոչ մի հայ կինը երբէք չի կարդայ այս գրվածը... որովհետեւ հայկական կինը հայերէն չէ իմանում։

*Ոչ մի... Հայկական կանանցից մէկը, Շուշանիկ անունով, դուրս եկաւ Գրիգոր Արծրունուն յայտնելու որ այդ խիստ դատապարտութիւնը արդարացի չէ։ Հայ կինն էլ սկսել էր ոչ միայն կարդալ, այլ նոյն իսկ և գրել. «Հայկական Աշխարհի» և «Մեղուի» մէջ երեւում էին հայ կանանց ստորագրութիւններ։ Ճիշտ է, նրանց գրական գործերը մի-*

այն թարգմանութիւններ էին, բայց մինթէ դա էլ նշան չէր, որ նրանց մէջ զարթնում է հետաքրքրութիւն դէպի մայրենի գրականութիւնը։ Ահա Գրիգոր Արծրունին առիթ էր տալիս հայուհիներից մէկին նոյն իսկ ինքնուրոյն յօդուած գրել։ Ի՞նչ էր ասում օր. Շուշանիկը.

Այս օրերումս ստացայ ես ձեր օրագրի 6, 7 և 8 № №-ներ, որոնց սպասում էի անհամբերութեամբ։ Առաջին կարդացած տողերը կազմի վերա սոքա էին. «Բարոյականութեան արտօնութիւն, Գր. Արծրունի»։ Ես իսկոյն դարձրի երեսը եւ մեծ հետաքրքրութեամբ սկսեցի կարդալ պ. Արծրունու գրվածը։

Ես միշտ զուարճութեամբ ընթերցասիրած եմ այդ հեղինակի աշխատութիւններ. այս անգամ եւս չէի կասկածում բնաւ, որ քաւականութեամբ կանցուցանէի այն ժամանակը, մինչեւ կտեւէր կարդալս։

Հասկանալի է, որ այդ յօդվածը գրաւեց ինձ աւելի քան թէ պ. Արծրունու ուրիշ գրվածներ, դա արդէն հայկական կանանց է նուիրված։ Այդ նուիրման համար բոլոր կանայք կարօղ են շնորհակալ լինել պ. Արծրունուն, որովհետեւ նոքա շատ սակաւ արժանանում են այդպիսի ուշադրութեան։

Քանի շարունակում էի ընթերցանութիւնս, այնքան աւելանում էր ուշադրութիւնս. բայց անախորժելի զգացմունք շարժեցին ինձ, երբ հասայ այս վերջին տողերին. «Թէեւ հայկական կանանց են վերաբերում այս տողերը, ես հաւաստի եմ, որ ոչ մի հայ կինը երբէք չի կարդայ այս գրվածը... որովհետեւ հայկական կինը հայերէն կարդալ չէ իմանում»։

Այո, պ. Արծրունին մեծ պատիւ արեց հայ կանանց՝ նոցա իւր աշխատութիւնը նուիրելով, բայց իւր յօդուածի վերջին բառերով մեծ գին եւս վճարել տուեց նոցա այդ պատւի համար։ Չկարծեմ, որ կարելի լինէր վիրաւորել առաւել մարդ թէ կին, քան թէ այն ձեւով, որը ընտրել էր պ. Արծրունին։

Եթէ հայ կանայք չեն կարդում, այդ դեռ ապացոյց չէ, թէ նոքա կարդալ չեն իմանում, այլ դորա պատճառը այն է, որ կարդալու բան չեն գտնում հայերէն լեզուով։ Չէ կարելի սպասել, որ ձեռին ընկած առաջին գիրքը վեր առնեն եւ կարդան առանց որոշելու թէ արժէ՞ արդեօք ժամանակ գործ ածել այդ կարդալու։ Ես փաստով ունիմ հաւատացնելու, որ կան շատ կանայք, որոնք ուրախ են հայերէն լեզուով բան ինչ ունենալ կարդալու եւ եթէ գտնում են մի ընտիր եւ վայելուչ յօդված, միշտ զուարճութեամբ առնում կարդում են նորան։ Ի հարկէ քանի աւելի գրեն եւ տպեն գեղեցիկ յօդվածներ, այնքան աւելի ընթերցողներ կլինեն թէ այր մարդիկների եւ թէ կանանց մէջ։

Այնուհետեւ օր. Շուշանիկը բերում էր փաստեր իր ասածը հաստատելու համար։ Իր անձնական փորձը, իր ստացած նամակները, «Հայկական Աշխարհի» մէջ տպվող թարգմանութիւնները բերում են այն եզրակացութեան թէ «պ. Արծրունին սխալվում է ասելով թէ հայ կինը կարդալ անգամ չէ իմանում. սակայն վերադառնալով իւր հայրենիքը, կտեսնէ որ չէ ճանաչել մինչեւ այժմ իւր

ազգի կանանց յառաջադիմութիւնը։ Թէպէտ սա դեռ փոքր է, բայց կարելի՛ է արդեօք սպասել սկզբից կատարելութեան»։

Ցոյց տալով որ կայ սկզբնաւորութիւն, հետեւաբար պէտք է սպասել աւելի բեղմնաւոր ապագայի, օր. Շուշանիկը հետեւեալ տողերն էր ուղղում Արծրունուն, անշուշտ իբրեւ փոխադարձ հատուցում.

Շատ կարելի է պ. Արծրունին ուշք չդարձնէ այս գրվածիս, որովհետեւ նա հաւատացած է թէ հայ կանայք տգէտ են, եւ ինչ հարկաւոր է ժամանակ կորցնել տգէտների յօդվածներ կարդալով։ Բայց եթէ մի որ եւ իցէ պատահմամբ նորա հետաքրքրութիւնը զարթած լինի եւ նա կարդայ այս տողերս, անշուշտ կազատվէր իւր նախապաշարմունքից եւ չկարծեմ, որ պատճառ ունենար տխրելու իւր սխալմունքի համար։

Արծրունին չը պատասխանեց հայ կնոջ այս բողոքին. Նա կարող էր շատ բաւական մնալ և նրանով, որ հայուհիներից գոնէ մէկը վիրաւորանք էր համարում, երբ ասում էին թէ հայ կինը հայերէն կարդալ չը գիտէ։ Եւ չէ էլ կարելի ենթադրել թէ Արծրունին տառացի իմաստով էր հասկանում իր այն խօսքերը թէ ո չ մ ի ն ը հայ կանանցից չի կարդայ իր յօդուածը։ Անկարելի էր որ հայկական իրականութեան մէջ միայն փչեր ու

տատասկներ բուսած լինէին, որ չը պատահէին և հատ-հատ ծաղիկներ։ Բանն այն էր միայն, որ մի հատ ծաղկով գարուն չէ լինում, իսկ Արծրունին կատարեալ գարուն էր ուզում։ Մեր առջև դրված է մի ուրիշ փաստ, որ ցոյց է տալիս Արծրունու այդ տեսակ վերաբերմունքը։

Հայերը ունէին թատրօնական ներկայացումներ։ Իբրև սկզբնաւորութիւն, նրանք, օր. Շուշանիկի դատողութեան համաձայն, պէտք է ապացուցանէին որ հայերը թատրօն ունէին։ Բայց ահա Ստեփանէն «Հայկական Աշխարհի» մէջ քննադատում է այդ ներկայացումները, դժգոհութիւն է յայտնում, պահանջներ է անում, բայց ոչինչ չէ դուրս գալիս։ Եւ Ստեփանէն յուսահատված գրում է. «Չէ կարելի հայկական թատրօն գնալ որպէս դիտող, քննող, գրող, որովհետև գրողի անկեղծ խօսքերին ուշք չեն կամենում դարձնել... Հոգեմաշ եմ լինում ասելով որ Թիֆլիսում հայկական թատրօն չկա. տարին երկու երեք մանաւոր ներկայացմունքին չէ կարելի ազգային թատրօնի անուն տալ»։ Եւ Ստեփանէն աւելացնում էր. «Գ. Արծրունուց կամ անաչառապէս մտածող Հայից կսպասեմ—ինչ կասեն այս իմ խօսքիս մասին»։

Արծրունին անպատասխան չէ թողնում

*իր խմբագրի այս հրապարակական դիմումը։ Խմբագրութեան ուղղած նամակում նա առաջին մտքի, այսինքն թատրօն գնացող գրողի դրութեան մասին ասում է.*

Իմ միտքս այն է որ եթէ ուշք չեն դարձնում մեր խօսքերին, սա չէ նշանակում որ չպէտք է շարունակենք քննել, խօսել եւ գրել։ Թող ուշք չդարձնեն, մենք դարձեալ կշարունակենք գրել, խօսել եւ քննադատել... ով գիտէ, կարելի է ժամանակով ուշք կդարձնեն։

*Գալով այն բանին, որ Հայաստանը (Ստեփանէն) «հոգեմաշ» է լինում, տեսնելով որ Թիֆլիսում հայկական թատրօն չը կայ, Արծրունին ասում էր.*

Զգիտեմ ինչի է չարչարվում այսպէս պ. Հայաստանը թատրօնի մասին.—կարծեմ որ ազգային թատրօնի անքնական դրութիւնը բացառութիւն չէ Հայերի ազգային հիմարկութիւնների թւում։

Ազգային թատրօն չկայ... բայց կան միթէ ազգային ուսումնարաններ, կայ ազգային գրականութիւն, կան ազգային օրագրներ։

Տարին երկու ներկայացմունքը ազգային թատրօն չէ կարելի անվանել—այս ճշմարիտ է։ Բայց միթէ ազգի մէջ երկու երեք ուսումնարանը ազգային կրթութիւն են ներկայացնում։ Միթէ օրագիրը որ երկու կամ երեք ամիսը մի անգամ է երեւում, կարելի է ազգային օրագրականութիւն անվանել։ Միթէ ժողովրդի վերա մի որ եւ իցէ ազդեցութիւն կարելի է ունենալ օրագրի միջոցով, երբ որ օրագրի տեր-

րակները կանոնաւոր կերպով ամսէ ամիս անգամ չեն կարող հրատարակվել։

Ցաւալի է ասել, բայց այս ճշմարտութիւն է, որ ժողովուրդը միշտ եւ ամեն տեղ երեխայ է։ Եթէ դուք նորան յաճախ չէք կրկնի մի եւ նոյն մտքերը, եթէ դուք նորան ա մ ե ն օ ր ազգային լեզուով գրած թերթը չէք առաջարկի—նա մտածել կդադարէ, նա կմոռանայ իւր ազգային լեզուն։ Ցաւալի է ասել, որ բնած մի ժողովրդի մէջ մասնաւոր մարզիկներից է կախված զրգռել եւ ծնել պահանջմունքը։

Ժողովուրդը այնքան տգէտ եւ մտաւորապէս ստրկացած է, որ ինքն չէ հասկանում իւր պահանջմունքը։ Աղքատ թէեւ ուսեալ մարդիկներին դժվար է մի որ եւ իցէ գործ սկսել, որովհետեւ նոցա պակաս են դրամական միջոցները, իսկ ժողովուրդը նոցա գործունէութեանը չէ համակրում, եւ չէ կարող եւս օգնել, որովհետեւ պահանջմունք չունի ազատվել խաւարից, նախապաշարմունքից, տգիտութենից... Նա բաւական է իւր մտաւոր ստրկութեամբ, նա բաւական է իւր կեղտով եւ թերութեամբ, նա բաղդաւոր է իւր տգիտութեամբ... կամ աւելի լաւ ասեմ, նա ա ն զ գ ա յ է։

Իսկ հարուստները...

Ուստի ոչ դերասանական խումբ պէտք է մեղադրենք, որ ազգային թատրոն չկայ, ոչ խմբագրութիւնը պէտք է մեղադրենք, որ օրագիր չկայ, ոչ ուսուցիչներ պէտք է մեղադրենք որ ազգային կրթութիւն չկայ, ոչ եւս ժողովուրդը պէտք է մեղադրենք որ եռանդ, հոգս չկայ։

**Եթէ չը լինէին վերևի այն տողերը թէ անհատներին է մնում գրգռել բնած ժողո-**

վուրդը, պահանջներ ծնեցնել, Արծրունու այս վերջին պարբերութիւնից պէտք կը լինէր եզրակացնել թէ Արծրունին մէկն էր այն մարդկանցից, որոնք շատ լաւ հասկանում են ժողովրդի դրութիւնը, բայց շատ լաւ գիտեն և այն, որ այդ ժողովրդի համար ոչինչ չէ կարելի անել։ Երկրորդ անգամն է, որ Արծրունու յայտնած մտքերը առաջին անգամից կարծես այս տեսակ տպաւորութիւն են թողնում։ Բայց ամեն ինչ շատ պարզ է։ Լուսաբանելով իրողութիւնները, Արծրունին, ինչպէս արդէն մի անգամ ասել էր, ամենևին չէր մտածում մեղաւորներ գտնել, դատապարտել նրանց։ Ասելով թէ հայ կինը հայերէն կարդալ չէ իմանում, նա չէր ուզում մեղադրել հայ կանանց, ինչպէս նաև հայկական թատրոնի թշուառ դրութեան համար չէր մեղադրում հայ դերասաններին։ Ոչ, դժբախտութիւնը, պակասութիւնը չափազանց բնական է, հասկանալի. երբ չը կայ արթուն, առողջ հասարակութիւն, ինչ գործ կարող է բարգաւաճել։ Եւ հասարակութիւնն էլ մեղաւոր չէ, որ այդպէս է։ Հարկաւոր են գործող, գրգռող անհատներ։ Ցաւալի է սա, որովհետև զարգացած հասարակութիւնը ինքը պիտի հասկանայ իր պահանջները։ Բայց ցաւելով բան չի դառնայ.

*ուրեմն գործող, աշխատանք, եռանդ չը խընայող անհատներ են հարկաւոր հասարակութեան բարիքի համար։ Քնած է ժողովուրդը, անզգայ է։ Դա նշանակում է, որ աշխատաւոր անհատների մեծ կարիք կայ։*

*Այս գեղեցիկ նամակը, որ պարունակում էր իր մէջ մի ամբողջացրած աշխարհայեցողութիւն, մի՛ մեծ ու ընդարձակ ծրագիր, հիացական վկայութիւն առաջ բերեց «Հայկական Աշխարհի» մի պատահական ընթերցողի կողմից։ Դերբէնտից Գէորգ Շահնազարեան դէ-Շափուր գրում էր հետևեալը.*

Վերջերումս շատ քիչ է պատահել ինձ, որ մեր օրագրերը այնպէս գրաւեն իմ սիրտը եւ պահանջեն իրանց լիովին կարդալ, ինչպէս ձեր օրագրի յիշեալ թերթերը. մանաւանդ ազնուամիտ պ. Գրիգոր Արծրունու փափկաշունչ եւ նուրբ յօդվածները։ Դորա հեռաստանից հաղորդած ամէն մէկ տող դրվածը ունեցան ինձ վերա մէկ առանձին կենսատու եւ սփոփիչ ազդեցութիւն։ Չգիտեմ ինչ է պատճառը, բայց Հէյդլբէրգը ինձ Աթէնք թվեց։ Մեծապատիւ օրիորդ Շուշանիկի քողոքը նմանապէս մէկ զարմանալի եւ հազուագիւտ երեւոյթ է մեր գրականութեան։ Կմաղթեմ երկնային Ստեղծօղից, որ նա պինդ պահէ այդպիսիններ մեր ազգի համար։

*Հէյդլբէրգը—Աթէնք։ Սիրուն նմանութիւն է սա, նամակագիրը ի նկատի ունէր*

*այն Աթէնքը, որ հինգերորդ դարում լուսաւորութեան գեղեցիկ ճրագ վառեց Հայաստանի մէջ հայ երիտասարդների միջոցով։ Բայց Հէյդլբէրգում շատ չէին ուսում առնող հայ երիտասարդներ։ Հին Աթէնքը յիշեցնողը Գրիգոր Արծրունին էր։ Եւ ահա «Հայկական Աշխարհի» 1869 թուի վերջին համարում Ստեփանէն հաղորդում էր իր ընթերցողներին մի այսպիսի նորութիւն.*

«Հայկական Աշխարհի» աշխատակից եւ մեր սիրելի բարեկամ Գրիգոր Արծրունին հոկտեմբեր ամսին Հէյդլբէրգի համալսարանում ուսումնական քննութենից եւ շարադրութիւն պաշտպանելուց յետ ստացաւ քաղաքական տնտեսութեան եւ իմաստասիրութեան դոկտորի բարձր աստիճան։ Ամեն մտածող Հայի աչքում սա մեծ նշանակութիւն ունի ի հարկէ։ Գերմանիայում դոկտորի աստիճանին արժանանալ—հեշտ գործ չէ այո։ Եւ պ. Արծրունին առաջինն է, որ արժանացաւ այս աստիճանին։ Ես որպէս Հայ պարծենում եմ սորանով։

*Հէյդլբէրգից փիլիսոփայութեան երիտասարդ դոկտորը հայրենիք չը վերադարձաւ։ Նա գնաց Պարիզ, ուր համալսարանում լսում էր քաղաքական տնտեսութեան դասախօսութիւններ։ Բայց Ֆրանսիայի մայրաքաղաքը երկար չը պահեց իր մէջ Արծունուն. գերմանական ուսում ստացած երիտասարդը*

չէր կարող շատ բաւական մնալ ֆրանսիական ուսումից։ Ինչպէս կը տեսնենք, նա չէր համակրում ֆրանսիական ազգի յատկութիւններին, ուստի շտապեց դարձեալ գերմանական համալսարան գնալ և այդ պատճառով 1870-ի յունվարին անցնում է Վիեննա։ Բացի նրանից, որ այդտեղի համալսարանում Արծրունին լսում էր Լօրէնց Շտէյնի և Շէֆլէի քաղաքատնտեսական դասախօսութիւնները, Աւստրիայի մայրաքաղաքը տալիս էր մեր երիտասարդին և մի յարմարութիւն, որի մասին մի քիչ մանրամասն կը խօսենք։

Արծրունին բաւական չէր համարում այն հայերէնագիտութիւնը, որ ձեռք էր բերել սեփական աշխատանքով ուսանողական տարիներում։ Մենք տեսանք թէ ինչպէս էր նա իւրացրել աշխարհաբար լեզուն։ Եթէ հարցը միայն այդ լեզուով գրելը լինէր, Արծրունին գուցէ և բաւական համարէր իր ունեցած պաշարը։ Բայց պատրաստվելով գործել հայոց գրականութեան մէջ, նա անհրաժեշտ համարեց աւելի փորձ ու հմտութիւն ձեռք բերել հայերէնագիտութեան մէջ։ Հարկաւոր էր դիմել ուսուցչի. Արծրունին ուզում էր աւելի լաւ ծանօթանալ գրաբար լեզուի և մեր հին գրականութեան հետ։ Ա-

սում ենք աւելի լաւ, որովհետև արդէն գիտենք, որ նա առանձին ուշադրութիւն էր դարձնում եւրօպական լեզուներով հրատարակվող հայագիտական շարադրութիւնների վրա և դրանց միջոցով ուսումնասիրում էր մեր անցեալ կեանքն ու գրականութիւնը։ Գրաբար լեզուին ծանօթանալու ձըգտումը Արծրունին յայտնել է իր արտասահմանեան տեղեկութիւնների մէջ մի քանի անգամ։ Այսպէս, «Հայկական Աշխարհի» 1869-ի վերջին տետրակում Արծրունին խօսում է այն հայերէն քերականութիւնների մասին, որ կազմել են Պետերման, Վինդիշման, Բօպ, և ասում է թէ դրանց միջոցով դժուար է ուսումնասիրել հայերէնը։ Այդպէս չէ այն քերականութիւնը, որ 1869-ին Վիեննայում հրատարակեց դօկտոր Լաուէր։ Կարդալով այդ քերականութիւնը, Արծրունին ասում էր թէ «այս փոքր գրվածը (98 երեսներից բաղկացած) միջոց է ներկայացնում ընթերցողին հայ դասական լեզւի ձևերը թեթև, հասկանալի և կենդանի ոճով ուսումնասիրելու»։

Ահա այս բոլոր ջանքերը բաւարար չը համարելով, Արծրունին վճռում է վարժվել հայերէնագիտութեան մէջ՝ ուսուցչի ղեկավարութեամբ։ Եւրօպայում կային հայերէնի

հմուտ, հեղինակաւոր ուսուցիչներ և դրանք Մխիթարեան վարդապետներն էին։ Վիեննայում Արծրունին դիմում է Մխիթարեաններ վանքը։ Նա ինքը պատմել է*) իր հայեբէնով պարապելու բոլոր հանգամանքները։ Եւ մենք կօգտվենք նրա այդ յիշողութիւններից, բերելով հետաքրքրական կտորները, որոնք ներկայացնում են ինքնակենսագրական նիւթեր։

Նախապէս հարկաւոր ենք համարում յայտնել մեր ընթերցողին, որ Վիեննայի Մխիթարեան վանքը այն ժամանակներում անկման և յետամնացութեան շրջանում էր գտընվում։ Դեռ չէին եկել Հ. Այտնեանի աքքայութեան ժամանակները, երբ Վիեննայի միաբանութիւնը զարթնեց և սկսեց մի գեղեցիկ գիտնական-գրականական գործունէութիւն։

«Վիեննայի Մխիթարեաններին—ասում է Արծրունին—ես չը հաւանեցի։ Նրանք սարսափելի նախապաշարված, հնապաշտ և տգէտ մարդիկ երևեցան ինձ և բոլորովին յիշեցրին ինձ մեր տգէտ հոգևորականներին։ Երբ առաջին անգամ գնացի Mechitharisten-gasse փողոցում գտնվող նրանց հիմնարկութիւնը և մեծ մուրճով բաղխեցի ահագին դուռը

*) «Մշակ», 1890, № № 49 և 50։

(զանգակ չը կար դրան մօտ), աբեղաներից մէկը զգուշութեամբ բացեց դուռը և զարմացած ու կարծես վախեցած նայեց ինձ վրա... Ես անմիջապէս սկսեցի խօսել հայերէն և հարցրի թէ կարօղ եմ արդեօք տեսնել աբբահօրը...

— Ich verstehe nicht (չեմ հասկանում), եղաւ պատասխանը գերմաներէն լեզուով։

«Բանից երևաց որ աբեղան գերմանացի էր... Ճարահատված սկսեցի խօսել աբեղայի հետ գերմաներէն լեզուով։ Նա դուռը նորից փակելով և ինձ փողոցում մենակ թողնելով, գնաց օրապահ վարդապետին իմ գալու մասին իմաց տալու համար, սա էլ ուրիշին, երևի աւելի մեծին և այլն և այլն, մինչև որ յայտնեցին աբբահօրը թէ մի օտարական ուզում է տեսնել դրան... Եւ ես այդ ամբողջ ժամանակ փակած դրան մօտ պէտք է կանգնէի ու սպասէի...

«Վերջապէս, բարեհաճեցին ինձ թոյլ տալ կաթօլիկների այդ միջնադարեան սրբավայրը մտնելու։ Դուռը բացվեց և այս անգամ մի հայ աբեղայ խնդրեց ինձ ներս մտնելու։

«Անվերջանալի կօրիդօրներով անցնելով և ոչ ոքին չը հանդիպելով (երևի բոլորն էլ խուցերն էին մտել), վերջապէս ես իմ ուղեցոյցիս հետ մտանք աբբահօր խուցը։ Սա ըն-

դարձակ և բարձր սենեակ էր, պարզ և անշուք։

«Ես ուղղակի ասեցի թէ ինչ էր իմ նպատակս. ես ուզում էի հայերէն լեզուի դասեր առնել և խնդրում էի որ աբբահայրը վարդապետներից մինին նշանակէր ինձ ուսուցիչ։

«—Հրամանքդ ով էք, որտեղացի էք, հարցրեց ինձ ծերունի աբբահայրը, Վարդան եպիսկոպոսը՝

«Ես ասեցի։ Մի տեսակ սարսափ նկատվեց թէ աբբահօր և թէ երիտասարդ վարդապետի երեսին, երբ յայտնվեց որ ես կաթօլիկ չեմ, այլ լուսաւորչական եմ... Խեղճերը չը գիտէին ինչ պատասխան տան... Հայլուսաւորչականին պէտք է ընդունեն աշակերտ կաթօլիկ վանքում...

«Մի քանի րօպէների լռութիւնից յետոյ սրբազանը յայտնեց թէ կառաջարկի իմ խնդիրքը միաբանութեանը և խորհուրդ անելուց յետոյ «ինչ որ հարկն է» կը անօրինեն ու չորս օրից յետոյ ինձ կը տեղեկացնեն։

«Ապա փոխելով խօսակցութեան նիւթը, եպիսկոպոսը հարցրեց ինձ ով է հայրս։ Ես անմիջապէս պատասխանեցի թէ ժ է ն է ր ա լ է, մտածելով որ այդ տեսակ մարդկանց համար ոչինչ բան այնքան մեծ նշանակութիւն չունի, որքան բարձր պաշտօններ և տիտղոսներ։ Ժէնէրալի որդի լինելս գուցէ կօգնէր

քինձ վանքում աշակերտ ընդունված լինելու...

«—Ո՞րտեղ էք ուսում առել, շարունակեց ծերունի եպիսկոպոսը։

«—Հեյդլբէրգում, որբազան, պատասխանեցի ես։

«—Հայտլպէրկ, Հայտլպէրկ... կրկնեց նա մի քանի անգամ։

«Ես կարծելով թէ նա չէ յիշում որտեղ է գտնվում Հեյդլբէրգ քաղաքը, աւելացրի թէ Բադընի դքսութեան մէջ է։

«—Ի՞նչ առարկայ էք սովորել, դարձեալ շարունակում էր հարց ու փորձ անել ինձ եպիսկոպոսը։

«—Քաղաքական տնտեսութիւն, ասեցի ես։

«Նա զարմացած նայեց վրաս. պարզ էր որ ծերունին չը գիտէր թէ ինչ բան է քաղաքական տնտեսութիւնը։ Կարծելով որ Վիէննայի պէս գերմանական քաղաքում ապրելով նա աւելի կը հասկանայ գիտութեան իմ ճիւղի եւրօպական անունը, ես անմիջապէս աւելացրի «National-Oeconomie» «Economie politique»...

«Ծերունին շարունակում էր զարմացած նայել վրաս և վերջը մի հառաչանք արձակելով, աւելացրեց.

—Է՜հ, ինչ ասես գիտութիւններ կան այժմս... Թիբլօմասի կըսեն, բօլիթիք կըսեն,

էգօնօմի կըսեն... ես ինչ գիտեմ... Գիտութիւնները կաւելնան մարդկութեան մէջ, սակայն բարոյականութիւնը հետզհետէ կընկնի...

«... Չորս օրից յետոյ ինձ պատասխանեցին որ ընդունում են առաջարկութիւնս, կը նշանակեն ինձ մի վարժապետ՝ ուսումնական աբեղաներից մէկին, կառնեն ինձանից իւրաքանչիւր դասից 2 գուլդէն և ես կարող եմ սկսել դասերիս առնելը։

«Եւ ահա ես սկսեցի յաճախել վանքը շաբաթը չորս անգամ։ Իմ վարժապետս մի երիտասարդ լեհաստանցի (գալիցիացի) հայ էր, որի ազգանունը ես այժմ չեմ յիշում։

«Այդ ժամանակ եկաւ Վիէննա և Սեդրակ Մանդինեան։ Նա որպէս Սանասարեանցի որդեգիր, եկել էր Սանասարեանցի և Եզօվի յանձնարարականներով։ Նրան էլ ընդունեցին Մխիթարեանները, միայն նրանից կարծեմ 1 գուլդէն կամ $1^1/_2$ գուլդէն էին առնում դասից, որովհետև «նա բարերարի մը հաշուով կուսանէր», այն ինչ ես «ժեներալի մը որդի էի»...

«Մանդինեանին էլ մի վարժապետ նշանակեցին։ Մենք երկուսս շատ դժգոհ էինք մեր վարժապետներից։ Միայն ես յարմարվում էի, կամ աւելի լաւ է ասել ինքս աշխատում էի իմ դասերին ուղղութիւն տալ, բացա-

տրելով վարժապետին թէ հասակ առած, համալսարանում աւարտած, 24 տարեկան մարդու հետ պէտք է բոլորովին ուրիշ կերպ պարապել, քան թէ մի մանուկի հետ։

«Իսկ Մանդինեան այն տարիքին դայրացած էր՝ հասակ առած մարդկանց հետ պարապելու ուսումնական սուրբ հայրերի անընդունակութիւնից, որ շաբաթ չէր անցնում որ նա չը գնար եպիսկոպոսի մօտ ու չը գանգատվէր իր վարժապետից, խնդրելով, որ մի ուրիշ վարժապետ նշանակեն։ Այդպիսով նա մի ձմեռվայ ընթացքում մի քանի վարժապետներ փոխեց և դարձեալ դժգոհ էր։

«Ես իմ լեհաստանցի երիտասարդին հաւատարիմ մնացի ամբողջ ձմեռը, Մանդինեանի պէս անդադար բողոքելը ապարդիւն համարելով։ Խեղճ մարդիկ. իրանց ամբողջ հաստատութեամբ, իրանց աշխարհայեցողութեամբ, իրանց սահմանափակ մտաւոր շրջանով,—մեղաւոր չէին... Նրանք իրանց ամբողջ վանքով, ժամանակակից, քաղաքակիրթ, առաջադէմ և զուարճասէր Վիէննայի ամենագեղեցիկ արուարձաններից մինում,—մի տեսակ անախրոնիզմ էին կազմում... Միջնադարեան մի ուրուական ժամանակակից քաղաքիրթ Եւրոպայի կենտրոններից մինում»...

*Պարապմունքները—աւելորդ էլ է ասել—արգելք չը դառան որ Արծրունին շարունակէ կանոնաւոր կերպով իր աշխատակցութիւնը «Հայկական Աշխարհին»։ Պարիզից նա երկու նամակ ուղարկեց, որոնցից առաջինում նկարագրում էր ֆրանսիացուն, իսկ երկրորդի մէջ խօսում էր Ռօշֆօրի ընտրութեան մասին։ Հետաքրքրական է առաջին նամակում դուրս բերած գիծը, որ բնորոշում էր Ֆրանսիայում տեղի ունեցող յեղաշրջումը հասկացողութիւնների մէջ։*

Ֆրանսիացին—ասում է Արծրունին—պաշտում էր ինքն իւրան, պաշտում էր իւր անցեալը եւ ներկան... Ֆրանսիացին դասեր էր տալիս ուրիշ ազգերին, իսկ ինքն տուածների փոխարէնը դաս չէր առնում։

Այս ուղղութիւնը հակառակ էր ժամանակակից ոգուն, հակառակ էր տնտեսական օրէնքին։ Ինչպէս ազգերի նիւթական կեանքում, այնպէս եւ նոցա մըտաւոր, հոգեւոր կեանքում փ ո խ ա ղ ա ր ձ ո ւ թ ի ւ ն պէտք է լինի։

Այժմեան ժամանակում մի ազգ կամ պէտք է փոխադարձութեան սկիզբը ընդունէ, կամ պէտք է մեռնէ եւ չանվանէ իւրան ազգ։

Ֆրանսիական ազգն եւս չկարօղացաւ յետ մնալ առաջադիմութեան ընդհանուր ընթացքից. նա ըսկսում է ուսումնասիրել օտար ազգերի կեանքը եւ լեզու, սկսում է հաշտվել փոխադարձութեան տընտեսական գաղափարի հետ, սկսում է հասկանալ

իւր պակասութիւնները, քննել իւր անցեալը եւ ներկայ։

**Պարիզից է գրված և «Նոր Տարի» յօդուածը, որ տպվեց «Հայկական Աշխարհի» 1870 թւի № 1-ի մէջ։ Այստեղ Արծրունին պարզում է իր վերաբերմունքը դէպի հին սերունդը։ Ահա մի քանի քաղուածքներ այդ յօդուածից.**

*Հանգիստ թողնենք հին սերունդը. որովհետեւ նա իւր պաշտօնը կատարելուց յետոյ, ինքն կարօտ է հանգստութեան։—Բայց մեզ ժառանգութիւն թողած նորա գործերը եւ սկիզբները խստութեամբ քննադատենք։*

*... Նոր տարի չպէտք է անիծէ հին տարի, այլ հանգիստ ոգով բողոքէ նորա վնասակար գործերի դէմ, նորա պակասութիւնների դէմ, եւ աշխատէ նորա արած փորձերից օգուտ քաղել։*

*... Հին մարդիկ բարի ծնօղներ եւս լինելով, կարծում էին թէ երեխաներ սիրել նշանակում է նոցա հետ բռնաւորութեամբ վարվել։—Մենք կարծում ենք թէ երեխաներ դաստիարակել նշանակում է զարգացնել նոցա մէջ ա ն հ ա տ ո ւ թ ի ւ ն ը։ Հին սերունդը դէպի կին ունեցած սէրին միացնում էր նախանձը—մենք կարող ենք սիրել միայն այն կին, որը պատւում ենք։ Հին սերունդը կարծում էր թէ կնոջը հարկաւոր չէ կրթված լինել, իր պարտաւորութիւն կատարելու համար.—մենք պահանջում ենք կնոջ համար այր-մարդին հաւասար լուսաւորվելու իրաւունք։ Հին սերունդը միացնում էր քրիստոնէութեան ուսումը մտաւոր եւ մարմնաւոր սորկութեան*

հետ,—Նոր սերունդը քրիստոնէութեան գաղափարը չէ զանազանում ազատութեան գաղափարից։

Հին սերունդի մարդիկ լաւ քրիստոնեաներ եւս լինելով, մարդիկներ գրաստի պէս առնում եւ ծախում էին։ Նոցա կարծիքով ք ր ի ս տ ո ն ե ա յ լինել նշանակում էր անհամբեր լինել դէպի ուրիշների հաւատը, ա ր դ ա ր լինել նշանակում էր այրել այն ամեն մարդիկներ, որոնք նոցանից տարբեր կարծիքներ ունէին։ Օ գ ո ւ տ բ ե ր ե լ հասարակութեանը նշանակում էր ոչնչացնել անհատական կեանքի երեւոյթները, ինչքան կարելի էր անմշակ թողնել մարդկութեան մտաւոր հողը։

Բայց ոչ թէ միայն չպէտք է թշնամանանք հին սերունդի հետ, այլ եւ պէտք է նորան մեր շնորհակալութիւնը յայտնենք նորանից մեզ աւանդված գործերի եւ սկիզբների համար։—Բայց ինչ միջոցով։ —Ահա ինչ միջոցով. խստութեամբ քննադատելով նորա գործերը եւ սկիզբները եւ ձգտելով հեռացնել նոցա մէջ գտնվող սխալներ եւ պակասութիւններ, աշխատելով բարւոքել կեանքի ձեւը եւ ոգին, մաքրելով սկիզբների էութիւնը ճշմարտութեան եւ արդարութեան, այսինքն կրթութեան միջոցով։

... Ժամանակ կը լինի, երբ մենք եւս հ ի ն ս ե ր ո ւ ն դ կդառնանք... ուստի բոպէ մի չկորցնելով աշխատենք անդադար բարւոքել մեր կեանքը, որ ինչքան կարելի է մաքուր խղճմտանքով ներկայանանք ապագայ սերունդի հասարակական դատաստանին։

Այս է իմ շնորհաւորութիւնը դեռահաս սերունդին նոր տարու պատճառով։

***Միստ քննադատութիւն իբրև չնորհակալութեան արտայայտութիւն դէպի անցած—***

գնացածը, կատարելագործութիւնը, առաջադիմութիւնը իբրև անցած սերունդին երախտապարտութիւն յայտնելու ամենագեղեցիկ միջոց։ Տեսնո՞ւմ էք, ինչպէս էր հասկանում Արծրունին այն բաները, որոնք այնքան հարկաւոր էին հնութեան խնամակալութիւնից. ազատվելու և միանգամայն վերանորոգվելու, նորից ծնվելու համար։ Խիստ քննադատութիւնը, անխնայ վերաբերմունքը դէպի հին սերունդի գործերը ոչ անէծք են, ոչ թշնամութիւն. դրանք սրբագործութիւններ են, դրանք նուիրական պաշտամունքներ են. վախել այդ բաներից—դաւաճանութիւն է, թոյլ ու տատանվող լինել—խղճութեան, կուրածութեան նշաններ են։ Զարմանա՞նք որ այսպիսի պաշտամունքներով մինչև սրտի խորքը տոգորված Արծրունին իր ամբողջ կեանքում քննադատութիւն էր, խիստ, անխնայ քննադատութիւն, որ չը գիտէ յոգնել, չը գիտէ կոտրվել...

Բայց շարունակենք մեր քաղուածքները Արծրունու յիշողութիւններից։ Վիեննայում նա ամբողջ ձմեռը դասեր էր առնում Մխիթարեանների վանքում։

«Ձմեռվայ վերջը ես հիւանդացայ—շարունակում է նա։—Թիֆլիսեցի բժիշկ Մարկոզով այդ ժամանակ Վիէննայումն էր. նա

պարապում էր «Allgemeines Krankenhaus» նշանաւոր հիւանդանոցում։ Նա քննեց կուրծքս և ինքն տարաւ ինձ աշխարհահռչակ ծերունի Օպոլցեր բժշկապետի մօտ, որպէսզի սա էլ քննի կուրծքս։ Օպոլցեր հրամայեց ինձ անմիջապէս թողնել Վիէննա և գնալ հարաւային երկիր։

«Ես վճռեցի ուղևորվել Վենեցիա, որպէսզի մի կողմից կարողանամ կազդուրել առողջութիւնս, որը խախտված էր նախընթաց տարվայ համալսարանական պարապմունքներից, իսկ միւս կողմից կարողանամ շարունակել հայերէնով պարապել։

«Այսպիսով Վիէննա թողնելով ես տեղափոխվեցայ Վենեցիա։

«Ես Վենեցիա արդէն ճանաչում էի. մի երկու երեք տարի սրանից առաջ ես այցելել էի այդ քաղաքը, մնալով այդտեղ մի երկու ամիս։

«Անցել էր մի քանի օր իմ Վենեցիա գալուց յետոյ. ես սենեակ էի վարձել Սան-Մարկօ հրապարակից ոչ հեռու և բուն վենեցիացու պէս օրվայ մեծ մասը անց էի կացնում բաց օդում, Piazza san Marco հրապարակի կաֆէներից մէկի առջև նստած լրագիր կարդալով և ագահութեամբ ներշնչելով ծովային մեղմ և առողջարար օդը։

«Վերջապէս ժամանակն անցնում էր, պէտք է սկսէի պարապմունքներս։ Եւ ահա մի գեղեցիկ առաւօտ վարձում եմ Piazzetta ասված ծովեզրեայ հրապարակից ոչ հեռու, ծովի ալիքների վրա ճօճվող նաւակներից մին և ճանապարհ եմ ընկնում դէպի San-Lazzaro կղզին, Մխիթարեանների միաբանութեան վանքը»։

Ս. Ղազարը արդէն Վիեննայի միջնադարեան վանքը չէր։ Այդտեղ Արծրունին տեսնում է սիրալիր ընդունելութիւն, աշխատասիրութիւն, առաջադէմ գաղափարներ։ Այս բոլորը այնքան գեղեցիկ տպաւորութիւն է թողնում Արծրունու վրա, որ նա մի առանձին յօդուածով («Մեծ Մխիթարի մահի տարեդարձը սուրբ Ղազարի վանքում») նկարագրում է «Հայկական Աշխարհի» մէջ իր տեսածն ու զգացածը։

Իւրաքանչիւր տարի ապրիլի 27-ին ս. Ղազարի վանքում տօնվում է Մխիթար Սեբաստացու մահվան տարեդարձը։ Արծրունին տեսնում է այդ հանդէսը, տեսնում է վանքի դպրոցի աշակերտներին, լսում է ճառախօսութիւնները և նկարագրում է այդ բոլորը։ Նկատենք որ այս յօդուածի մէջ Արծրունին ցոյց է տալիս նոյն իսկ բանաստեղծական տրամադրութիւն. դա Մխիթարեանների կըր-

*զու ազդեցութիւնն է, այն կղզու, որ Բայրօնին էր ոգեւորել։*

Ի՞նչ իրաւունք ունի բանաստեղծ այս ինչ կամ այն ինչ տպաւորութեան տակ գրած բանաստեղծութիւնը մեզ առաջարկել, մեզ տխրացնել կամ ուրախացնել... Ի՞նչ իրաւունքով մի հեղինակ իւր աչքով է նայում այս կամ այն երեւոյթի վերա, իւր գըրվածը շնչաւորում է տխուր կամ ուրախ զգացմունքով... Ի՞նչ իրաւունք ունի նա մեզ իւր ցաւերի ցաւակից անել եւ իւր ուրախութեան ուրախակից...

Այն իրաւունքը, որ կայ անհատութիւն, անձնական կազմվածքի պայմաններով, անձնական զգացմունքով, սէրով, հասկացողութեամբ, ընդունակութիւններով, ձգտողութիւններով...

Հեղինակը առաջարկում է մեզ իւր կարծիքը իւր համոզմունքից եւ զգացմունքից բղխած,—մեզանից, մեր բարի կամքից է կախված ընդունել այն կարծիքը կամ ոչ։

*Այս նախաբանից յետոյ Արծրունին նկարագրում է Մխիթարեանների ժամասացութիւնը.*

Հայի վերա, որը օտարութեան մէջ լինելով, վաղուց լսած չէր ազգային ժամասացութիւնը, մի առանձին սփոփիչ տպաւորութիւն էին անում այս հեռու երկրում ճշտութեամբ պահված ազգային եկեղեցական ծէսեր եւ արարողութիւնները։ Ի՞նչ մնաս եթէ այն հոգեւորականները կաթօլիկներ էին... Երգեցողութիւնը, արարողութիւնները, բոլոր ժամասա-

ցութիւնը հին հայկական պատմական ճշտութեամբ էր կատարվում։

Հինգերորդ դարում Պարսիկների դէմ պատերազմում մեր ազգային մարտիրոսներից երգած սաղմոսները նոյն ճշտութեամբ եւ նահապետական ձեւով երգվում են եւ այժմ...

Ադրիայի ծովի մի փոքրիկ կղզու վերա, փոքրիկ մի եկեղեցում, որը նորա մէջ հաւաքված փոքր խմբի համեմատութեամբ չափազանց մեծ էր երեւում,—մի կողմ ձգելով ամեն տեսակ նախապաշարմունքը,—Հայն կարող էր իւրան այն օրը իւր հայրենիքի մէջ կարծել... Հեռու ծովի փոքրիկ մի կղզու մէջ այս խումբը ջերմեռանդ աղօթքով, իւր հնաւուրեան եկեղեցական երգերում յիշում էր, կարծես, իւր բազմափորձ պատմութեան ամենանշանաւոր երեւոյթները... Գրիգոր Լուսաւորիչ, Վարդան, կրօնի եւ ազգի համար նահատակված մարտիրոսները, այս բոլոր անունները յիշեցնում էին Հային անցած ժամանակները, յարուցանում էին նորա սրտում իւր կորած կեանքի բարձր գաղափարները։

Պատարագից յետ Մխիթարեան հայրերը պատահեցին եւ ընդունեցին մեզ իւրանց սովորական, Ս. Ղազարի կղզում եղած օտարներին յայտնի, քաղաքավարութեամբ, քաղցրութեամբ եւ հիւրասիրութեամբ, որոնք յատուկ են նախապաշարմունք չունեցող, զարգացած եւ կրթված մարդիկներին։

Մեծ դահլիճում սկսվում է ճառախօսութեան հանդէսը, որին ներկայ են միաբանութիւնը, հրաւիրվածները, Ռափայէլեան վարժարանի և վանական դպրոցի աշակերտ-

ները։ Երիտասարդ վարդապետներից մէկը գրաբար մի ճառ է կարդում Մխիթարի մասին։

Երկար, երկար, մօտ մի ժամ տեւում էր այս ճառը... խրթին գրաբարով, բարձր ոճով էր գրված նա... բացի սորանից ամեն դասական լեզուներին յատուկ փառաւոր, անբնական արվեստական ձայնով էր կարդացված։ Առաջին րոպէ մարդս աշխատում է հասկանալ, բայց տեսնելով Թէ ի զուր է նորա բոլոր ջանքը,—նա հաշտվում է այն անբնական ձայնի եւ վաղուց անցած դարերի եւ հնչիւնների հետ... եւ շարունակում է լսել այն ճառը ոչ Թէ մտքեր հասկանալու նպատակով,—այլ որպէս մի երաժշտուԹիւն։

Ես շատ քիչ հասկացայ... հասկացան արդեօք աշակերտները, սա ինձ անլուծելի հարց է մնացել։ Ես ինձ Հայ զգալով նմանապէս ցանկանում էի ամբողջապէս հասկանալ ՄխիԹարի կեանքի եւ նորա հիմնարկուԹեան պատմուԹիւնը, ազգի համար այս կենսատու երեւոյԹի պատմուԹիւնը... Ինչի մի կենդանարար երեւոյԹը· պատմվում է մեռած լեզւով։

Կարելի է ՄխիԹարեան հայրերը իւրանք չգիտեն մինչեւ ինչ աստիճանի նոքա մեր ազգի հաւատարիմ պատկեր են,—կարելի է նոքա իւրանք չեն հասկանում մինչեւ ինչ աստիճանի նոքա մեր ազգային կեանքի ճիշդ արտայայտուԹիւն են։

Սրբ. Գէորգ արքեպիսկ. Հիւրմիւզեան աբբահայրը մի փոքրիկ եւ ազդու ճառով, աշխարհաբար լեզւով, պատասխանեց երիտասարդ վարդապետի ճառախօսուԹեանը։ Այս փոքր ճառի մէջ արտայայտվեցաւ բոլոր միաբանուԹեան ոգի, բոլոր հիմնարկուԹեան ուղղուԹիւնը։ Նշանաւոր էր մանաւանդ

նորա խօսքի յետագայ միտքը.—«Հիմնողից տուած էր այս միաբանութեանը աստուածային եւ կրօնական ուղղութիւնը. մենք կարող ենք ընդարձակել, զարգացնել նորանից մեր մէջ դրած ոգին, բայց պակասեցնել երբէք չենք կարող»։

Այս խօսքերը լսելով ինձ թւում էր թէ պատուական ծերունու բերանից ես լսում էի ոչ թէ միայն Մխիթարեան հիմնարկութեան, այլ եւ բոլոր ազգի ուղղութեան նկարագրութիւնը... աստուածային եւ կրօնական ոգի...

Այս օրվան բոլոր հանդէսը ընդունակ էր մի խորին եւ անջնջելի տպաւորութիւն թողնել մարդի սրտի վերա։

Այս հանդէսի մէջ կերպարանաւորվում էր բոլոր ազգի կեանքի ոգին։

Բոլոր շրջապատող երեւոյթները զարմանալի ներդաշնակութեան յարաբերութիւնների մէջ էին գտնվում։ Դժուար կլինէր ինձ ասել որը այս բոլոր երեւոյթներից աւելի մեծ տպաւորութիւն ունեցաւ ինձ վերա։

Մեռած լեզւով նկարագրված մեր նոր պատմութեան միակ կենդանարար երեոյթը, սրբ. աբբահօր ճառի ոգին, երեխաների ծանր երեսները, որոնց վերա ամենեւին չէին նշմարվում երեխայական զգացմունքը եւ կեանքը,—այս բոլորը վկայութիւն էր տալիս ծերացած մի. ազգութեան իրողութեանը։

Սխալվել չէր կարելի.—դուք ուշք դարձնելով այս բոլոր երեւոյթներին, կհամոզվէիք որ ունիք ձեր առաջ ոչ թէ իւր մանկական հասակում գտնվող ազգը, այլ բազմափորձ, հնասէր, ծերացած ազգութեան ներկայացուցիչները... Ակամայ իմ աչքս ընկաւ գահլիճի մի անկիւնի վերա... այնտեղ, աշակերտների

մէջտեղը կանգնած էր Եգիպտոսից բերած, եւ վանքին ընծայված, մի շատ հին եգիպտական զ մ ռ ս-վ ա ծ մ ա ր մ ի ն ը...

Հազար եւ հազար տարիները այն մարմինը, կենդանի եւս չլինելով, չէ ոչնչանում, միեւնոյն դրութեան մէջ պահպանվում է...

Վանքից դուրս եկած, կրկին նստելով նաւակը, ես նայում էի կղզու ափերից կապոյտ ծովի հեռաւորութեան մէջ, ագահութեամբ ծծելով իստակ օդը... Ծայրայեղ զգացմունքը կռւում էին իմ մէջ.—մի կողմից ես չէի կարող չզգալ ջերմ շնորհակալութեան զգացմունքը դէպի մեծ Մխիթարի յիշատակը եւ նորա հիմնարակութիւնը,—իսկ միւս կողմից՝ տխրութիւն...

Չգիտեմ ինչի ես յիշեցի երեւելի գերմանացի Գեօտէի օրհասական աղաղակը—լոյս, լոյս... Այն րոպէում ես կամենում էի կանչել,—կեանք, կեանք...

*Այս հիանալի նկարագրութիւնը Գրիգոր Արծրունու անթիւ գրութիւնների մէջ մարգարիտի պէս պիտի փայլէ։ Ի՞նչն էր այդքան ոյժ, թարմութիւն, խոր զգացմունք հաղորդում այդ գրութեան։—Չը մոռանանք, որ դա առաջին գործն է, որ գրում էր Արծրունին մեր իրականութեան անմիջական ազդեցութեան տակ։ Թիֆլիսից նա հեռացել էր իբրև օտար կրթութեան մի հարազատ զաւակ։ Մոսկվայում և Պետերբուրգում շատ չը մնալով, անցել էր արտասահման, ուր տարիների ընթացքում կտրված էր հայութիւնից և միայն յիշողութիւններով, պատանեկական*

ժամանակի տպաւորութիւններով էր պատկերացնում իր առջև մեր կեանքը և գրում նրա մասին։ Այժմ բոլորովին կազմակերպված ու ամբողջացած իբրև զարգացած մարդ և մտածող, նա մտնում է այն հռչակաւոր վանքը, ուր խտացած էր հայկական իրականութիւնը։ Հանդէսը, հայերէն խօսքը, շըրջապատը ազդում են երիտասարդի վրայ։ Նա տեսնում է Մխիթարի հիմնարկութիւնը, հայոց նոր պատմութեան այդ ամենափայլուն երևոյթը, որ հայ մտքի առաջադիմութիւնն է ներկայացնում։ Նայում է նա այդ երևոյթի երեսին, երախտագիտութեամբ է լցվում, բայց միևնոյն ժամանակ տեսնում է և հայութեան ոգին—հնութիւն և կրօն։ Ծերացած է այն ազգութիւնը, որ այդ վանքի միջոցով նայում է այդ 24-ամեայ երիտասարդին։ Եւ սա այդ ծերունու երեսին կանչում է. «Կեա՜նք, կեանք»... Իրականութիւնը որքա՜ն ուժգին է խօսեցնում Արծրունուն։ Այստեղ դեռ արտասահման է. դեռ շատ բան կոկված ու յղկված է, և նա դարձեալ այսպէս է խօսում։ Ի՞նչ պիտի լինի, երբ նա մտնէ հայրենի իրականութեան մէջ, այն կեանքի մէջ, որին չէ դիպել կրթութիւնը, զարգացումը, յարատև, բեղմնաւոր, սերունդից սերունդ անցած աշխատանքը...

«Խաղաղութիւն, տոկուն աշխատանք, անձնուէր սէր դէպի հայրենիքի յիշատակները և միևնոյն ժամանակ եւրօպական կիրթ վարմունքն ու լայն ժամանակակից հայեացքներ ամեն հարցերի վրա,—ահա Վենեցիայի սուրբ հայրերի յատկանիշը»,—ասում է Արծրունին իր յիշողութիւնների մէջ։

«Կղզու վրա գտնվող վանական դպրոցը գործեց ինձ վրա, ինչպէս և նկարագրել էի «Հայկական Աշխարհում», անախորժ տպաւորութիւն. երեխաները հիւանդոտ, նիհար, դեղնած, սարկացած, բթացրած դէմքերով... Ներկայ գտնվելով դպրոցի տարեկան հանդէսին, համոզվեցայ թէ դպրոցում տիրում է մեռած գրաբարականութիւնն ու հնացած սխօլաստիական մեռցնող ոգին...

«Բայց մի բան անուրանալի է, այդ այն է որ Վենեցիայի Մխիթարեանները սիրահարված են իրանց հայրենիքի յիշատակների վրա... Ուր և նայես, ուր և գնաս,—այդ փոքրիկ աշխարհը, Սուրբ Ղազարի կղզին յիշեցնում է քեզ հայրենիքը։ Հայոց գրքեր, հայոց ձեռագիրներ, Հայաստանի տեսարանների պատկերներ, եկեղեցում հին հայկական պարզ ծիսակատարութիւն, այգու մէջտեղ մի մեծ աւազան Վանի ծովակի ձեւով շինված...

«Աբեղաները սիրով ընդունեցին ինձ... Որքան տարբերութիւն նրանց և Վիէննայի միջնադարեան ուրուականների մէջ...

«Սրանց հետ խօսելով, մարդ մոռանում է թէ նրանք կաթօլիկ են, մոռանում է նոյն իսկ թէ աբեղաներ են,—այն աստիճան լուսաւորված մարդիկ են նրանք։ Մարդ նոյն իսկ առաջին րօպէից ստիպված է նայել նրանց վրա, որպէս լուսաւորված աշխարհականներից բաղկացած համեստ մի ուսումնական ընկերակցութեան վրա... Միայն հարկաւոր չէ խօսել ու վիճել նրանց հետ կաթօլիկութեան մասին...

«Ես յայտնեցի սուրբ հայրերին իմ նպատակս։

«Նրանք խորհուրդ տուեցին ինձ դիմել հ. Ղևոնդ Ալիշանին, որը այն ժամանակ Րաֆայէլեան դպրոցի տեսուչ էր և կենում էր քաղաքում գտնված դպրոցի շինութեան մէջ։

«Քանի մի օրից յետոյ ես վարձում էի Սան-Մարկո հրապարակում իտալացի մի ուղեցոյց, որը ոտով տարաւ ինձ նեղ և ոլոր մոլոր փողոցներով ու փոքրիկ կամուրջներով դէպի Րաֆայէլեան դպրոցը։

«Դպրոցը զետեղված է մի լայն կանալի վրա գտնվող շքեղ հոյակապ պալատում։ Հայր տեսչի հետ տեսակցութեան իրաւունքը խըն-

դրած լինելով, ես բարձրացայ մի քանի ընդարձակ, գեղեցիկ կօրիդօրներ և շուտով բաղխում էի արդէն հայր Ղեւոնդի առանձնասենեակի դուռը։

«—Բաց... լսվեց սենեակից մի թոյլ և խուլ ձայն։

«Ես բաց արի դուռը և իմ աչքերիս ներկայացաւ հետևեալ տեսարանը։ Ահագին, լուսաւոր սենեակ, լի գրքերի պահարաններով, մէջտեղ դրած մի մեծ գրասեղանով, որը բեռնաւորված էր բազմաթիւ գրքերով և թղթերով, մի քանի գեղեցիկ, թէև հասարակ բազկաթոռներ, և մի դիվան, լայն և բարձր պատուհանների վրա մոյգ գոյնի վարագոյրներ,—ահա Ալիշանի սենեակը։

«Առաջին րօպէին ես մարդ չէի տեսնում սենեակում... Մի վայրկեան անշարժ կանգնեցի սենեակի շէմքի վրա... Ուղղելով հայեացքս դէպի ահագին գրասեղանը, այդ րօպէին միայն նկատեցի մի շատ նիհար դէմքով մարդկային գլուխ գրքերի ու թղթերի ահագին կոյտի մէջտեղ։

«Ինչպէս երևում-է հայր Ղևոնդը խորասուզված էր ընթերցանութեան մէջ, երբ ես ներս մտայ։

«Նա անմիջապէս տեղից բարձրացաւ, մօտեցաւ, մեկնեց ինձ իր ձեռքը և ձեռքիցս

բռնած՝ տարաւ ինձ իր գրասեղանի մօտ, խնդրելով նստել։

«Ես սւտեցի թէ ով եմ։

«Ընդունելութիւնը բոլորովին ուրիշ էր, քան թէ Վիեննայի-վանքում։

«Այնչան միջին հասակի, չատ նիհար, հի-ւանդոտ դէմքով, թոյլ կազմուածքով, մօտ 50 տարեկան մարդ էր։ Նա սկսեց խօսել. ձայնը թոյլ և խուլ, խօսակցութիւնը անդա-դար ընդմիջվում էր չոր, անախորժ հազով։ Խօսելու և պատասխան ընդունելու ժամա-նակ նա անդադար կարմրում էր, ինչպէս մի օրիորդ, կամ ինչպէս մի գերմանացի հա-մեստ պրօֆէսօր...

«Ես յայտնեցի որ կուզենայի նրանից հայե-րէն լեզուի դասեր առնել։

«—Կը ներէք, չեմ կրնար, կուրծքս թոյլ է, բժիշկները արգելած են ինձի չատ խօսել և բարձր խօսել, բայց կը յանձնեմ ձեզ մեր դպրոցի օգնականին, հայր Իգնատիոսին...

«Ես շնորհակալութիւնս յայտնեցի։ Նա կրկին կարմրեց։

«—Հրամանքդ ժամանակ առ ժամանակ կը գրէք Թիֆլիսի լրագիրներուն մէջ, չա-րունակեց նա։

«Խօսակցութիւնն անցաւ մեր մամուլի,

մեր գրականության վրա, ապա կովկասեան հայերի վրա…

«Ես ասեցի, որ պարապել եմ մի ձմեռ Վիէննայի հայրերի մօտ, և աւելացրի որ կուզենայի վճարել դասերիս համար։

«—Հարկ չը կայ, մենք սովոր չենք վճարելու ձեզմէ…

«—Բայց, հայր սուրբ, ես կուզեմ վճարել, և կարող եմ վճարել…

«—Հարկ չը կայ, կրկնեց նա։

«Ստիպված էի ընդունել և նորից շնորհակալութիւնս արտայայտել…

«Սկսեցի շաբաթը չորս անգամ դասեր առնել տեսչի օգնական հայր Իգնատիոս Կիւրեղեանի մօտ (այժմ արքահայր)։ Հայր սուրբի խուցի մէջ նստած, Եղիշէ, Խորենացի, կամ մի այլ հայոց կլասիկական գիրքը կարդալով իմ դասերիցս իւրաքանչիւրը մի ժամի տեղ, շատ անգամ երկու, երեք ժամ էր տևում։ Գիրքը թողած՝ շատ անգամ սկսում էինք վիճել երիտասարդ վարժապետիս հետ։

«Վէճը մեծ մասամբ եկեղեցու, կրօնի մասին էր, լուսաւորչական, կաթօլիկ և բողոքական եկեղեցու մասին…

«—Հրամանքդ բողոքական երկրում ուսումըդ ստացած ըլլալով, կը նկատեմ որ աւելի համակիր էք բողոքականութեանը, ասում էր



Հ. Իգնատիոս Գիւրեղեան

ինձ իր մեղմ և ներդաշնակ ձայնով համակրելի վարժապետս...

«—Ոչ, հայր սուրբ, ինձ համար մի և նոյն է, ինչ կրօնի էլ պատկանի հայը. ես ծնվել եմ լուսաւորչական ծնողներից և նրանցից եմ ստացել իմ առաջին բարոյական գաղափարներս. բարձրագոյն ուսումս և համոզմունքներս՝ բողոքական Գերմանիայից եմ ստացել, իսկ հայոց, մայրենի լեզուի հմտութիւններովս պարտական կը լինեմ ձեզ, կաթօլիկ հայերին... Գուցէ այդ պատճառով ես միակերպ եմ վերաբերվում դէպի բոլոր դաւանութիւնները, առանց որ և է մոլեռանդ զգացմունքի...

«Վարժապետս ժպտում էր իր մեղմ ժպիտով, ապա յանկարծ կտրում էր մեր վիճաբանութիւնը.

«—Սակայն ժամանակը կանցնէ, դառնանք մեր Խորենացուն։

«Ամբողջ վեց ամիս, շաբաթը չորս անգամ դասերս առնելով հայր Իգնատիոսի մօտ, ես դասերից յետոյ կամ պտտում էի դպրոցում, կամ մտնում էի հայր Ալիշանի սենեակը։

«Դպրոցը ինձ հետաքրքրում էր։ Դպրոցի ամբողջ կազմակերպութեան և ուղղութեան վրա տիրում էր հայր-մեծաչի, Ալիշանի ոգին։

Դպրոցն ուսումնասիրած լինելով, կարելի էր գաղափար կազմել և նրա ղեկավարի ուղղութեան,- բնաւորութեան ու լայն համամարդկային գաղափարների մասին։ Ալիշանի անխարդախ, համակրելի, անկեղծ բնաւորութիւնը, նրա լայն մարդասիրական և հայրենասիրական անձնուէր հանճարը կերպարանաւորվում էր դպրոցի թէ ամբողջութեան և թէ նրա իւրաքանչիւր մանրամասնութեան մէջ։

«Ռաֆայէլեան դպրոցը նրա ձեռքի տակ այնպիսի բարձրութեանն էր հասել, որ համարվում էր ամբողջ Վենեցիայում ամենալաւ միջնակարգ դպրոց։ Իմ ժամանակ կաթոլիկ աշակերտների մեծամասնութեան մէջ կային և լուսաւորչական մի քանի երիտասարդներ և նոյն իսկ մի հայ բողոքական աշակերտ։ Անուրանալի է որ Վենեցիայի Մխիթարեանները թունդ կաթոլիկներ են, բայց նրանք այն աստիճան լուսաւորված մարդիկ են, որ երբէք չեն փորձում որ և է ճնշում գործել իրանց դպրոցում ուսանող այլակրօն հայ երիտասարդների վրա և դարձնել նրանց կաթոլիկ։ Եւ ես համոզված եմ որ այդ համբերութեան ոգու գլխաւոր դրօշակակիրը միաբանութեան և դպրոցի մէջ՝ ինքն հայր Ղևոնդն էր։

«Երբ ես մտնում էի դպրոցի այն մեծ դահլիճը, որտեղ աշակերտները զբաղվում էին նկարչութեամբ՝ ես ապշած էի մնում։ Հայր տեսուչը պատուիրել էր նկարչութեան ուսուցչին, որ աշակերտները մեծ մասամբ նըկարէին հայոց պատմութեան հետ սերտ կապ ունեցող և երեխաների վառ երևակայութեանը գլխաւորապէս հայրենիքը յիշեցնող դէմքեր և տեսարաններ... Մի տեղ տեսնում էիք Վարդան Մամիկոնեանի ընդօրինակած կենդանագիրը, մի ուրիշ տեղ Անիի աւերակների տեսարանը, և այլն և այլն...

«Վեց ամիս շարունակ հայր Իգնատիոսից շաբաթը չորս անգամ դասեր առնելուց յետոյ, երբ հասաւ Վենեցիա թողնելու օրը, ես կրկին դիմեցի հայր Ղևոնդ Ալիշանին, խնդրելով որ դպրոցի օգտին գոնէ ընդունէ ինձանից դասերիս վարձը։ Բայց բոլոր թախանձանքներս զուր էին,—հայր Ղևոնդը ոչինչ կերպով չէր ուզում ինձանից փող ընդունել։

«Ճարահատուած, քաղաքից իմ դուրս գալուց մի քանի օր առաջ, գնեցի գրավաճառանոցում ֆրանսիական կլասիկների ժողովածուն և ընծայեցի Ռաֆայէլեան դպրոցի գրադարանին, որպէսզի գոնէ մի կերպ արտայայտեմ նրախտագիտութիւնս սուրբ հայր

րերին նրանց սիրալիր ընդունելութեան և վեց ամիս շարունակ ինձ տուած դասերի համար»։

Աւելորդ է ասել թէ Վենետիկի այս տպաւորութիւնները որքան հարկաւոր էին Գրիգոր Արծրունուն, երբ նա, ուսումը Եւրոպայում վերջացրած, պատրաստվում էր վերադառնալ հայրենիք և այնտեղ գործել։ Մխիթարեանները, մանաւանդ Հ. Ալիշանը, որի հետ Արծրունին «բաւական մօտիկ ծանօթութիւն» էր կապել և որի հետ առիթ էր ունենում «մտերմաբար խօսել ընդհանրապէս մեզ հետաքրքրող հարցերի մասին», անկասկած ազդել են երիտասարդ դոկտորի աշխարհայեցողութիւնների վրա իրանց վառ հայրենասիրութեամբ, լայն զարգացմամբ, իրանց ամբողջ վանքով, ուր այնքան հարուստ ու ճոխ կերպով ներկայացրած է հայ ազգի անցեալը։ Այնտեղ, այն կամարների տակ, ուր գործել են Մխիթար, Չամչեան, Աւգերեաններ, Բագրատունի,—Գրիգոր Արծրունին չէր կարող չը ներշնչվել, չոգևորվել։ Եւ նշանաւոր Մխիթարեանների պատկերները, որոնք նրա ամբողջ կեանքում գտնվում էին նրա սեղանի վրա, մի մի վկաներ են, թէ ինչ խոր տպաւորութիւն էր ստացել նա ս. Ղազարի կղզում։

*Մանաւանդ մեծ էր այն հիացմունքը, որ ազդել էր Արծրունուն Հ. Ալիշանը։ Վեց ամիս մնալով Վէնետիկում, Արծրունին Մխիթարեանների ընդարձակ գրականութիւնից միայն Ալիշանի «Ցուշիկք Հայրենեաց Հայոց» յայտնի աշխատութիւնը վերցրեց, խօսեց նրա մասին «Հայկական Աշխարհում»։ Եւ ինչպէս լաւ էր նա դեռ այն ժամանակ ըմբռնել մեր հռչակաւոր Նահապետի ոգին։*

Հին հայկական գրողների, մանաւանդ հինգերորդ դարի երեւելի պատմիչների յատկանիշ նկարագիրը նոցա բանաստեղծական ուղղութիւնն է, որը հիմնվում է նոցա ազգասիրական վսեմ ոգու եւ քրիստոնէական խոր զգացմունքի վերայ։

Հ. Ալիշանի գիրքը կարդալով մենք համոզվում ենք որ հեղինակը չափազանց հմուտ է մեր հին գրականութեանը, որովհետեւ բոլորովին սեփականացրել է իւրան մեր դասական հեղինակների նշանաւոր բանաստեղծական ոգին, որ սկիզբ է առնում նորա մէջ եւս երկու (պտղաբեր) աղբիւրներից.— ազգասիրական ոգուց եւ քրիստոնէական բարձր գաղափարից։

Ես ասում եմ ք ր ի ս տ ո ն է ո ւ թ ի ւ ն եւ ոչ թէ ա ս տ ո ւ ա ծ ա բ ա ն ո ւ թ ի ւ ն։

Քրիստոնէութիւնը վեր է քան աստուածաբանութիւնը։

Ա ս տ ո ւ ա ծ ա բ ա ն ո ւ թ ի ւ ն ը կարող է փոխվել, տարբերվել, մարդի կազմվածքի եւ հասկացողութեան կամ կլիմայի համեմատ։— Ք ր ի ս տ ո ն է ո ւ թ ե ա ն սկիզբները անխախտ են մնում։

Աստուածաբանութիւնները բազմաթիւ են։

Քրիստոնէութիւնը մի է։

Քրիստոնէութեան սկիզբները, այսինքն ազատութիւն, հաւասարութիւն, եղբայրասիրութիւն ամեն մարդի, ամեն կազմվածքի, ամեն կլիմայի, ամեն ազգի, ամեն ցեղի, ամեն ժամանակի համար ճշմարտութիւն են եւ կմնան...

Բերելով այնուհետեւ մի քանի կտորներ Հ. Ալիշանի գրքից, Արծրունին հարցնում է թէ որտեղից է սկիզբ առնում այդ գրուածքի մէջ Ալիշանի վառ հայրենասիրական զգացմունքը։ Եւ պատասխանում է այսպէս.

Մեր հեղինակը հեռու է ապրում մեր հայրենիքից...

Առնում է նա արդեօք իր ազգասիրական զգացմունքը՝ դէպի կենդանի հայկական ժողովուրդ ունեցած սէրից... կարելի է արդեօք սիրել մի տգէտ, անկիրթ, մոլեռանդ, ողորմելի, հայրենիք չունեցող, երկպառակութիւն սիրող, միութեան թշնամի մի ժողովուրդ—չեմ կարծում... Այդպիսի ժողովրդի վերայ խղճալ կարելի է,—բայց նորան սիրել... հազիւ թէ...

Կարելի է միթէ սիրել այն ինչ որ սիրելի չէ։

Առաւել հաւանական է ընդունել, որ հայ հեղինակի ազգասիրական խոր զգացմունքը ծագում է մեր հին կեանքի հասկանալուց եւ մեր պատմութեանը մօտ ծանօթ լինելուց, մեր անդարձ կորած ազգային կեանքի երեւոյթների նշանաւորութիւնը անկեղծ պաշտելուց։

Որ Հ. Ալիշանի հայրենասիրութիւնը գըլ-

խաւորապէս հին նիւթերից, պատմական անցեալի տուած նիւթերից էր իր կրակը սնանում—դա անհերքելի է։ Բայց չէ կարող լինել այնպիսի սէր, որ միայն հին-հին դարերերի սրտում ապրէ, այնտեղ թաղված մնայ։ Իր հայրենիքի աւերակները, օդը, ջուրը երգողը միայն անցեալի պատմիչ չէր. և եթէ նրա լեզուն կրակ էր կտրում այդ անցեալի յիշատակներից, կար նրա մէջ և այն չեշտը, որ ներկան էր գրկում, ներկայի հոգսերն էր շօշափում։ Ներկայի ժողովուրդը ընկած էր, դժբախտ, ողորմելի։ Արծրունին ասում էր թէ չէ կարելի սիրել մի այդպիսի ժողովուրդը, նրան կարելի է միայն խղճալ։ Բայց սա մի բառախաղ է միայն։ Խղճահարութիւնն էլ նոյն սիրոյ զգացմունքից չէ՞ դուրս գալիս։ Կարելի՞ է խղճալ, չունենալով սրտի մէջ սէր դէպի ընկածը, դէպի դժբախտը։ Կայ, այո, այն սէրը, որ զարթեցնում է մեր մէջ կատարելութիւնը, գեղեցկութիւնը։ Մենք նայում ենք նրան, սիրում ենք նրան մեր ամբողջ սրտով, հիանում, յափշտակվում ենք։ Բախտաւորութեան, կատարելութեան տիպար ներկայացնող առարկան բարձր ու վեհ է մեր աչքում. մենք նրա վերաբերմամբ մի ուրիշ զգացմունք չունենք, բացի պաշտողի, երկրպագողի զգացմունքից։

Բայց կայ և այն սէրը, որ յարուցանում է մեզանում թշուառութիւնը։ Ընկած է այդ թշուառութիւնը, թաւալվում է կեղտերի և ցեխի մէջ, նրա մարմինը լափում են հազար ու մի անձոռնի, զզուելի որդներ։ Սիրել նրան՝ այդպիսի դրութեան մէջ պահելու համար—անկարելի է։ Բայց կեղտերից ու ցեխից հանելու, նրան մաքրելու, նրան բժշկելու, նրան կեանք և երջանկութիւն տալու համար—ահա այստեղ է իսկական, վեհ սէրը, նա, որ եսամոլութիւն չէ, նա, որ ամբողջովին անձնազոհութիւն է։ Մարդը ընկած է ցեխերի և կեղտոտութիւնների մէջ։ Անցնողներից մէկը կանգ առաւ, գնաց դէպի ընկածը։ Ի՞նչ զգացմունք էր դա։ Ցեխն ու կեղտոտութիւնները զզուեցնում են նրան, բայց նա սիրում է այն գաղափարը, որ դրված է ընկած մարդու մէջ և շտապում է, զսպելով իր զզուանքը, ազատել գաղափարը այդ սոսկալի միջավայրից։ Ալիշանը հայ ժողովրդի վատ, բացասական կողմերը չէր սիրում և բոլորովին այդտեղից չէր քաղում իր հայրենասիրական ոգեւորութիւնը, այլ սիրում էր այդ ընկած ժողովրդի գաղափարը, նրա բարձրանալու, նրա երջանկանալու միտքը։

Այդպէս էր և ինքը Արծրունին, իր ամբողջ կեանքում։ «Սիրել ատելով»—այսպէս

էր ասում Նեկրասօվը, նայելով իր ժողովրդի անթիւ ցաւերին։ Այսպէս բացատրեց և Արծրունին իր սէրը դէպի իր ժողովուրդը։ Նա անուանեց հայ ազգը մի պոռնիկ, որին պըղծել ու ապականել էին դարերի ընթացքում անթիւ տարփածուներ. բայց նա սիրում էր այդ պոռնիկին, սիրում էր ատելով։ Եւ հէնց այստեղ էլ, ս. Ղազարի կղզուց գրած այս տողերի մէջ էլ, չէ՞ երևում նոյն սիրողը։ Իր զգացմունքը դէպի ընկած ժողովուրդը նա արտայայտում էր «խղճալ» բառով։ Բայց մեզ համար դա էլ նշանակում է սէր, անսահման, վառ սէր դէպի նոյն այդ ընկածը...

Վենետիկից Գրիգոր Արծրունին գնաց նորից Հէյդըլբէրգ, ուր գտնվում էր Անգրէասը։ Երևի նա ուզում էր հայրենիք վերադառնալուց առաջ մի անգամ էլ տեսնել իր Alma mater-ը և սիրելի եղբօրը։ Բայց մենք դեռ պիտի ծանօթանանք նրա մի քանի յօդուածների հետ։

«Մտքեր յայտնելու իրաւունք» յօդուածի մէջ Գրիգոր Արծրունին, ինչպէս և ուրիշ տեղերում, պաշտպանում է մտքի կատարեալ ազատութիւնը, ապացուցանելով որ այդ ազատութիւնը ոչինչ վտանգ չէ սպառնում հասարակութեան։

Մի նոր ուսում յայտնելով ես կարող եմ կամ ուղիղ կամ ծուռ, կամ օգտաւէտ կամ վնասակար գաղափարներ յայտնել։—Բայց եւ վնասակար, ծուռ մի ուսում յայտնելով, ես ոչ ոքից իրաւունք չեմ յափշտակում, իրապէս արգելք չեմ դնում պաշտպանել հակառակ գաղափարները։

Կարելի է արդեօք յանցանք համարել այն, ինչ որ ուրիշից չէ խլում գործողութեան իրաւունք։

Մի հաստատված ուսման դէմ խօսելով, ես նմանապէս կարող եմ կամ ծուռ կամ ուղիղ մտքերը յայտնել, ես կարող եմ հին ուսման պակասութիւնները ցոյց տալ. կամ իմ սահմանափակված զարգացման պատճառով ծուռ կերպով հասկանալ մարդիկներից ընդունված մի պատուական ուսում, եւ ի զուր յարձակվել նորա դէմ։

Դարձեալ այս դէպքում կարելի է արդեօք իմ գործողութիւնը որ եւ իցէ յանցանքի հետ համեմատել։

Միթէ տեսական կերպով յարձակելով մի հաստատված ուսման, մի ճշմարտութեան դէմ, ես ոչընչացնում եմ նորան, միթէ այս իմ գործողութեամբ ես այն ճշմարտութենից խլում եմ կենդանութեան իրաւունքը։

Եթէ նա ճշմարտութիւն է, թող ինքն իւրան պաշտպանէ։

Մի ճշմարտութեան դէմ յարձակողը պատժել, նշանակում է այն աստիճանին թոյլ համարել այն ճշմարտութիւնը, որ նա լոկ խօսքից անզամ, բանաւոր յարձակումից քանդվում է,—նշանակում է վիրաւորել այն ճշմարտութիւնը։

... Յայտնելով մի ծուռ զործնական միտք, ես ոչ ոքին չեմ ստիպում ընդունել նորան... Յայտնե-

լով մի նոր գործնական միտք եւ հին մի հիմնարկութիւն չեմ ոչնչացնում իրապէս, թէեւ խօսքով առաջարկէի ոչնչացնել նորան։

Իսկ եթէ հասարակութիւնը մի հեղինակ է պատժում նորա խօսքի համար, մի գործնական յանցանքի հաւասար,—նա սորանով ապացուցանում է որ ինքն մեծ հաւատ չէ ընծայում իւր հիմնարկութիւնների հաստատութեանը։

Առհասարակ երբ մի հասարակութիւն կանչում է, վախենում է, աղաղակում է, պատժում է մի նոր գաղափարի եւ սկզբի երեւելու ժամանակ,—նա սորանով ապացուցանում է որ կամ անընդունակ է հետեւաքար մտախորհութեամբ, ապացոյցներով եւ քննադատութեամբ հերքել վնասակար մի վարդապետութեան ուսումը,—կամ անզօր է վնասակար եւ ծուռ մի գաղափարին կատարեալ արհամարհանքով պատասխանել։

«Հասկանանք վերջապէս» յօդուածը նոյն հարցերն է արծարծում, ինչ «Ինչի՞ չենք հիմնում» յօդուածը։ Արծրունին նորից չեշտում է որ մենք մեր տնտեսական բարեկեցութիւնը պիտի հիմնենք մեր երկրի բնական հարստութիւնները կանոնաւոր և խելացի կերպով շահագործելու վրայ։ Կովկասում վերջացել են երկարատեւ պատերազմները, որոնք հարստացնում էին ծառայող և զանազան կապալներ վերցնող հայերին։ Ռուսաց պետութիւնը հաստատել է մեր երկրում խաղաղութիւն. կը հասկանա՞նք արդեօք որ այս

խաղաղութեան շրջանը բաց է անում մեր առջև տնտեսական նոր պահանջներ և մենք կարող ենք ազնիւ ու հեշտ միջոցով հասնել հարստութեան։ Դրա համար հարկաւոր է արգիւնագործութիւն սկսել, գործարաններ հիմնել, հում նիւթեր մշակել։

Հասկանանք վերջապէս, որ մեր գլխաւոր ձըգտողութիւնը պէտք է լինի մեր երկրի կենդանիների, բոյսերի եւ մետալների հարստութենից օգուտ քաղել։ Այս նպատակով պատրաստել օտար երկիրներում մեր հայրենակիցներից դրական գիտութեան եւ գործնական աշխատանքից տեղեակ մարդիկներ, որոնք վերադառնալով հայրենիքը, կարող էին մեզ օգնել երկրագործութեան, գինեգործութեան, շերամապահութեան, անասնապահութեան դրութիւնը իւրանց բոլոր ճիւղերով բարվոքել, եւ նոր, մեզ անյայտ, բայց Եվրօպայում վաղուց ընդունած միջոցները մըտցնել։ Աշխատել անտառաքանութեան դրութիւնը բարվոքել, եւ այլն։

Յօդուածի վերջում նա բերում էր Անդրէաս Արծրունու նամակը, որի մէջ տեղեկութիւններ կային թէ ինչ հանքերի մշակութիւն յարմար է Կովկասում։ Անդրէասը յայտնում էր որ ինքը միանգամայն համաձայն է Գրիգորի յայտնած մտքերին մեր երկրի բնական հարստութիւնները շահագործելու վերաբերմամբ։

«Հասարակական կրթութիւն» յօդուածը խօսում է այն մասին թէ ինչ պէտք է տալ ժողովրդին՝ ներկայ ժամանակի պահանջները լրացնելու համար։ Այժմ այլ ևս հին ժամանակները չեն, երբ ժողովուրդը բաժանված էր դասակարգերի, կաստաների։ Այժմ ամբոխը, մի ազգի ընդհանրութիւնը դրված է այնպիսի պայմանների մէջ, որոնք թոյլ են տալիս ամեն մէկին զարգացնել իր բնական ընդունակութիւնները, գրաւել հասարակութեան մէջ բարձր դիրք, պաշտօններ վարել։ Կրթութիւնն է տալիս մի ժողովրդին զարգանալու, առաջ գնալու միջոց։ Հարկաւոր է որ կրթութիւնը ամենքի սեփականութիւն լինի։ Կրթութեան բարձր աստիճանին հասած երկրներում ամեն մարդ քաղաքացի է։ Քաղաքացու ապագայ ձգտումներին և ջանքերին նպաստելու համար մենք պահանջում ենք ազգի բոլոր մանուկների համար ձրի և պարտադիր ուսում։

Այդպիսով ժողովրդական սկզբնական կրթութիւնը հասարակական կրթութեան հիմքն է։ Սկզբնական ուսում ստանալուց յետոյ մարդը ընտրում է իր համար մի կոչում և դրա համեմատ շարունակում է իր կրթութիւնը, մտնելով համալսարան, մասնագիտական բարձրագոյն դպրոց և այլն։

Բայց ամեն մարդ չէ կարող այդպէս անել և ժողովրդի մեծագոյն մասը, ամբոխը բաւականանում է սկզբնական դպրոցում ստացած իր կրթութեամբ։ Նա, ժողովրդի այդ մեծամասնութիւնը, զբաղված է նիւթական աշխատանքով. և նրա ստացած սկզբնական կրթութիւնը բաւական չէ որ նա մասնակից դառնայ հասարակական կեանքին, քաղաքացի լինի։

Հասարակութեան մէջ անդադար ծնվում են նոր մտքեր, նոր գաղափարներ. հասարակական հարցերը հասկանալու համար, կամ իւր դասի եւ իւր անձի օգուտները պաշտպանելու համար բաւական չէ սկզբնական դաստիարակութիւնը։

Հարկաւոր է մի ընդհանուր կրթութիւն, որ տարածվէր բոլոր ժողովրդի վերա։

Հարկաւոր է գտնել ընդհանուր գիտութիւն տարածելու մի զօրեղ միջոց, որ մեկնէր, պարզէր ժողովրդին հասարակական եւ քաղաքական երեւոյթները.—մի միջոց որ ուղղութիւն տար հասարակական կարծիքին, որը նիւթական աշխատանքին նուիրված մարդին անդադար ուղղէր, թոյլ տար նորան դաստիարակվել՝ ուսումնարանն եւս թողնելուց յետոյ։

Ո՞րն է այդ միջոցը։—Արծրունին պատասխանում է. «Գլխաւոր (չեմ ասում միակ) միջոցը—օրագրութիւնն է»։ Օրագրութիւնը նա, ինչպէս և այն ժամանակ ամենքը, գործ էր ածում «ժուռնալիզմ» բառի մտքով։

Հայերը ունէին ընդհանուր կրթութեան
այս գլխաւոր միջոցը, ունէին պարբերական
մամուլը։ Ցոյց տալով այդ մամուլի ահագին
կրթական նշանակութիւնը, Արծրունին բը-
նականաբար պիտի յատկապէս հայ մամուլի
մասին էլ խօսէր։ Եւ նա դիմեց այս հարցին
իր մի ուրիշ յօդուածում, որ գրված է Հէյ-
դլբէրգից և ունի «Բաւական չէ» վերնագիրը։

Մեր մամուլը, ինչպէս տեսանք, մի շատ
խղճուկ գոյութիւն էր պահպանում և չարու-
նակ գանգատվում էր որ ընթերցող չունի։
Բայց պէտք էր մի քիչ էլ իր պակասութիւն-
ների վրա ուշադրութիւն դարձնել։ Ահա այդ
բանը անող չը կար. և առաջին անգամ Արծ-
րունին է, որ գալիս է ցոյց տալու թէ ինչ
է պակասում մեր մամուլին։

Սկսելով իր տեսութիւնը այն ժամանա-
կից, երբ ռուսահայերի մէջ գործածական
դարձաւ աշխարհաբարը, Արծրունին ասում
է, որ այդ գործի մէջ առաջին և ամենածա-
նըր փորձերից մէկը արել է «Հիւսիսափայլի»
հրատարակողը։ Այն ժամանակից չարժումը
կանգ չառաւ և այժմ այլ ևս անհնարին է
վերադառնալ գրաբարին։ Սա, անկասկած, ա-
ռաջադիմութիւն է. բայց զարգացման մի
յայտնի աստիճանին հասնելուց յետոյ, ան-
կարելի է կանգ առնել, անշարժանալ մի կէ-

տի վրա։ Հայոց մամուլն ու գրականութիւնը կանգնած, անշարժացած են, նրանք չեն համապատասխանում ժամանակի պահանջներին։

Եւ Արծրունին մատնացոյց է անում այն ցաւը, որից իսկապէս հիւծվում էր մեր գրականութիւնը։ Դա ինքնուրոյնութեան համարեա կատարեալ բացակայութիւնն էր։ Մեր մամուլն էլ, մեր գրականութիւնն էլ ապրում էր թարգմանութիւններով։

Գրականութիւնը—ասում է նա—պէտք է դաստիարակիչ ազդեցութիւն ունենայ ժողովրդի վերա։

Նա կարող է այս ազդեցութեանը հասնել կամ ընդհանուր մարդկային գիտութեան մտքերը, սկիզբները եւ գաղափարները ժողովրդի մէջ տարածելով, կամ ազգին իւր կեանքի երեւոյթները վիպասանութեան ձեւով ներկայացնելով։

Առաջին դէպքում նա դրսից պէտք է մտցնվի,—որովհետեւ մենք, Հայերս, գիտութեան ինքնակայ մշակութեանը դեռ չենք հասել, երկրորդ դէպքում մեզ մնում է ինքնուրոյն տաղանդների ծննդին սպասել...

Ցանկալի է մեր գրականութեան առաջադիմութեան համար ինչպէս ինքնուրոյն տաղանդների ծընունդ, այնպէս եւ գիտնական ճշմարտութիւնների (գիտութեան ամեն ճիւղերի) խղճմտաբար մշակութիւնների երեւումն։

Գիտութիւնը մի ազգի համար չէ, նա ամենքին է պատկանում։ Մենք, ուրեմն, կա-

րող ենք վերցնել գիտութիւնը ուրիշ ազգերից, կարող ենք մեր լեզուով մատչելի դարձնել նրան մեր ժողովրդին։ Բայց ինչպէ՞ս, Թարգմանելո՞վ։—Ոչ։ Մեր հասարակութիւնը ընթերցանութեան չէ ընտելացել։ «Այդ պատճառով մեզ չէ կարելի մեր միամիտ, ծոյլ և տգէտ ընթերցողին գիտնական աշխատանքների թարգմանութիւնները (թէև ժողովրդական լեզուով գրված) գրքի ձևով առաջարկել։ Հարկաւոր է գիտնական գրվածներին մի կարճ, ամփոփված ձևը տալ. այսինքն գիտնական յօդվածները առաջարկել և ոչ թէ գրքերը։ Այս է պատճառը որ օրագրութիւնը մինչև այժմ միակ ձև է, որ ընդունելութիւն կարող է գտնել մեր ժողովրդի մէջ»։

Սակայն մեր օրագրութիւնը միայն թարգմանութիւններով է սնվում։ Թարգմանում է նա գիտութիւնը, թարգմանում է վիպասանութիւնները։ Բնակա՞ն է սա, կարո՞ղ է այսպիսի ուղղութիւնը համապատասխանել այն հասարակական պաշտօնին, որ ունի օրագրութիւնը։ Ո՞րն է այդ պաշտօնը։

—Օրագրութիւնը պէտք է մի կողմից ժողովրդի կեանքի արտայայտութիւն դառնայ, իսկ ուրիշ կողմից պէտք է դաստիարակիչ, կրթող ազդեցութիւն ունենայ ընթերցողի վերա։

Եթէ մենք—շարունակում է Արծրունին—միշտ կքաւականանանք օտար ազգերի կեանքից առած վիպասանութիւնների կամ գիտնական յօդվածների թարգմանութեամբ,—մեր օրագրութիւնը կհասնէ, կարելի է, դաստիարակիչ ուղղութեանը, բայց նա ժողովրդի կեանքի արտայայտութիւնը չի կարողանայ լինել:

Մեր օրագիրների եւ լրագիրների խմբագրողները կարծում էին թէ իւրանց պարտաւորութիւնը կատարեցին, երբ մի թերթ կամ տետրակ առաջին երեսից սկսած մինչեւ վերջինը թարգմանութիւններով լցրած՝ ընթերցողին առաջարկել են...

Մեր երիտասարդները եւ օրիորդները կարծում են թէ մեծ օգուտ են բերում ազգին, երբ որ տարին երկու երեք անգամ մի որ եւ է օտար կեանքից առած, մեր պահանջմունքին անհամապատասխան, ձեռին ընկած առաջին վիպասանութեան թարգմանութիւնը օրագրի թերթերի մէջ հրատարակեցին։

Եւ այս անվանվում է ազգային օրագրութիւն։

Ողորմելի է օրագրութեան դրութիւնը։ Պատճառները։ Առաջին և գլխաւոր պատճառը Արծրունին տեսնում է մեր ժողովրդական կեանքին յատուկ պակասութեան մէջ։ Դա այն է, որ հասարակական բոլոր գործերը բարերարութեան սկզբունքի վրա են հիմնված, և ոչ թէ ժողովրդի ինքնօգնութեան վրա։ Ժողովուրդը կարդալու պահանջ չունի, բայց նրան պէտք է սովո-

ընցնել։ Ո՞վ պիտի ժամանակ կորցնէ, այսպիսի պաշտօն յանձն առնելով։

Աղքատ մարդը, լինի նա նոյն իսկ լաւ կրթված, զարգացած, ընդունակ, չէ կարող օրագրութիւնը իր կեանքի միակ պարապմունք ընտրել, որովհետև հասարակութիւնը չէ վարձատրում այդպիսի աշխատանքը։ Ո՞վ է մընում.—Նա, ով աւելորդ ժամանակ ունի, այսինքն հարուստը։ Եւ Արծրունին բացականչում է.

Բնական է միթէ որ օրագրութեան մէջ ձայն ունեցող եւ հասարակական կարծիքին ուղղութիւն տվող մարդիկը,—միայն *հարուստներ* են։ Իսկ այն մարդի ձայնը, որը ինքն աղքատ լինելով, ժողովրդական կեանքի թշվառութիւնները անձնական փորձից ճանաչում է, որը ստիպված է իւր հացը իւր ամենօրեայ աշխատանքով ճարել,— այն մարդի ձայնը, ասում եմ, կորչում է հասարակութեան համար։

Անընական է, ի հարկէ. հասարակաց պաշտօնավարութիւնը կապված չը պիտի լինի այս կամ այն մարդու հարստութեան կամ աղքատութեան հետ։ Հարուստը ժամավաճառութեան համար կարող է գրականութեան, մամուլի մէջ գործել։ Բայց կարող են ասել. ինքը, Արծրունին էլ հարուստ էր, և սակայն նա դարձաւ խմբագիր, հասարակական կարծիքին ուղղութիւն տուող։ Մենք կասենք.

*Նախ և առաջ, մենք դեռ կը տեսնենք թե որքան հարուստ էր Գրիգոր Արծրունին։ Երկրորդ, հարուստ դասակարգից լինելով, նա այդ դասակարգի անհաշտ թշնամին էր և աղքատ ու աշխատաւոր դասակարգի անկեղծ բարեկամը, և երրորդ, նա ինքն էր աղքատ, անապահով դասակարգից հանում ընդունակ մարդիկ, որոնք պաշտպանում էին իրանց դասակարգի դատը և արշաւում էին հարուստ ու հարստահարող դասակարգի դէմ։*

Այս է պատճառը—շարունակում է Արծրունին—որ մեր օրագրութիւնը այսքան թոյլ, անհամ, աննպատակ եւ բոլորովին միակողմանի երեւոյթ է։

Բարեբարութեան սկզբին հաւատարիմ մեր հեղինակները, հիմնվելով երեւի ռուսական առածի վերա, կարծում են թէ «ընծայած ձիու ատամներին չեն նայում»։ Այսպիսի առածին հետեւելով, կարելի է ի հարկէ ժողովրդին ամեն տեսակ անմարսելի գըրվածներ առաջարկել, եւ հեղինակ կամ թարգմանիչ դառնալ ոչ թէ միայն մ ա ս ն ա ւ ո ր մի գիտութեան հետ ծանօթ չլինելով, (որ անշուշտ հարկաւոր է օրագրութեանը իւրան նվիրող անձին),—բայց եւ ը ն դ հ ա ն ո ւ ր կ ր թ ո ւ թ ե ա ն սկիզբները անգամ չունենալով։ Այնպէս որ մեր գրականութեան ասպարէզում գործող մարդիկը, ոչ թէ միայն չ պ ա տ ր ա ս տ վ ա ծ, այլ եւ չ պ ա տ ր ա ս տ վ ո ղ գրողներ են։

Իսկ պատրաստութիւն հարկաւոր է. եւ օրինաւոր օրագրութիւն այն ժամանակ կը հիմնվի, երբ

խմբագրութեան մէջ աշխատողներից ամեն մէկը գիտութեան մի որ եւ է ճիւղին մասնաւորապէս տեղեակ կը լինի։

Այժմ—այսպէս էր վերջացնում Արծրունին իր յօղուածը—դառնալով դէպի այն մեր հասարակական երեւոյթը, որը իւրան ազգային օրագրութեան փառաւոր անունը սեփականացրել է, ես ասում եմ.

Բաւական չէ անդադար թարգմանութիւնները առաջարկել ազգային օրագրութիւնը հիմնելու համար։ Բաւական չէ օրագրութեան մէջ ժողովրդի միայն հարուստ դասի ձայնը լսել տալ, ազգային կեանքի արտայայտութեան նշանակութեանը հասնելու համար։

Եւ դառնալով դէպի մեր գրողները (օրիորդները եւ երիտասարդները), ես ասում եմ.

Բաւական չէ առերես կրթութիւն ստանալուց յետոյ, ոչ մի գիտութեանը մասնաւորապէս տեղեակ չլինելով, քանի մի սովորած օտար լեզուները գործ դնել ժողովրդին անհասկանալի եւ մեր կեանքին օտար գրվածները թարգմանել,—հեղինակի պաշտօնը կատարելու համար։

Վերջապէս դառնալով դէպի ազգը, ես ասում եմ.

Բաւական չէ դեռ եւս չհասած հասարակութեան նշանակութեանը, չհասկանալով փոխադարձութեան գաղափարը, չըմբռնելով մտաւոր աշխատանքի օգուտը եւ ընթերցման պահանջմունքը,—բաւական չէ, ասում եմ, ոգեւորվել դատարկ ազգասիրական զգացմունքով, նվիրել այս կամ այն հեղինակին անհամ գովասանքները,—ազգային օրագրութիւնը հիմնելու եւ նպաստելու համար։

Ինքը, Արծրունին էլ, մէկն էր այն հեղինակներից, որոնց հայ ընթերցողները գաղափարներ էին ստանում։ Մենք տեսանք այդ գաղափարները։ Դրանց Արծրունին անուանում էր [illegible]։ Երիտասարդ գրողը, ինչպէս երեւում է այս մէջբերումներից, գովասանք, գրական փառք, հեղինակութիւն չէր որոնում իր ժողովրդի մէջ։ Փոխանակ սան[illegible] գաղափարների, նա կը կամենար գտնել այդ ժողովրդի մէջ գիտակցութիւն, ընթերցասիրութիւն, առաջադիմութիւն, հասարակական պարտաճանաչութիւն։ Նա աշխատանքի, անընդհատ աշխատանքի, օգտակարութեան մարդ էր, բծախնդիր, անողոք պահանջող, ամեն բանի մէջ քննադատութիւն, վերլուծութիւն որոնող։ Ի՞նչ օգուտ գաղափարներից։ Արդեօք գաղափարները կարո՞ղ են փոխել իրողութիւնները։

19 դարի տրամաբանական (լօժիք) մտախորհութեան ամենայարմար ճանապարհը՝ ոչ թէ վերացական ճարտարմտութիւններն են, այլ իրողութիւնների վրա հիմնված մտախորհութիւնը.—մի խօսքով ոչ թէ իրողութիւնը որպէս մտախորհութեան հետեւանք,—այլ ընդհակառակն՝ մտախորհութիւն որպէս փաստի, իրողութեան հետեւանքը։

Այսպէս էր գրական մարդու դաւանանքը։ Արծրունու այս խօսքերը մենք կարդում ենք

նրա մի ուրիշ յօդուածի մէջ, որի վերնագիրն է «Կ. Պօլսի երեկոները»։ Այս իսկ վերնագրով մի ոմն Միսմէր ֆրանսերէն լեզուով մի գիրք էր հրատարակել, որի մէջ ուզում էր ապացուցանել թէ մահմեդականութիւնը քրիստոնէութիւնից ստոր աստիճանի վրա չէ կանգնած իբրև հասարակական ուսում։ Եւ Արծրունին հերքում էր այդ բանը, առաջնորդ ունենալով այն սկզբունքը թէ ամեն ինչ պէտք է հիմնուած լինի իրական փաստերի և ոչ թէ վերացական դատողութիւնների վրա։ Առաջին անգամն էր Արծրունին խօսում մահմեդականութեան մասին։ Եւ նրան ղեկավարողը դատողութիւնները, վերացական փաստաբանութիւնները չէին։ Կայ մի անհերքելի իրողութիւն, ասում է նա. «այն է որ մինչև այժմ ոչ մի պետութիւն, նորա եվրօպական բառի նշանակութեամբ, չէ հիմնուել մահմեդականութիւն դաւանող ցեղերի մէջ։ Մահմեդականութեան հետ միասին մենք միշտ անբաժանելի ենք գտնում օրէնքի բացակայութիւնը, կամապաշտութիւն, բռնաւորութիւն, տգիտութիւն, գերդաստանի և ժառանգականութեան բացակայութիւն և այլն»։

Իսկ ուրիշ կողմի իրողութիւններից տեսնում ենք որ պետութեան զարգացման մեծ աստիճանին հա-

սել են միայն քրիստոնէութիւն դաւանող ազգերը, մանաւանդ այն քրիստոնէական ազգերը, որոնք քրիստոնէութիւն բառով հասկանում են եւ ընդունում են գլխաւորապէս Քրիստոսի բուն, ճշմարիտ, վեհ ուսումը եւ Նորա բուն խօսքերը,—այսինքն Աւետարանը։

Եւ չէ կարելի որ ուրիշ կերպով լինէր։ Քրիստոնէութիւնը, կամ աւելի լաւ ասեմ Աւետարանը բովանդակում է իւր մէջ երեք մեծ գաղափարներ. սէր, հաւասարութիւն եւ ազատութիւն, որոնք ազգերի հասարակական կեանքում ծնել են աշխատանք, օրէնք եւ անհատութիւն։

Բացի դաւանութեան անշարժութիւնից՝ մահմեդական ազգերի քաղաքական զարգացումը ուրիշ արգելքների էլ է հանդիպում։ Եւ այդ արգելքների թւում Արծրունին դընում է ի միջի այլոց և այն, որ բոլոր մահմեդական ազգերը գործ են ածում արաբական տառերը, որոնք այնքան շատ անյարմարութիւններ ունեն։

Ցրանսիլվայի հեղինակի տգիտութիւնը ցոյց տալու համար Արծրունին բերում է նորա այն անհեթեթ խօսքերը թէ «քսան տարի առաջ հայերը թիւրքեր էին թէ վարքով և թէ լեզուով. այժմ իրանց մէջ մտցրած ազգային մի այբբուբէնի շնորհով, նոքա ևս մշակում են իրանց լեզուն, նոքա ևս յոյների նման ձգտում են դէպի մեծ գաղափարը»։

*Ծայրայեղութիւն էր, ի հարկէ, ասելը թէ հայկական այբուբենը նոր հնարած մի բան է։ Բայց Արծրունին էլ ծայրայեղութեան մէջ էր ընկնում, ասելով դրա դէմ. «Ուրեմն հեղինակը չգիտէ, թէ մեր այժմեան օրագիրներում գործ ածված գրերը նոյն են, որոնք* IV *դարում մեր Գրիգոր Լուսաւորիչն էր գործածում իր աստուածաբանական գրվածներում»։*

*Այս յօդուածը տպվեց «Հայկական Աշխարհի»* 1870 *թ. Յուլիս-Օգոստոս միացած համարներում։ Նոյն այդ համարների «Մեր Ներքին Գործեր» տեսութիւնը Ստ. Ստեփանէն վերջացնում է հետեւեալ տողերով.*

Գուր լա քօն քուշ (քիմքերը քաղցրացնելու համար) հաղորդում եմ ահա ընթերցողիս, որ այս օրերըս եկաւ Թիֆլիս «Հայկական Աշխարհի» արդիւնաւոր աշխատակից եւ իմ յարգելի եւ սիրելի բարեկամ մեծ. դոկտոր Գր. Արծրունին եւ իւր հայրենիքում գործելու է այսուհետեւ մեր ճշմարտասէր երիտասարդ գիտնականը։

*Մենք էլ թողնենք առ ժամանակ Արծրունու գրուածքները և հետեւենք այս իրողութեան, այսինքն հայրենիք վերադառնալուն։*

---

## V

Արծրունին Թիֆլիսում։—Տպաւորութիւններ։—Գործունէութիւն։—Յօդուածներ «Հայկական Աշխարհում»։—Արծրունու գերմանասիրութիւնը։—Նապօլէոնի Ֆրանսիան և հանրապետական Ֆրանսիան։—«Աշխարհաքարի նորաձեւութիւնների հասարակական նշանակութիւն»։—Սառնութիւն Սեփանեկի և Արծրունու մէջ։—Արծրունին «Մեղուի» աշխատակից։—Հինգ յօդուած։—«Գիտնական անախայականութիւն»։—«Ընթերցողը և գրողը»—միմեանց չը մեղադրեմ՛ք։—Սունդուկեանցի «Պէպօն»։—Հայի յատկանիշները։—Առաջին թշնամութիւն Արծրունու դէմ։—Եզրակացութիւններ Արծրունու գրական գործունէութեան առաջին շրջանի մասին։



Ուղիղ եօթը տարի Գրիգոր Արծրունին բացակայ էր իր հայրենիքից։ 1863 թւին Թիֆլիսից Մոսկվա դիմողը մի պատանի գիմնազիստ էր, օտար կրթութեան պտուղ, լցված մի արհամարհական հեգնանքով դէպի իր մայրենի գրականութիւնը։ Եօթը տարի շարունակվեց այդ պատանու ուսանողական կեանքը։ Այժմ, 1870-ի սեպտեմբերին, Թիֆլիս վերադարձողը Եւրոպայում պտտած, զա-

նազան համալսարաններում գիտութեան զանազան ճիւղերից դասախօսութիւններ լսած, գերմանական համալսարանը փիլիսոփայութեան դոկտորի աստիճանով վերջացրած 25-ամեայ երիտասարդ էր նա, բոլորովին կերպարանափոխված, իր ազգի մտաւոր շահերը իր համար նպատակ դարձրած, նորա առաջադիմութեան և վերածնութեան նուիրված։ Այժմ նա մի անյայտ անձնաւորութիւն չէր. այժմ նա անուն ունէր հայ ընթերցողների սահմանափակ շրջանում իբրև մտքեր յուզող, մտածել տուող հրապարակախօս։ Նա, այո, արդէն հրապարակախօս էր որոշ ուղղութեամբ, աշխարհայեցողութիւններով, ամուր դաւանանքներով։

Մենք տեսանք որ օտար աշխարհի մէջ կազմակերպվեց, հասունացաւ այդ գրական ոյժը։ Արծրունին հայրենիքից իր հեռաւոր պատանեկական տպաւորութիւններն ու յիշողութիւններն ունէր իր առջև, երբ Եւրոպայի զանազան կողմերում նստած՝ քննադատում էր մեր կեանքի երևոյթները, մեր հասարակական պայմանները։ Այժմ նա գալիս էր մեր ժողովրդի մէջ, այժմ նա ընկնում էր մեր իրականութեան անմիջական, զօրեղ ազդեցութեան տակ։ Եւ առաջին հարցը, որ ծագում է մեր մէջ այս րոպէին, այն

է թէ ինչ տպաւորութիւն գործեց երիտասարդ գրողի վրա մեր կեանքը, ինչ զգաց նա, անմիջապէս շփվելով մեր իրականութեան հետ։ Վերադառնալով Թիֆլիս, նա հէնց առաջին շաբաթներում, քննելով իր շրջապատը, իր տեսածներն ու լսածները, անշուշտ զբաղված պիտի լինէր մի շատ հետաքրքրական գործողութեամբ։ Դա վերաստուգութիւնն էր։ Արծրունին քննում ստուգում էր թէ որքան ինքը հեռուից ճիշտ է ըմբռնել մեր կարիքներն ու պակասութիւնները, որքան ճիշտ կերպով է որոշել հասարակական ցաւերի դիագնոզը։—Ի՞նչ էր ասում նրա այդ վերստուգութիւնը։

Բարեբախտաբար, Արծրունին թողել է մեզ այս հարցերի պատասխանը, գրելով իր առաջին տպաւորութիւնները Թիֆլիս հասնելուց յետոյ։ Այդ տպաւորութիւնները նա հրատարակեց «Հայկական Աշխարհի» խմբագրին ուղղած իր նամակի մէջ և նրանք այնքան հետաքրքրական են, այնքան շատ բան են ասում մեր հրապարակախօսի առաջին քայլերի մասին, որ մենք կարևոր ենք համարում բերել այստեղ ամբողջ նամակը.

Ահա հասայ ես Թիֆլիս։ Թոյլ տուեցէք ինձ, պ. խմբագրող, փոքրիկ եւ անկարգ այս նամակում

ներկայացնել Ձեզ առաջին օրերի տպաւորութիւն-
ներս...

Մեծ ճանապարհորդութիւնից յետոյ, երբ մարդս
ոչ իր պարապմունքը դեռ օրինաւոր կերպով կար-
գեց, ոչ ընտելացաւ կլիմային, եւ առհասարակ բոլոր
նրա կեանքը դեռ եւս իր սովորական շաւղին չէ
հետեւում,—նա առաջին օրերը, կամ գուցէ շաբաթ-
ները (կարելի է եւ ամիսները) անգործութեան մէջ
ստիպված է անցնել։

Պտտելով թէ փողոցներում, տեսնելով այն, ինչ
որ արժանի էր տեսնել քաղաքում, ես թէ հին ծա-
նօթներիս պատահեցի, թէ վերջապէս եւ նորերի հետ
ծանօթացայ, թէ մեր նոր ծխական ուսումնարան-
ներին այցելութիւն արեցի։ Ի՞նչ փոփոխութիւններ
կան մեր հայրենակիցների մտաւոր կեանքում. դէպի
լա՞ւը կամ դէպի վատ են այդ փոփոխութիւնները...
դժուար կը լինէր ինձ պատասխանել այս հար-
ցերին։

Ինչից է բաղկացած մեր սուղ մտաւոր շրջանը։

—Հայկական թատրոն չկայ, հասարակական դա-
սեր մեզանում դեռ եւս երբէք չեն եղել, կան եր-
կու երեք օրագիրներ, կան ծխական ուսումնարան-
ներ, Ներսիսեան դպրոց...

Ես թերթեցի «Արարատ», «Հայկական Աշխարհ»
եւ «Մեղու Հ-ի», ես այցելութիւն արեցի օրիոր-
դական ծխական ուսումնարաններին, ես խօսեցի
Ներսիսեան դպրոցի քանի մի վարժապետների հետ։

. . . . . . . . . . .

Խօսելով քանի մի անձների հետ ես հարցրեցի,
ինչի աղջիկների եւ տղաների ծխական ուսումնա-
րանները բաժանված են միմեանցից, եւ սկսեցի
ապացուցանել խառն դասատւութեան օգուտը։—Ինձ

պատասխանեցին թէ խառն դաստիարակութեան օգուտը ամենքը պարզ հասկանում են, բայց ոչ ոք յանձն չէ առնում իրագործել խառն ուսումնարան մի, որովհետեւ այս տեսակ դաստիարակութիւնը համապատասխան չէ հասարակութեան մէջ ընդունուած սովորութիւններին *)։

Պատելով փողոցներում, պատահում եմ հին ծանօթներից մինին, որը խօսակցութեան մէջ հարցնում է ինձ թէ ինչի գրում եմ ես.... «մեզ, համալսարանում ուսում առածներին ձեր գրվածները ոչինչ նոր գաղափար չեն կարող ներկայացնել, իսկ ժողովուրդը հայերէն կարդալ չգիտէ»։ Ես դժուարացայ որ եւ է պատասխան տալ այսպիսի հարցին, քաջ զգալով, որ ինձ ինքնիս բաւական պարզ չէ իմ պարապմունքիս նպատակը։ Ես սկսեցի քննել շրջապատող հասարակական երեւոյթները եւ համեմատելով նոցա ինձ հետ,—համոզվեցայ թէ նոքա եւս (թէ մարդիկ, թէ հիմնարկութիւնները) ինձ նման անորոշ դրութեան մէջ են...

Հեռու երկրից (Գերմանիայից) մեր երկրի վերաբերութեամբ յօդվածները տպելով, ես կարող էի

---

*) Խառն ուսումնարան հիմնելու փորձը արեց արդէն պ. Ստեփանէն մի տարի առաջ Ներկարոց. Մարխամեան Ուսումնարանում (Հավլաբարում)։ Ուսումնարանի տեսչութիւնը մինչեւ այսօր էլ հրաւիրում է ծնողներին, որ յանձնեն իւրանց աղջիկներն օրիորդների հետ ուսում առնելու։

Ծան. Խմբ.

սկսել եւ թեքի հայեացքներ ունենալ մեր ժողովրդի կեանքի, մեր հասարակական երեւոյթների մասին... Սխալվեցայ ես արդեօք կրկնելով թէ մեր հասարակական բոլոր յառաջերութիւնները կայացած են քաղաքացութեան սկզբի եւ ոչ ինքնաօգնութեան զօրութեան վերա.—սխալվեցայ ես արդեօք յայտնելով թէ այն ժողովուրդը հասարակութեան անունին արժանի չէ, որը փոխադարձութեան տնտեսական գաղափարի ըմբռնելուն դեռ եւս չէ հասել...

Եւ այս բոլոր ասածս կարող է արդեօք վերաբերել մեր հասարակութեանը, ունի՞ն արդեօք իմ մտքերս վերաբերութիւն մեր իրական կեանքին...

Դարձէք, խնդրեմ, մեր օրագիրների եւ լրագիրների խմբագրութիւնները եւ դուք այնտեղ կը տեղականաք, որ տպած նիւթերի մեծ մասը անվարձ են հրատարակվում, ուրեմն գրողները աւելորդ ժամանակ ունեցող մարդիկ են, ուրեմն կարողութիւն ունեցող, ունեւոր դասի ձայն է լսվում միայն օրագրութեան մէջ... ուստի մեր օրագրութիւնը ժողովրդի արտայայտութիւնը չլինելով, նորա կեանքը արվեստական է։ Կարելի՞ է արդեօք այսպիսի պարբերական հրատարակութիւններին երկար կեանք խոստանալ, կարելի՞ է վերջապէս նորանից պահանջել գործի հասկացողութիւնը եւ ուրեմն հասարակութեան համար օգուտ սպասել։

Գնացէք ծխական ուսումնարանները, եւ դուք այնտեղ եւս մի եւ նոյն երեւոյթը կտեսնէք. պաշտօնները անվարձ են, վարժապետները կամ ձրի կամ այնպիսի չնչին ռոճկով դասեր են տալիս, որ երբէք չէք կարող յուսալ որ նոքա այս պարապմունքով ապրել կարող են, ուրեմն զանց պէտք է առնէք հասարակութեան մէջ ծխական (քաղա-

քային եւ գիւղական) ո ւ ս ո ւ մ ն ա ր ա ն ն ե ր ի վ ա ր-
ժ ա պ ե տ ն ե ր ի կ ա զ մ վ օ ղ դ ա ս ը տեսնելու։

Այս հանգամանքները աչքի առաջ ունենալով, եզրափակում եմ որ օրագրութեան նման եւ ծխական ուսումնարանների գոյութիւնն եւս արվեստական է եւ կլինի (ուրեմն եւ երկարատեւ չի լինի), մինչեւ որ փոխադարձութեան գաղափարը մեր ամեն հասարակական յարաբերութիւններում չիրագործվի։

Ինձ Թւում է թէ ուսումնարանների կառավարութիւնները իրանց կրթողական ներգործութեանը մեծ հաւատ չեն ընծայում,—բայց կրկին շարունակում են իրանց գործունէութիւնը։

Ամեն տեսակ վարժապետների հետ խօսելով, ինձ երեւեց իբր թէ նոքա հերքում են իրանց պարապմունքի օգտաւէտ ազդեցութեան կարելութիւնը,—բայց կրկին շարունակում են դասատվութիւն անել…

Թերթելով մեր օրագիրները եւ զննելով նոցա ուղղութիւնը կամ խօսելով խմբագրողների հետ ես համոզվեցայ որ մեր պարբերական հրատարակութիւնների խմբագրութիւնները քիչ թէ շատ թերահաւատ են դէպի իրանց գրականական գործունէութեան պտղատու լինելը,—բայց կրկին շարունակում են խմբագրել…

Մեր օրագրութեան մէջ հրատարակվօղ նիւթերի ընթերցանութիւնը ինձ վերա այն տպաւորութիւնը թողեց իբր թէ հեղինակները (կամ աւելի լաւ ասեմ թարգմանիչները) իրանց մտաւոր ծննդի վերա իրանք կասկածով եւ երկբայութեամբ են նայում։

Արդեօք սոքա առանձնացա՞ծ երեւոյթներ են, կամ մի խոր, հաստատ եւ բնական արմատ ունեն հասարակութեան մէջ… սոքա անցաւո՞ր դէպքեր են արդեօք, կամ մեր հասարակութեան ընդհանուր օ-

րէնք լինելով, կարօղ են հայ հասարակութեան յատկանիշ արտայայտութիւնը կոչվել...

Այսպէս ահա, տպաւորութիւնները վկայում էին որ նա չէր սխալվել, թէև շատ հեռուից էր նայում մեր իրականութեան։ Վերստուգումը ապացուցեց որ նա ունի նուրբ հոտառութիւն, որ նա օդի մէջ է ըմբռնում հարցերն ու կարիքները։

Նա դեռ Գերմանիայում գիտէր որ մեզանում, իսկապէս, ոչինչ չը կայ, որ մեր հիմնարկութիւնները անբնական, խախուտ դրութեան մէջ են, որ մեզ պակասում է հաւատ դէպի գործը, պակասում են հասարակական գիտակցութիւն, համերաշխութիւն, աշխատանքի վարձատրութիւն։ Տիֆլիսի՝ իրականութիւնը, որ ի հարկէ, ամբողջ հայութեան մի հարազատ կտորն էր ներկայացնում, ցոյց էր տալիս որ նա շատ լաւ էր տեսնում արտասահմանից։ Կեանքի անմիջական զննութիւնը երևան է հանում մի մամուլ, որ ժողովրդի արտայայտութիւն չէ, թէև աշխատում է, բայց ինքն էլ չէ հաւատում իր կոչման, չը գիտէ թէ մի բան արդեօք կարողանում է անել, երևան է հանում դպրոցներ ձրի ուսուցիչներով, թատրոնի մի այնպիսի գոյութիւն, որ աւելի շուտ ոչնչու-

թիւն, չգոյութիւն է։ Կան, այո՛, հիմնարկու-թիւններ, բայց չեղածի նման են, որովհետև չունեն մի առողջ, կենսունակ օրգանի ան-հրաժեշտ հանգամանքները։ Ամեն ինչ առաւե-լոյին, ամեն ինչ բարեկարգութիւն, ազգա-սիրութիւն. չը կայ իրական օգուտ, կենդանի անխուսափելի պահանջներին էապէս լրացում տալու ընդունակութիւնը։ Մենք դեռ հասա-րակութիւն չենք՝ այս բառի ճիշտ իմաստով։

Այս միջավայրում, այսպիսի շրջապատի, «հասարակութեան» մէջ Արծրունին առաջին անգամ ենթարկվում է թեթև տատանում-ների. և երբ նրան հարցնում են թէ ինչո՛ւ և ում համար է նա գրում, չէ կարողանում չը զգալ որ իր համար էլ բոլորովին պարզ չէ իր պարապմունքի, այսինքն գրելու նպա-տակը։ Այս հարցը կար նրա առջև և Գեր-մանիայում. բայց այնտեղ նա գիտէր, որ պէտք է գրել, պէտք է միշտ և անդադար կրկնել մտքերը, մինչև որ կըմբռնեն, որով-հետև մեր ժողովուրդը իր ազատութեան պատճառով դեռ երեխայ է։ Թիֆլիսում, ա-ռաջին րոպէներում, նա մտածում է այդ բանը, այնքան ցուրտ ու անհրապոյր էր մեր իրականութիւնը, այնքան նա դէմ էր հրում ամեն մի գործունէութեան միջոցը։ Բայց գա-նոր մարդու, միջավայրին անսովոր մարդու,

տատանումն է։ Անցնում են խրախճացնող ազդեցութեան րօպէները և նա շարունակում է աշխատել։

Ուսումն առած, իր յօդուածներով արդէն յայտնի դարձած երիտասարդի առջև բաց-վում է գործունէութեան ասպարէզ. նա մըտ-նում է դպրոցական աշխարհը, ստանձնում է Գայիանեան և Մարիամեան օրիորդաց դըպ-րոցների տեսչի պաշտօնակատարի պաշտօն։ Բայց այստեղ շատ քիչ է մնում. մանկավար-ժութիւնը նրան չէ հրապուրում. բայց դրա փոխարէն գրականութիւնը շարունակ գրա-ւած է նրան և նա Թիֆլիսում էլ սկսում է աշխատակցել «Հայկական Աշխարհին», տա-լով թէ յօդուածներ և թէ զանազան տեղե-կութիւններ, գլխաւորապէս Նոր գրքերի մա-սին, «Մեր Ներքին Գործեր» բաժնի համար։ Յիշենք այստեղ և այն, որ Արծրունին միա-ժամանակ յօդուածներ ուղարկում էր և Կ. Պօլսի «Մասիս» լրագրին, ինչպէս և «Пе-тербурскія Вѣдомости» լրագրին, ուր գործ էր ածում «Է Շատ-Իրաւացի» կեղծ անունը (Э Шатъ-Ираваци)։

Հետևենք «Հայկական Աշխարհում» տըպ-ված յօդուածներին։

Նախ քան Թիֆլիս գալը Արծրունին ու-ղարկել էր Ստեփանէին «Ֆրանսիա և Գեր-

մանիա» յօդուածը, որի շարունակութիւնը տպվեց արդէն այն ժամանակ, երբ նա Թիֆլիսումն էր։ Ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակն էր և համեմատութիւնը այդ երկու երկիրների մէջ անհրաժեշտութիւն էին դարձնում ահաւոր դէպքերը։ Արծրունին համեմատում էր և, իբրև գերմանական ուսում ստացած մարդ, համակրութիւն էր յայտնում յաղթական Գերմանիային, որ այդ ժամանակ միացրեց իր անջատված մասերը, կազմեց մի մեծ պետութիւն։ Պէտք է սակայն նկատել որ համակրութիւնը դէպի Գերմանիան հիմնված էր այն ատելութեան վրա, որ տածում էր Արծրունին դէպի Նապօլէօն երրորդի բռնակալութիւնը, այնպէս որ նրա համար անհամակրելի էր ոչ թէ ֆրանսիական ազգը, այլ կառավարութիւնը։

Այժմեան Ֆրանսիայի դրօշակը չէ նշանակում ինչպէս առաջ *ազատութիւն*, այլ նշանակում է *բռնաւորութիւն*, ասում է Արծրունին։— Սա այն դրօշակ է, որի օգնութեամբ Ֆրանսիա Մեքսիկայի հասարակապետութիւնը, ընդդէմ ժողովրդի կամքի, զօրով կայսերութեան ձեւին դարձրեց, եւ պատասխանատու դարձաւ Մեքսիկայի կայսրի դժբախտ մահին,—այն դրօշակը, որի հովանաւորութեան տակ այս օրերս Հռոմի ժողովը յանդգնեց *աբեղային* Աստուծու յատկութիւնը շնոր-

հել, Հռոմի պապի անսխալականութիւնը յայտնելով։

**Եւ ահա այդ Ֆրանսիան կամենում էր. արգելք դնել գերմանական տարրի քաղաքական ազատ զարգացման։ Պատերազմը բաց արեց մի տեսարան, որի վրա զարմացած է ամբողջ աշխարհը, զարմացած է ինքը, Գերմանիան էլ. առաջնակարգ, զինուորական պետութիւնը յաղթվում է մի նորահաս, մինչև այդ թոյլ համարվող տարրից։**

Մարդկութիւնը դեռ եւս այնքան տգէտ ու անզարգացած է, որ հարկաւոր էին այսպիսի յաղթութիւնները, այսպիսի ահերեւ ապացոյցները, որ ազգութիւնների մեծ մասը ճանաչեն գերմանական տարրի առաւելութիւնները։

Տգէտ ազգերի աչքում, որոնց կարգում պատիւ ունինք եւ մենք եւ զանազան ուրիշ ցեղերն եւս գտնվելու (մանաւանդ Թիւրքիայի վայրենի բռնաւորութեան տակ գտնվող ողորմելի ազգերը), տգէտ ազգերի աչքում, ասում եմ, միշտ առանձին նշանակութիւն է ստանում այն ազգը, որը պատերազմում յաղթող է եղել…

Եւ ինչ որ ոչ ոք չէր սպասում, կատարվում է, գերմանացիները, բանաստեղծների, գիտնականների, մտածողների ազգը յաղթում է զօրեղ, երեւելի զինվորական ազգ մի։

Ֆրանսիայի համար այս օգտաւէտ է…

Բայց ո՞վ կարող էր իրան երեւակայել, որ Ֆրանսիան մինչեւ այս աստիճան· փտել է Նապօլէոնի

անբարոյական, ամեն նզատուԹիւն, անհատուԹիւն ոչնչացնող կառավարուԹեան տակ։ Ֆրանսիան այն աստիճանին ընկել է այս անընդունակ եւ անբարոյական կառավարուԹեան տակ, որ այժմ Գերմանիայի պատերազմը Ֆրանսիայի դէմ կարելի է անվանել ա զ ա տ ո ւ Թ ե ա ն .պատերազմ ս տ ր կ ո ւ Թ ե ա ն դէմ։

Ստեփանէն, տպագրելով այդ յօդուածները, յայտնեց որ ինքը համաձայն չէ Արծրունու մտքերի հետ։ Եւ մի քանի խօսքով յայտնեց Թէ ինչու չէ համաձայն։ Սա առաջին և միակ դէպքն է, երբ «Հայկական Աշխարհի» խմբագիրը պատճառաբանում էր իր անհամաձայնուԹիւնը։ Եւ այդ պատճառաբանուԹիւնը, պէտք է խոստովանել, բաւական Թոյլ և անհամոզեցուցիչ էր։ Ստեփանէն ասում էր Թէ Ֆրանսիան եղել է ազատուԹեան և հաւասարուԹեան սկզբունքի քարոզիչը, բայց այդ բանը չէր ուրանում Արծրունին. Ֆրանսիայի այդ ժամանակվայ դրուԹիւնը Ստեփանէն համարում էր մի ժամանակաւոր խաւար, բայց հէնց Արծրունին էլ վերցնում էր Նապօլէօնեան խաւար րէժիմի տակ փտած Ֆրանսիան. Արծրունու առաջ կանգնածը ֆրանսիական ազգը չէր այնքան, որքան կառավարուԹիւնը։

Սակայն, մենք .չենք ուզում ասել Թէ

Արծրունին միանգամայն ճիշտ էր դատում։ Հայրենասիրական բուռն զգացմունքներով հրդեհված Գերմանիայում ապրող, գերմանական կրթութեամբ յափշտակված մի երիտասարդի համար ներելի էր վարակվել գերմանացիների հիացմունքով։ Անուանել գերմանացիներին ազատութեան կռիւ մղող ստրկութեան դէմ կարող էր, այո, Հռենոսի ափերում, պատերազմական բեմից ոչ հեռու գտնվող գերմանական ուսանողը։ Բայց դա գուցէ ճիշտ էլ լինէր այն ժամանակ, երբ Նապոլէոնն էր Ֆրանսիայի տէրը։ Նայում ենք այդ տողերի տակ դրած ամսաթւին և արդարացնում ենք Արծրունուն, որովհետև նա գրել է այդ բանը օգոստոսի վերջերում, երբ դեռ Սեդան չը կար, երբ դեռ Նապոլէոնը պրուսացիների գերին չէր։

Բայց ահա կատարվում է ահեղ դէպքը։ Կայսրութիւնը ընկնում է Ֆրանսիայում, ժողովուրդը դիմում է հանրապետական կառավարութեան ձևին և զէնք է վերցնում իր հողը, իր տունը պաշտպանելու համար։ Գերմանիան, սակայն, զէնքը ցած չէ դնում, թէև յայտարարել էր որ պատերազմում է Նապոլէոնի դէմ և ոչ թէ ֆրանսիական ազգի դէմ։ Եւ այնուհետև մենք տեսնում ենք համաշխարհային պատմութեան մէջ նմանը

չունեցող մի ահռելի դրամա։ Յաղթութիւններից յղփացած Գերմանիան առաջ է տանում իր յաղթական արշաւանքը, սպանդանոց է դարձնում դժբախտ Ֆրանսիան, չը քաշվելով նոյն իսկ այն հանգամանքից, որ իր կանոնաւոր, պողպատեայ պատեր ներկայացնող զօրքերի առջև կանգնած է ոչ թէ ֆրանսիական զօրքը, այլ շտապով զինված ժողովուրդը... Այստեղ այլևս երկաթի և արեան կոյր պաշտամունքն է, այստեղ այլ ևս բիսմարկեան հոգին է; գզլելու, ստորացնելու, ոչնչացնելու այն հոգին, որ գոռոզութեամբ մերժում էր հաշտութիւն կնքելու առաջարկութիւնները և կրակում էր ֆրանսիական գիւղերը...

Ահա պատերազմի այս շրջանում էլ Գրիգոր Արծրունին, իբրև գերմանական ուսանող, չարունակում էր համակրել Գերմանիային։ Հոկտեմբերին գրած իր վերջին յօդուածում նա քննադատում էր ֆրանսիական հանրապետութիւնը և ասում էր որ այժմ էլ, երբ Ֆրանսիան հանրապետութիւն է, համակրել նրան նշանակում է հանրապետութիւն բառով յափշտակվել առանց իրան բաւական աշխատանք տալու այս բառի ճիշտ նշանակութիւնը, նրա հասարակական պաշտօնը, մի ժողովրդի մէջ նորա իրագործման

**հնարաւորութիւնը, մի խօսքով առանց դրական կերպով հասարակապետութեան... մի ժողովրդի մէջ գործադրութեան բոլոր պայմանները քննելու...»։**

**Ֆրանսիական հանրապետութիւնն էլ, Արծրունու կարծիքով, մի անհամակրելի բան է։**

Կարելի՞ է արդեօք—հարցնում է նա—համակրել այն ազգին, որի բերանից մենք այս սկզբի թէեւ անդադար ներբողներ ենք լսում, որը իր պատմական ընթացքում քանի՛ մի անգամ արդէն փորձել է յարմարեցնել այս գաղափարը իր քաղաքական կեանքին,—բայց որի երեւակայական փորձերի հետեւանքը եղել է միշտ առաւել խիստ եւ անտանելի բռնաւորութեան հպատակումն...

Մենք յետագայ ճշմարտութիւնը երբէք չպէտք է դադարենք հասարակութեանը կրկնելու. ինչքան ընդարձակվում են, բազմանում են մեր իրաւունքները, այնքան աւելանում են մեր պարտաւորութիւնները։

Նոր շնորհված... իրաւունքների իրան արժանի ցոյց տալը նշանակում է այն իրաւունքներին համապատասխան պարտաւորութիւնները կատարել կարողանալ։

Իսկ քաղաքական պարտաւորութիւնները ճշտութեամբ կատարել հեշտ բան չէ։ Պէտք է պատրաստված լինել այս կամ այն պարտաւորութիւն կատարելու համար։

Ի՞նչ են Ֆրանսիայի հիմնարկութիւնները։

Եւ Արծրունին մի առ մի թւում է պակասութիւնները։ Ֆրանսիան ընդհանուր ձայնատւութեան իրաւունք ունի, բայց քուէարկողները անգրագէտ են։ Ազատ սահմանադրութիւն ունի նա, բայց բիւրօկրատիայի հայրենիքն է և նրա պաշտօնեաները տիրում են հասարակութեան, քաղաքացիների վրա։ Գաւառները խեղդված են, ինքնուրոյնութիւնից զրկված, տիրում է կենտրօնը, Պարիզը կենտրօնացրել է ամեն ինչ իր մէջ։ Ֆրանսիան «հասարակապետութիւն լինելով, անհատութեան․ սկիզբը պէտք է պաշտպանէ, բայց միշտ տարել է կաթօլիկ մոլեռանդ հոգևորականութեան անսահման ազդեցութիւնը հասարակական կրթութեան վերա, այն հոգևորականութեան, որի նպատակն է անհատութիւնը սպանել»։

Այս բոլորը ճիշտ է։ Բայց մի՞թէ հարցը այն մասին է թէ ինչ պակասութիւններ ունի մի վարչական սիստեմ։ Եւ մի՞թէ այդ կողմից Բիսմարկի Գերմանիան բոլորովին անբիծ էր։ Մի՞թէ Բիսմարկը պրուսական զինուորների հետ հաստատվել էր Վերսայլում այն նպատակով, որ վերացնէ անարդարութիւնները ֆրանսիական վարչական կարգերի մէջ։ Դէպքերը դեռ նոր էին խոշոր դրութիւններ ստեղծում։ Դեռ յայտնի չէր թէ

—ինչ պատիժ պիտի դառնայ միացած Գերմանիան քաղաքակիրթ աշխարհի համար, պաշտամունք դարձնելով զինուորական ոյժը՝ ստեղծելով ահռելի միլիտարիզմը։ Գրիգոր Արծրունուն 1870-ին ներելի էր սխալվել։ Եւ ժամանակի ընթացքում, երբ հետզհետէ լոյս աշխարհ եկան յաղթական Գերմանիայի յատկութիւնները, նա փոխեց իր հայեացքը. նա՛ տեսաւ որ ֆրանսիական հանրապետութիւնը, որքան էլ պակասութիւն ունենար, ամենայարմար վարչական ձեւն է, որ հնարաւորութիւն է տալիս ժողովրդին կռւել հասարակական ցաւերի դէմ, պահպանել ազատութիւնը և վտանգի ժամանակ արտայայտել հերոսական գաղափարականութիւն։ Որքան էլ պակասաւոր, որքան էլ հիւանդոտ, բայց հանրապետութիւնը ժողովուրդն էր ներկայացնում և եթէ յանցանքները այնքան բարձրաձայն, հրապարակական դատապարտութեան էին ենթարկվում, պատժվում էին, պատճառն այն էր, որ կառավարչական ձեւը հանրապետութիւն էր։

Այս բոլորը արձանագրեց Արծրունին յետոյ, իր հրապարակախօսական գործունէութեան ընթացքում։ Բայց այստեղ չը մոռանանք բերել մի կտոր նրա «Ֆրանսիա և Գերմանիա» յօդուածներից։ Այդ կտորը շօշափում է ֆը-

ֆրանսիական և գերմանական կրթութեան արժանաւորութիւնների հարցը։

Բաղդի բերմամբ—ասում է Արծրունին—մեզ, Ռուսաստանի Հայերիս համար, որոնք աւելի առիթ ունինք հիմնաւոր դաստիարակվելու, քան թէ Թիւրքիայի մեր ողորմելի եղբայրները, պարզ էին միշտ, եւ պատերազմից առաջ եւս, Գերմանիայի արժանաւորութիւնները։ «Ապացոյց, որ դուք, Ռուսաստանի Հայերդ, աւելի զարգացած էք, քան թէ Թիւրքիայի մեր եղբայրները,—ասում էր ինձ անցեալ տարի Փարիզում Մխիթարեան Հայրերից մինը,—որ դուք ձեր ուսման ասպարէզը Գերմանիա էք ընտրել, եւ մեծ մասամբ այնտեղ են գնում ձեր երիտասարդները ուսում առնելու,—իսկ Թիւրքիայի հպատակները միայն Փարիզ են գալիս, Ֆրանսիայի թեթեւ առերես կրթութիւնը նախապատւելով»։

«Հայկական Աշխարհի» խմբագիրը հակառակ էր և այս մասին. նա, ընդհակառակն, շատ լաւ էր համարում ֆրանսիական կրթութիւնը։ Եւ սակայն գերմանական կրթութեան գերազանցութիւնը ընդունվեց ամբողջ աշխարհի կողմից, որ վկայեց թէ պատերազմի մէջ Ֆրանսիային յաղթողը գերմանական ժողովրդական ուսուցիչն էր։ Նըկատենք որ Սանեփանէն, ինչպէս կը տեսնենք, Արծրունուն հակառակվելու համար էր ոչինչ համարում գերմանական կրթութիւնը...

1871 *թուականին Արծրունին «Հայկական Աշխարհում» տպագրեց երկու նոր յօդուած։ Դրանցից առաջինը կոչվում է «Աշխարհաբարի նորաձևութիւնների հասարակական նշանակութիւն»։*

*Վերնագիրը պարզ է և թիւրիմացութիւնների տեղիք չէ տալիս։ Արծրունին այդ յօդուածում լեզուական-քերականական հարցեր չէր ծեծում։ Իր տեղում մենք տեսանք որ Արծրունին լեզուն նպատակ չէր համարում, այլ միջոց. նա ասում էր թէ ոճը իր համար նշանակութիւն չունի, բաւական է որ ժողովուրդը կարդայ իր գրուածքը և հասկանայ։ Այժմ էլ նա, թէև արդէն վարժվել էր հայերէնագիտութեան մէջ, չէր գալիս այս կամ այն կանոնները թելադրելու, այլ մեր լեզուի մէջ տեղի ունեցող նորաձևութիւնների հասարակական նշանակութիւնն էր բացատրում։ Լեզուն ժողովրդի արտայայտութիւնն է, և եթէ նա մնում է չարունակ անշարժ, խակ, անմշակ ու աղքատ, այդ արդէն նշան է որ հասարակութիւնը չէ զարգանում, որ նրա մէջ նորանոր պահանջներ չեն ծագում, որ նա էլ անշարժացած է։*

*Հայոց լեզուն այդպիսի անշարժութեան նշաններ չէ ցոյց տալիս։ Եւ դրա ապացոյցը Արծրունու համար այն նորաձևութիւններն*

են, որ մոցրել է «Հայկական Աշխարհը»։ Մենք խօսել ենք Ստեփանէի նորաձեւութիւնների մասին մանրամասն կերպով, գիտենք թէ որտեղից էին գալիս այդ նոր ձեւերը։ Արծրունին գործ չունի այդ հանգամանքի հետ. նա նոյն իսկ չէ էլ ուզում հաստատել որքան նպատակայարմար, որքան կենսունակ ու հիմնաւոր են Ստեփանէի նորմուծութիւնները։ Կան դրանք։ Նշանակում է որ աշխարհաբար լեզուն ուզում է ժողովրդի և ժամանակի պահանջներին յարմարվել, ուզում է կենդանի ու ճկուն ձեւեր իւրացնել։ Եւ դա անհրաժեշտ է, դա խրախուսանքի և համակրութեան արժանի երեւոյթ է։

Լեզուն պէտք է յղկել, մշակել։ Բայց ում վրա է դրված այդ պարտքը։ Ստեփանէն մի անհատ է, իսկ անհատը չէ կարող այդպիսի հարցերը լուծել։ Գուցէ Ստեփանէն սխալվում է, գուցէ նրա նորաձեւութիւնները քըմածին են, չեն ընդունվի, կը կորչեն չուտով։ Բայց այդ նորաձեւութիւնների ոգին, ձգտումները հասարակական ուշադրաւ երեւոյթ են կազմում և նրանց պէտք է բաւաբարութիւն տալ։ Ուստի Արծրունին առաջարկում է ընտրել ձեռնհաս անձինքներից մի միայուն մարմին, որ կը վճռէ լեզուական

*հարցերը, ձևեր և կանոններ կը մշակէ մեր աշխարհաբարի համար։*

*Մենք հաղորդեցինք յօդուածի կմախքը, հիմնական միտքը։ Բայց սա բաւական չէ։ Պէտք է ծանօթանալ Արծրունու դատողութիւնների հետ, լօգիկայի ոյժի հետ։ Այս յօդուածը նրա լաւագոյն գրուածքներից մէկն է, ուստի և մենք կը դիմենք Արծրունու սեփական խօսքերին.*

Յիշո՞ւմ էք ինչպէս Թիֆլիսի Հայերը ման են գալիս փողոցներում... Ահա երկու վաճառական մայթով (տրօտուար) են անցնում իրանց առեւտրական գործերի վերա խօսելով... Տեսէք ինչպէս նոքա ծանրաքայլ կերպով են գնում, ինչպէս բարձրաձայն կանչում են խօսելու ժամանակ, ինչ շարժմունք են անում ձեռներով, ոտներով, երեսով... եւ ամէն մի րոպէ քղանցքից քաշելով միմեանց կանգնեցնում են, մի որ եւ իցէ ամենահասարակ միտք մեկնելու համար։

Յիշում եմ նմանապէս ինչպէս մեր ուսուցիչները չեն շտապում դաս տալու, ինչպէս գործ ունեցող մարդիկ չեն շտապում իրանց գործերը կատարելու, իսկ օրէցօր ձգում են նոցա։

Յիշում եմ ինչքան ժամանակ հարկաւոր է Հային մի ամենահասարակ միտք մեկնելու համար. ինչքան դատարկախօսութիւն, անլորդաբանութիւն հարկաւոր է նորան, օրինակ, իր ծառային մի որ եւ է ամենահասարակ հրաման տալու համար...

Այս բոլոր երեւոյթների պատճառը ինչ է։

Մի կողմից ժողովրդի բնաւորութեան այսպիսի

արտայայտութիւնը յատուկ է ամեն հարաւային ազգերին, իսկ միւս կողմից այսպիսի երեւոյթը մեկնվում է մեր հասարակական դրութեամբ։

Երկիրը երկար ժամանակ պատերազմական դրութեան մէջ էր գտնվում. Նորա հասարակական կեանքը չզարգացվեցաւ։ Կովկասի բնակիչները այժմ միայն սկսում են շունչ քաշել, աշխատել, զարգանալ։ Դեռ եւս ճանապարհներ եւ երկաթուղիներ չկան, արվեստագործութիւնը զարգացած չէ երկրում, վաճառականութիւնը աննշան աստիճանին հասաւ, ուսումնարանները բազմաթիւ չեն, ուսումնական կեանքը չկայ։

Այս պատճառով Կովկասի բնակիչները քիչ պահանջմունք ունին... Կովկասի բնակիչը աւելորդ ժամանակ ունի, կամ աւելի լաւ ասեմ նա չէ գնահատում ժամանակը։

Նա չէ շտապում գործել, գնալ, գալ, խօսել... Նա՛ խօսում է գրեթէ երգելով...

Հին հայկական լեզու արտայայտութիւն է հին հայկական կրթութեան։ Ինչպէս եւ բարձր լինէր այն կրթութիւնը, նա դարձեալ միակողմանի էր, այն դարերի սուղ պահանջմունքին համապատասխան լինելով։ Վերացական գաղափարները տիրապետում էին այն ժամանակի կեանքին եւ սորա հետեւանք է, որ մեր հին լեզուն չափազանց հարուստ է փոխաբերական ոճերով եւ խրթնութիւններով։

Իսկ դրական գիտութիւնները դեռ զարգացած չլինելով, մեր գրաբարի մէջ պակաս են բնական, հասարակական, քաղաքական եւ բազմարվեստեան գիտութիւններին վերաբերեալ ասացվածները։

Հին ազգերի կրթութիւնը զուրկ էր այն գիտու-

*թիւններից, որոնք արդեան հասարակական կեան-քում ամենանշանաւոր դեր են խաղում։*

*Լեզուն արտայայտութիւն է հասարակական կեանքի։*

*... Մեր աղքատ, անտաշ աշխարհաբարը նմա-նապէս արդիւնք է մեր աղքատ հասարակական կեանքի։*

*Մի ազգի հասարակական կեանքի զարգացման ժամանակ, զարգանում է եւ նորա լեզուն։*

*Երբ ազգի մտաւոր եւ գիտնական կեանքը դեռ զարգացած չէ, նորան պակաս են ճիշդ ասացված-ները։ Երբ ոչ գիտնական, ոչ արվեստագործական, ոչ առեւտրական, ոչ ընկերական եւ հասարակական կեանքը ազգի մէջ զարգացման բարձր աստիճանին չեն հասել,—մարդիկ աւելորդ ժամանակ ունին, չեն գնահատում ժամանակը, չեն շտապում ապրել, գործել, խօսել, կենսական յարաբերութիւններ կա-տարել,—եւ լեզուն եւս անշարժութեան այս դրու-թեանը ենթարկվելով, ոչ թէ միայն ասացվածների եւ ոճերի պակասութիւն ունի, բայց եւ չափազանց ծանր է, անընդունակ է հասարակական գաղափար-ներ յայտնելու, պարբերութիւնների դասաւորութիւնը չափազանց նահապետական է, լեզւի կազմութեան մէջ հնչիւնների աւելորդութիւն կայ, բառերը երկար են, այբուբէնի մէջ նման տառերի առատութիւն կայ...*

*Մենք տեսնում ենք, որ մի ազգի հասարակա-կան զարգացման ժամանակ փոխվում են եւ այն ազգի բարք ու վարքը... եւ այս երեւոյթը ազդե-ցութիւն ունի եւ լեզւի զարգացման վերա... մար-դիկը աւելի գործունեայ են դառնում, առաւել գնա-հատում են ժամանակը, աւելի կարճ, պարզ եւ ճիշդ պարբերութիւնների կազմութեանը ընտելանում են,*

սակաւ են խօսում ժամանակի պակասութեան պատճառով կամ բառերը արագ արտաքերելու պատճառով հնչիւնների մի քանիսները կամ ամենեւին կորչում են, կամ երկու երեք նոյնանման հնչիւնները մի հնչիւնին միանում են։ Ուղղագրութիւնը փոխվում է, ինչպէս, օրինակ, ֆրանսիական լեզւի մէջ շարունակ էր փոխվում, կարճանում, հեշտանում,—կամ եթէ միեւնոյն է մնում . ժամանակով տառերի մի մասը բառերի մէջ չէ արտասանվում...

Հերքել չէ կարելի, որ մեր ազգը քանի մի ժամանակից սկսած հասարակապէս զարգանում է, մանաւանդ Ռուսա-Հայաստանի եւ Վրաստանի մէջ, որտեղ ռուսական տարրը եվրօպական կրթութեան միջնորդ է դարձել։

Հերքել չէ կարելի նմանապէս, որ արդէն «Հիւսիսափայլի» գործունէութիւնը մեր լեզւին մեծ առաջադիմութիւն անել տուեց մշակելով աշխարհաբարի ձեւերը եւ մտցնելով բազմաթիւ ասացվածները։

Եւ եթէ նա մի քանի բաների մէջ, օրինակ երկար, չափազանց բաղադրեալ բառերը մտցնելով, որոնց գործածութեան դէմ իրաւունքով յարձակում է Հ. Գաբրիէլ Այվազեանը («Խանդարմունք Հայկաբանութեան»), կարելի է անհետեւաբար էր վարվում,—«Հիւսիսափայլը» այս դէպքում ընդհանուր մարդկային յատկութեանը ենթարկվեցաւ։

... Նպատակ չունենալով մի լեզւագիտական քննութիւն առաջարկել, այլ հասարակական կողմից միայն նայելով խնդրի վերա,—ես չեմ կարող պ. Ստեփանէի նորաձեւութիւնների արժանաւորութիւնները կամ պակասութիւնները մի առ մի քննել։

Երկուսից մէկը, կամ հայկական լեզուն անընդունակ է զարգանալ հասարակական պահանջմունքի

համեմատ, եւ ուրեմն ժամանակով բոլորովին չի գործածվի երկրի մէջ,—կամ եթէ կշարունակէ գործածվել Հայերի հասարակական յարաբերութիւններում, նա պարտաւորված կլինի մեծ փոփոխութիւններին ենթարկվել...

Մի լեզւի գոյութեան կռւի համար հարկաւոր են աջողակ հանգամանքը եւ պայմանները...

Մեր լեզու հասարակացնելու առաջին պայմաններից մէկը պէտք է լինի գիտնական ասացվածներով հարստացնելը։ Բայց պակաս նշանակութիւն չպէտք է ունենան նոր գործածութիւնը հեշտացնելու փորձերը։ Այս կողմից նշանաւոր են պ. Ստեփանէի ջանքերը։

Պ. Ստեփանէն, գուցէ եւ անհետեւաբար վարվելով, առաջինն է եղել, որը ըմբռնեց (կարելի է եւ ներքին զգացմունքով, բնական ազդմամբ, ինստինկտ) ժողովրդական, աշխարհաբար լեզւի պահանջմունքը ազատվել ամեն տեսակ աւելորդութիւններից, հասարակ, ամենօրեայ, հասարակական գործածութեանը հասանելի դառնալու համար,—աշխատեց դարման տալ այս պահանջմունքին։

Նորա ջանքը եւ ձգտմունքը մի խօսքով կարող են սահմանվել,—համառօտել...

Այս է պատճառը որ պ. Ստեփանէն ուղղագրութիւնը փոխել փորձեց, դուրս ձգելով այն տառերը, որոնք բառերի վերջերում չեն արտասանվում,—աշխատեց պակասեցնել տառերի թիւը, որոնք մի եւ նոյն կամ նոյնանման կերպով հնչվում են...

Կարելի է պ. Ստեփանէն անհետեւաբար էր վարվում, կարելի է նա շատ բաներում սխալվեցաւ,—կարելի է նորանից առաջարկված լեզւի փոփոխութիւններից շատ փոքր թիւը կընդունվի, կարելի է

երբէք չի ընդունվի ոչ մէկը,—բայց այնու ամենայ-նիւ նորանից առաջարկված նորաձեւութիւնները ժա-մանակի ն շ ա ն են, ժողովրդի կենսական պահանջ-մունքի ա ր տ ա յ ա յ տ ո ւ Թ ի ւ ն են։

Հասարակական կեանքի այդքան առաջադիմու-Թիւնը կանչում է դէպի մի հնացած ազգը եւ դէպի նորա դասական, փառաւոր, բայց այժմեան կեանքի պահանջմունքին անհամապատասխան լեզւի աւերակ-ները. «Կամ պէտք է անհետանանք, կամ հիմքից պէտք է փոխվենք…»։

Բայց ո ր ք ա ն եւ ի ն չ պ է ս…

Ահա մի խնդիր, որը անզօր է լուծել մի մարդի ամբողջ կեանքը, մի անձի աշխատանքը…

Այս խնդիրը պէտք է լուծէ ժ ա մ ա ն ա կ ը եւ ժողովրդի գ ո ր ծ ն ա կ ա ն անդադար լեզւի մշակու-Թիւնը։

Բայց եւ առանձին, մասնաւոր անձի այսպիսի նորաձեւուԹիւնները չպէտք է արհամարհենք։ Նոքա Թէեւ անգործադրելի լինէին, դարձեալ մեծ նշանա-կուԹիւն ունին որպէս առաջադիմուԹեան եւ վերա-նորոգման համար խ Թ ա ն, որպէս բողոք անշար-ժուԹեան դէմ…

Վերջացնում եմ մի առաջարկուԹեամբ.

Աշխարհաբարը կարօտ է վերանորոգմանը. այս-պիսի աշխատանքը վեր է մի անձի զօրուԹիւններից։

ՀասարակուԹենից ենք սպասում որ նա, հաս-կանալով այս ճշմարտուԹիւնը, աշխատէ հայկական լ ե զ ւ ա գ ի տ ա կ ա ն պարբերական ժ ո ղ ո վ ն ե ր ը հիմնել, որոնց միջոցով կարողանան մշակվել նոր լեզւի ձեւերը։

Ժողովին կմասնակցեն հայկական գիտնականները, աշխարհաբար կամ գրաբար լեզւով գիրք հրատարա-

կողները, հայկական օրագիրների եւ լրագիրների ներկայացուցիչները,—Վենէցիայից սկսած մինչեւ Թիֆլիս,—ուսուցիչները եւ այլն։

Հաստատակութենից ենք սպասում, որ նորա մէջից չորս, հինգ անդամներից մի մշտակայ մ ա ս ն ա ժ ո ղ ո վ (կոմիտէ) կազմվէր, որի պաշտօն կլինի տարին կամ երկու տարին մի անգամ (ինչպէս որ յարմար կլինի եւ վճռած կլինի առաջին ժողովից) հրաւիրել հայ գիտնականները եւ գրագէտները մօտ ու հեռու երկիրներից, նշանակված ժամանակին գալ, մասնակցել ժողովին, որի նիստերը միանգամ Թիֆլիս, միանգամ Կ. Պօլիս, միանգամ Երեւան եւ այլն կարող են լինել։

Մասնաժողովի նպատակը եւ պաշտօնը ժողովի նիստերի բացակայութեան ժամանակ, կարող են սահմանվիլ եւ հաստատվիլ ժողովրդի վճռով։

**Այս յօդուածն էլ Գրիգոր Արծրունու արտասահմանեան գրուածքներից էր և նրա տակ դրված է՝ «Հէյդլբէրգ, 1870»։ Մենք ուզում ենք մատնանիշ անել և այն հանգամանքը, որ Արծրունին անդադար ուսումնասիրում էր մեր գրականութիւնը. այս յօդուածի մէջ նա վկայութիւն է բերում Հ. Այտնեանի «Քննական Քերականութիւնից», իսկ յօդուածի ճակատին դրել է Ստեփանոս Նազարեանցի «Փորձական Հոգեբանութեան» առաջաբանից հետևեալ տողերը. «Դիւրին ևս է յարուցանել զմեռեալս ի գերեզմանաց, քան**

թէ միջնորդութեամբ նոյն լեզուի զնորն լուսաւորել զժողովուրդ»։

1871 թուականն է, «Հայկական Աշխարհի» վերջին տարին։ Ամիսներ է անցկացրել Արծրունին իր հայրենիքում, բայց ընթացիկ հարցերի մասին ոչինչ չէ գրում, եթէ չը յիշենք մատենագրական մի քանի տեղեկութիւնները «Մեր Ներքին Գործերի» մէջ։ Նրա վերջին յօդուածը, որ տպվեց Ստեփանէի ամսագրում, «Աշխատանքի Բաժանութիւն» վերնագիրն է կրում։ Դրա մասին մեր ասելիքը շատ քիչ կը լինի, որովհետև դա պարզապէս մի դաս է քաղաքատնտեսութիւնից և չէ պարունակում իր մէջ հայկական կեանքի երևոյթների քննութիւն։ Զարգացնելով այն միտքը թէ աշխատանքի բաժանութիւնը անհրաժեշտութիւն է դառնում այնտեղ, ուր հասարակութիւնը զարգանում է, բարդ պահանջների տէր է դառնում, Արծրունին ասում է որ մասնագէտները հարկաւոր են առաջադիմութեան համար, բայց ոչ չոր ու ցամաք, իրանց գործի մէջ միայն հմտութիւններ ձեռք բերած մասնագէտներ, այլ ընդհանրապէս լաւ զարգացած, բազմակողմանի կրթութիւն ստացած մասնագէտներ։

Հարկաւոր ենք համարում ծանօթացնել այդ յօդուածի մի ուրիշ մտքի հետ էլ։ Դաս-

տիարակութեան հարցերի մէջ, ինչպէս տեսանք Արծրունու առաջին գրութիւններից, կարեւորութիւն էր տրվում երեխայի անհատական յատկութիւններին. Արծրունին պահանջում էր որ կրթութիւնը յարմարեցնվի երեխայի անհատական յատկութիւններին, որ նա զարգացնէ աշակերտի ընդունակութիւնները։ Նոյն սկզբունքը նա այստեղ գործադրում է և ազգերի վերաբերմամբ, որովհետև ազգերն էլ անհատներ են մարդկութեան մէջ։ Նա ասում է.

Ինչպէս մանկավարժութեան խնդիրը պէտք է լինի գտնել, յարուցանել եւ զարգացնել երեխայի մէջ անհատական հակմունքը եւ ընդունակութիւնները, այնպէս եւ, աչքի առաջ ունենալով մարդկութեան մէջ աշխատանքի բաժանութեան օգուտը, քաղաքականութեան խնդիրը պէտք է լինի գտնել, յարուցանել եւ զարգացնել մի ազգի մէջ եւս նորան յատուկ այնպիսի կողմը, որ նորա հոգեւոր եւ տնտեսական կեանքում արդիւնաւոր գործիչ կարողանար դառնալ։

Վերջինն է այս յօդուածը, բայց վերջին «Հայկական Աշխարհի» մէջ։ Ասացինք որ Արծրունին «Հայկական Աշխարհում» չէր արծարծում մեր ընթացիկ կեանքի հարցերը։ Բայց սա չէ նշանակում թէ նա միանգամայն անտարբեր հանդիսատես էր Թիֆլիսի

մէջ։ 1871 թուականի առաջին կիսամեակում նա, համարեա դադարեցնելով իր աշխատակցութիւնը «Հայկական Աշխարհին», սկսում է գրել «Մեղուի» մէջ։ Այս շաբաթաթերթում Արծրունին ոչինչ չէր գրել երկու տարի (1869 և 1870 թուականներին). այժմ նա յանկարծ սկսեց աշխատակցել «Մեղուին» և մի շարք յօդուածներ տուեց։ Ի՞նչ էր պատահել։

Դժբախտաբար, չը գիտենք։ Մի բան միայն նկատում ենք—սառնութիւն Արծրունու և Ստեփանէի մէջ։ Ուշադրութեան արժանի հանգամանք է, որ Արծրունին, Թիֆլիս գալուց յետոյ, ոչինչ ուշադրութիւն չը դարձրեց այն մշտական բանակռուի վրա, որ տեղի ունէր «Հայկական Աշխարհի» և «Մեղուի» մէջ։ Ստեփանէն համարեա ամեն ամիս յարձակվում էր «Մեղուի» վրա, բանակռիւ էր մըղում խիստ լեզուով, կրքոտ էր, անխնայ։ «Մեղուն» էլ իր կողմից յետ չէր մնում. նա լցնում էր իր էջերը Ստեփանէի անձնաւորութեան և մտքերի դէմ ուղղած յօդուածներով, նա համարեա միայն «Հայկական Աշխարհով» էր ապրում։ Մեր աղքատիկ մամուլը միայն այդ երկու ներկայացուցիչներն ունէր Թիֆլիսում և դրանց անվերջ կռիւները չէին կարող աչքի ընկնող երևոյթ չը կազ-

մել։ Արծրունին, որ ստեղծված էր կռուի համար, բոլորովին հեռու պահվեց, ոչ մի խօսք չասաց։ Ինչո՞ւ։ Արդեօք այն պատճառով, որ թանակռիւը Ստեփանէի և Սիմէօնեանցի մէջ գլխաւորապէս մանր-մունր, անձնական հարցերի շուրջն էր պտտում, չէր շօշափում սկզբունքների, հիմնական աշխարհայեցողութիւնների հարցեր։ Ըստ երևոյթին, Արծրունին պիտի Ստեփանէի կողմնակիցը լինէր, որովհետև «Հայկական Աշխարհը», յամենայն դէպս, «Մեղու» չէր։ Բայց իրողութիւնն այն է, որ թանակռուի ամենակատաղի ժամանակը, երբ «Հայկական Աշխարհը» միւս կողմից օր օրի վրա նիհարանում, մաշվում էր և ստիպված էր իր էջերը կրօնի դասերով լցնել, Արծրունին սկսում է գրել «Մեղուի» մէջ, այսինքն աւելի Սիմէօնեանցի կողմը ուժեղացնել։

Ձենք կարողանում ճշտութեամբ որոշել այս իրողութեան պատճառը։ Սկզբունքների, ուղղութեան ոչինչ հարց չէ կարող լինել, որովհետև Արծրունին «Մեղուի» մէջն էլ նոյնն էր, ինչ «Հայկական Աշխարհի» մէջ և Պետրոս Սիմէօնեանցի հիւրասիրութիւնն ընդունել Արծրունու համար չէր նշանակում մազի չափ շեղվել իր դաւանանքներից։ Մենք տրամադիր ենք բացատրել այս երևոյթը ա-

ւելի անձնական յարաբերութիւններով։ Գուցէ չատ բան հասկանալի կը դառնայ, եթէ ի նկատի առնենք հետևեալ հանգամանքը։

Ստեփանէն հիմնեց Թիֆլիսում Մարիամեան օրիորդական դպրոցը և իր ամբողջ ոյժերը նուիրեց նրան։ «Հայկական Աշխարհը» այդ դպրոցի օրգանն էր, նրան փառաբանողը, նրա կեանքի իւրաքանչիւր, նոյն իսկ ամենահասարակ դէպքերը նկարագրողը։ Բանը այն տեղին էր հասնում, որ 1869 թւի վերջում Ստեփանէն յայտարարում էր թէ «Հայկական Աշխարհի» բաժանորդագրութիւնը այնքան լաւ է, որ նա եկող տարին նոյն իսկ արդիւնք էլ է սպասում, բայց այդ եկամուտը իր գրպանում չը պիտի դնէ, այլ պիտի յատկացնէ Մարիամեան դպրոցին։

Իր ձեռքի գործը այդպիսի եռանդով, ինքնահաւանութեամբ պաշտպանող Ստեփանէն 1869 թւականին տեսնում է, որ մի քանի մարդիկ, որոնց մէջ էր և Սիմէօնեանցը, հիմնում են մի նոր օրիորդական դպրոց, Գայիանեան անունով։ Նախանձոտ ծնողի անհամբերութեամբ Ստեփանէն յարձակվում է այդ նոր հիմնարկութեան վրա, անուանում է նրան «ջգրաշէն», այսինքն իր ջգրու շինած։ Բանակռիւը այս առիթով սաստկանում է։ Գրիգոր Արծրունին, արտասահմանից վերա-

*դառնալուց յետոյ, ընդունում է այդ «Ջգրաչէն» դպրոցի տեսչութեան պաշտօնը։ Բաւական չէր այս հանգամանքը, որ սառնութիւն մտնէր Ստեփանէի և Արծրունու յարաբերութիւնների մէջ։*

*Ենթադրութիւնների մէջ աւելի առաջ գընալու նիւթեր չունենք։ Բաւականանանք այսքանով և դիմենք Արծրունու յօդուածներին «Մեղուի» մէջ։*

*Դրանք թւով հինգ հատ են և ամենքի տակ դրված է Արծրունու կեղծ անունը— Ն ի ո բ է։ Երեքը գրված են թատրոնական ներկայացումների առիթով, իսկ երկուսը հասարակական-գրական ընդհանուր հարցեր են շօշափում։ Բոլոր այդ գրուածքների մէջ աւելի ու աւելի խիստ է նկատվում Արծրունու քննադատական-յարձակողական վերաբերմունքը դէպի հասարակութիւնը, մանաւանդ դէպի վաճառական և ինտելիգենտ դասակարգը։ Այսպէս, «Երկու ներկայացում» յօդուածը, տպված «Մեղուի» № 7-ի մէջ, նա սկսում է այսպիսի խօսքերով.*

Գ. Ամերիկեանի *) առաջին խօսքերը ծափա-

---

***) Տաղանդաւոր դերասան, որ յետոյ «Մշակի» առաջին աշխատակիցներից մէկը եւ անդրանիկ ֆելիէտօնիստը դարձաւ։**

հարուԹիւնների արձագանք յարուցին... այդ ինչ է... մեր հասարակուԹիւնը իրան անպատմում է։ Ի՞նչ— մենք այնքան Թանգ վճարում ենք դերասանի նուազ ծառայուԹեանը,—նորա անշահասիրուԹիւնը, եռանդը, ճշմարիտ տաղանդը մենք ծափահարուԹիւններով ենք վարձատրում... այդ շատ շատ է։

Ո՞վ է եղել այն սուտ ասողը որ Թատրոնը, որ քեմը աղդում է ժողովրդի վերայ... այդ սուտ է։ Դերասանը ինքն իր ուրախուԹեան համար է ներկայացնում։ Դերասանը անգործ մարդ է եւ հեղինակն եւս, որի սրտաշարժ գրուածը նա աշխատում է մեզ իր խաղով մեկնել, նմանապէս անգործ մարդ է։ Վարձատրել դերասաններրը, ինչ հարկաւոր է,— նոցա համար վարձատրուԹիւն է եԹէ հասարակուԹեան քանի մի անդամներս քարեհաճում ենք նոցա ներկայացմանը ներկայ գտնվելու...

Հայերը, որոնք մեծ մասով առեւտուրով են պարապում,—դրական ժողովուրդ են։ Գործ, գործ, փող, առուտուր... Մենք հերքում ենք արհեստը, հերքում ենք որ նա մարդի բարոյական եւ մտաւոր զարգացման վերայ աղդեցուԹիւն ունի, մենք արհամարում ենք հեղինակը, որը երկար, քտինքում աշխատում է տարիներով միտք մշակել, ձգտում է արդարուԹեանը, մենք ծիծաղում ենք դերասանի վերայ, որը կամենում է (այն եւս անվարձ) Թարգման դառնալ հեղինակից մշակված մտքերի...

Բայց հայկական պակասուԹիւնների աւելի խիստ քննադատուԹիւն մենք գտնում ենք «Գիտնական անախալականուԹիւն» յօդուածի մէջ, որի հետ պէտք է արդէն աւելի մանրամասն կերպով ծանօԹանալ։

Երբ անցեալ տարի,—ասում է Արծրունին—կաթոլիկ սուրբ հայրերը, գումարվելով Հռոմի մէջ, յայտնեցին իրանց ժողովի բերանով եւ հաստատեցին Պապի ա ն ս խ ա լ ա կ ա ն ո ւ թ ե ա ն վարդապետութիւնը, ամբողջ Եւրոպան ծիծաղով պատասխանեց այդ անճոռնի վարդապետութեան յայտնութեանը։

*Ինչու է ծիծաղելի այդ վարդապետութիւնը։ Երկար է բացատրում այդ բանը Արծրունին, բայց հետեւեալ կտորները այդ բացատրութեան էական կէտերն են.*

Ոչ օրգանական եւ ոչ անօրգանական բնութեան մէջ չկայ անշարժութիւն։

Որտեղ որ նայենք, մենք ոչ մի տեղ ոչ բնութեան, ոչ մարդկային պատմութեան երեւոյթների, ոչ կենդանիների կազմակերպութեան, ոչ եւս անօրգանական (անշունչ) բնութեան, ոչ մարդի հոգեւոր կեանքի մէջ չենք պատահիլ կատարելատիպերի (կատարելագործութեան), բայց ամեն տեղ կնկատենք մշտնջենաւոր ձգտումն դէպի կատարելագործութիւնը։

Գիտութիւնը, երբէք կատարեալ չլինելով, միշտ ձգտում է դէպի կատարելագործութիւնը։ Ա ն ս խ ա լ կարող են լինել միայն կատարեալ գաղափարները, երեւոյթները։ Բայց որովհետեւ կատարեալ բան չկայ ոչ մարդկութեան, ոչ բնութեան մէջ,—անսխալ իրանց յայտնող սկիզբները իրանք իրանց դատապարտում են անշարժութեան։

Կարծելով ինձ անսխալ, ես հերքում եմ իմ անձի համար լուսաւորվելու, առաջադիմութիւններ անելու, բարւոքելու ձգտելու պահանջմունքը եւ հար-

*կատարումթիւնը,—ուրեմն ես հասած աստիճանի վերայ անշարժ եմ մնում։*

*Ճիշտ գիտութիւնը անդադար շարժումի մէջ է գտնվում։*

*Ճիշտ գիտութիւնը սովրեցնում է մեզ անխոնջ ինքնաքննութիւն։*

*Այս ընդունված միտք է, որ Հայերը երկպառակութիւն սիրող ժողովուրդ են, որ նոքա զրկված են ընկերանալու ընդունակութիւնից, որ Հայերի այս յատկութիւնը մի քանիսների (պատմաբանների) կարծիքով նոցա պատմական ընթացքի ազդեցութեան հետեւանք է, կամ ուրիշների (աստուածաբանների) կարծիքով, երկնային անէծք է...*

*Եւրոպական կրթութեան մեծ արժանաւորութիւններից մէկը նորա ձգտումն է ամեն բանին, ամեն մի պակասութեանը դեղը (կամ միջոց) պտռելու...*

*Ցանկալի է որ, օրինակ առնելով եւրոպական ինքնաքննութեան ոգուց, մենք եւս մտածէինք հայկական տարրի մէջ այդ պակասութեան գոյութեան պատմական պատճառների եւ նորան մեր մէջից վերցնելու հնարաւորութեան մասին։*

*... Մեր երիտասարդների մեծ մասի վարմունքի եւ գործունէութեան առաջնորդող սկիզբը անսխալականութիւնն է։*

*Ի՞նչ է սորա պատճառը։*

*Մեր երիտասարդները այնպիսի շրջաններում են մեծանում, դաստիարակվում եւ կրթվում, որտեղ* a n խ ո ն ջ  a շ խ a տ a ն ք ի *գաղափարը դեռ եւս չէ իրագործվել, որտեղ ճիշտ գիտութիւնները, որոնք միշտ խթան են անընդհատ աշխատանքի համար, դեռ եւս մտցրած չեն եւ որտեղ ուրեմն անյայտ է անդադար ձգտումն դէպի ինքնաքննութիւնը։*

Ուշադրութիւն դարձրէք մեր հասարակական գործերի ընթացքի եւ նոցա մէջ մասնակցող անձերի վերայ (չեմ էլ խօսում ծերերի մասին),—եւ դուք կնկատէք, որ գործող անձերից ոչ մէկը չէ կամենում երբէք միւսին հասկանալ, չէ կարող երբէք միւսին զիջումներ անել։

Պատճառը շատ պարզ է։

Մեզանից ամեն մէկը անշարժ է, եւ եթէ կամենար եւս, չէ կարող փոխել իր կարծիքը, իր համոզմունքը, ուրիշ ուղղութիւն տալ իր մտախորհութեան ընթացքին։

Մեր սկզբնական դաստիարակութեան եւ բարձր կրթութեան մէջ պակաս է ճիշտ տարրը գիտութիւնների...

Թէեւ մենք տեսաբար հասկանայինք թէ հասարակութիւնը օրգանական կազմվածք է, որի գործիչներից ամեն մէկը նշանակված է մի առանձին դեր խաղալ, մի որոշ պաշտօն կատարել ընկերական եւ հասարակական կեանքում,—թէեւ տեսաբար համոզված եւս լինէինք, որ *բ ա ց ա կ* (absolu, абсолютный) ճշմարտութիւն չկայ, եւ ճշմարտութիւնը *վ ե ր ա ք ե ր ա կ ա ն* լինելով պիտի կազմվի տարքեր, ծայրայեղ կարծիքներից, որոնք մէկը մէկին օգնելով, մէկը մէկին քննելով եւ հաւասարակշռելով, ծնում են մի *մ ի ջ ա կ* երեւոյթ, որ կարող է (հասարակութեան կարծիք լինելով) միջակ ճշմարտութիւն կոչվել...

Մենք պէտք է հասնենք այն մտքին, որ մարդկային ոչ մի անհատը արհամարհելի չէ (եթէ նա անբնական չէ) ընդհանուր օգտի համար, երբ նա որ եւ իցէ *ա շ խ ա տ ա ն ք ի զ օ ր ու թ ի ւ ն* է ներկայացնում։ Հասարակութեան օրգանական *ա մ բ ո ղ ջ ի*

*ամեն մի կազմող մասը անհրաժեշտ է... միայն թէ հասարակութեան գործիչներից ամեն մէկը չպիտի սխալվի իր պաշտօնի վերաբերութեամբ, եւ իր վերայ պիտի նայէ որպէս հասարակական ամբողջ մարմնի կազմակերպութեան մի փոքրիկ մասի վերայ։*

*Իսկ զարգացման այդպիսի աստիճանին հասնելու համար, մեզանից ամեն մէկին հարկաւոր է հասարակապէս զարգացած լինել։*

*Ինքնաքննութեանը հասնելու համար հարկաւոր է անհատին երբէք անշարժ չլինել։*

*Անդադար չաշխատելով, կամ զարգացման եւ մըտաւոր պարապմունքի մի նշանակված կէտին հասնելուց յետոյ անշարժ մնալով,—ուրեմն միջոց եւս չունենալով իր անձը անդադար քննութեան ենթարկելու,—մարդը բաւականանում է իր մտաւոր զարգացման աստիճանով, ուրեմն ինքնահաւան է դառնում։ Վա՜յ այն հիմնարկութիւններին եւ անհատներին, որոնք ինքնահաւանութեան եւ անսխալականութեան համարմունքին են հասնում...*

*Թո՛ղ պապութեան ինքնահաւանութիւնը եւ ինքնապաշտութիւնը ծնի անսխալականութեան վարդապետութեան հրէշաւոր երեւոյթը,—բայց գիտութեան անկեղծ կուսակիցների համար անյարմար, հերքելի եւ դատապարտելի է թւում անսխալականութեան սկիզբը։*

*Թող մեր ծերերը եւ նոցա հետ եւս մեր նոր սերունդի երիտասարդների մեծ մասը բոլորովին անընդունակ լինելով անընդհատ աշխատանքի, անցնեն իրանց կեանքի մնացած տարիները անշարժութեան, անձնապաշտութեան, ինքնահաւանութեան ապարդիւն զգացմունքների մէջ, թող անսխալականութեան կուսակիցները դառնան... Մենք նոցա համա-*

րում ենք հասարակության համար կորած մթերք...

Բայց աշխատենք ճիշտ գիտություններ և նոցանից մշակված մտախորհության եղանակը գոնէ ապագայ սերունդի մէջ մտցնել։

Հետևեալ յօդուածը, «Մէկ մէկին մեղադրում ենք» վերնագրով, մեր խղճուկ գրականութեան ցաւերին է նուիրված գլխաւորապէս։ Գրող ու ընթերցող փոխադարձաբար դժգոհ են իրարից, մեզանում գրական և կըրթական գործ չէ առաջանում, բայց դրա փոխարէն տեսնում ենք գանգատներ, անվերջ գանգատներ. միմեանց մեղադրում են,—և բանը դրանով էլ վերջանում է։ Արծրունու աշխոյժ, համարեա վիպական պատմուածքի մէջ մեր կեանքի այդ ամենատխուր երևոյթներից մէկը, որ այսօր էլ կայ և ապահովապէս վաղն էլ կը շարունակվի, այսպէս է պատկերացած.

—Միթէ դու «Մեղու», «Հայկական Աշխ.» կամ «Արարատը» չես կարդում, միթէ հայերէն ոչ մի գիրք անգամ չես կարդում,—հարցրեցի ես մէկից...

—Է՛հ... բան չունես, պատասխանեց նա։

—Ի՞նչ է պատճառը որ չես հետաքրքրվում մեր գրականութեամբ։

—Գժուել ես... գրականութեամբ հետաքրքրվիլը ո՞րն է... Արդեօք հայերէն կարդալու բան կա՞յ, որ ինձ կարդալ ես առաջարկում... Լաւ չէ՞ որ ազատ

ժամանակիցս օգուտ քաղեմ օտար մի լեզվով գըրած բան, օրագիր կամ գիրք կարդալու, քան թէ ձեր հայերէնը կարդամ... Բան չունեմ...

Ես լռեցի։

Նորերումս պատահում եմ մի պարոնին, որը անզովելի սովորութիւն ունի ժամանակ առ ժամանակ հայկական օրագրներում յօդվածներ տպելու։

—Պարոն, ասում եմ ես նորան, դուք հայերէն չգիտէք. կամ եթէ գիտէք եւս, ձեր ստեղծած հայերէնը, ինչքան որ կանոնաւոր ու ընտիր լինէր, ժողովրդի գիտեցած հայերէնը չէ, դուք ժողովրդի համար անմատչելի, անհասկանալի, չինծու ոճով էք գրում... Բացի սորանից դուք այնպիսի փիլիսոփայական, վերացական նիւթեր էք ընտրում, այնպիսի բարձր գաղափարներ էք յայտնում, որոնք ժողովուրդը մարսել չէ կարող։ Ես գուցէ սխալվում եմ, բայց իմ կարծիքս է որ մեր գրողները եւ խմբագրողները չեն իմանում իրանց գրուածքներում ժողովրդի հասկացողութեան յարմարվիլ։ Եւ այդ է պատճառը, որ մեր գրուածքը չեն կարդում։

—Ո՛չ, պատասխանեց ինքնակոչ հեղինակը, մեր գրականութեան թշուառ դրութեան պատճառը ժողովրդի սառնութիւնն է դէպի մեր աշխատանքը։ Միջոց չունենալով լիապէս գրականութեանը նուիրվելու, ես ինչպէս կարող եմ յուսալ որ երեւելի գրող դառնամ... ես գրում եմ երբ աւելորդ ժամանակ եմ գտնում... Թող ժողովուրդը ճանաչէ մեր վաստակի գինը, թող վճարէ, վարձատրէ հեղինակի եւ խմբագրի աշխատանքը,—եւ այն ժամանակ մենք օրինաւոր յօղուածներ կառաջարկենք ընթերցողին... Ժողովուրդն է մեղաւոր որ մենք օրինաւոր լրագիր չունինք։

*Ես կրկին լռեցի։*

*Այդ ինչ պատիժ է... ժողովուրդը մեղադրում է հեղինակին, իսկ հեղինակը մեղադրում է ժողովրդին։*

*Ո՞վ է արդար, ո՞վ է մեղաւոր։*

***Արծրունին չէ լուծում այս հարցը։ Եւ կարելի՞ է լուծել նրան դրականապէս։ Նա առաջ է գնում և բերում է մի այլ օրինակ։ Աղքատը լաց է լինում թէ իր որդին անուսում է մնում, որովհետև հարուստը չէ կատարում իր պարտքը, դպրոցներ չէ բաց անում, աղքատների ուսման վարձը չէ տալիս։ Դիմում էք հարուստին, և ահա նա էլ ասում է թէ ինքը շատ է տալիս, միայն ժողովուրդը ծոյլ է, անշնորհակալ է։***

*Հիմա ինչ անենք,—հարցնում է Արծրունին։*

*Սպասենք որ ժողովուրդը հասկանալով ընթերցանութեան օգուտը վարձատրի հեղինակին եւ խմբագրին, կամ սպասենք որ անշահասէր հեղինակը ու խմբագիրը վարձատրված չլինելով այնչափ զարգանան, որ հետաքրքրական, յարմար եւ օգտաւէտ գրուածներ առաջարկեն ընթերցողներին։*

*Սպասենք որ ժողովուրդը ինքնաօգնութեան ըսկիզբը ըմբռնի, կամ սպասենք որ հարուստ դասը իրան նուիրէ ժողովրդական լուսաւորութեան հոգալուն...*

*Ի՞նչ անենք։*

*Բաւական է մէկ մէկին մեղադրել։*

*Մինչ չկայ մեր մէջ եռանդի, աղնուութեան,*

դէպի առաջադիմութիւն սիրոյ, դէպի լոյս ձգտման նշոյլն էլ, որ բոլոր ազգի մէջ չի գտնվիլ գործունեայ մարդիկների մի խումբ, որը յանձն առնէր կազմել մի գումար, եւ նորան շահեցնելով, կարողանար նպաստել գրականութեան զարգանալուն։

Միթէ չի գտնվիլ աշխատողների մի խումբ, որը օգուտ քաղելով այն գումարից, հրատարակէր ինքնուրոյն ու թարգմանական գրուածքներ, կամ հիմնէր կամ օրինաւոր օրագիր, որի աշխատակիցները վարձատրած լինելով, իրանց մտաւոր ոյժը լիապէս նուիրէին մեր նորահաս գրականութեան մշակելուն...

Հարցեր էին սրանք։ Հարցեր, որոնք կեանքի իրականութեան չափ խոշոր էին. Նրանք իրանց պատասխանին էին սպասում։ Բայց ինչ պատասխան. մարդիկ չը կային, պակասութիւնը չէր ցաւեցնում, եռանդ չէր բորբոքում։ Մեր մէջ եղած մարդկանց նկարագիրը ունինք նախընթաց յօդուածում. ինքնահաւան, անսխալական իրանց համարող մարդիկ, անշարժացած, առաջ գնալու, աշխատելու, կատարելագործվելու ոչինչ պահանջ չը զգացող։ Ժամանակը չը կար դրանց համար. և սակայն նա ասում էր թէ չը կայ մի օրինաւոր օրագիր կամ լրագիր, խմբագիրը, գրողը չը գիտէ խօսել ժողովրդի հետ, նրան չեն հասկանում, նրանից խրտնում են։ Մնում էր որ կամ միանգամայն խլանայ ժամանակի ձայնը կամ դուրս գայ մի անհատ,

որ իր բարոյական ոյժով, իր անշէջ եռանդով և վառվռուն տաղանդով կարողանայ իրագործել այն, ինչ սպասվում էր աշխատողների մի խմբից։

Աշխատող խումբը, որ նախաձեռնող հանդիսանար, որ գումար հաւաքէր՝ գրականութեան նուիրվելու համար, չը կար, դուրս չեկաւ մեր իրականութիւնից։ Բայց կար անհատ և դա—ինքը, Արծրունին էր։ Վերև բերած յօդուածի մեծագոյն մասը կարելի է համարել «Մշակի» կարապետ, «Մշակի» նախնական յայտարարութիւն։ Այդ խօսքերը ասել էր տալիս ինքը, կեանքը...

Կեանքի ուժեղ ազդեցութեան տակ է գրված և Արծրունու վերջին յօդուածը «Մեղուի» մէջ։ Մեր խղճալի, արհամարհված գըրականութեան համար ինչ սիրուն տօն էր 1870 թւականի ապրիլի 30-ը, երբ Թիֆլիսում առաջին անգամ հայկական բեմի վրա ներկայացվեց Գաբրիէլ Սունդուկեանի «Պէպօն»։ Այդ օրը երևան էր գալիս մի բոլորովին նոր երևոյթ, հայկական գեղարուեստը ցոյց էր տալիս թէ ինքը կայ, պիտի լինի, թէ հայ ժողովրդի համար լուսանում են նոր օրեր, երբ այդ ժողովուրդը կը սկսէ յուզիչ լեզուով պատմել իր ցաւերն ու ուրախութիւնները, բաց անել իր հոգեկան կարողու-

***թիւնները, իր սիրտը՝ Պէպօն, ժողովրդի ստեղծած հերոսը, իր վիթխարի հասակով. իր մաքուր, անբիծ սրտով, ժողովրդական գաղափարի հրաշալի տօնն էր այդ օրը դրել բեմի վրա։ Եւ ահա ինչ տողեր է նա բեմից թելադրում մեր Նիոբէին.***

*Հասարակութիւնը օրգանական մարմին է, որը կազմված է զանազան, մէկ մէկից տարբեր* գ ո ր ծ ի չ ն ե ր ի ց (факторъ)։ *Մենք մինչեւ այժմ նայում էինք հասարակութեան վերայ, որպէս մի միակերպ մարմնի վերայ... Թէ հայը թէ օտարազգին հայի անունը տալով ներկայացնում էր իրան կամ մի հաստափոր հարուստ վաճառական, կամ մի ողորմելի մանրավաճառ։ Ամբողջ ազգը կազմված էր վաճառականներից։ Ժողովրդի մնացած գործիչները եւ տարբերը մենք չէինք արժանացնում մեր քննութեանը։*

*Հայը մի տգէտ եւ անկիրթ էակ է, որ թէեւ չափազանց շատ բնական խելք ունի, բայց որի համար նիւթական անկախութեանը հասնելու ոչ մի միջոց արհամարհելի չէ... Հայի ընտանեկան կեանքը խիստ է, բայց ոչ թէ գերմանական ընտանեկան կեանքի պէս խիստ, որտեղ թէ հայրը թէ մայրը եւ թէ երեխաները ճանաչում են իրանց իրաւունքները ու պարտաւորութիւնները,—ոչ—հայի ընտանեկան կեանքի խստութիւնը ծագում է միապետական մի սկիզբից։ Հայը չգիտէ սէրը ինչ է նշանակում, նա պսակվում է առանց սիրելու։ Ամուսին դառնալով նա կնոջ վերայ նայում է որպէս իր սեփականութեան վրայ, հայր դառնալով նա իր սեփականութիւն է համարում իր երեխաները։ Մի կամք է*

*իշխում միայն ընտանիքի մէջ,—հօր կամքը,—մի համոզմունք ունի ընտանիքը,—հօր համոզմունքը,—մի խելք,—հօր խելքը։*

*Հայը հասարակական էակ չէ։ Նորա համար հասարակութիւն չկայ, նա հայ է կանչում իրան միայն այն պատճառով որ նա հայ դաւանութեան է պատկանում։ Նորա ամբողջ կեանքի եւ գործունէութեան առաջնորդող զգացմունքը եսականութիւնն է։*

*Նա հասարակութեան համար չէ հոգում, նա չգիտէ նուիրել հասարակութեանը իր բարոյական աշխատանքը։ Նա հոգում է իր անձի մասին, նա ապրում է իր համար։*

*Ինչպէս հոգեւոր հանգստութեանը, կեանքի բաւականութեանը հասնելու համար նա իր ընտանիքի մէջ սպանում է կեանքը, ոչնչացնելով կնոջ եւ երեխաների անհատութիւնը,—այնպէս եւ նիւթական անկախութեանը հասնելու համար նա չէ վախենում իր նմանների իրաւունքները ոտնակոխ անելուց։*

*Այդ իմ նկարած տարբին պատկանում է Սունդուկեանցի Արութիւնը։ Ուրեմն նա մեզ հին ծանօթ է, նա հայ է բուն բառի նշանակութեամբ։*

*Բայց ինչ ասեմ Պէպօի տիպի մասին։ Ես միայն այսքան գիտեմ, որ նա մեր բեմի վերայ նոր երեւոյթ է...*

*Այդ նոր երեւոյթի յատկութիւնները Արծրունին մի առ մի պարզում է, համեմատելով Պէպօին Արութիւնի հետ, վերլուծելով նրանց գաղափարները, ձգտումները, աշխարհայեցողութիւնները։ Սակայն անպայման ազ-*

*նիւ Պէպօից աւելի Արծրունին լաւ տիպ է համարում Կակուլլիին։ Պէպօն այն պակասութիւնն ունի, որ իր քրոջ պատուի համար կռուի մղելով հզօր Զիմզիմօվի դէմ, նա չէ տեսնում որ քոյրը այդ կռուից բախտաւոր լինել չէ կարող, քանի որ նա նշանված է մի երիտասարդի հետ, որ նրան չէ սիրում և պատրաստ է դէն գցել նրան, եթէ փող չը ստանայ։ Սակայն Արծրունին իսկոյն աւելացնում է որ Պէպօն ժողովրդի որդի է և գործ չունի ժողովրդական հասկացողութիւնների լաւութիւնն ու վատութիւնը երևան հանելու հետ։ Նա միայն պատուի և ազնւութեան ասպետ է։*

*Իր յօդուածը Արծրունին վերջացնում էր հետևեալ նկատողութեամբ.*

*Ներկայացումից յետոյ ես առիթ ունեցայ խօսակցութիւններ լսելու։ Արութիւնը Կիրակոսին նման է, ասում էր մէկը. ոչ, նա Մարկոսին նման է, պատասխանում էր միւսը եւ այլն։*

*Մի կողմից սա բնական է, որ ժողովրդական կեանքից առնված գրվածի մէջ ներկայացրած տիպերը նմանութիւն ունին ծանօթ կենդանի անձների հետ. եթէ ոչ, պիէսան էլ կ ե ն դ ա ն ի ժողովրդական երեւոյթ մեզ չէր ներկայացնիլ,—իսկ միւս կողմից ես ցաւելով մտածում եմ այս բանի վերայ թէ որքան... եւ անզարգացած է մեր հասարակութիւնը (մինչեւ անգամ հասարակութեան բարձր դասը) որ*

*նորան այնքան չէ հետաքրքրում գրուածի գաղափարը, ինչքան այս ինչ մարդի* ա ն ձ ն ա կ ա ն ու-Թ ի ւ ն ը...

*Ափսոս որ հասարակուԹիւնը փոխանակ հեղինակի գաղափարը քննելու եւ ըմբռնելու, նայում է նորա ստեղծուածին, որպէս մի որ եւ է անձնաւորուԹիւնը ներկայացնելու միջոցի վերայ։*

**«Պէպօն», անկասկած, մի գրական երեւոյԹ էր։ Բայց ի՞նչ աւելացրեց այդ երեւոյԹը մեր գրականուԹեան մէջ։ Բացի Արծրունու այս յօդուածից մենք չենք գտնում մի այլ գրուածք, որ նուիրված լինէր նրան։ Տաղանդը արծարծում էր կենսական կարեւոր հարցեր։ Եւ եԹէ մեզանում լինէին աշխոյժ, տպաւորվող, հասկացող մարդիկ, «Պէպօն» հէնց իր առաջին ներկայացման օրից կը դառնար մի ամբողջ շարժման դրդիչ։ Բայց լուռ ու մեռած էր հայկական միտքը։ Եւ միայն Արծրունին ցոյց տուեց Թէ որքան զգայուն է, որքան ուշադիր դէպի հասարակական հարցերը։ Տաղանդաւոր գրուածքը ուժգին Թափ հաղորդեց նրա գրչին և նա գրեց մէկը իր այն խիստ յօդուածներից, որոնց տեղը ապագայում «Մշակը» պիտի լինէր։ Այդ զուտ մշակական գրուածքի տեղը այժմ «Մեղուն» էր, այն «Մեղուն», որ յետոյ ահագին վայնասուններ էր բարձրացնում Արծրունու**

այսպիսի իսկ խիստ ու անողորմ մտրակումների համար։

Նշանները արդէն երեւում էին. գալիս էր խիստ քննադատող խօսքը, անխնայ մերկացումը։ Փոխվում էր սերունդը։ Ո՛րպիսի տարբերութիւն եղած գործիչների և այս նոր մարդու մէջ։ Ստեփանէն շարունակ կրկնում էր. «ազնիւ հայեր, խնկելի հայեր, տօնելի հայեր». իսկ Արծրունին մերկացնում էր հայի անասնական եսականութիւնը, ասում էր թէ հայը միայն անձնական բարեկեցութեան գործում աշխատող է, եռանդ է, իսկ հասարակական հոգսերի համար միանգամայն մեռած է։ Ո՞վ էր աւելի խոր նայում կեանքի մէջ։ Այն ժամանակ, երբ հայոց բեմը ներկայացնում էր Ջիմշիմովին, Ստեփանէն զբաղված էր իր դպրոցական հաշիւներով և մի խօսք անգամ չասաց «Պէպօի» մասին։ Մայիս ամիսն էր, Ստեփանէն վերջ էր տալիս «Հայկական Աշխարհի» հրատարակութեան։ Նախ քան «խնկելի ազգին» իր վերջնական հրաժարականը տալը, նա առանց պատճառի, մոռանալով առաջներում գրած իր տողերը և փառաբանութիւնները, տպագրեց մի այսպիսի բան.

Միւս կողմից ես շատ ցաւում եմ, որ ռուսաստանցի հայկական երիտասարդների համար ընտըր-

վում է Գերմանիա որպէս ուսման եւ կրթութեան տեղ։ Եթէ «Հայկական Աշխարհի» խմբագրողը, յարգելով Գերմանիայի մէջ ուսած իւր աշխատակցի կարծիքը, հրատարակում էր նորա յօդուածներ, որտեղ Գերմանիային առաւելութիւն էր տրված, «օդորմելի» ածականը նուիրելով մինչեւ անգամ մեր թիւրքիաքնակ իմաստուն Հայերին, որոնք Ֆրանսիայի մէջ են սովորում, ես ընդհակառակն քաղդաւոր եմ համարում նոցա, որոնք Ֆրանսիա են ընտրում իւրանց կրթութեան տեղ։ Պրուսական կրթութեան մեծ պակասութիւններ չեն միթէ անմերձենալի լինել, մեծամտութիւն (որ կարճամտութեան նշան եւս է), միայն անձնական օգուտներ պտռել, զօրութիւն ստացածին պէս հարստահարել ստորադրվածներին եւ այլն։ Իսկ ֆրանսիական կրթութիւնը մանկութենից կրկնում է աշակերտին թէ նա ծնվել է իւր ազգին եւ մարդկութեանը ազնւաբար ծառայելու, ընկերը սիրելու, արդարութեան եւ... իրաւունքներ պաշտպանելու եւ այլն։

*Մարհաւրդ տալով հայերին Ֆրանսիա կամ Շվէյցարիա գնալ ուսում առնելու, ինչպէս նաև բաւական բարձր համարելով և Ռուսաստանի կրթութիւնը, Սաեփանէն իր ակնարկները աւելի ևս հասկանալի դարձնելու համար ասում էր.*

20—25 տարի աշխատում է մարդը Ռուսիայում չէ կարօղանում դօկտորի աստիճան ստանալ։ Այն ինչ Գերմանիայում բաւական է 2—4 տարի

այս կամ այն պրոֆէսորի դասերին գրվել, մի օր բանախօսութիւն անել պրոֆէսորների հետ, եւ դօկտորի աստիճանը պատրաստ է պտուղին առանց որ եւ իցէ ուրիշ աստիճաններ ստանալու (Բոլորովին տարբեր քննութիւն է լինում, երբ գիտնական աստիճան պտուղը տէրութենական ծառայութեան է պատրաստվում)։ Բայց եւ այնպէս առաջին կերպով վաստակած գիտնականութիւնը չէ կարող իհարկէ հիմնաւոր եւ պտղաւէտ լինել։

Ի՞նչպէս էր որ գերմանական կրթութեան մասին մի այսպիսի յայտնութիւն յանկարծակի իջաւ Ստեփանէի վրա,—բացատրելու հնարաւորութիւն չունինք։ Բայց որ այս տողերի մէջ «Հայկական Աշխարհի» խմբագիրը ի նկատի ունէր Արծրունի եղբայրներին—այս աւելի քան անկասկած է։ Ահա այս է այն սառնութեան արտայայտութիւնը, որի մասին խօսեցինք քիչ վերեւում։ Պատճառ, ի հարկէ, կար, գուցէ և մի քանի հատ պատճառներ. բայց եթէ սա վրիժառութիւն է, դուք տեսնում էք որ նրա ձեւը երբէք չէ կարելի դնել քաջութիւնների շարքում։ Մանր, խղճուկ, ծածկված վրէժխնդրութիւն. դա է այն առաջին թշնամութիւնը, որ յայտնվեց մամուլի մէջ Գրիգոր Արծրունու դէմ։

Սկզբից նեթ շատ բնորոշ է այդ թշնամութիւնը։ Եթէ պէտք էր հերքել Արծրունու որ և է գրուածքը, կամ առհասարակ ցոյց

տալ նրա անընդունակութիւնը, ի՞նչ հարկ կար այնքան անարգելու գերմանական կըրթութիւնը, ընդհանրապէս. անուանարկելու նրան։ Ի՞նչ մեղք ունէր Գերմանիան, եթէ Արծրունին իսկապէս մեծամիտ էր, ոչ բազմակողմանի զարգացած և այլն։ Բանը, ի հարկէ, կրթութեան, դպրոցի, աշխարհագրական անուան մէջ չէր. դրանք թափանցիկ պատրուակներ էին կամ աւելի լաւ ասած՝ բամբասանքներ էին, որոնց միջոցով կարելի էր եթէ ոչ հերքել, ապացուցանել մի բան, գոնէ կծել, անուանարկել։ Բայց դա այրական միջոց չէր, դա գրական կռիւ չէր, այլ պառաւական մի բամբասանք։ Արծրունին կարող էր դոկտորութեան աստիճան ստացած էլ չը լինել. նա դոկտոր չէր, ուսանող էր այն ժամանակ, երբ նոյն այդ Ստեփանէն նրա կարծիքներն էր հարցնում, երբ գովում փառաբանում էր նրան։ Այժմ ի՞նչ միտք ունէր ասել թէ Գերմանիայում շատ հեշտ է դոկտորի աստիճան ստանալը։ Բնորոշ անուանեցինք այս թշնամութիւնը այն պատճառով, որ Արծրունին իր կեանքում մեծ մասամբ այնպիսի հակառակորդների դէմ էր կանգնած, որոնք փոխանակ փաստերի, փոխանակ հերքումների ծամածռութիւններ էին անում։

Ստեփանէի վերաբերմամբ մեզ չէ զար-

մացնում այսպիսի հակասական հանգամանքը. այդ եռանդոտ, տաք մարդու կեանքում ծայրայեղութիւնները քիչ տեղ չէին բռնում։ Ահա նա դադարեցնում է «Հայկական Աշխարհը», որպէսզի վարդապետ ձեռնադրվի։ Մի քանի տարիներից յետոյ նա պիտի վերսկսէ իր ամսագրի հրատարակութիւնը, բայց այնպէս փոխված, որ «իմաստուն» յօդուածներ պիտի գտնէ «Մեղուի» մէջ, այն «Մեղուի», որի գրական և հրապարակախօսական ոչնչութիւնը, բթամտութիւնը այնքան իրաւացի կերպով մերկացնում էր տարիների ընթացքում, աշխարհական ժամանակը...

Արծրունին ոչինչ չը գրեց այդ քողարկված ակնարկութիւնների դէմ, որոնք իսկապէս պատասխանի էլ չէին արժանի, այլ միայն խղճահարութեան։ Կասենք աւելին. նա համարեա միշտ կարողացաւ յարգել այդ արժանաւոր հոգևորականին և կրակոտ գործիչին։



«Սունդուկեանցի Պէպօ» յօդուածով Արծրունին վերջ դրեց իր գրական գործունէութեան առաջին շրջանին։ Դա այսպէս ասած, Նախապատրաստական շրջանն էր։

Մենք քայլ առ քայլ հետևեցինք երիտասարդ գրողին այդ սկզբնական շրջանում։ Տեսանք թե ինչպես նրա մեջ յանկարծակի խօսեց հրապարակախօսի կոչումը, ինչպես նա գնաց այդ կոչման ետևից և ինչեր սասաց մի կարճ միջոցում։

Վերցնում ենք այն ժամանակների մեր պարբերական մամուլը, մի առ մի ծանօթանում ենք գրողների հետ և նկատում ենք միայն Արծրունուն։ Միայն խմբագիրներն են մամուլի գործերով զբաղված, աշխատակիցները պատահական մարդիկ են, մէկ գըրում են, հինգ լռում. շատերը մի անգամ են միայն երևում, շատերը գրում են, երկար լռում, նորից երևան գալիս և անյայտանում։ Արծրունին է միայն, որ աշխատում է կանոնաւոր, անընդհատ. գրելը նրա համար պահանջ է։ Եւ մեր մամուլի մոխրագոյն, անպաճոյճ էջերում որպիսի գեղեցիկ երևոյթ են կազմում Արծրունու յօդուածները։ Ոչ ոք այն ժամանակները չէր կարողանում գրել այնպէս. նա բարձր էր նոյն իսկ մեր խմբագիրներից։ Նա ստեղծեց հրապարակախօսական լեզու. նա մտցրեց ամբողջ ոճեր, ձևեր, յատկանիշ բառեր։ Մեր հրապարակախօսութեան լեզուն մինչև այժմ էլ չէ կարողացել Արծրունու լեզուից առաջ անցնել։ Ասում

էին թէ նա հայերէն լաւ չը գիտէ։ Մենք ամենևին չենք ասում թէ այդպէս չէր։ Բայց նայում ենք «Մեղուին», «Հայկական Աշխարհին», քրքրում ենք զանազան մարդկանց գրուածքները և կարող ենք հանգիստ կերպով վկայել, որ ոչ ոք այն ժամանակները Արծրունուց լաւ չէր գրում։ Եթէ իսկական գրողը պիտի ունենայ իր առանձնայատուկ ոճը, մենք կասենք որ միայն Արծրունին ունէր ոճ և նրա իւրաքանչիւր տողը այժմ էլ կարելի է ճանաչել և զանազանել։

Բնութիւնը տուել էր նրան աշխոյժ, տըպաւորվող բնաւորութիւն. Նրա սուր հայեացքից չէին խուսափում հասարակական հարցերը։ Կրթութիւնը դարձրեց նրան առաջադէմ, համարձակ, յեղափոխիչ գաղափարների համոզված զինուոր։ Եւ նա դուրս եկաւ մեր մէջ։ Ոչինչ չը կարողացաւ արգելք դառնալ նրա առջև. ոչ մանկութիւնից ըստացած օտար կրթութիւնը, ոչ մայրենի լեզուին խորթ լինելը, ոչ փակված կեանքը հայրենի տան մէջ և ապա երկար բացակայութիւնը հայրենիքից։

Նա պատրաստվեց, կազմակերպվեց ընթերցող հասարակութեան աչքի առջև։ Սկսեց կրթութեան և դաստիարակութեան հարցերով, ուր երկչոտութեամբ, անվարժ երիտա-

*սարդի անվճռողականութեամբ էր դատապարտում հայրենի նախապաշարմունքները և քայլ առ քայլ առաջանալով, աստիճանաբար ամրանալով, եկաւ հասաւ «Սունդուկեանցի Պէպօ» յօդուածին, ուր արդէն որոտում է նա հայի եսամոլութեան, արատների դէմ...*

*Այժմ նա բոլորովին պատրաստ էր։ Այժմ սեփական գործ էր ստեղծում իր համար։ Այն ժամանակ, երբ նա գրում էր վերջին յօդուածը «Մեղուի» մէջ, պատրաստ ու վերջացրած էր սեփական լրագրի ծրագիրը։ «Մշակ» հրատարակելու թոյլտուութեանն էր նա սպասում այդ ժամանակ։*

*Հիմա գալիս է «Մշակի» Գրիգոր Արծրունին...*

ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻ